# ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

## 12

# ИНОЯЗЫЧНЫЕ ИСТОЧНИКИ ОБ АРМЕНИИ И АРМЯНАХ



МАТЕНАДАРАН
ИНСТИТУТ ДРЕВНИХ РУКОПИСЕЙ ИМ. МАШТОЦА
ПРИ СОВЕТЕ МИНИСТРОВ АРМЯНСКОЙ ССР

# СИРИЙСКИЕ ИСТОЧНИКИ
## II

# АНОНИМ ЭДЕССКИЙ
# ХРОНИКА

ПЕРЕВОД С ОРИГИНАЛА.
ПРЕДИСЛОВИЕ И ПРИМЕЧАНИЯ
Л. А. ТЕР-ПЕТРОСЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1982

«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

## ԱՍՈՐԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

## Բ

# ԱՆԱՆՈՒՆ ԵԴԵՍԱՑԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ ԲՆԱԳՐԻՑ
ԱՌԱՋԱԲԱՆ ԵՎ ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ
Լ. Հ. ՏԵՐ-ՊԵՏՐՈՍՅԱՆԻ



ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1982

ԳՄԴ 63. 2
Ա 575

Տպագրվում է Մաշտոցի անվան հին ձեռագրերի
ինստիտուտի գիտական խորհրդի որոշմամբ



Հատորի խմբագիր՝ բանասիրական գիտությունների թեկնածու
Պ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Ա575 Անանուն Եդեսացի

*Ժամանակագրություն /Թարգմ. բնագրից, առաջաբան և ծանոթագր. Լ. Հ. Տեր-Պետրոսյանի; խմբ. Պ. Մ. Խաչատրյան.—Եր.: ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1982. 266 էջ.— (Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին; 12. Ասորական աղբյուրներ; 2 /Մատենադարան, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր Մաշտոցի անվ. հին ձեռագրերի ին-տ)։*

*Հայերեն թարգմանությամբ ներկայացվող XIII դ. ասորական այս ժամանակագրությունը կարևոր տեղեկություններ է հաղորդում սելջուկյան տիրապետության, խաչակրաց արշավանքների, Կիլիկիայի և Հյուսիսային Ասորիքի հայկական իշխանությունների և Հայաստանի պատմությանն առնչվող բազմաթիվ այլ խնդիրների մասին։*

*Նախատեսվում է միջնադարի պատմությամբ հետաքրքրվողների համար։*

Ա $\frac{0504020000}{703(02)-82}$ 104—82

ԳՄԴ 63. 2
902. 9

# ԱՆԱՆՈՒՆ ԵԴԵՍԱՑԻՆ ԵՎ ԻՐ «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ»

Ասորական պատմագրական հուշարձանները արժանահավատ սկզբնաղբյուրների համբավ են վայելում Մերձավոր արևելքի միջնադարյան պատմությամբ զբաղվող մասնագետների շրջանում: Իրանի, Բյուզանդիայի, Արաբական խալիֆաթի և սելջուկյան ամիրայությունների պատմության ուսումնասիրման հետ կապված շատ խնդիրներ իրենց լուսաբանությունն են գտնում շնորհիվ այդ աղբյուրների: Նրանք մեծ արժեք են ներկայացնում հատկապես այն տեսակետից, որ հայկական աղբյուրների կողքին հակակշռում են մահմեդականների ու խաչակիրների աչառու պատմագրությանը: Դժվար է գտնել Մերձավոր արևելքի երկրների միջնադարյան պատմությանը նվիրված որևէ լուրջ հետազոտություն, որտեղ օգտագործված չլինեն ասորական ժամանակագրությունները ու պատմությունները:

Սովետական պատմագիտության մեջ ասորական աղբյուրների գնահատման և արժեքավորման գործում մեծ վաստակ ունի Ն. Վ. Պիգուլևսկայան, որն իր ուսումնասիրություններում հիմնավոր կերպով վեր է հանել բազմաթիվ հուշարձանների գիտական նշանակությունը: Հայագիտությունը նույնպես անմասն չի մնացել այդ գործին: Դեռևս 1934—1935 թթ. «Բազմավեպ» հանդեսում լույս տեսավ VI դ. ասորի պատմագիր Հովհան Եփեսացու «Եկեղեցական պատմության» III մասի հայերեն թարգմանությունը՝ կատարված գերմաներենից[1]: 1969 թ. Ն. Տեր-Մինասյանը հրատարակեց «Եդեսիայի ժամանակագրության» ասորերենից թարգմանված հայերեն բնագիրը[2]: Իսկ 1976 թ. «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարի 8-րդ գրքում Հ. Մելքոնյանի թարգմանությամբ լույս տեսան ևս չորս ասորական աղբյուրներ՝ Մշիխա Զեխայի «Ադիաբենի պատմությունը», Կեղծ-Յեսու

[1] Հովհաննես Եփեսացի *(եպս.), Եկեղեցական պատմութիւն, «Բազմավէպ», 1934, էջ 52—59, 211—215, 266—273. 1935, էջ 4—7։*

[2] Ն. Տեր-Մինասյան, *Եդեսիայի ժամանակագրութիւնը, «Պատմա-բանասիրական հանդես», 1969, № 4, էջ 175—185։*

Սյունակյացի և Կեղծ-Զաքարիա Միտիլենացու «Ժամանակագրություն-ների», ինչպես նաև Հովհան Եփեսացու «Եկեղեցական պատմության» պահպանված մասերը[3]: Ներկա հրատարակությամբ հայ պատմաբան-ների տրամադրության տակ է դրվում մի ուրիշ ասորական աղբյուր, որը, հուսով ենք, իր նպաստը կբերի հայ ժողովրդի պատմության զա-նազան հարցերի ուսումնասիրման գործին:

Անանուն Եդեսացու «Ժամանակագրության» միակ ձեռագիրը հայտ-նաբերվել է 1899 թ. Կոստանդնուպոլսի մասնավոր հավաքածուներից մեկում: Հետազոտողների կարծիքով, ասորական այդ ձեռագիրն ընդօ-րինակվել է XIV դարի վերջերին: «Ժամանակագրության» առաջին հրա-տարակությունը, որը մնացել է անավարտ, իրականացվել է 1904—1911 թթ., կաթոլիկ ասորիների պատրիարք Իգնատիոս Եփրեմ II Ռահ-մանու կողմից[4]: Ամբողջական բնագիրը լույս է տեսել 1916—1920 թթ., երկու հատորով, նշանավոր ասորագետ Ժ.—Բ. Շաբոյի աշխատասի-րությամբ[5]: 1937 թ. Ժ.—Բ. Շաբոն հրատարակել է «Ժամանակագրու-թյան» առաջին հատորի լատիներեն թարգմանությունը[6], առաջաբանում խոստանալով իրականացնել նաև երկրորդ հատորի թարգմանությունը: Սակայն այդ գործն անկատար է մնացել:

1946 թ. Ն. Վ. Պիգուլևսկայան իր «Բյուզանդիան և Իրանը VI—VII դդ. սահմանագլխին» աշխատության հավելվածում տվել է Անանուն

---

[3] Ասորական աղբյուրներ, *Ա. Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հ. Մելքոնյանի, «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», 8, Երևան, 1976։*

[4] Chronicon civile et ecclesiasticum anonymi auctoris, quod ex unico codice edesseno primo edidit *Ignatius Ephraem II Rahmani*, fasc. I—II, Šarfet, 1904, 1911.

[5] Chronicon ad annum Christi 1234 pertinens. I. Edidit *J.—B. Chabot*, Praemissum est Chronicon Anonymum ad A. D. 819 pertinens. Curante Aphram Barsaum. „Corpus Scriptorum Christianorum Orientalium (=CSCO)“ 81, Syr. 36, Louvain, 1920 (*այսուհետև՝* Chabot—I). Anonymi auctoris chronicon ad annum Christi 1234 pertinens. II. Edidit *J.—B. Chabot*. „CSCO“ 82, Syr. 37, Louvain, 1916 (*այսուհետև՝* Chabot—II).

[6] Anonymi auctoris chronicon ad annum Christi 1234 pertinens. I. Praemissum est Chronicon Anonymum ad A. D. 819 pertinens. Interpretatus est *J.—B. Chabot*, „CSCO“ 109, Syr. 56, Louvain, 1937 (*այսուհետև՝* Chabot—III). *Ժամանակագրության առաջին մասի մի համառոտված ֆրանսերեն թարգմանություն էլ գեռևս 1907 թ. ձեռնարկել է ֆրանսիացի արևելագետ Ֆ. Նոն, բայց այդ գործը անավարտ է մնացել. տե՛ս F. Nau*, Traduction de la chronique syriaque anonyme. editee par Sa Beatitude Mgr Rahmani, patriarche des Syriens catholiques, „Revue de l' Orient chretien“, 2e serie, t. II (XII). Paris, 1907, p. 429—440. t. III(XIII), 1908, p. 90—99, 436—443.

Եդեսացու երկի առաջին հատորի 76—125 գլուխների ռուսերեն թարգմանությունը, որոնք վերաբերում են Մավրիկիոս կայսեր գահակալումից (582 թ.) մինչև Հերակլիոսի մահը (641 թ.) ընկած ժամանակահատվածի իրադարձություններին[7]: «Անանուն ժամանակագրությանը» Ն. Վ. Պիգուլևսկայան որոշ տեղ է հատկացրել նաև նույն գրքի աղբյուրների տեսության բաժնում[8]:

Հայտնի են «Ժամանակագրության» երկրորդ հատորից կատարված մի քանի մասնակի և հատվածական թարգմանություններ[9]: Դրանց շարքում կարևոր տեղ է զբաղեցնում Ա. Տրիտոնի իրագործած անգլերեն թարգմանությունը, որն ընդգրկում է առաջին և երկրորդ խաչակրությանը վերաբերող հատվածները: Այդ թարգմանությունը նշանակալից է նրանով, որ հիմք է ծառայել խաչակրաց պատմության համարյա բոլոր ժամանակակից հետազոտողների (Ռ. Գրուսե, Ս. Ռանսիմեն, Ա. Լյուդերս և այլն) ուսումնասիրությունների համար: Օգտվելով Ա. Տրիտոնի թարգմանությունից, Ռ. Գրուսեն իր «Խաչակրաց պատմության» երկրորդ հատորի հավելվածում տվել է նաև Եդեսիայի կոմսությանը վերաբերող տվյալների մանրամասն վերարտադրությունը[10]: Ա. Տրիտոնի հրապարակումը մեզ համար նաև առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում, քանի որ Հ. Քյուրտյանի կողմից այն ամբողջությամբ թարգմանվել է հայերենի և լույս տեսել առանձին գրքույկով՝ «Առաջին և երկրորդ խաչակրութիւնները ըստ Սիւրիացի անանուն ժամանակագրի մը» խորագրի տակ (Բոստոն, 1936):

1974 թ. լույս տեսավ երկրորդ հատորի ամբողջական ֆրանսերեն թարգմանությունը, կատարված Բաղդադի համալսարանի պրոֆեսոր Ալբերտ Աբունայի կողմից[11]: Ներածության, ծանոթագրությունների և

---

[7] *Н. В. Пигулевская*, Византия и Иран на рубеже VI и VII веков, М.—Л., 1946, стр. 252—289.

[8] *Նույն տեղում, էջ 48—49*:

[9] *Տե՛ս J.—B. Chabot*, Un episode de l'histoire des Croisades, „Melanges offerts a Gustave Schlumberger", vol. I, Paris, 1924, pp. 169—179 [*Զանգիի կողմից Եդեսիայի առման դրվագի թարգմանությունն է*]. The First and Second Crusades from an Anonymous Syriac Chronicle, translated by *A. S. Tritton*, with Notes by *H. A. R. Gibb*. „The Journal of the Royal Asiatic Society of Great Britain and Ireland", 1933, p. 69—101, 273—305. *A. Rücker*, Aus der Geschichte der Jakobitischen Kirche von Edessa in der Zeit der Kreuzfahrer „Oriens Christianus", Bd. 32, S. 124—139, leipzig, 1935 (*Աղբյուրի մասնակի փոխադրությունն է*):

[10] *R. Grousset*, Histoire des Croisades et du royaume franc de Jerusalem, t. II, Paris, 1935, p. 866—886.

[11] Anonymi auctoris chronicon ad A. C. 1234 pertinens. II. Traduit par

ցանկերի հեղինակն է ասորագետ Ժ.—Մ. Ֆիեն: Ա. Աբունայի թարգմանությունն աչքի է ընկնում ճշգրտությամբ և լիովին կարող է բավարարել արդի պատմագիտության պահանջները: Հազվադեպ անճշտությունների և բացթողումների մասին խոսք կլինի սույն աշխատության համապատասխան ծանոթագրություններում:

Ինչ վերաբերում է Ժ.-Մ. Ֆիեի ներածությանը, ծանոթագրություններին և ցանկերին, ապա դրանք իրենցից ներկայացնում են աղբյուրագիտական տվյալների այն ամբողջությունը, որն անհրաժեշտ է ցանկացած պատմական սկզբնաղբյուրի մատուցման համար: Ծանոթագրությունները, սակայն, շատ համառոտ են և շոշափում են երբեք հիմնական խնդիրներ. պատմական անձանց անունների ճշգրտում, «Ժամանակագրության» և այլ սկզբնաղբյուրների (Մատթեոս Ուռհայեցի, Միքայել Ասորի) զուգահեռ դրվագների բացահայտում և, վերջապես, բնագրական աղավաղումների վերլուծում, որը Ժ.—Մ. Ֆիեն քաղել է Ժ.—Բ. Շաբոյի հրատարակությունից: Ցանկերում արտահայտված են Անանուն Եդեսացու «Ժամանակագրության» երկու հատորների պատմական, տեղագրական և աղբյուրագիտական տվյալները: Ինքնուրույն պատմաբանասիրական արժեք է ներկայացնում Ժ.—Մ. Ֆիեի ներածությունը, որտեղ թեև համառոտ, բայց հիմնավոր քննության են ենթարկված «Ժամանակագրության» հեղինակին, ժամանակին և աղբյուրներին վերաբերող խնդիրները[12]: Դժվար է պատկերացնել որևէ հետագա ուսումնասիրություն, որտեղ այս կամ այն չափով չկրկնվեն այդ ներածության եզրահանգումները:

* * *

Հետևելով ասորական պատմագրության ավանդույթին, Անանուն Եդեսացին իր երկը կազմել է երկու ինքնուրույն մասից՝ եկեղեցական և քաղաքական ժամանակագրություններից, որոնք բաժանված են բազմաթիվ փոքրածավալ գլուխների[13]: Մեզ հասած ձեռագրում եկեղեցական ժամանակագրությունը հաջորդում է քաղաքական ժամանակագրությանը, թեև սկզբնապես, ամենայն հավանականությամբ, նախորդել է նրան: Նման կարծիքի համար հիմք է տալիս այն հանգամանքը, որ քա-

*Albert Abouna*. Introduction, notes et index de *J.—M. Fiey*, „CSCO" 354, Syr. 154, Louvain, 1974 *(այսուհետև՝ Abouna-Fiey)*.

[12] *Անանուն Եդեսացու «Ժամանակագրության» մասին տե՛ս նաև Ռ. Հուսեյնովի համառոտ ծանոթությունը.* *Р. А. Гусейнов*, Сирийские источники по истории Закавказья X—XIV веков, *«Պատմա-բանասիրական հանդես», 1974, № 2, էջ 51—52։*

[13] *Գլուխների համարակալումը կատարվել է հետագայում մի անփույթ գրչի կողմից։*

դավական ժամանակագրության մեջ տեղ-տեղ վկայակոչված են եկեղեցականի զանազան դրվագները:

Անանուն Եդեսացու երկը, միջնադարյան այլ տիեզերական պատմությունների նման, ընդգրկում է պատմական մի անսահման ժամանակաշրջան: Այն սկսվում է Ադամ ու Եվայից և հասնում մինչև մ. թ. 1230-ական թթ.: Ձեռագրի խաթարվածության պատճառով խաղաքական ժամանակագրությունն ընդհատվում է 1234 թ. դեպքերի նկարագրությամբ: Շատ ավելի մեծ կորուստ է կրել եկեղեցական ժամանակագրությունը, որը թերի է և՛ սկզբից, և՛ միջից, և՛ վերջից: Մեզ հասած վիճակում այն սկսվում է VI դ. 40-ական թվականներով և ընդհատվում 1207 թ. իրադարձությունների նկարագրությամբ:

Եկեղեցական ժամանակագրության մեջ դեպքերը շարադրված են հակոբիկյան եկեղեցու առաջնորդների՝ Անտիոքի պատրիարքների հաջորդականության համեմատ: Մանրամասն նկարագրված են յուրաքանչյուր պատրիարքի օրոք տեղի ունեցած բոլոր կարևոր իրադարձությունները: Զգալի տեղ է հատկացված եկեղեցու ներքին կյանքին, հերձվածողական շարժումներին, միջեկեղեցական հարաբերություններին և այլն: Հեղինակը հանգամանալից կերպով անդրադառնում է Հուստինիանոսի եկեղեցական քաղաքականությանը, որի նպատակն էր երկաբնակության և միաբնակության հակասությունների մեղմացումը և Բյուզանդական կայսրության գաղափարական միասնության ապահովումը: Այս առիթով Անանունը մանրամասն տեղեկություններ է հաղորդում նաև Թեոդորա թագուհու գործունեության մասին, մի բան, որ լիովին հասկանալի է, քանի որ վիաստորեն այդ թագուհու օժանդակությամբ էր, որ Հակոբ Բարադեոս եպիսկոպոսը կարողացավ VI դ. կեսերին հիմնավորապես վերափոխել և ամրապնդել ասորական միաբնակ եկեղեցու կառուցվածքը:

Եկեղեցական ժամանակագրությունն աչքի է ընկնում ծայրահեղ հակաքաղկեդոնական բնույթով: Այդ պատճառով հեղինակը երբեմն անդրադառնում է նաև քաղկեդոնական եկեղեցու ներքին կյանքի իրադարձություններին: Հահախակի են նաև հայոց եկեղեցուն վերաբերող տեղեկությունները, որոնք, սկսած XII դ. երկրորդ կեսից, ստանում են կանոնավոր բնույթ, այսինքն՝ Անանունն արձագանքում է այդ շրջանի բոլոր կարևոր իրադարձություններին, մասնավորապես հայ կաթողիկոսների հաջորդականությանը: Անանուն Եդեսացու տեղեկությունները, այսպիսով, զգալի արժեք են ներկայացնում հայոց եկեղեցու և հայ-ասորական եկեղեցական հարաբերությունների պատմության ուսումնասիրման համար:

Ինչպես ասվեց, քաղաքական ժամանակագրությունը մեզ է հասել ավելի անաղարտ և ամբողջական վիճակում և այդ պատճառով արժանի է ավելի մանրամասն քննության: Այն պայմանականորեն կարելի է բաժանել հինգ մասի. ա) մարդկության նախապատմությունից մինչև Ալեքսանդր Մակեդոնացի, բ) Ալեքսանդրից մինչև Քրիստոս, գ) Քրիստոսից մինչև արաբական նվաճումները, դ) արաբական նվաճումներից մինչև սելջուկյան արշավանքները, ե) սելջուկներից մինչև մոնղոլները:

Առաջին մասը[14], չնայած իր զգալի ծավալին, որևէ հետաքրքրություն չի ներկայացնում, քանի որ սոսկական վերարտադրությունն է Աստվածաշնչական հայտնի դրվագների: Բաբելոնին, Ասորեստանին և հին Պարսկաստանին վերաբերող պատմական տեղեկությունները նույնպես հիմնականում քաղված են Աստվածաշնչից:

Երկրորդ մասն[15] ընդգրկում է Ալեքսանդր Մակեդոնացու նվաճումների, սելևկյան տիրապետության և Հռոմեական կայսրության սկզբնավորման ժամանակաշրջանը: Պատմությունը շարադրված է շատ թռուցիկ կերպով և նույնպես ամբողջովին զուրկ է որևէ պատմական արժեքից, եթե չհաշվենք Եդեսիա քաղաքին վերաբերող առանձին հետաքրքիր տեղեկությունները: Տպավորությունը գուցե մի փոքր այլ լիներ, եթե այս մասից չպակասեին մի շարք թերթեր:

Ավելի հանգամանորեն են շարադրված մյուս երեք մասերը: Քրիստոսից մինչև արաբական նվաճումներն ընդգրկող ժամանակաշրջանի իրադարձությունները[16] Անանուն Եդեսացին նկարագրում է հռոմեական և բյուզանդական կայսրերի ժամանակագրության հիման վրա՝ ներհյուսելով նաև սասանյան արքաների հաջորդականությանը վերաբերող տվյալները: Մեծ տեղ է հատկացված Եդեսիայի Աբգար Ուքամա թագավորի և Քրիստոսի անվավեր թղթակցության պատմությանը, Կոստանդին I կայսեր (324—337 թթ.) եկեղեցական քաղաքականությանը, Հուլիանոս կայսեր (361—363 թթ.) հակաքրիստոնեական միջոցառումներին, պարսկա-բյուզանդական պատերազմներին և այլն: Ինչպես եկեղեցական ժամանակագրության մեջ, այնպես նաև այստեղ հանգամանորեն ներկայացված են Հուստինիանոս կայսեր (527—565 թթ.) և Թեոդորա թագուհու գործունեության հետ կապված իրադարձությունները: Ժամանակագրության մեջ լայն արձագանք են գտել նաև Մավրիկիոս (582—602 թթ.) ու Հերակլիոս (610—641 թթ.) կայսրերի և պարսից արքա Խոսրով Փարվեզի (590—628 թթ.) հարաբերությունները:

[14] Chabot — I, p. 26—104.

[15] Նույն տեղում, 105—114:

[16] Նույն տեղում, 115—238:

Չորրորդ մասում[17] «Ժամանակագրության» ընթացքը փոփոխություն չի կրում. իրադարձությունները նորից շարադրվում են բյուզանդական կայսրերի հաջորդականության համեմատ, այժմ արդեն ներհյուսված արաբական խալիֆների գահակալմանը վերաբերող տվյալներով: Հեղինակը հատկապես կանգ է առնում արաբական տիրապետության սկզբնավորման վրա, մանրամասն նկարագրում պարսից տերության ստիճանական անկումը և Հերակլիոս կայսեր մղած հուսահատ պատերազմներն արաբների դեմ, որոնց ընթացքում աչքի են ընկնում մի քանի հայազգի զորավարներ: Չգալի տեղ է հատկացված նաև խալիֆաքի ներքին կյանքին, ժողովրդական ապստամբություններին և աղանդավորական շարժումներին:

«Ժամանակագրության» հինգերորդ, ամենածավալուն մասը[18] նվիրված է սելջուկյան նվաճումների և Մերձավոր արևելքում թուրքական ամիրայությունների հիմնադրման պատմությանը: Հավասարապես վեր է հանված նաև խաչակրաց արշավանքների և Ասորիքի խաչակրաց պետությունների կազմավորման պատմությունը: Դա մի ժամանակաշրջան էր, երբ Մերձավոր արևելքի ազգային, քաղաքական և հասարակական իրադրությունը նորից, արդեն քանիերորդ անգամ, ենթարկվեց արմատական փոփոխությունների:

XI դարի կեսերին արևելքից դուրս հորդեցին սելջուկ-թուրքերի կիսավայրենի քոչվորական ցեղերը և կարճ ժամանակի ընթացքում ծնկի բերին Արաբական խալիֆաքն ու Բյուզանդական կայսրությունը: 1055 թ. սելջուկյան զորագլուխ Տողրուլ-բեգը, խալիֆից ստանալով սուլթանի կոչում, վավերացրեց իր փաստական իշխանությունը և հիմնադիր հանդիսացավ թուրքական աշխարհակալ պետության: Խալիֆաքի հետ իրենց հաշիվները մաքրելուց հետո, 1071 թ., թուրքերը Մանազկերտի ճակատամարտում ջախջախիչ պարտության մատնեցին Բյուզանդական կայսրությանը, և վերջինս փաստորեն դուրս մղվեց Մերձավոր արևելքի պատմության թատերաբեմից:

Սելջուկյան կայսրությունն իր հզորության գագաթնակետին հասավ Ալփ-Արսլան (1063—1072 թթ.) և Մելիքշահ (1072—1092 թթ.) սուլթանների օրոք՝ տարածվելով Չինաստանի սահմաններից մինչև Միջերկրական ծով և Անդրկովկասից մինչև Հնդկական օվկիանոս: Մելիքշահի և հատկապես նրա վեզիր Նիզամ ալ-Մուլքի եռանդուն միջոցառումների շնորհիվ սելջուկյան պետությունը, ստիճանաբար վերականգնելով մերձավորարևելյան քաղաքակրթության նախկին ավանդ-

[17] *Chabot*—I, p. 239—*Chabot*—II, p. 45.
[18] *Chabot*—II, p. 45—241.

ները, սկսեց ամրապնդվել ու կայունանալ նաև ներճնայես՝ հասարակական-քաղաքական հարաբերությունների բնագավառում:

XI դարի վերջում Մերձավոր արևելքում հայանվեց նաև մի նոր քաղաքական ուժ: Ընչազուրկ գյուղացիության զայրույթը և ասպետների ռազմատենչ եռանդը դսպելու նպատակով, Հռոմի պապն ու եվրոպական խոշոր ֆեոդալները առաջ քաշեցին խաչակրության գաղափարը: Առաջին խաչակրաց արշավանքը կազմակերպվեց 1096—1099 թթ., որի անմիջական արդյունքը եղավ Երուսաղեմի խաչակրաց թագավորության (1099 թ.) և նրա ենթակա իշխանությունների՝ Եդեսիայի (1098 թ.), Անտիոքի (1098 թ.) ու Տրիպոլիի (1102 թ.) կոմսությունների հիմնադրումը:

Գրավելով Միջերկրական ծովի և Որոնտես գետի միջև ընկած նեղ շերտը, ֆրանկները թուրքերին զրկեցին ծովային հաղորդակցությունից և մեկուսացրին Եգիպտոսի Ֆաթիմյաններին: Դեպի արևելք ծավալվելու և Եգիպտոսի ներքին գործերին միջամտելու բոլոր հետագա փորձերը, սակայն, ապարդյուն անցան: Ասորիքի նշանավոր քաղաքները՝ Հալեպը, Համան, Հոմսը և Դամասկոսը, չնայած բազմիցս ենթարկվեցին խաչակիրների հնշմանը, բայց միշտ մնացին մահմեդականների ձեռքում: Այսպիսով, Եդեսիայից արևելք ֆրանկները ոչ մի հաջողություն չունեցան: Այնուամենայնիվ խաչակրաց արշավանքները, վրաց Բագրատունիների պատերազմական գործողությունների կողքին, որպես արտաքին հանգամանք, որոշակի դեր խաղացին Սելջուկյան կայսրության թուլացման գործում, թեև որոշիչը ներքին պատճառներն էին:

Մելիքշահից հետո սելջուկյան աշխարհակալ պետությունը ներքին երկպառակությունների պատճառով սկսեց քայքայվել: Նրա սահմաններում առաջացան բազմաթիվ կիսանկախ ամիրայություններ, թեև անվանապես պահպանվում էր սելջուկյան սուլթանների իշխանությունը: Անատոլիայում ստեղծվեց Ռումի սուլթանությունը, որը գոյատևեց 1077—1307 թթ.: Սեբաստիայում և Մալաթիայում իշխում էին Դանիշմենդյան ամիրաները (1071—1178 թթ.): Հյուսիսային Միջագետքի քաղաքներին՝ Հիսն-Քեֆային, Ամիդին, Մարդինին ու Նփրկերտին տիրում էին Արտուքյանները (1102—1408 թթ.): Մեծ Հայքի կենտրոնական նահանգները, Խլաթ մայրաքաղաքով, գտնվում էին Շահարմենների ձեռքում (1110—1207 թթ.): XII դարի 20—30-ական թթ. Հյուսիսային Միջագետքում և Ասորիքում ստեղծվեց Զանգիդյան (1127—1222 թ.), իսկ հյուսիսարևմտյան Իրանում՝ Ելդեգիզյան աթաբեկությունը (1137—1225 թթ.): Սելջուկյան աշխարհակալության արևելյան նահանգները՝ Իրանը և Միջին Ասիան, նույնպես մասնատված էին զանազան ամիրայությունների ու աթաբեկությունների:

Թուրքական այս պետությունները մշտական պայքարի ու պատերազմի մեջ էին իրար հետ։ Յուրաքանչյուր ամիրա ձգտում էր հաստատել իր գերիշխանությունը, սակայն նրանցից ոչ մեկին չհաջողվեց վերականգնել Սելջուկյան կայսրության նախկին միասնությունը։ Այդ ուղղությամբ որոշ հաջողությունների հասան Ելդեգիզը (1137—1176 թթ.), Զանգին (1127—1146 թթ.) և հետագայում՝ Սալահեդդինը (1169—1193 թթ.)։ Ելդեգիզի դերը պատմության մեջ որոշվում է այն բանով, որ նա, միավորելով հյուսիսարևմտյան Իրանի, Ատրպատականի և Աղվանքի մահմեդականներին, կարողացավ կասեցնել վրաց Բագրատունիների հարահուն առաջխաղացումը[19]։

Ինչ վերաբերում է Իմադեդդին Զանգիին, ապա նա, 1127 թ. նշանակվելով Մոսուլի կառավարիչ և հաջորդ տարի դրավելով Հալեպը, փաստորեն հիմք դրեց Ասորիքի միասնական մահմեդական պետությանը, որը մահացու սպառնալիք դարձավ խաչակրաց իշխանությունների գոյության համար։ 1144 թ. Զանգին կործանիչ հարված հասցրեց ֆրանկներին՝ նրանցից խլելով Եդեսիա քաղաքը և, այդպիսով, վերացնելով Եդեսիայի կոմսությունը։ Երկու տարի անց, երբ Զանգին սպանվեց դավադիրների ձեռքով, ֆրանկները փորձեցին ետ խլել քաղաքը, սակայն դա նրանց չհաջողվեց։ Ապարդյուն անցավ նաև Եդեսիայի վրեժը լուծելու նպատակով 1147—1149 թթ. կազմակերպված երկրորդ խաչակրաց արշավանքը։

Զանգիի որդու՝ Նուրեդդինի օրոք թուրքերի և ֆրանկների միջև միաժամանակ հարաբերական խաղաղություն հաստատվեց։ Սակայն այդ վիճակը շուտով փոխվեց Եգիպտոսի Այուբյան սուլթանության հիմնադիր Սալահեդդինի ջանքերով։ Վերացնելով Եգիպտոսի Ֆաթիմյան խալիֆների իշխանությունը, Սալահեդդինը կարճ ժամանակի ընթացքում նվաճեց Ասորիքի բոլոր քաղաքները, իսկ 1187 թ. գրավեց նաև Երուսաղեմը։

Դրանից հետո այլևս ֆրանկները Արևելքում որևէ նշանակալից դեր չխաղացին։ Երրորդ խաչակրաց արշավանքը (1189—1192 թթ.) մարեց՝ հասնելով Ասորիքի սահմաններին։ Չորրորդը (1202—1204 թթ.) կանգ առավ Կոստանդնուպոլսում և ավարտվեց Բյուզանդական կայսրության պարտությամբ։ 1217—1221 թթ. տեղի ունեցավ հինգերորդ, իսկ 1228—1229 թթ.՝ վեցերորդ խաչակրաց արշավանքը։ Ճիշտ է, 1229 թ. ֆրանկներին հաջողվեց նորից տիրել Երուսաղեմին, սակայն 1244 թ. նրանք վերջնականապես կորցրին այն։

Սալահեդդինի հաջորդները, հատկապես Մելիք-ալ-Ադիլը (1200—

---

[19] Հմմտ. *К. Э. Босворт*, Мусульманские династии, М., 1971, стр. 172.

1218 թթ.) և Մելիք ալ-Քամիլը (1218—1238 թթ.) ոչ միայն կարողացան պահպանել Ասորիքի միասնությունը, այլև Այուբյան հարստության գերիշխանությունը տարածեցին Նփրկերտի, Ամիդի, Հիսն-Քեֆայի, Սինջարի ու Խլաթի վրա: 1230-ական թթ., սակայն, պատմության թատերաբեմ ելան նոր ուժեր՝ թաթար-մոնղոլական ժողովուրդները, որոնք մի անգամ ևս հիմնովին փոխեցին Մերձավոր արևելքի իրավիճակը:

Շուրջ երկուհարյուրամյա պատմության այսպիսի կարևոր մի ժամանակաշրջան է ընդգրկում, ահա, Անանուն Եդեսացու «Ժամանակագրության» վերջին մասը, որի հայերեն թարգմանությունը սույն հրատարակությամբ ներկայացվում է հայ ընթերցողին: Այստեղ համարյա առանց բացառության արտացոլված են վերը թվարկված բոլոր նշանակալից իրադարձությունները: Այդ հիմնական իրադարձությունների պատմագիտական իմաստավորման խնդրում հնարավոր է, որ «Ժամանակագրությունը» որևէ նորություն չբերի, սակայն անգնահատելի է նրա նշանակությունը բազմաթիվ մանրամասների, դեպքերի, ժամանակագրական տվյալների ու պատմական անձանց ճշգրտման գործում:

* * *

Ասորական հետագա աղբյուրները որևէ տեղեկություն չեն հաղորդում ո՛չ Անանուն հեղինակի, ո՛չ էլ նրա երկասիրությունների մասին: Միայն խնդրո առարկա «Ժամանակագրությունն» է, որ պարունակում է հեղինակի կենսագրությանը վերաբերող մի քանի կցկտուր տվյալներ: 1187 թ. Անանունը ներկա է լինում Սալահեդդինի կողմից Երուսաղեմի առման ողբերգական դեպքին[20]: 1189 թ. հակոբիկյան եկեղեցու արևելյան թեմերի առաջնորդի՝ Մաֆրիանի հետ նա այցելում է Թագրիտ[21]: Այսպիսով պարզվում է, որ մոտավորապես վերջին հիսուն տարիների դեպքերը շարադրելիս Անանունը հանդես է գալիս որպես ականատես և ականջալուր ժամանակագիր:

Որոշ տեղեկություններ հնարավորություն են տալիս ճշտելու «Ժամանակագրության» ստեղծման մոտավոր ժամանակը: Քաղաքական ժամանակագրության 500-րդ գլխում հեղինակը նշում է. «Մենք նկարագրեցինք մինչ այժմ, այսինքն՝ մինչև 1514 (1203) թվականը կատարված դեպքերը»[22]: Նույն հիշատակագրությունը կրկնված է նաև եկեղեցական ժամանակագրության մեջ[23], միայն ոչ թե 1203, այլ 1204 թվականի համար: Այս տեղեկությունները ցույց են տալիս, որ «Անանուն

[20] Տե՛ս նույն թարգմանությունը, գլ. 484:
[21] Տե՛ս *Chabot*—II, p. **318.** Նաև՝ *Abouna-Fiey*, p. 238.
[22] Տե՛ս նույն թարգմանությունը, գլ. 500:
[23] Տե՛ս *Chabot*—II, p. **340.** Նաև՝ *Abouna-Fiey*, p. 253.

ժամանակագրության» մեծ մասը ավարտվել է 1203—1204 թթ.: Ինչ-ինչ հանգամանքների բերումով գործը հավանաբար ընդհատվել է և շարունակվել երկարատև ընդմիջումից հետո:

«Ժամանակագրության» ստեղծման ժամանակի ստորին սահմանը պարզվում է հեղինակի մի կարևոր ակնարկի շնորհիվ: Հիշատակելով Դամասկոսի Այուբյան ամիրա Մելիք ալ-Աշրաֆին, Անանունն ավելացնում է. «...որն արժանի է բարի հիշատակի»[24]: Նշված խոսքերը տեղին են միայն մեռած մարդու հասցեին, և քանի որ Մելիք ալ-Աշրաֆը մեռել է 1237 թ., ուստի «Ժամանակագրությունն» ավարտվել է դրանից հետո, շուրջ 1240 թ.[25]:

Անանունի կենսագրությանը վերաբերող մյուս կարևոր հարցը, որ արժանացել է հետազոտողների ուշադրությանը, նրա հայրենի բնակավայրի պարզաբանումն է: Սովորական հետաքրքրությունից բացի այս հարցն ունի նաև կարևոր աղբյուրագիտական նշանակություն, քանի որ շատ հաճախ իրադարձությունների աշխարհագրական ընդգրկումը կախված է այն բանից, թե որտեղ է գործել պատմական երկասիրության հեղինակը:

Թռուցիկ հայացքով անգամ նկատելի է, որ մեր «Ժամանակագրության» համարյա բոլոր դրվագներում ուշադրության կենտրոնում են գտնվում Եդեսիայի հետ կապված իրադարձությունները: Դրանից հետազոտողների մեծ մասը բնականաբար հանգել է այն եզրակացության, որ Անանուն ժամանակագիրը եդեսացի է: Ժ.—Բ. Շաբոն փորձում է հերքել այս տեսակետը, ուշադրություն հրավիրելով այն փաստի վրա, որ Անանունը, եդեսացի չլինելով հանդերձ, կարող էր հարուստ տեղեկություններ հաղորդել Եդեսիայի մասին, քանի որ, ինչպես հայտնի է, նա օգտվել է Բարսեղ բար-Շումմանայի «Եդեսիայի պատմությունից»[26]: Սակայն, ինչպես իրավացիորեն նշում է Ժ.—Մ. Ֆիեն, Բարսեղի մահվան թվականին (1169 թ.) հաջորդող շարադրանքում ևս Եդեսիան նույնքան բացառիկ տեղ է զբաղեցնում[27]:

Իր հիմնական մասով Անանուն Եդեսացու «Ժամանակագրությունը» բառացի քաղագրություն է անցյալի ասորական աղբյուրներից, հատկապես Հակոբ Եդեսացու (մահ. 708 թ.) «Եկեղեցական պատմությունից», Դիոնիսիոս Թելլ-Մահրեցու (մահ. 845 թ.) «Ժամանակագրությունից» և Բարսեղ բար-Շումմանայի վերոհիշյալ «Եդեսիայի պատմությու-

[24] *Տե՛ս նույն թարգմանությունը, գլ. 518*:

[25] *Հմմտ. S. Runciman*, A history of the Crusades, v. II, Cambridge, 1952, p. 484; *Abouna-Fiey*, p. VII.

[26] *Տե՛ս Chabot*—II, p. I.

[27] *Տե՛ս Abouna-Fiey*, p. VIII.

նից»: Քաղաքական բնույթը, սակայն, ոչ միայն չի նսեմացնում, այլև, ընդհակառակն, բարձրացնում է Անանունի երկի արժեքը, որովհետև նշված աղբյուրներից վերջին երկուսը մեզ չեն հասել, իսկ առաջինից միայն առանձին հատվածներ են պահպանվել:

Հետազոտողների մեծ մասի կարծիքով, Անանունը ինչ-ինչ հանգամանքների բերումով չի օգտվել ժամանակի մեծագույն ասորական պատմագրի՝ Միքայել Մեծի (մահ. 1199 թ.) ստվարածավալ «Ժամանակագրությունից»: Հակառակ տեսակետի վրա է կանգնած Ն. Ելիսեևը, ըստ որի XII դ. դեպքերի նկարագրության համար Անանուն Եդեսացին օգտագործել է Միքայել Ասորու երկասիրությունը[28]: Սակայն Ե. Ռահմանին, Ֆ. Նոն և Ժ.—Մ. Ֆիեն Միքայելի և Անանունի «Ժամանակագրությունների» նմանությունները բացատրում են ընդհանուր աղբյուրների առկայությամբ[29]:

Ժ.—Մ. Ֆիեի կարծիքով, Անանունն օգտագործել է նաև մեկ-երկու արաբական աղբյուրներ, որովհետև դեպքերը երբեմն թվագրում է Հիջրայի թվականով: Ժ.—Մ. Ֆիեն քննում է նաև հայերեն որևէ սկզբնաղբյուրի օգտագործման հնարավորության հարցը. «Կարելի՞ է արդյոք ենթադրել նաև մի հայերեն աղբյուր,—գրում է նա:— Դա շատ բնական կլիներ, քանի որ Եդեսիայի շրջանում հայերը խառնված էին ասորիների հետ: Երկու ժամանակագրություններն էլ (եկեղեցական և քաղաքական՝ Լ. Տ.-Պ.) բազմաթիվ տեղեկություններ են պարունակում հայ կաթողիկոսների, ինչպես նաև հայ իշխանների կռիվների մասին: Մի տեղ անգամ Յուղուբ Արսլանի անունը գրված է Ազոբ Արսլան ձևով[30], որը մոտ է հայկականին: Կարելի էր ուրեմն մտածել, որ Մատթեոս Ուռհայեցու 962—1136 թթ. վերաբերող ժամանակագրությունն ու Գրիգոր Երեցի մինչև 1162 թ. ընդգրկող շարունակությունն է այդ աղբյուրը: Սակայն երկու բնագրերի զուգահեռ ընթերցումը ցույց է տալիս, որ մանրամասների մեջ նրանք այնքան շատ են տարբերվում, որ անհնար է մտածել Մատթեոս Ուռհայեցուց Անանունի կատարած ուղղակի փոխառությունների մասին»[31]: Ինչպես տեսնում ենք, մերժելով անգամ Մատթեոս Ուռհայեցու և Անանունի կապը, Ժ.—Մ. Ֆիեն չի բացառում հայերեն աղբյուրի օգտագործման հնարավորությունը:

Մեր կարծիքով, Անանուն Եդեսացու «Ժամանակագրությունը», Ժ.—

---

[28] *Nikita Elisséeff*, Nūr Ad-Dīn. Un grand prince musulman de Syrie au temps des Croisades (1118—1174), t. 1. Damas, 1967, p. 32.

[29] *Տե՛ս Abouna-Fiey*, p. IX—X.

[30] *Տե՛ս Chabot*—II, p. 159; *Abouna-Fiey*, p. 120, *սույն թարգմանության գլ. 442։*

[31] *Abouna-Fiey*, p. XI.

Մ. Զիեի նշածից բացի, պարունակում է մի ավելի ցայտուն փաստ, որը վկայում է հայերեն սկզբնաղբյուրի օգտագործման մասին: Քաղաքական ժամանակագրության 283-րդ գլխում Անանունը գրում է. «Շուտով, սակայն, նրա (Ղազիի՝ Լ. Տ.-Պ.) ու իբերների, այսինքն՝ *վրացիների*, թագավորի միջև, որը Դավիթ էր կոչվում, տարաձայնություն ծագեց»[32]: Ընդգծված բառի փոխարեն ասորական բնագրում դրված է brsty' բառը, որը ֆրանսերեն բնագրի թարգմանիչը տառադարձել է Brestaye անիմաստ ձևով[33]: Brsty' բառը բացատրելի է միայն հայերենի միջոցով. դա հայերեն *վրացի* բառի ասորական վերատառադրությունն է avē հոգնակի ցուցիչով, և պետք է տառադարձվի Vraçaye (=վրացիներ): Ինչպես հայտնի է, հայերեն *վ*-ն միջնադարյան ասորական աղբյուրներում որպես կանոն վերատառադրվել է h-ով[34], իսկ st (<ts*)=*ց*(c):

* * *

Մասնագետների կողմից արծարծվել է նաև Անանուն Եդեսացու քաղաքական դիրքորոշման հարցը, որը տեղիք է տվել զանազան իրարամերժ կարծիքների: Այսպես, օրինակ, ըստ Ն. Ելիսեևի՝ հեղինակը «շատ աշխույժ շարադրեղանակով մեզ մանրամասներ է հաղորդում ֆրանկների ու թուրքերի մասին՝ *ոչ այնքան բարյացակամություն ցուցաբերելով բյուզանդացիների նկատմամբ*»[35]: Դժվար է չհամաձայնել այս տեսակետի հետ, որովհետև Անանունն իսկապես առիթը բաց չի թողնում բյուզանդացիներին դատապարտելու համար: Բնորոշ է հատկապես այն փաստը, որ նա առանձին դիտավորությամբ է ընդգծում խաչակիրների հանդեպ հույների նյութած դավերը, որոնք իրագործվում էին թուրքերի համագործակցությամբ[36]: Ասորիների հակաբյուզանդական զգացումները լիովին հասկանալի են, որովհետև իր ողջ գոյության ընթացքում հակոբիկյան եկեղեցին ենթարկվել է քաղկեդոնականության մշտական ոտնձգություններին ու հալածանքներին[37]:

Ավելի դժվար է բացատրել Անանուն Եդեսացու վերաբերմունքը հայերի և ֆրանկների նկատմամբ: Այդ առթիվ Ռ. Գրուսեն գրում է. «Այս աղբյուրը, ավելի քան Միքայել Ասորին, դրսևորում է հակոբիկյան միջավայրի բնական հայատյացությունն ու ֆրանկատյացությունը՝ դրա կողքին ազգակցական ու մշակութային բացահայտ համակրանք ցուցաբերելով թուրք-արաբական տիրապետության նկատմամբ: Միքայել

32 *Հմմտ. սույն թարգմանության գլ. 283:*

33 *Abouna-Fiey*, p. 62.

34 *Հմմտ. Լ. Տեր-Պետրոսյան, Միջին հայերենի հնչյունաբանությունը ըստ ասորական աղբյուրների, «Պատմա-բանասիրական հանդես», 1974, №3, էջ 139—154:*

35 *N. Elisséeff*, Nūr Ad-Dīn..., t. 1, p. 32.

36 *Հմմտ. սույն թարգմանության գլ. 243, 407, 433 և այլն:*

37 *Հմմտ. P. Kawerau*, Die Jakobitische Kirche im Zeitalter der syrische Renaissance, Berlin, 1960, S. 82.



2-885

պատրիարքը, որը նույնպես չափազանց հայատյաց է և հազիվ թե ավելի քիչ է հակակրում ֆրանկներին..., քաղաքական նկատառումներով, ինչպես նաև ճշմարիտ քրիստոնեական զգացումներով, ձգտում է համերաշխություն պահպանել ֆրանկ իշխանների հետ: Անանուն ասորին, ընդհակառակն, չունենալով հռչակավոր առաջնորդի խոհեմությունն ու հարուստ անհատականությունը, ամենևին զլանում է քողարկել իր իսլամասեր զգացումները: Դա մի *քրիստոնյա արաբ է*՝ եվրոպացիների ներկայության դեմ մահմեդական արաբների ու թուրքերի հետ ունեցած համերաշխության բնազդով»[38]:

Ռ. Գրուսեի տեսակետին փորձում է առարկել Ժ.—Մ. Ֆիեն, ուշադրություն հրավիրելով այն փաստի վրա, որ «Ժամանակագրության» մեջ երկու անգամ ֆրանկները կոչված են «օրհնյալ»[39]: Այսպես. «Սակայն օրհնյալ ֆրանկները, որոնք բարի չէին տրամադրված հունաց կայսեր նկատմամբ և նրա հետ համագործակցում էին կեղծ սիրալիրությամբ, խորհուրդ չտվին տվյալ պահին պաշարել Հալեպը»[40], կամ՝ «...օրհնյալ ֆրանկները անսպասելիորեն հայտնվեցին և մինչև երեկո թաքնվեցին մի հովտում»[41]: Մեզ թվում է, սակայն, որ այս հատվածներում «օրհնյալ» (brīkā) բառը ոչ այնքան դրվատական, որքան հեգնական բնույթ ունի, քանի որ նույն որակումը մի անգամ էլ հատկացված է հույներին, բայց այնպիսի նախադասության մեջ, որտեղ դժվար է բարյացակամություն ենթադրել: Նկարագրելով երկրորդ խաչակրության ձախողումը, Անանունը գրում է. «Այսպիսի դառը վախճան ունեցավ այդ թագավորների արշավանքը օրհնյալ հույների նենգության պատճառով»[42]:

Այնուամենայնիվ, չնայած Ժ.—Մ. Ֆիեի ոչ այնքան հիմնավորված առարկությանը, չի կարելի ընդունելի համարել նաև Ռ. Գրուսեի ծայրահեղորեն չափազանցված տեսակետը: Ճիշտ է, Անանունը որպես կանոն դատապարտում է ֆրանկների վատ արարքները, երբեմն ծաղրի է ենթարկում նրանց արկածախնդրական ձեռնարկումները և այլն, սակայն նույն կերպ է վարվում նաև թուրքերի, եգիպտացիների ու մյուսների նկատմամբ: Խիստ բացասական վերաբերմունք ցուցաբերելով Եդեսիայի կոմս կրտսեր Ժոսլինի հանդեպ, միաժամանակ նա մեծ դրվատանքով է արտահայտվում ավագ Ժոսլինի և Մարաշի կոմս Բալդուինի մասին: Այնպես որ ճիշտ չի լինի Անանունի մոտ անհաշտ հակակրանք նկատել ֆրանկների նկատմամբ:

Ինչ վերաբերում է թուրք սուլթանների ու ամիրաների հասցեին

[38] *R. Grousset*, Histoire..., t. II, p. 866—867.
[39] *Abouna-Fiey*, p. XI—XII.
[40] *Տե՛ս սույն թարգմանության գլ. 403։*
[41] *Նույն տեղում, գլ. 427։*
[42] *Նույն տեղում, գլ. 407։*

շրայլած գովեստներին, ապա դա էլ ունի իր պարզ բացատրությունը: Օտարների բռնի տիրապետության պայմաններում հեղինակը քաղաքական նկատառումներով չէր կարող բացահայտել իր իսկական զգացումները իշխանությունների հանդեպ: Նույն երևույթը բնորոշ է նաև միջնադարյան հայկական մատենագրությանը, որը բազմաթիվ դրվատական վկայություններ է պարունակում Մելիքշահի, Շահ-Աբասի և այլոց մասին: Հիմնվել նման փաստերի վրա և ենթադրել, թե միջնադարյան քրիստոնյա հեղինակները նախընտրել են մահմեդականների տիրապետությունը, ճիշտ չի լինի:

Ի միջի այլոց, Անանուն Եդեսացին որքան էլ ձգտում է քողարկել իր զգացումները մահմեդականների հանդեպ, այնուամենայնիվ, տեղ-տեղ բացահայտում է իր իսկական վերաբերմունքը: Այսպես, օրինակ, նկարագրելով Անիի գրավումը վրացիների կողմից, նա նշում է, որ Գեորգի Գ թագավորը քաղաքի «բնակիչներին փրկեց մահմեդականների դաժան լծից»[43]:

* * *

Անդրադառնալով հայերի նկատմամբ Անանունի վերաբերմունքի հարցին, պետք է նշել, որ Ռ. Գրուսեն այստեղ էլ ընկել է ծայրահեղության մեջ: Անժխտելի է, իհարկե, որ հեղինակը բացասաբար է տրամադրված հայ եկեղեցու առանձին ներկայացուցիչների, մասնավորապես Գրիգոր Տղա կաթողիկոսի (1173—1193 թթ.) նկատմամբ: Բայց դա բացատրվում է մի որոշակի իրողությամբ. Գրիգոր Տղան, միջամտելով հակոբիկյան եկեղեցու ներքին գործերին, բռնել էր հակաթոռ պատրիարք Թեոդորոս բար-Վահբունի կողմը[44]: Իսկ ընդհանուր առմամբ «ժամանակագրության» մեջ արտացոլված են հայերի և՛ լավ, և՛ վատ արարքները, որ հիմք է տալիս չկասկածել հեղինակի անաչառությանը:

Այսպես, Անանունը հանգամանալից կերպով շարադրում է, թե ինչպես 1112 թ. եդեսացի մի խումբ հայեր քաղաքը թուրքերին հանձնելու նպատակով դավաճանական գործարք են կնքում Մոսուլի Մավդուդ ամիրայի հետ[45]: Նույն դեպքը նկարագրված է նաև Միքայել Ասորու[46] և Մատթեոս Ուռհայեցու[47] մոտ, միայն այն տարբերությամբ, որ վերջինս լռության է մատնում դավաճանների ազգային պատկանելությունը: Դա-

[43] *Նույն տեղում, գլ. 456։*

[44] *Նույն տեղում, «Հավելված Ա»։*

[45] *Նույն տեղում, գլ. 270։*

[46] Chronique de Michel le Syrien, editee par *J.—B. Chabot*, texte, t. IV, Paris, 1910. p. 594; trad. fr., t. III, 1905, p. 196.

[47] Մատթեոս Ուռհայեցի, *Ժամանակագրություն, Վաղարշապատ, 1898, էջ 322։*

տելով այս փաստից, կարելի էր մտածել, ուրեմն, որ Անանուն Եդեսացին ուզում է վարկաբեկել հայերին։ Սակայն «Ժամանակագրության» 290-րդ գլխում նա ոգևորված նկարագրում է հայերի գործած մի հերոսական սխրանք. երկու տասնյակ հայ զինվորներ, խիզախորեն թափանցելով Արտուքյան ամիրաների մայրաքաղաք Հիսն-Զիադի (Խարբերդ) միջնաբերդը, փորձում են ազատել գերված ֆրանկ իշխաններին։ Ի դեպ, Մատթեոս Ուռհայեցին, մեծապես գովելով զինվորների քաջությունը, որոնք «խորհեցան խորհուրդս քաջաց և կատարեցին զգործ անմահից», այս անգամ էլ չի նշում, որ նրանք հայ էին[48]։

Հայերին պատիվ չբերող մի դրվագ էլ նկարագրված է «Ժամանակագրության» 440-րդ գլխում, որը նվիրված է մի անպիտան քահանայի զազրելի արարքին։ Սակայն ընդամենը մի քանի էջ հետո[49] հեղինակը սրտառուչ կերպով պատմում է մի առաքինի հայ կնոջ մասին, որը անպատվությունից խուսափելու համար երեխաների հետ նետվում է ջուրը։ Դա մի գողտրիկ վկայաբանություն է, որը կարող է արժանի տեղ զբաղեցնել «Հայոց նոր վկաներին» նվիրված գրական հուշարձանների շարքում։

Ինչպես տեսնում ենք, Անանուն Եդեսացին անաչառ վերաբերմունք է ցուցաբերում հայերի նկատմամբ, և առանձին, բացասական արտահայտությունները չեն կարող խախտել այս տպավորությունը։ Որպես ազնիվ ժամանակագիր, նա չէր կարող կոծկել ուրիշների բերությունները, երբ չի խնայում անգամ իր հայրենակիցներին։ Բազմաթիվ դարը խոսքեր, հայհոյանքներ և նզովքներ են ուղղված, օրինակ, ասորի հոգեվորականներ Արդուն ավագերեցի, Բարսումա Իսմայելի անունով քահանայի և Թեոդորոս բար-Վահբուն եպիսկոպոսի հասցեին[50]։

Հայերի մասին տեղեկությունները, որոնք գրված են «Անանուն ժամանակագրության» տարբեր գլուխներում, ընդգրկում են հնագույն դարերից մինչև հեղինակի ապրած ժամանակները։ Տեղեկությունների մի մասը հայտնի է նաև այլ աղբյուրներից, և այստեղ «Անանուն ժամանակագրության» դերը սահմանափակվում է միայն նրանով, որ հաստատում, ճշգրտում ու մանրամասնում է այդ աղբյուրների տվյալները։ Սակայն կան նաև մի շարք տեղեկություններ, որոնք հայտնի են դառնում բացառապես շնորհիվ Անանուն Եդեսացու աշխատության, որ մեծապես բարձրացնում է նրա գիտական նշանակությունը։

Ուշագրավ է, օրինակ, հեղինակի վկայությունը Եդեսիայի քաղա-

---

48 *Նույն տեղում, էջ 353—355։*

49 *Սույն թարգմանության գլ. 442։*

50 *Հմմտ. Նույն տեղում, գլ. 414, 421, «Հավելված Ա»։*

վորների հայկական ծագման մասին[51]: Դա ցույց է տալիս, որ Աբգար թագավորի հայ լինելու առասպելը միջնադարում այնքան էր տարածվել, որ ասորիներն անգամ հավատ էին ընծայում դրան: Ի դեպ, այդ առասպելը բոլորովին զուրկ չէ պատմական հիմքից. հայտնի է, որ հայ Պարթևների մի ճյուղը մ. թ. I դ. վերջում և II դ. սկզբում իսկապես կարճ ժամանակով տիրել է Եդեսիայի (Օսրոյենեի) թագավորության գահին[52]:

Մեծ արժեք են ներկայացնում Անանունի տեղեկությունները VII դ. իրադարձությունների՝ արաբական նվաճումների, բյուզանդա-արաբական պատերազմների, հայ-բյուզանդական և հայ-արաբական հարաբերությունների մասին, որոնց մի մասը արդեն մտել է գիտական շրջանառության մեջ[53]: Անանունը զգալի տեղ է հատկացնում բյուզանդա-արաբական պատերազմների ընթացքում աչքի ընկած հայ զորավարներ Մանվելի, Գրիգորի և Դավթի գործունեությանը, որ վկայություն է հայերի զինական նշանակալից ուժի:

Հետաքրքրական են նաև արաբական շրջանի Հայաստանի հայտնի անցուդարձերին վերաբերող տվյալները, որոնք մեկ անգամ ևս հաստատում են պատմական մյուս սկզբնաղբյուրների արժանահավատությունը: Այս առումով արժանի են հիշատակման «ժամանակագրության» տեղեկությունները Փիլիպպիկոս կայսեր (711—713 թթ.) հալածանքների պատճառով արաբների մոտ ապաստան գտած հայերի, Արաբական խալիֆայության դեմ հայ ժողովրդի 703 թ. ապստամբության և հայ նախարարների չարաչար ողջակիզման մասին[54]:

Անանունը շատ ավելի մանրամասն տեղեկություններ է հաղորդում Հարավային Կապադովկիայի և Հյուսիսային Ասորիքի հայկական իշխանությունների մասին: Ինչպես հայտնի է, բյուզանդական կայսրերի նվաճողական քաղաքականության հետևանքով, սկսած XI դ. 20-ական թթ., հայ ժողովրդի մի զգալի մասը գաղթել էր Եփրատից արևմուտք[55]: Սելջուկյան արշավանքները հայերին ստիպում են ավելի ու ավելի հեռանալ հայրենի բնակավայրերից և թափանցել Հյուսիսային Ասորիքի և Կիլիկիայի անմատչելի գավառները: Նրանք աստիճանաբար այնքան

---

[51] Նույն տեղում, «Հավելված Բ»:

[52] Տե՛ս R. Duval, Histoire politique, religieuse et littéraire d'Edesse jusqu'à la première Croisade, Paris, 1892, p. 27, 52—55.

[53] Տե՛ս Н. В. Пигулевская, Византия и Иран..., стр. 283—284, 287—288. А. Тер-Гевондян, Армения и Арабский халифат, Ереван, 1977, стр. 11, 23, 25.

[54] Հմմտ. նույն թարգմանությունը, «Հավելված Բ»:

[55] XI դ. հայկական գաղթերի մասին մանրամասն տե՛ս G. Dédéyan, L'immigration arménienne en Cappadoce au XI^e siècle. „Byzantion", t. XIV Bruxelles, 1975, p. 41—117.

են ստվարանում, որ Մանազկերտի ճակատամարտում բյուզանդացիների կրած ջախջախիչ պարտությունից հետո (1071 թ.) դառնում են այդ երկրների տերերը, կարողանալով լեզու գտնել և համաձայնության գալ սելջուկների հետ:

Մոտ տասնհինգ տարի մեծ հաջողությունների է հասնում հատկապես Փիլարտոս Վարաժնունու հիմնադրած հայկական իշխանությունը, տարածվելով Եդեսիայից մինչև Կիլիկիայի խորքերը[56]: 1086 թ., սակայն, Փիլարտոսի իշխանությունը նվաճվում է սելջուկյան սուլթան Մելիքշահի կողմից: Նրա փլատակների վրա առաջանում են մի շարք ավելի մանր հայկական իշխանություններ, որոնք կարողանում են իրենց գոյությունը պահպանել մինչև հաջորդ դարի առաջին տասնամյակները:

Նշված տարածությունների մեծ մասը խաչակրաց արշավանքների նախօրյակին դեռևս գտնվում էր հայ իշխանների տիրապետության տակ: Այսպես, լեռնային Կիլիկիայում տիրում էր Ռուբենի որդի Կոստանդինը, Քեսունում, Մարաշում, Ռաբանում և Հռոմկլայում՝ Գող Վասիլը, Եդեսիայում՝ Թեոդորոս (Թորոս) կյուրապաղատը, Մելիտենեում՝ նրա աներ Գաբրիելը, Կարկառի գավառում՝ Կոստանդինը, իսկ Նզեպում[57] և Պիրում՝ Գրիգոր Մագիստրոսի թոռներ Լիկոսը և Ապլղարիպը:

Հայկական այս իշխանությունները, մեծ հույսեր կապելով խաչակիրների հետ, սկզբնական շրջանում զգալի աջակցություն ցույց տվեցին նրանց: Սակայն շուտով մեկը մյուսի ետևից նրանք զոհ գնացին վերջիններիս դավերին ու բռնություններին: Նախ և առաջ դավադրաբար վերացվեց Եդեսիայի հայկական իշխանությունը (1098), որին հետևեց մյուս իշխանությունների աստիճանական քայքայումն ու անկումը: Այս փաստը առանձին դառնությամբ են արձանագրում հատկապես միջնադարյան հայ հեղինակները՝ ամենայն խորությամբ գիտակցելով խաչակիրների կործանիչ դերը հայկական իշխանությունների վերացման գործում: Այսպես, բնութագրելով Եդեսիայի կոմս Բաղդուին II-ի (1100—1118 թթ.) գործունեությունը, Մատթեոս Ուռհայեցին գրում է. «...մի առ մի քակեաց զամենայն իշխանսն Հայոց կարգաւ՝ առանց քան

---

[56] *Փիլարտոսի և Հյուսիսային Ասորիքի մյուս հայկական իշխանությունների մասին մանրամասն տե՛ս J. Laurent*, Etudes d'histoire armenienne, Louvain, 1971, p. 61—128 (Des Grecs aux Croises. Étude sur l'histoire d'Édesse entre 1071—1098), p. 148—159 (Byzance et Antioche sous le curopalate Philarete). *Г. Г. Микаелян*, История Киликийского армянского государства, Ереван, 1952, стр. 70—80.

[57] *Բանասիրության մեջ այս բնակավայրը հաճախ շփոթվել է Միջագետքի Մրծբին քաղաքի հետ.* Նզեպի *տեղադրման մասին մանրամասն տե՛ս* Լ. Տեր-Պետրոսյան, *Հայերը միջնադարյան Մծբինում և Մեծ Հայքի հարավային նահանգներում, «Պատմաբանասիրական հանդես», 1979, № 3, էջ 80—92:*

զաւուէն Պարսից, և այսպիսի օրինակաւ հալածականս արար զիշխանս Հայոց՝ զայն, որ մնացեալ էին ի կատաղի ազգէն Թուրքաց»[58]: Ավելի դիպուկ է Սմբատ Սպարապետի վկայությունը. «Եւ այնպէս նեղեցին կոմսերն Ֆռանգաց զիշխանսն Հայոց, մինչև հանին ի գաւառաց և յամրոցաց իւրեանց, և ոչ ոք կարէ պատմել զդառնութիւն, զոր ածին Ֆռանգնին ի վերայ Հայոց»[59]:

Բարենպաստ հանգամանքների բերմամբ այս համատարած կործանումից զերծ մնաց միայն Ռուբինյան իշխանությունը, որը թեև բազմիցս ենթարկվեց ինչպես խաչակիրների, այնպես նաև բյուզանդացիների ու սելջուկների հարձակումներին, բայց կարողացավ շուրջ երեք հարյուր տարի պահպանել իր գոյությունը: Այդ բանին, ի միջի այլոց, անուղղակիորեն նպաստեց վերոհիշյալ հայկական իշխանությունների վերացումը, որովհետև նրանց մարդկային զանգվածների և զինական ուժերի մի մասը տեղափոխվեց Կիլիկիա:

Նշված իրադարձությունները լայն արձագանք են գտել «Անանուն ժամանակագրության» բազմաթիվ գլուխներում[60], հանգամանք, որ ընդգծում է վերջինիս անվիճելի արժեքը հայ ժողովրդի պատմության ուսումնասիրման համար:

Անանուն Եդեսացին մի շարք արժեքավոր տեղեկություններ է հաղորդում նաև Կիլիկյան հայկական պետության մասին[61]: Դրանցից մեծ հետաքրքրություն են ներկայացնում հատկապես Լևոն I իշխանի ժամանակաշրջանի (1129—1137 թթ.) իրադարձություններին վերաբերող տվյալները: Դա մի ժամանակաշրջան էր, երբ Կիլիկիայում խոշոր բախումներ էին տեղի ունենում Դանիշմենդյան ամիրաների, բյուզանդացիների և ֆրանկների միջև, իսկ Լևոնը հաջողությամբ խուսանավում էր դրանց արանքում: «Անանուն ժամանակագրությունը» կարող է զգալի դեր խաղալ նշված իրադարձությունների որոշ մանրամասնությունների պարզաբանման գործում:

Ուշագրավ է, օրինակ, որ ըստ Անանունի՝ Տարսոնն ու Մսիսը Լևոնը գրավել է ոչ թե հույներից, ինչպես ընդունված է պատմագիտության մեջ[62], այլ՝ ֆրանկներից[63]: Իսկ «ժամանակագրության» հաղորդած այն

---

[58] Մատթէոս Ուռհայեցի, էջ 338։

[59] Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք*, *աշխատասիրությամբ Ս. Ագըլյանի, Վենետիկ, 1956, էջ 145։*

[60] *Հմմտ. սույն թարգմանության գլ. 237—239, 241, 245, 246, 249, 252, 255, 260, 275, 277, 287։*

[61] *Հմմտ. նույն տեղում, գլ. 299—300, 309, 400, 441, 443, 459, 510, «Հավելված Ա»։*

[62] *Տե՛ս Г. Микаелян,* История..., стр. 100.

[63] *Տե՛ս սույն թարգմանությունը, գլ. 309։*

փաստը, որ Ղազի Դանիշմենդյանը Բոհեմունդին ջախջախելուց հետո մտադիր է եղել երկրորդ անգամ արշավել Կիլիկիա[64], հաստատում է Միքայել Ասորու տեղեկությունը, որ Լևոնը չի կատարել Ղազիին տված հպատակության խոստումը[65]: Ընդհանուր տպավորությունն այն է, որ Լևոն I-ը ոչ թե պաշտպանողական, այլ հարձակողական կռիվներ է մղել Դանիշմենդյանների, ֆրանկների և հույների դեմ[66]:

«Անանուն ժամանակագրության» որոշ տվյալներ վերաբերում են Կիլիկիո իշխան Թորոս II-ի (1144—1168 թթ.) և ֆրանկների ժամանակավոր դաշնակցությանը, երբ Թորոսը մասնակցում է Ասորիքի Նուրեդդին ամիրայի դեմ կազմակերպված մի քանի արշավանքների[67]: Հետազոտողները հետաքրքիր մանրամասնություններ կարող են գտնել նաև Մլեհ իշխանի (1169—1175 թթ.) դեմ նյութված դավադրության և նրա դժնդակ սպանության մասին[68]: Իսկ Լևոն II-ին (1185—1219 թթ.) նվիրված գլուխներում իրենց արտացոլումն են գտել Անտիոքի իշխանության և Ռումի սուլթանության դեմ Կիլիկյան պետության մղած երկարատև պայքարի առանձին դրվագները[69]:

Ինչ վերաբերում է բուն Հայաստանի անցուդարձերին, ապա այստեղ հեղինակը հասկանալիորեն նույնպիսի իրազեկություն հանդես չի բերում, ինչպես Ասորիքի և Կիլիկիայի դեպքերը նկարագրելիս: Այնուամենայնիվ, նա որոշ չափով արձագանքում է նաև Հայաստանում կատարված կարևոր իրադարձություններին: Դրանցից են, օրինակ, Անիի գրավումը վրաց Գեորգի Գ թագավորի կողմից[70], Դանիշմենդյանների և վրացիների միջև տեղի ունեցած պատերազմները[71], Իվանե Զաքարյանի՝ դեպի Խլաթ ձեռնարկած արշավանքի ձախողումը[72], Շահարմենների ու Այուբյանների պայքարը[73] և այլն: Շատ արժեքավոր են հատկապես Անանուն Եդեսացու տվյալները Սասունի հայկական իշխանության մասին[74], քանի որ, ինչպես հայտնի է, վերջինիս վերաբերյալ քիչ տեղեկություններ են պահպանվել հայկական սկզբնաղբյուրներում:

---

[64] *Նույն տեղում, գլ. 302։*

[65] *Տե՛ս Г. Микаелян,* История..., стр. 100.

[66] *Տե՛ս նույն թարգմանությունը, գլ. 299, 309։*

[67] *Նույն տեղում, գլ. 441, 443։*

[68] *Նույն տեղում, գլ. 459։*

[69] *Նույն տեղում, գլ. 500, 510։*

[70] *Նույն տեղում, գլ. 456։*

[71] *Նույն տեղում, գլ. 283։*

[72] *Նույն տեղում, գլ. 508, 509։*

[73] *Նույն տեղում, գլ. 506, 507, 512։*

[74] *Նույն տեղում, գլ. 455։*

* * *

Մի քանի խոսք հեղինակի հայացքների, նախասիրությունների և ոճի մասին:

Ինչպես կարելի էր նկատել վերը շարադրվածից, Անանուն Եդեսացին որևէ որոշակի կողմնորոշում չի ցուցաբերում: Դա բացատրվում է այն բանով, որ ասորիները վաղուց արդեն քաղաքական նպատակներ չէին հետապնդում՝ հանդես գալով միայն որպես առանձին կրոնական համայնք: Նրանց համար դրական էր այն տիրակալը, որը կարողանում էր ապահովել երկրի խաղաղ կյանքը և չէր դիպչում հակոբիկյան եկեղեցու շահերին, լիներ դա հայ, ֆրանկ, թե թուրք՝ միևնույն է: Մեր հեղինակը ևս Եդեսիայի և ընդհանրապես Ասորիքի պատմական իրադարձությունները գնահատում է հիմնականում այս չափանիշով:

Անանուն Եդեսացին, միջնադարյան մյուս հեղինակների նման, երկրային գործերում մեծ տեղ է հատկացնում նախախնամության խաղացած դերին: «Հաղթանակ ու կարողություն տվողը և թագավորների գործերը տնօրինողն աստված է»,—գրում է նա[75]: Բնական աղետները, օտար նվաճողների բարբարոսությունները նա ներկայացնում է որպես աստվածային պատուհաս, որպես արդար հատուցում ժողովրդի գործած անհամար մեղքերի: Այսպես, օրինակ, մանրամասնորեն նկարագրելով Եդեսիայի բնակչության վատ արարքները՝ հարուստների անգթությունը, հոգևորականների ագահությունը, կանանց անբարոյականությունը և այլն, Անանուն Եդեսացին ավելացնում է. «Այդ պատճառով աստված բարկացավ և իր զայրույթը թափեց նրանց գլխին: Նա լքեց նրանց և մատնեց բռնակալի ձեռքը»[76]: Մի ուրիշ դրվագում դժնդակ երաշտի համար նա գտնում է հետևյալ բացատրությունը. «Ողջ ժողովուրդը համոզվեց, որ մեր չար մեղքերի պատճառով դադարեցին անձրևները»[77]:

Անանուն հեղինակի բնորոշ գծերից մեկն էլ սնահավատությունն է, որն իր արտահայտությունն է գտել «Ժամանակագրության» բազմաթիվ գլուխներում: Որպես ցայտուն օրինակ կարելի է նշել 442-րդ գլխում շարադրված պատմությունը Կարկառի երկրում ծագած սոսկալի համաճարակի և նրա զարմանահրաշ ավարտի մասին: Բնութագրական է նաև այն, թե ինչպիսի լրջությամբ է հեղինակը ներկայացնում բրուտների աղբյուրի հրաշագործ զորությանը նվիրված առասպելները[78] կամ ինչպիսի մանրամասնությամբ է շարադրում եդեսացիների՝ հեթանոսական

[75] *Նույն տեղում, գլ. 309: Հմմտ. նաև գլ. 473:*
[76] *Նույն տեղում, գլ. 421:*
[77] *Նույն տեղում, գլ. 515:*
[78] *Նույն տեղում, գլ. 423—424:*

ծիսակատարություններ հիշեցնող զանգվածային ողբի ու աղերսանքի պատմությունը[79]:

Ինչ վերաբերում է Անանունի երկի գրական առանձնահատկություններին, ապա պետք է նշել, որ այն աչքի չի ընկնում գեղարվեստական արժանիքներով: Դա մի չոր, դեպքերի պարզ շարադրանք ներկայացնող ժամանակագրություն է, որի հեղինակը հիգ չի թափում անգամ ոճի վայելչությունն ապահովելու ուղղությամբ: Հաճախակի են բառերի, դարձվածքների կրկնությունները, քերականական անհամապատասխանությունները և այլն: Այդ պատճառով երկի թարգմանությունը կապված էր որոշակի դժվարությունների հետ՝ հատկապես հայերեն շարադրանքը լեզվական անհարթություններից զերծ պահելու և ասորական բնագիրը հարազատորեն վերարտադրելու տեսակետից:

* * *

Սույն աշխատությամբ հայ ընթերցողին է ներկայացվում Անանուն եդեսացու «Քաղաքական ժամանակագրության»՝ շուրջ երկուհարյուրամյա ժամանակաշրջան ընդգրկող վերջին մասը, որը նվիրված է սելջուկ թուրքերի տիրապետությանը և խաչակրաց արշավանքներին[80]: Հավելվածում ամփոփված են հայերին վերաբերող այն տեղեկությունները, որոնք տեղ են գտել «Քաղաքական ժամանակագրության» նախորդ գլուխներում և «Եկեղեցական ժամանակագրության» պահպանված հատվածներում:

Անանունը պատմական իրադարձությունները թվագրում է ասորական մատենագրության մեջ ընդունված սելևկյան տոմարով, որի սկիզբը է համարվում մ. թ. ա. 312 թ.: Սույն թարգմանության մեջ սելևկյան թվականների կողքին կլոր փակագծերով նշանակված են ժամանակակից թվագրության համապատասխան տարիները: Լուսանցքներում նշված են «Ժամանակագրության» ասորական բնագրի հրատարակության էջերը: Աղբյուրագետ-պատմաբանների գործը հեշտացնելու նպատակով, ծանոթագրություններում նշել ենք Մատթեոս Ուռհայեցու և Գրիգոր Երեցի «Ժամանակագրության» բոլոր զուգահեռ դրվագների էջերը:

Թարգմանության մեջ մեծ ուշադրություն ենք դարձրել անձնանունների տառադարձությանը՝ ձգտելով դրանք արտահայտել արդի գիտության մակարդակով և միաժամանակ չհրաժարվել ավանդական կարևոր սկզբունքներից: Խայտաբղետությունից և շփոթություններից խուսափելու համար տեղանունները հիմնականում վերարտադրել ենք միջնադարյան հայկական ձևերով (Ռապան փխ. Ռաբան, Թլպաշար փխ. Թելլ-Բաշիր և այլն):

[79] *Նույն տեղում, գլ. 514—516։*

[80] *Chabot*—II, p. 45—241.

45 [234]. Թուրքերի տիրապետության սկիզբը[1]

1356 (1045) թվականին թուրքերի Սուլեյման[2] անունով թագավորը՝ Սելջուկի[3] որդին, շարժվեց հյուսիսից, քանի որ արաբների[4] թագավորությունն սկսել էր թուլանալ, և հոռոմները նրանցից քաղաքներ էին խլել. գրավված էին Մելիտենեն, Սամոսատը, Հիսն-
46 Մանսուրը[5], Քեսունը[6] և Ուռհան[7]։ Այդ ժամանակ // թուրքերը եկան գրավեցին Մելիտենեն, որովհետև այն պարիսպներ չուներ, և սպանեցին բյուրավոր մարդկանց։ Նրա վրա հարձակվեցին Սուլեյման թագավորի կողմից ուղարկված երեք հազար թուրքեր, մինչ մարդիկ նեղվում էին ցրտից, ձյունից ու սառնամանիքից։

235. Մար[8] Բարսումա[9] վանքի կողոպուտի մասին

Նույն 1356 (1045) թվականին քուրդ ավազակները, մոտ 120 հոգի, եկան և գիշերով գաղտագողի մտան Մար Բարսումա վանքը։ Նրանք ավարի մատնեցին և կողոպտեցին, ինչ որ գտան վանքում, և սպանեցին բազմաթիվ վանականների ու սպասավորների։

236. Ռոմանոս Դիոգենեսի[10] թագավորության մասին[11]

1380 (1069) թվականին թագավորեց Ռոմանոս Դիոգենեսը և, զորք հավաքելով, կռվի ելավ թուրքերի Սուլեյման թագավորի դեմ։ Այս Սուլեյմանը թուրք թագավորների մեծ ցեղից էր։ Անցնելով իշխանության գլուխ՝ նա եկավ հաստատվեց Պարսից երկրում և արաբներից թագավորություն ստացավ։ Այնուհետև նա սկսեց կոչվել սուլթան[12], մինչդեռ արաբ թագավորներն անվանվում էին խալիֆներ, այսինքն՝ մարգարեի փոխանորդներ։ Սրանք նստում էին Բաղդադում և հռչակ վայելում ողջ մահմեդական աշխարհում, սակայն կորցրել էին իրենց ազդեցությունը բանակի վրա, և թուրքերն էին տիրում ամենուրեք։

Երբ Հայոց երկրում ճակատամարտ տեղի ունեցավ հոռոմների կայսր Ռոմանոսի և սուլթան Սուլեյմանի միջև[13], հոռոմները պարտվեցին և թիկունք դարձրին։ Շատերը նրանց զորքից սպանվեցին, մյուսները փախան։ Իսկ Ռոմանոս կայսրը ողջ-առողջ ընկավ սուլթան Սուլեյմանի մի պատանի զինակրի ձեռքը։ Երբ վերջինս ուզեց սպանել նրան, նա ասաց. «Մի սպանիր ինձ, ես հոռոմների կայսրն եմ»։ Մինչ [պատանին] պատրաստվում էր տանել նրան թագավորի, այսինքն սուլթանի մոտ, պատահեց մի այլ թուրք, որը հարցրեց. «Ո՞վ է այդ գերին, որին բռնել ես»։ Նա
47 ասաց. «Հոռոմների թագավորն է»։ // Անցնելով սուլթանի սլատանի զինակրի ետևը, նա իր ձեռքում եղած թուրը խրեց նրա կոկորդը, ե Ռոմանոս կայսրին առավ տարավ սուլթան Սուլեյմանի մոտ, պարծենալով, թե ինքն է բռնել նրան։ Իսկ վիրավորվածին, որը դեռ ողջ էր, նրա ծանոթներից մեկն անցնելիս վերցրեց կապեց, նստեցրեց ձիու վրա և բերեց ճամբար։ Երբ [սուլթանը] տեսավ իր վիրավորված զինակրին, սաստիկ վշտացավ ու ասաց. «Ինչո՞ւ կռվի մեջ մտար»։ Իսկ Ռոմանոս կայսրը, տեսնելով այդ, ասաց սուլթանին. «Սա էր, որ ինձ բռնեց, իսկ քեզ մոտ բերողը խփեց նրան և խլեց ինձ նրանից»։ Սուլթան Սուլեյմանի կարգադրությամբ վիրավորվածը հանձնվեց բժիշկներին և ապաքինվեց, իսկ մյուսը կախաղան հանվեց։ Ինչ վերաբերում է Ռոմանոս կայսրին, ապա [սուլթանը] նրան նվերներ տալով, արձակեց և առանց նեղության ուղարկեց իր երկիրը։

Կոստանդնուպոլսեցիները լսելով, որ Ռոմանոսը գերի է ընկել, իրենց կայսր էին հռչակել Միքայելին[14], հանգուցյալ Կոստանդինի[15] որդուն։ Որոշ ժամանակ անց Ռոմանոսը Հովհաննես[16] պատրիկի խորամանկության և երդումների պատճառով եկավ մայրաքաղաք։ Երբ մայրաքաղաք մտավ, նրան բռնեցին ու կուրացրին, և նա անմիջապես մեռավ։ Տեսեք, արդ, քրիստոնյաների դաժանությունը և այլազգիների մարդասիրությունը։ Մինչդեռ թուրքերի սուլթանը ռազմադաշտում գերելով նրան, պարգևներ մատուցեց և առանց նեղություն տալու ճանապարհ դրեց, իր հավատակիցները սպանեցին նրան փրկությունից հետո։ Այդ իսկ պատճառով աստված արդարացիորեն ձեռք քաշեց հոռոմների թագավորությունից։

### 237. Այն մասին, թե ինչպես նվաճվեցին քաղաքները և անցան թուրքերի ձեռքը, ինչպես նաև Սուլեյմանի մահվան և Աբուլֆաթահի[17] թագավորության մասին

*1381 (1070) թվականին մեռավ սուլթան Սուլեյմանը, և ապա թագավորեց նրա Աբուլֆաթահ որդին։ Վերջինս իր Սուլեյման[18]*
48 *անունով որդուն ուղարկեց հոռոմների երկիրը //, որը նվաճեց մինչև մայրաքաղաքի դուռն ընկած բոլոր տարածությունները։ Նա գրավեց նաև ամբողջ Պաղեստինը, Տյուրոսը[19], Սիդոնը[20], Դամասկոսը, Երուսաղեմը, Մեծ Հայքը և ողջ Կիլիկիո երկիրը։ Այդ ժամանակ Սելևկիան[21], Տարսոնը, Անարզաբան, Մելիտենեն իր շրջակայքով և Անտիոքը գտնվում էին Փիլարտոս Դոմեստիկոսի[22] ձեռքում, որը դրանք պաշտպանում էր թուրքերից։*

### 238. Աբուլֆաթահ սուլթանի արշավանքը դեպի արևմուտք և Անտիոքի, Ուռհայի ու մյուս [քաղաքների] գրավումը թուրքերի կողմից[23]

*1396 (1084) թվականին սուլթան Աբուլֆաթահը ելավ գրավեց Անտիոքը, այնուհետև, անցնելով Ուռհա, մարտի գլխավորումը հանձնարարեց Բուզանին[24], իր զորահրամանատարներից մեկին, իսկ ինքն իջավ դեպի արևելք։ Ուռհայեցիները, մայրաքաղաքից օգնություն սպասելով և չստանալով այն, քանի որ հույների թագավորությունը վերացել էր, քաղաքը հանձնեցին Բուզան հրամանատարին։ Այդ ժամանակ Ուռհայում էին գտնվում քաղաքի մեծամեծներն ու կառավարիչները։ Այսպես, ուրեմն, 1398 (1087) թվականի մարտի 3-ին, միջին պահքի չորեքշաբթի օրը Ուռհան իր բնակիչների կամքով ընկավ Բուզանի ձեռքը։*

*Բուզանը միջնաբերդում նստեցրեց իր հետ եղած թուրքերից մեկին, իսկ քաղաքի կառավարիչ կարգեց Թեոդորոսին՝ Հեթում կյուրապաղատի որդուն[25]։ Այսպես Բուզանը տիրեց Ուռհային։ Ապա [թուրքերը] վերցրին քաղաքի կենտրոնում գտնվող սուրբ Հովհաննեսի և Աստվածածնի եկեղեցիները, որոնք Օմարի[26] օրոք, այսինքն՝ Ուռհայում մահմեդականների հաստատման ժամանակ, խլվել և վերածվել էին մզկիթի՝ մահմեդական աղոթարանի[27]։ Բու-*
49 *զանի կարգադրությամբ այս մզկիթում // մեծ ծախսով մի մինարեթ, այսինքն՝ աշտարակ, կառուցվեց, որը կանգուն է մինչև այսօր։ Յոթ տարի մնալով թուրքերի տիրապետության տակ, քաղաքն այնուհետև Հեթումի որդու ձեռքով անցավ քրիստոնյաներին, ինչպես ցույց կտանք Տիրոջ օգնությամբ։*

*Հաջորդ տարի Աբուլֆաթհի Սուլեյման անունով որդին՝ հոռոմների երկրի տիրակալը, եկավ Անտիոք և, բռնագրավելով Պետրոս առաքյալի մեծ եկեղեցին, որը Կասիանա էր կոչվում, այն դարձրեց մզկիթ, այսինքն՝ մահմեդական աղոթարան, և հանձնեց Յաղի Սիան[28] թուրքին՝ Արտուքի[29] թոռներից մեկին։ Հույներից նա բազմաթիվ քաղաքներ գրավեց նաև Կիլիկիայում, այն է՝ Տարսոնը, Անարզաբան, Մսիսը և Ադանան։*

## 239. Թուրքերի կողմից Մելիտենեի գրավման մասին[30]

*1398 (1087) թվականին Փիլարտոս Դոմեստիկոսը եկավ սուլթան Աբուլֆաթհի մոտ՝ նրան ուխտ և երդում տալու, որպեսզի Մելիտենեի շրջակա տարածությունները և մնացած ամրոցները թողնվեն իր ձեռքում, իսկ ինքն ընդունի թուրքերի տիրապետությունն ու ենթարկվի նրանց։ Մելիտենեում այդ ժամանակ քաղաքի կառավարիչ էր նշանակված Գաբրիել[31] անունով մի քաղկեդոնական։ Երբ Փիլարտոսը եկավ արևելք՝ սուլթանի մոտ, Ալփիրակ[32] անունով մի մարդ՝ սուլթանի կողմից ուղարկված թուրքական զորքերի հրամանատարներից մեկը, դիմեց դեպի Մելիտենե, և Գաբրիելն այն հանձնեց թուրքերին։ Իսկ Փիլարտոսից սուլթանը պահանջեց մահմեդական հավատ ընդունել։ Նա համաձայնեց և ստացավ Մելիտենեն, սակայն երբ վերադարձավ, նրան ոչինչ չտվին։ Այսպես, թուրքերը գրավեցին բոլոր երկրները՝ Երուսաղեմը, Տյուրոսը, Սիդոնը, ամբողջ Պաղեստինը, Անտիոքը, Դամասկոսը,* 50 *Ուռհան, ողջ Ասորիքը, Միջագետքը, Հայաստանը // և ամբողջ Պոնտաց աշխարհը մինչև Կոստանդնուպոլսի սահմանը։ Այս երկրներում նշանակվեցին զանազան ամիրաներ թուրք մեծամեծներից և զորահրամանատարների որդիներից, որոնք դուրս գալով հյուսիսից, նվաճեցին արաբների և հույների թագավորությունը։*

## 240. Թուրքերի մասին, որոնք տիրեցին աշխարհին

*Սուլեյմանի որդի Աբուլֆաթհ սուլթանն ունեցավ նաև մի այլ որդի՝ Սինջարշահ[33] անունով, որին էլ հանձնեց իշխանությունն իրենից հետո։ Նա ուներ ևս մի որդի, որի անունն էր Մելիքշահ[34]։ Սա մեռավ՝ թողնելով Մելիք Մասուդ[35] անունով որդուն։ Նրանք տիրում էին Պարսից և Բաղդադի երկրներին։ Թեև արաբների խալիֆը նստում էր Բաղդադում, բայց նա միայն անուն ուներ, որ հռչակվում էր ողջ մահմեդական աշխարհում, իսկ նրանից հետո հռչակում էին սուլթանի [անունը][36]։*

Այսպիսով, ինչպես ցույց տվեցինք, թուրք ցեղի առաջնորդները, որոնք ելան, երկուսն էին՝ Սելջուկը և Արտուքը։ Սելջուկից ծնվեց Սուլեյմանը, Արտուքից՝ Ղազիարսլանը[37]։ Սելջուկի սերունդները տիրեցին Տիգրոնից արևելք ընկած երկրներին։ Երբ՝ նրանց տերությունն ընդարձակվեց, [Սելջուկի] թոռ Աբուլֆաթահը[38], ինչպես նշեցինք, իր ծառաների՝ Բուզանի և մյուսների միջոցով արշավեց Կապադովկիայի կողմերը։ Իսկ Հայոց երկրում, Նփրկերտում[39], Ամիդում և Մարդինում տիրում էին Արտուքի սերունդները։ Արտուքի Ղազի որդու սերունդները գրավեցին նաև Պաղեստինը, Երուսաղեմը, Անտիոքը և Ասորիքը։ Եվ քանի որ բոլոր այս երկրներում հռչակվում էր Բաղդադի խալիֆը, Աբուլֆաթահ սուլթանը նույնպես հռչակվեց Բաղդադում՝ խալիֆից հետո[40]։

Այսպես։ ուրեմն, Յաղի Սիանը, Սուքմանը[41] և իր եղբայրները
Սելջուկի որդի Սուլեյմանի որդու՝ Աբուլֆաթահ սուլթանի եղբոր՝
Արտուքի թոռներն էին, այսինքն՝ մի ցեղից էին։ Իսկ Աղ-Սնղուրը[42],
51 Բուզանը, Ալփիրակը || և Տուտուշը[43] սուլթան Աբուլֆաթահի
սպրուկներն[44] էին։ Արդ, Անտիոքում հաստատվեց Յաղի Սիան
անունով թուրքը, հոռոմների երկրում և Կիլիկիայում՝ մեծ սուլթանի
թոռ Սուլեյմանը, Երուսաղեմում և ողջ առափնյա երկրում՝
Արտուքի սերունդները՝ Սուքմանը և իր եղբայրները, Ասորեստանում՝
Աղ-Սնղուր կոչվող մեկը, Ուռհայում և Ասորիքում իշխում էր
Բուզանը, իսկ Դամասկոսում ոմն թուրք՝ Տուտուշ անունով։

## 241. Թե ինչպես Ուռհան անցավ քրիստոնյաների ձեռքը[45]

Այդ ժամանակ մեռավ սուլթան Աբուլֆաթահը, որն ուներ փոքր զավակներ։ Երկուսը գտնվում էին Մոսուլում, և նրանց խնամում էր Աղ-Սնղուր հրամանատարը։ Պետության աթոռանիստ կենտրոնները գտնվում էին Պարսից երկրում՝ Խորասանում և Համադանում, որտեղ Ելդեգիզ[46] անունով մի այլ ծառա, որ կոչվեց Փահլևան, տիրելով սուլթանի երկրներին, խնամում էր նրա թողած փոքրահասակ տղաներին։ Իսկ Ասորիքում մեր հիշած կուսակալներից յուրաքանչյուրը կառչել էր իր տեղին և չէր ենթարկվում որևէ մեկին։ Նրանք մարտնչում էին իրար հետ՝ մեկը մյուսից քաղաքներ խլելու նպատակով։ Այդ ժամանակ Բուզանը մեկնեց Ուռհայից և գնաց դեպի Դամասկոս՝ Տուտուշի դեմ պատերազմելու։ Նրանց միջև տեղի ունեցած ճակատամարտում Բուզանը պարտվեց և բռնվելով՝ գերի ընկավ։

Տուտուշն անմիջապես զորք ուղարկեց Ուռհա, որպեսզի քա-

ղաքն իրեն հանձնվի, սակայն ուռհայեցիները նրան ոչինչ չտվին։
Բերդապետն ասաց. «Մինչև ինձ Բուզանից որևէ նշան չբերեք, ես
ձեզ մի քար անգամ չեմ տա»։ Երբ նրանք ձեռնունայն ետ դար-
ձան, ուռհայեցիները վախեցան, թե չլինի հանկարծ միջնաբերդի
թուրքերը բերդը հանձնեն օտար զորքերին, և սրանք դան ավարի
մատնեն քաղաքը։ Այդ պատճառով Հեթումի որդի Թեոդորոսը հա-
52 մարձակորեն ելավ և քաղաքի ներսում պարիսպ կառուցեց՝ //
արևմտակողմում հոսող գետի մոտից մինչև Հարավային դարպա-
սը։ Այսպիսով, մի քանի օրում նա բերդն անջատեց քաղաքից։
Իսկ Տուտուշը զայրացած լինելով Ուռհայի վրա, կտրեց Բուզանի
գլուխը և ուղարկեց Ալփիրակ զորահրամանատարի հետ, որն, ինչ-
պես վերը նշեցինք, դրավել էր Մելիտենեն։ Երբ սա Ուռհա եկավ,
բերդապետը, տեսնելով Բուզանի գլուխը, բերդը հանձնեց նրան։
Միջնաբերդ մտնելով՝ նա գրավեց նաև քաղաքը։ Զորքը մտավ և
բանակ դրեց քաղաքի արևմտակողմում, Ս. Հովհաննեսի տաճարի
շուրջը։

Տուտուշը Ալփիրակին հրամայել էր Ուռհան ավարի մատնել՝
սկզբից ևեթ իրեն չհանձնվելու համար։ Ալփիրակի հետ եղող ղո-
բտկանները, մինչ նա միջնաբերդում էր, շարունակ ստիպում էին
նրան քաղաքը ենթարկել կողոպուտի, սակայն նա օրեցօր հետա-
ձգում էր։ Մի օր միջնաբերդում նա իր զորահրամանատարների
համար խնջույք կազմակերպեց՝ հրավիրելով քաղաքում գտնվող
այլևայլ երաժիշտների, որոնց թվում էր նաև մի քրիստոնյա երգ-
չուհի կիրս[47] Գալի անունով։ Երբ [Ալփիրակի] սիրտը գինուց մեղ-
մացավ, զորահրամանատարները մոտեցան և խնդրեցին, որ նա
կատարի իրենց տված խոստումը քաղաքի կողոպուտի մասին։ Եվ
նա երդվեց, որ մյուս օրը առավոտյան կհրամայի ավարի մատնել
քաղաքը։ Թեև նրանք խոսում էին պարսկերեն լեզվով, երգչուհին
հասկացավ նրանց խոսակցությունը։ Նա անմիջապես զորավոր
հնար գտավ և իբր թե փորացավից սկսեց գոռալ։ Երբ հարցրին,
թե ինչ է ուզում, որ բերեն իրեն, նա ասաց, որ այդ ցավն իր հա-
մար սովորական է և, երբ բռնում է, ոչինչ չի կարող օգնել բացի
բաղնիքից։ Նրան թույլ տվին գնալ բաղնիք։ Իջնելով բերդից, նա
անմիջապես ուղղվեց Հեթումի որդի Թեոդորոսի մոտ և ողջ իրո-
ղությունը հայտնեց նրան։ Վերջինս ասաց. «Ո՛վ կին, ողջ քաղա-
53 քի արյունը քո ձեռքում է, տես, թե ինչպես պիտի փրկես // քա-
ղաքը»։ Թեոդորոսը նրան տվեց իր մատանին, որը շփվելով կե-
րակրի կամ ըմպելիքի հետ՝ կարող էր անմիջապես մահ պատճա-
ռել։

[Կինը], վերցնելով մատանին, բարձրացավ բերդ՝ ձևացնելով, թե ցավը կտրվել է։ Տեսնելով նրան՝ նստածներն ուրախացան ու ցնծացին, և նա ելավ պարելու։ Վերցնելով մի գինու բաժակ՝ նա սկսեց անպարկեշտորեն պարել և մատանին ընկղմեց բաժակի մեջ։ Պարից հետո նա մոտեցավ և բաժակը մատուցեց Ալփիրակին։ Հենց որ նա խմեց, անմիջապես ոռնաց փորացավից։ Իսկ [կինն] ասաց. «Տեր իմ, շտապիր բաղնիք, քանի որ բաղնիքի միջոցով անցավ նաև իմ ցավը»։ Երբ նա մտավ բաղնիք, [կինը] հանեց նրա շորերը, և հետևեց նրան։ Անցնելով ներքին սենյակը՝ [Ալփիրակն] անմիջապես հոգին փչեց։ [Կինը] դուրս եկավ և ասաց դռանը կանգնած ներքինիներին ու ծառաներին, որ տերը քնած է, և թող նրան չանհանգստացնեն։

Իսկ ուռհայեցիները գլխովին զինվեցին և մեծ զորքով շարժվեցին բանակած թուրքերի կողմը։ Տեսնելով այդ՝ սրանց ձեռքերը թուլացան, քանի որ իրենք շատ քիչ էին ուռհայեցիների զորքի համեմատ։ Թուրքերը վազեցին բաղնիք՝ լուր տալու զորահրամանատարին, սակայն նրան մեռած գտնելով, սրտակոտր եղան։ Ապա նրանք խնդրեցին ուռհայեցիներին, որ իրենց թույլ տան դուրս գալ քաղաքից։ Եվ նույն ժամին նրանք բոլորը դուրս եկան քաղաքի արևմտյան դարպասից ու գնացին իրենց երկիրը։ Իսկ ովքեր բերդում էին, մատնվեցին նեղության, քանի որ անջատված էին քաղաքից՝ նրա ներսում կառուցված պարսպի պատճառով։ Նրանք լուր ուղարկեցին Տուտուշին և հայտնեցին իրողությունը։ Վերջինս պատրաստվելով զորքով շարժվել քաղաքի վրա, աստծո կամքով հիվանդացավ և մեռավ։ Երբ բերդում գտնվողները լսեցին այս լուրը, սրտաբեկվեցին։ Ապա Հեթումի որդի Թեոդորոսը, համաձայնության գալով բերդապետի հետ, նրանից գնեց բերդը։ Նա ելավ գնաց, իսկ Թեոդորոսը ստացավ քաղաքի վերին բերդը։
54 // Եվ այսպես, Ուռհան իր միջնաբերդով անցավ հոռոմներին, մինչև որ եկան ֆրանկները և տիրեցին նրան, ինչպես ցույց կըտանք Տիրոջ զորությամբ։

### 212. Դեպի Ասորիք և Պաղեստին ֆրանկների արշավանքի, այդ ժամանակի իրադարձությունների և թուրքերից գրավված քաղաքների մասին[48]

1405 (1094) թվականին, այսինքն՝ մեր Տիրոջ գալստյան 1098 և արաբների 472 թվականին[49], որ այս երկրներում թուրքերի տիրապետության հիսունմեկերորդ տարին էր, Կոստանդնուպոլսում

հույների կայսրն էր Ալեքսը[50], Անտիոքում [իշխում էր] Աբուլֆաթահ մեծ սուլթանի կողմից հաստատված վերոհիշյալ Յաղի Սիան Թուրքը, իսկ Երուսաղեմում՝ Աֆդալը[51] եգիպտացին, որը երկու տարի առաջ այն գրավել էր Արտուքի սերունդներից՝ Սուքմանից ու նրա եղբայրներից, և ողջ առափնյա երկիրը ենթարկվում էր եգիպտացիներին*։ Ինչ վերաբերում է Ուռհային, ապա այնտեղ էր Թեոգորոս կյուրապաղատը, որն, ինչպես վերը ցույց տվեցինք, [քաղաքը] խլել էր թուրքերից և սպասում էր հունաց կայսրին, որպեսզի այն հանձներ նրան։

Այդ ժամանակ բազմաթիվ ֆրանկ թագավորներ և իշխաններ, բյուրահազարավոր ու անհամար զորքերի և ամեն տիպի արհեստավորների հետ միասին, պատրաստություն տեսնելով, ցամաքով շարժվեցին դեպի հունաց երկիրը՝ // Հելլեսպոնտոսի նեղուցն անցնելու նպատակով, որի վրա է գտնվում Կոստանդնուպոլիսը և որտեղ այդ նեղլիկ միջանցքով իրար են միանում երկու ծովերը։ Նրանց հետ էին չորս թագավոր-զորահրամանատարներ, որոնցից մեկի անունն էր Բոհեմունդ[52], մյուսինը՝ Գոդեֆրուա[53], երրորդինը՝ Սենժիլ[54], իսկ չորրորդինը՝ Տանկրեդ[55]։ Նրանց մեջ կային նաև բազմաթիվ եպիսկոպոսներ ու վանականներ։ [Ֆրանկները] դեսպաններ ուղարկեցին հունաց Ալեքս կայսեր մոտ, որպեսզի պատրաստվի արշավել իրենց հետ և հոգա իրենց կարիքները, ինչպես նաև հրաման տա իր տիրապետության տակ գտնվող գավառներին, որ իրենց զորքերն ապահովեն անհրաժեշտ հացահատիկով ու հարդով։ Ալեքս կայսրը խոստացավ պետք եղած ամեն ինչով օգնել նրանց։

## 243. Ֆրանկների մուտքը հոռոմների երկիրը և հունաց կայսեր նենգությունը նրանց հանդեպ

Երբ ֆրանկների զորքերը շարժվեցին և սկսեցին անցնել սահմանները, նրանցից մի բանակ, կազմված մեծ մասամբ աշխարհազորից և արհեստավորներից, առաջ անցնելով հասավ [...][56] նախքան [հիմնական] ուժերի ժամանումը։ Ալեքս կայսրը, լուր ուղարկելով, հասկացրեց Նիկիայի և շրջակայքի թուրքերին, որ-

---

Լուսանցագրություն. «Այդ ժամանակ, մոտավորապես 1400 (1099) թվականին, եղավ սկիզբը Հեծյալ Եղբայրների, որոնք կոչվում էին[...]. դրանից քիչ առաջ ֆրանկները մահմեդականներից գրավեցին Երուսաղեմը։ Երուսաղեմը չորս հարյուր տարի պատկանել էր մահմեդականներին։ Այսպես [...]»։

*պեսզի վրա հասնեն և կոտորեն նրանց։ Այդպես էլ եղավ. Թուրքերը փութով հարձակման անցան և ծովափին անխնա կոտորեցին նրանց։ Ողջ առաջապահ բանակն այսպիսով ոչնչացավ[57]։ Կոստանդնուպոլիս հասնելով՝ ֆրանկ զորքերը հանդիպեցին հույների կայսեր ու մեծամեծների հետ և, պայմանադիր կնքելով, երդումներ փոխանակեցին։ Ալեքս կայսրը պատրաստվեց անձամբ շարժվել նրանց հետ դեպի մյուս՝ զաղատական ափը։*

## 244. Նիկիայի առումը և ֆրանկների մուտքը Կիլիկիո երկիրը[58]

*Ֆրանկներն ու հույները ուղղակի եկան պաշարեցին Նիկիա
քաղաքը և, խլելով այն թուրքերից, տվեցին հունաց կայսրին։ Ել-
56 նելով // այնտեղից՝ այնուհետև նրանք մտան Կիլիկիո երկիրը։
Գետինը դողում էր նրանց առաջ։ Հասնելով Ասորիք, նրանք որո-
շեցին պաշարել նախ Անտիոքը, քանի որ այն ողջ Ասորիքի կենտ-
րոնն էր։ Նրանք բանակ դրեցին քաղաքի մերձակա բոլոր վայրե-
րում և փակեցին ելումուտի ճանապարհները։ Ապա սկսեցին ավե-
րել ու կողոպտել ողջ շրջակա երկիրը։*

## 245. Ֆրանկների գալուստն Ուռհա քաղաք[59]

*Այդ ժամանակ, ինչպես ասացինք, Ուռհային տիրում էր Հեթումի որդի Թեոդորոսը։ Երբ ուռհայեցիները լսեցին, որ ֆրանկները հասել բանակ են դրել Անտիոքի շրջակայքում, եկան Հեթումի որդի Թեոդորոսի մոտ և ասացին. «Խնդրում ենք լուր ուղարկես և ֆրանկ զինվորներից օգնություն բերես՝ քաղաքը թուրքերի ավաղակություններից պաշտպանելու համար»։ Թեոդորոսը համաձայն չէր դրան։ Սակայն տեսնելով, որ չի կարողանա ազդել եդեսացիների վրա, քանի որ նույնիսկ հակառակ իր կամքի բերել կտային [ֆրանկներին], բանավոր հավանություն տվեց այդ ցանկությանը, թեև ներքնապես ամենևին չէր կամենում, որ նրանք գային։ Նա վախենում էր մանավանդ այն բանի պատճառով, որ քաղաքի բնակիչներից շատերն իրեն ատում էին։ Ի վերջո, սակայն, սուրհանդակներ ուղարկեց Գոդեֆրուա դուքսի մոտ, որը ֆրանկների զորագլուխն ու առաջնորդն էր, և խնդրեց, որ նա զորք ուղարկի՝ իր երկիրը պաշտպանելու համար։ Երբ ֆրանկները կարդացին Ուռհայի կառավարիչ Թեոդորոսի նամակները, մեծապես ուրախացան և ուղարկեցին Գոդեֆրուայի եղբորը՝ Բաղդուինին[60], մի բարեպաշտ, աստվածավախ և քաջասիրտ մարդու։ Ուռհան այդ ժամանակ բազմազգ, մարդաշատ ու բարգավաճ քաղաք էր,*

երևելի հոգևորականներով և սպասավորներով։ Բարգավաճում էին նաև շրջակա գյուղերը, ագարակները և ավանները։

## 246. Հեթումի որդի Թեոդորոսի՝ Ուռհայի կառավարչի սպանության մասին[61]

57 // Ֆրանկների և Բաղդուինի Ուռհա գալուց որոշ ժամանակ անց նենգամիտ ուռհայեցիներն սկսեցին չարություն և գայթակղություն սերմանել ֆրանկների և Թեոդորոսի միջև։ Եվ քանի որ նրանց սրտերը լցված էին մեծ չարությամբ, դիմեցին նույնիսկ այնպիսի նենգության, որ խորհեցին սպանել իրենց կառավարչին և տեր կարգել ֆրանկներին։ Ընդ որում դա արեցին ոչ թե ֆրանկների նկատմամբ ունեցած սիրուց, այլ Թեոդորոսից դժգոհ մարդկանց չարակամության պատճառով։ Կատաղելով գիշատիչ գազանների նման, նրանք լարեցին ու գրգռեցին միմյանց, և մի մեծ ամբոխ կազմած, ժխոր բարձրացրին աղբերակունքի մոտ, որտեղով նա պիտի իջներ վերին բերդից։ Երբ մոտեցավ այդ ամբոխին, գազազած վրա հասան նրան, և նա փախավ մտավ քաղաքի արևվելյան դարպասի վերևում գտնվող ներքին բերդը, որ ինքն էր կառուցել ու ավարտել։ Իսկ երբ նրա դեմ կռվի ելան, նա երդում պահանջեց, որպեսզի իրեն թույլ տան կնոջ և երեխաների հետ հեռանալ դատարկաձեռն։ Նրանք խոստացան ու երդվեցին, և նա բացեց դուռը նրանց առջև։ Սակայն նրանք հաստատ չմնացին իրենց երդմանը և խաբեցին նրան։ Բարձրացան, կապեցին նրան պարանով և մերկացրած, միայն մի գոտիով իջեցրին քաղաքի դիմացի բարձր պարսպից։ Երբ նրան իջեցնում էին[62]...

...Հեթումի որդու և նրա տան կործանումը։ Այսպես Բաղդուինն ստացավ Թեոդորոսի ողջ ունեցվածքը և քաղաքի երկու բերդերը։

## 247. Անտիոքի պաշարումն ու առումը ֆրանկների կողմից[63]

Երբ ֆրանկները լսեցին, որ Բաղդուինը թագավորել է Ուռ-
58 հայում, առավել ևս ուրախացան և գրոհի ելան // Անտիոքի դեմ։
Նրանք սաստիկ հարձակումներ գործեցին նրա վրա և ահեղ մար-
տեր մղեցին։ Եվ մինչդեռ մարտնչում էին ու շարունակում պա-
տերազմը, պաշարվածներից ոմանք համաձայնեցին անձնատուր
լինել։ Նրանք լուր ուղարկեցին Բոհեմունդ զորագլխին, որպեսզի
քաղաքը հանձնեն նրան։ Երբ գործը գլուխ եկավ և համաձայնու-
թյուն կայացավ, ֆրանկները բարձրացան պարիսպը և գրավելով
այն, սկսեցին վազվզել քաղաքում։ Յաղի Սիան թուրքը, որ քա-

ղաքի կառավարիչն էր, տեսնելով որ քաղաքը նվաճված է, փախուստի դիմեց։ Նա ելավ լեռան գագաթին գտնվող վերին բերդի դռնից ու հեռացավ դեպի հարավ-արևելք [...][64]։ Անտիոքը գրավվեց լեռան արևելյան կողմից՝ պաշարյալների դավաճանության պատճառով։

## 248. Կիրբուղայի[65] արշավանքը դեպի Ուռհա, Անտիոք քաղաքի պաշարումը նրա կողմից և նրա պարտությունը ֆրանկներից[66]

Երբ ֆրանկները պաշարել էին Անտիոքը, արևելքից ելավ մի մեծ զորահրամանատար, որ կոչվում էր Կիրբուղա, և եկավ հասավ մինչև Ուռհա քաղաքի դուռը։ Ողջ երկիրը լցված էր ձիերով, կովերով, ոչխարներով, անթիվ բնակիչներով ու եկվորներով։ Նա մեծամեծ ոճիրներ գործեց երկրում. ավերեց, կոտորեց, կողոպտեց ու բազում մարդկանց դեբությյան քշեց։ Ապա դիմեց դեպի Հալեպ՝ Անտիոք գնալու նպատակով։ Երբ հասավ Հալեպ, լսեց, որ Անտիոքը գրավված է, և ֆրանկները մտել են այնտեղ։ Նա փութապես եկավ Անտիոք և Բաղդադից, Ասորեստանից ու Միջագետքից իր հետ բերած բազմաթիվ զորքերով պաշարեց քաղաքը, որտեղ հաստատվել էին ֆրանկները։ Այսպիսով, նա շրջափակեց ֆրանկներին և սկսեց հարձակվել քաղաքի վրա։

Ներսում գտնվողները նեղվում էին հացահատիկի և անասունների պակասությունից, քանի որ երկիրն ավերված էր, և այդ
59 տարվա բերքը քաղաք չէր հասել։ // Ֆրանկները, որ բազմահազար և մեծաթիվ էին, այնքան նեղվեցին սովից, որ մի գրաստի դինը հասավ քսան և ավելի դինարի։ Իսկ ցորեն ու գարի բոլորովին չէր ճարվում։ Եվ մինչդեռ այսպիսի նեղության մեջ էին, նրանց հետ եղած եպիսկոպոսներից մեկին երազում հայտնվեց հետևյալը. «Ահա, Կասիանեի մեծ եկեղեցու այսինչ տեղում թաղված է այն տեգը, որով խոցվել է Քրիստոսի պատկերը, պատրաստված հրեաների կողմից Տիբերիա[67] քաղաքում։ Եթե վերցնեք այն, տանեք ձեր առջևից և հարձակվեք ձեր թշնամիների վրա, դուք կհաղթեք նրանց»։ Երբ ֆրանկները գտան այդ տեգը, շատ ուրախացան և պատրաստվեցին կռվի ելնել թուրքերի դեմ, մանավանդ որ սովից հուսահատված, մտածում էին, թե ավելի լավ է մեռնել բաց կռվում, քան թե կորչել կամ գերի բռնվել կանանց նման։ Այդ տեգն ու խաչի նշաններն ամրացնելով իրենց նիզակների վրա՝ նրանք դուրս եկան, և աստված նրանց հաղթություն տվեց։ Թուրքերն ընկրկեցին նրանց առջև և, թիկունք դարձնելով,

փախուստի դիմեցին։ Երբ շատերին կոտորեցին, վերադարձան նրանց բանակատեղին և անհամար հարստություն՝ հացահատիկ, ձիեր ու անասուններ ձեռք գցեցին։ Հաղթանակի լուրը տարածվեց, և բոլոր թուրք թագավորների սիրտը ահուդող ընկավ։ Վախը տիրեց երկրի բոլոր թագավորներին։

## 249. Այն մասին, թե ովքեր էին այդ ժամանակ իշխում Ասորիքի և Կիլիկիայի կողմերում

*Արդ, Անտիոքին տիրեցին Բոհեմունդը և նրա քրոջ որդի Տանկ-
րեդը։ Սրուճում[68] այդ ժամանակ իշխում էին թուրքերը, իսկ Ջեգ-
մայի[69] և Եփրատի առափնյա շրջաններում՝ հայերը, որոնք Վա-
սակ[70] անունով մեկի որդիներն էին։ Քեսունը և Ռապանը[71] պատ-
կանում էին Գող Վասիլ[72] հային, որը ճանապարհներին մշտապես
60 ավազակություն անելու պատճառով // էր Գող կոչվել։ Սամոսա-
տում տիրում էր Բալդուքյաններից մեկը՝ Ղազի[73] թուրք անունով։
Մարաշը և Ակ լեռները գտնվում էին քրիստոնյաների՝ Փիլարտոս
Դոմեստիկոսի որդիների ձեռքում։ Անարզաբայում և Կիլիկիայում
իշխում էին հայերը՝ Ռուբենի[74] որդիները։ Տարսոնը, Մսիսը և
Ադանան ֆրանկները գրավել էին հույներից։*

## 250. Երուսաղեմի պաշարումն ու առումը ֆրանկների կողմից[75]

*Երբ ֆրանկները հզորացան, պատրաստվեցին արշավել դեպի Երուսաղեմ։ Ընթանալով ցամաքով ու ծովով, նրանք նախ պաշարեցին և մի քանի օրում գրավեցին Յաֆա[76] քաղաքը, որ գտնըվում է պաղեստինյան ծովափին։ Ապա մեկնելով այնտեղից, պաշարեցին Երուսաղեմը՝ շրջապատելով այն բոլոր կողմերից։ Նրանք ուժգին հարձակումներ գործեցին նրա վրա՝ օգտագործելով պաշարողական մեքենաներ և փայտե աշտարակներ։ Քաղաքը լցված էր ժողովրդի, եգիպտական զորքերի, զենքի ու պատերազմական մեքենաների բազմությամբ։ Երբ կռիվը թեժացավ, աստված այն հանձնեց ֆրանկների ձեռքը՝ նրանց արշավանքի երկրորդ տարում, հունաց 1409 (1098) թվականի հուլիս ամսին։ Երեսուն հազար մահմեդական սպանվեց քաղաքում, որը կողոպտվեց ֆրանկների զորքերի կողմից։ Ինչ վերաբերում է այնտեղի քրիստոնյաներին, ապա նրանք վռնդվել էին ֆրանկների գալուց առաջ։ Եվ այսպես, Երուսաղեմում թագավորեց Գոդեֆրուա մեծ դուքսը՝ ֆրանկների առաջնորդը։ Այնուհետև սփռվելով երկրում, նրանք գրավեցին Պաղեստինի և ողջ Գալիլեայի գյուղերը, բերդերն ու քաղաքները։*

## 251. Սենժիլ կոմսի կողմից Տրիպոլիի[77] պաշարման մասին[78]

*Սենժիլ կոմսը՝ ֆրանկների հետ եկած զորահրամանատար-
ներից մեկը, մեծ զորք վերցնելով, պաշարեց Տրիպոլի ՝քաղաքը։
Շրջափակելով այն՝ նա ուժգին հարձակումներ գործեց նրա վրա։
61 Քաղաքը լավ ամրացված էր եռակի պարիսպներով, || որոնցից
յուրաքանչյուրի արանքում խոր խրամներ էին փորված։ Դա մի
փոքր քաղաք էր, բայց այնտեղ շատ ժողովուրդ և քաջամարտիկ
զինվորներ կային։ Քաղաքից դուրս, Լիբանանի լեռան ստորոտին,
Սենժիլը մի բերդ կառուցեց[79] և բարձրացրեց մինչև քաղաքի դիր-
քը, որ կանգուն է մինչև այսօր։ Այսպես, նա կռիվ մղեց քաղաքի
դեմ և յոթ տարի նեղության մեջ պահեց։ Եվ աստված այն մատ-
նեց նրա ձեռքը։ Նա բազում հարստություն ձեռք բերեց և կոտո-
րեց այնտեղ գտնվող բոլոր մահմեդականներին։ Ապա գրավեց
շրջակա տարածությունները և ողջ ծովափը բացի Աշկալոն, այ-
սինքն՝ Ասկալոն[80], քաղաքից, որ դեռևս մնում էր եգիպտացիների
ձեռքում։ Դամասկոսում, Հոմսում[81], Թադմորում[82], Բոսրայում[83],
Բաալբեկում[84], Համայում[85], Հալեպում, Քիլիսում[86], Մաբբուգում[87],
Խառանում[88] և Կալլինիկոսում[89] տիրում էին թուրքերը և մեծ վնաս
պատճառում ֆրանկների գրաված երկրներին։*

## 252. Կապադովկիայի տիրակալ Դանիշմենդի[90] կողմից Անտիոքի տիրոջ՝ Բոհեմունդի գերեվարման մասին[91]

*Այդ ժամանակ Մելիտենեում իշխում էր Գաբրիել անունով մի
քաղկեդոնական, որին, ինչպես վերը հիշեցինք, կառավարիչ էր
կարգել Բուզան զորահրամանատարը։ Երբ Բուզանը սպանվեց,
քաղաքը մնաց նրա ձեռքում։ Գաբրիելը պատգամավորներ ուղար-
կեց Անտիոքի տեր Բոհեմունդի մոտ, որպեսզի նա գա Մելիտենե
և իր դստերը, որի անունն էր կիրա[92] Մորֆիա[93], կնության առնի՝
որպես օժիտ ստանալով նաև Մելիտենեն։ Բոհեմունդը ճամփա
ընկավ Մելիտենե գնալու համար, բայց երբ հասավ քաղաքի մո-
տերքը, նրա վրա հարձակվեց Դանիշմենդ տիրակալը, որն իշխում
էր Պոնտոսի և Կապադովկիայի երկրներում։ Բոհեմունդն ընկրկեց,
նրա հետ եղած ֆրանկները կոտորվեցին, իսկ ինքը գերի ընկավ։
Որոշ ժամանակ անց նա փրկագնվեց ահագին ոսկով և եկավ Ան-
62 տիոք[94]։ Անտիոքում տեր կարգելով || իր քրոջ որդուն՝ Տանկրե-
դին, նա ծովով ելավ գնաց իր բնիկ երկիրը և այնտեղ մեռավ։
Սենժիլը ևս, որը գրավել էր Տրիպոլին, այնտեղ հաստատեց որ-
դուն և ծովով գնաց իր երկիրը։*

## 253. Պուատվին[95] թագավորի արշավանքը, նրա զորքերի կործանումը և նրա միայնակ ու տխրահռչակ վերադարձը[96]

*Ֆրանկների առաջնորդներից մի ուրիշը՝ Պուատվին անունով, լսելով, որ արշավանքի ելած ֆրանկները դրավել են Ասորիքի և Պաղեստինի երկրները, իր հերթին որոշեց դնալ Պամփյուլիա ու Կապադովկիա և նվաճել այդ հյուսիսային երկրները։ Հասնելով Կոստանդնուպոլիս, նա խորհրդակցեց Ալեքս կայսեր հետ ու նրանից առաջնորդներ և ուղեկիցներ խնդրեց։ Ալեքս կայսրը խաբեց նրանց և մոլորության մեջ դցեց։ Մարդիկ տալով, նրանց հրամայեց, որ [ֆրանկներին] մոլորեցնեն մի այնպիսի անապատում, որտեղ ո՛չ ջուր լիներ, ո՛չ հարդ։ Ապա նշան արեց տեղի թուրքերին, որ շրջապատեն նրանց։ Այդպես էլ եղավ. մեծ թվով թուրքեր հավաքվեցին և հասան նրանց, որոնք արդեն տանջվել և թուլացել էին քաղցից ու ծարավից։ Թուրքերը նրանց շրջապատեցին և նետերի ամպեր արձակեցին։ Ուժ չունենալով պատերազմելու և ոչ էլ միջոց՝ փախչելու համար, նրանք պարտվեցին։ [Թուրքերը] անհամար թվով մարդկանց սրի մատնեցին և մեծ հարստություն՝ ոսկի և արծաթ խլեցին։ Իսկ Պուատվինը՝ նրանց վորադլուխը, քչերի հետ փրկվեց և վերադարձավ իր երկիրը։*

## 254. Երուսաղեմի թագավոր Գոդեֆրուայի մահվան մասին[97]

*Երկու տարի անց մեռավ Երուսաղեմի թագավոր Գոդեֆրուան,*
*թագավորությունը կտակելով իր եղբորը՝ Ուռհայի տեր Բաղդուի-*
63 *նին։ Երբ այդ լուրը հասավ Բաղդուինին, // նա Ուռհան հանձնեց*
*ֆրանկների սպատվարժան իշխաններից մեկին՝ մի խելացի մար-*
*դու, որը նույնպես կոչվում էր Բաղդուին[98], իսկ ինքը գնաց Երու-*
*սաղեմ և թագավորեց եղբոր փոխարեն։*

*Ավետյաց բլրում, այսինքն՝ Թլպաշարում[99], որը գտնվում է Մաբբուգի սահմանի վրա, իշխում էր Ուռհայի նոր տիրոջ՝ Բաղդուինի ազգականներից մեկը՝ Ժոսլին[100] անունով մի ֆրանկ։ Երբ Բաղդուինն Ուռհայում իշխանության գլուխ անցավ, Գաբրիելը, որն, ինչպես ասացինք, տիրում էր Մելիտենեին, նրան լուր ուղարկեց՝ իր դստերը կնության տալու առաջարկով, որին, ինչպես ցույց տվեցինք, պատրաստվում էր ամուսնացնել Բոհեմունդի հետ։ Այդպես էլ եղավ. Ուռհայի տեր Բաղդուինը կնության առավ կիրա[101] Մորֆիային՝ Գաբրիելի դստերը և բերեց Ուռհա։*

## 255. Դանիշմենդ ամիրայի հարձակումը Մելիտենեի վրա և վերջինիս գրավումը թուրքերի կողմից

*Դանիշմենդ ամիրան՝ Կապադովկիայի ներքին շրջանների տիրակալը, Անտիոքի տեր Բոհեմունդին գերելուց ու բազում ոսկով վաճառելուց հետո նորից հզորացավ և, զորք հավաքելով, եկավ պաշարեց Մելիտենեն ու սաստիկ նեղեց նրան։ Ներսում եղողները կռվում էին որքան կարող էին։ Սակայն երբ կռիվը իրենց ուժերից վեր դարձավ, և ընկան նեղ դրության մեջ, ոմանք խնդրեցին քաղաքի եպիսկոպոսին, որ խորհուրդ տա քաղաքի կառավարիչ Գաբրիելին հաշտություն կնքել։ Եպիսկոպոսն անդադար քաջալերում էր ժողովրդին և աղոթում նրա համար, որ մարտնչեն օր ու գիշեր։ Սակայն երբ կռիվը թեժացավ, եպիսկոպոսը Գաբրիելին հաղորդեց ժողովրդի խնդրանքը։ Անիծյալը, լսելով այդ, կարծեց, թե մեջտեղում ինչ-որ դավ կա։ Ներսը սատանա մտավ, և նա ամբարշտորեն համարձակվեց սպանել եպիսկոպոսին ու քաղաքի պատվարժան քրիստոնյաներից շատերին, հուսալով, թե դա կօգ-*
64 *նի իրեն, սակայն դա կործանեց նրան։ Այդ եպիսկոպոսը || Հովհաննեսն էր՝ Սայիդ Բար-Սաբունին[102]։ Դրսում եղողները ուժեղացնելով ճնշումը, գրավեցին քաղաքը, և Դանիշմենդը տիրեց նրան։ Իսկ Գաբրիելն սպանվեց, և նրա տունը հիմնովին՝ քանդվեց։*

## 257. Այն մասին, թե ինչպես Սրուճն անցավ ֆրանկների ձեռքը[103]

*Ուռհայի սահմանի վրա գտնվող Սրուճ քաղաքում տիրում էր Բալակ[104] անունով մի թուրք՝ Արտուքի սերունդներից։ Քաղաքն այդ ժամանակ բարգավաճ և հարուստ էր, լցված մահմեդականների և քրիստոնյաների մեծաթիվ ժողովրդով և ամեն տիպի հմուտ վաճառականներով։ Հարուստ և ծաղկուն էր նաև նրա դաշտը՝ իր բազմաթիվ գյուղակներով։ Սակայն մի կողմից՝ Ուռհայի ֆրանկները, մյուս կողմից՝ Եփրատի առափնյա շրջանների հայերը, որոնք միացել էին ֆրանկներին ու հնազանդվել նրանց, նեղություն էին պատճառում Սրուճին։ Նկատի ունենալով այդ, Բալակը խորհեց, որ Սրուճն ի վիճակի չէ դիմանալու քրիստոնյաների արանքում։ Եվ նա պատգամավորներ ուղարկեց Ուռհայի տեր Բաղդուինի մոտ՝ ուխտ և երդում պահանջելով, որպեսզի փոխադարձ պայմանավորվածությամբ Սրուճը հանձնի նրան։ Բաղդուինը, ընդունելով Բալակի պատգամավորներին, խոստացավ կա-*

*տարել նրա ցանկությունը։ Սրուճն իր միջնաբերդով հանձնվեց Բաղդուինին, որն այնտեղ նշանակեց ֆրանկների նշանավոր մարդկանցից Ֆուլչեր[105] անունով մեկին։ Իշխանության գլուխ անցնելով՝ Ֆուլչերը Սրուճից բազում ոսկի գանձեց։ Նա ձերբակալեց Սրուճի երևելի մեծամեծներից ու առաջնորդներից մեկին՝ Ուբայդ անունով մի մահմեդական արաբի՝ եղբոր և ցեղակիցների հետ միասին, որոնց տներից անասելի շատ ոսկի ու հարստություն բռնագրավեց։ Այսպես Ֆուլչերը հարստացավ և հզորացավ։*

## 258. Այն մասին, թե ինչեր եկան Սրուճի գլխին մահմեդականներից խլվելուց հետո. Բաղդուինի և Սուքմանի բախումը և քաղաքի մահմեդականների կոտորածը[106]

65 *Սուքմանը՝ // Արտուքի որդին և Բալակի հորեղբայրը, երբ լսեց, որ ֆրանկները գրավել են Սրուճը, զորք հավաքեց և եկավ պաշարեց այն, հույս դնելով քաղաքում եղած մահմեդականների շատության վրա։ Լսելով այդ, Ուռհայի տեր Բաղդուինը կռվի ելավ նրա դեմ։ Երբ բանակները մոտեցան իրար, թուրքերը դարան մտան և առջևից ու ետևից հանկարծակի հարձակվեցին ֆրանկների վրա։ Ֆրանկները պարտվեցին, և նրանցից շատերը կոտորվեցին։ Բաղդուինը ճողոպրեց Ուռհա, ապա, շտապ անցնելով Եփրատը, գնաց Անտիոք՝ զորք ձեռք բերելու և Սրուճ վերադառնալու համար։ Ֆուլչերը՝ Սրուճի կառավարիչը, գերի ընկավ, իսկ Սրուճի բոլոր քրիստոնյաները բարձրացան միջնաբերդ։ Նրանց հետ միջնաբերդ բարձրացավ նաև Սրուճում գտնվող Ուռհայի ֆրանկ եպիսկոպոսը, որի անունն էր Պապիոս[107]։ Նրանք ներս տարան նաև արհեստավորներին՝ հյուսներին ու դարբիններին, և իրենց համար պաշար կուտակեցին։*

*Թուրքերը, հաղթելով ֆրանկներին, եկան պաշարեցին միջնաբերդը և սաստիկ հարձակումներ գործեցին քրիստոնյաների վրա։ Եվ մինչ սրանք գիշեր ու զօր մարտնչում էին, մի ավետաբեր հաղորդեց, որ Բաղդուինը հասել է, և թող իրենք ներսից պատրաստ լինեն։ Երբ լուսացավ, ֆրանկներն իրենց նիզակների ծայրերին ջահեր վառեցին և այնպիսի սաստկությամբ առաջ շարժվեցին, որ գետինը դողաց նրանց ձայնից։ Իսկ ներսինները բերդից դուրս եկան նրանց օգնության։ Վախն ընկավ թուրքերի սիրտը, և նրանք պարտվեցին։ Նրանցից շատերը կոտորվեցին՝ սրի ճարակ դառնալով։ Ֆրանկները դարձան թուրքերի ճամբարը և անհամար հարստություն և ունեցվածք կողոպտեցին։ Քաղաքի*

*մահմեդականները սաստիկ վախեցան և չհավատացին, թե ֆրանկ-
ներն իրենց կխնայեն։ Նրանք հավաքվեցին, փակեցին քաղաքի
դարպասները, ապա բարձրացան պարսպի վրա և ապստամբե-*
66 *ցին // ֆրանկների դեմ՝ հուսալով, թե կարող են այն պահել մին-
չև մահմեդական թուրքերի բանակի գալը։ Ֆրանկները բազմիցս
փորձեցին նրանց համոզել, որ դադարեցնեն խռովությունը, և
երդմամբ խոստովանեցին, թե ամենևին չեն ցանկանում նրանց
կորուստը, բայց նրանք չլսեցին։ Այնժամ ֆրանկները քաղաքի
բոլոր քրիստոնյաներին կոչ արեցին խաչի նշան կրել, ապա մռն-
չալով առյուծների նման, ցատկեցին և քաղաք մտան միջնաբեր-
դից։ Նրանք մսագործների պես ընկան քաղաքի վրա և ծեր ու ջա-
հել՝ բոլորին սրի մատնեցին։ Քաղաքը լցվեց բյուրհազարավոր
սպանվածների անհամար դիակներով։ Այդ փթթուն քաղաքն ավեր-
վեց։ Իսկ քրիստոնյաները, որոնք մնացել էին այնտեղ, հավաք-
վեցին միջնաբերդի շուրջը և ապրեցին զրկանքների մեջ։*

## 259. Ջկրմիշ[108] զորահրամանատարի արշավանքը դեպի Ուռհա և նրա գործած ոճիրները[109]

*Վերոհիշյալ Կիրբուղայի պարտությունից, Սուքմանի ջախջա-
խումից, Սրուճի գրավումից և նրա մահմեդական բնակչության
կոտորածից հետո, Արևելքի Ջկրմիշ անունով զորահրամանատա-
րը պատրաստություն տեսավ և բազում զորքով ելավ պատերազ-
մելու ֆրանկների դեմ ու երկրներ ղավթելու։ Նախ շարժվեց դեպի
Ուռհա։ Նրա զինվորները, սպանելով, ավարելով, կոտորելով և
իրենց ուզած ամեն ինչ անելով, ասպատակեցին շրջակա երկիրը։
Երբ թուրքերը մոտեցան քաղաքի մատույցներին, Ուռհայում գտն-
վող ֆրանկները նրանց հետ մարտի բռնվեցին քաղաքի արևել-
յան դարպասից դուրս՝ խանգարելով մոտենալ այդ դարպասին։
Բազմաթիվ հախուռն ուռհայեցիներ վերցրին իրենց վահաններն
ու սրերը և հանդուգն կերպով դուրս եկան քաղաքից՝ թուրքերի
հետ մարտնչելու։ Վերջիններս տեսնելով, որ նրանք գալիս են ան-
կազմակերպ և շտապում են մոտենալ իրենց, մի փոքր միջոց*
67 *տվեցին, // որպեսզի ցրվեն արևելյան կամրջի դիմաց գտնվող
հարթության վրա։ Խրախուսելով միմյանց՝ [թուրքերը] պատ-
րաստվում էին բոլոր կողմերից նետվել նրանց վրա։ Երբ պարսպի
վրա կանգնածները տեսան այդ, վախենալով, որ նրանք կարող
են խառնվել իրար և թափով շրջվել ու մտնել քաղաք, փակեցին
քաղաքի դարպասները[110]։ Թուրքերը դարձան և մեծ ուժով հար-*

ձակվեցին ուռհայեցի մարտիկների վրա։ Սրանք թիկունք դարձրին և, երբ հասան դարպասներին ու տեսան, որ նրանք փակ են, դողացին ու սասանվեցին։ Չկարողանալով հասնել խրամի վրա գտնվող կամրջին, որպեսզի անցնեին պարսպի մյուս կողմը, բոլորն այս ու այն տեղ ընկան փոսը։ Թուրք հետևակայիններր հետապնդեցին և անխնա կոտորեցին նրանց։ Մի ժամում փոսը լցվեց սպանվածներով, և արյունը գետի նման հոսեց խրամով։ Այսպես, երկիրն ավերելուց ու հրդեհելուց հետո Ջկրմիշը ելավ գնաց։

## 260. Թե ինչպես Սամոսատը հանձնվեց ֆրանկներին. նաև՝ Կարկառի երկրի մասին

Սամոսատում այդ ժամանակ փոքրաթիվ թուրքերի հետ ապրում և իշխում էր Բալդուքյաններից մեկը։ Նա ոսկի ստանալով, բերդը հանձնեց Ֆրանկներին ու հեռացավ։ Հյուսիսում՝ Կարկառի[111] երկրում ապրում էին հայերը, որոնց իշխում էին Սանբիլի[112] որդիներ Կոստանդինը[113], Դավթուկը[114] և Քրիստափորը[115]։ Երկիրը բարգավաճ էր և լցված բազմաթիվ վանքերով ու մենաստաններով, որոնց թվում էին զառիվայր ժայռերի տակ գտնվող Մար Աբխայի վանքը, որ կոչվում է Սանդուղք, Բոկոտն Փեսկինի վանքը, սուրբ Գևորգի վանքը, Շիրայի սուրբ Շաբտայի վանքը և Մալքոսի վանքը՝ բարեբեր գյուղերով, ավաններով ու ագարակներով[116]։ Դրանք բնակեցված էին բազմամարդ ժողովրդով՝ բոլորն էլ ուղղափառ[117]։
68 Իսկ այն հայերը, որոնք, ինչպես ասվեց, իշխում // էին նրանց, հնազանդություն էին հայտնել ֆրանկներին։

## 261. Ֆրանկ թագավորների հավաքն Ուռհայում, որ հանգեցրեց մեծ աղետի

1414 (1103) թվականին, երբ ֆրանկները բոլոր երկրներում ուժեղացել էին, նրանց թագավորներն իրենց բազմաթիվ զորքերով հավաքվեցին և միասնաբար եկան Ուռհա՝ գեպի արևելք շարժվելու և երկրներ զավթելու համար։ Սակայն ըստ իրենց վատ սովորության՝ մեծամտությունից համաձայնության չգալով իրար հետ, որոշ ժամանակ մնացին Ուռհայում և վիճեցին թուրքերի ձեռքում գտնվող քաղաքները բաշխելու շուրջը։ Մեկը պահանջում էր Նփրկերտը, մեկը՝ Ամիդը, մյուսը՝ Մծբինը, մի ուրիշը՝ Մոսուլը, և մինչև իսկ վիճակ գցեցին նրանց վրա, որ ծիծաղելի է արժանի։ Այսպա նրանք պատրաստվեցին դիմել դեպի Մծբին։ Իսկ թուրքերը, լսելով ֆրանկների այդ հավաքի մասին, իրենք նույնպես հավաք-

վեցին հազարներով ու անհամար բյուրերով։ Եվ մինչդեռ ֆրանկները Ուռհայում հապաղելով վիճում էին երկրներ բաշխելու շուրջը, մեծ թվով թուրքեր հավաքված սպասում էին, թե երբ են ֆրանկները դալու, որպեսզի ճակատամարտ տան նրանց։

## 262. Ֆրանկ թագավորների պառակտման մասին

Երբ ֆրանկները մեկնեցին Ուռհայից, նրանց ուղեկցում էր քաղաքացիների մի մեծ ամբոխ՝ գրավվելիք վայրերում ավար ձեռք բերելու, հարստանալու և թուրք ու արաբ[118] գերիներ ստանալու նպատակով։ Սա մի հզոր բանակ էր, որը հասնելով Խառանի դաշտը, անցավ արևելյան կողմով և մոտեցավ Աբրահամի տանը[119], որ կոչվում է Դահբանահ։ Այնտեղ կա մի մեծ մզկիթ՝ մահմեդականների աղոթատեղի։ Խառանցիները դողացին ֆրանկներից և, առնելով քաղաքի բանալիները, եկան նրանց առաջ խոնարհվելու և հնազանդություն հայտնելու։ // Իսկ Բաղդուինը՝ Ուռ-
69 հայի տերը, մտածում էր. «Խառանն իմն է և գտնվում է իմ սահմաններում։ Եթե այժմ գրավենք այն, թագավորները կտիրեն նրան, մեզ հետ եղած հսկա զորքը կմտնի ներս և կողոպուտ ու հափշտակություններ կգործի՝ թուլացնելով քաղաքը և վնաս պատճառելով ինձ»։ Ուստի նա վերադարձրեց բանալիներն ու ասաց. «Դուք իմն եք, գնացեք պահպանեցեք քաղաքն ինձ համար, մինչև մենք վերադառնանք, և մեզ հետ եղող օտար ժողովուրդները ցրվեն»։ Տանկրեդը՝ Անտիոքի տերը, և մյուս թագավորները, լսելով այդ, խիստ դժգոհեցին և ցասումով լցվեցին Բաղդուինի հանդեպ։ Ապա ասացին նրան. «Դու ճիշտ չվարվեցիր. ավելի լավ կլիներ, որ հիմա գրավեինք այս ամուր քաղաքը և տիրեինք նրան, ապա մեր ժողովրդի ավելցուկը թողնելով այնտեղ, զինված հարձակում գործեինք մոտերքում գտնվող թշնամիների վրա։ Եթե աստված մեզ հաղթանակ տա, ոչ ոք չի խլի քեզնից քաղաքը։ Ի դեպ, երբ մեր թշնամի թուրքերը լսեն, որ այսպիսի քաղաք ենք գրավել, սրտապատառ կլինեն։ Իսկ եթե, քավ լիցի, պարտվենք, մեզ համար մոտիկ ապաստան կլինի»։ Սակայն այդ հարցում Բաղդուինը չհամաձայնեց նրանց հետ։

## 263. Ֆրանկների պարտությունը և նրանց ջախջախումը Բալիկ[120] գետի ափին, ինչպես նաև Ուռհայի տեր Բաղդուինի և Թլպաշարի կոմս Ժոսլինի գերությունը[121]

Ֆրանկները ելան Դահբանահից և դիմեցին դեպի Բալիկ գե-

տը։ Մեկնեց նաև Տանկրեդը, բայց քանի որ նա զայրույթով էր լցված, միշտ վերջինն էր տեղից շարժվում ու դանդաղ[122] ընթանում։ Երբ մոտեցան գետին, հանկարծակի վրա հասան բյուրհազարավոր թուրքերի անհամար զորքերը։ Հանդիպելով իրար, նրանք ֆրանկներին խոցոտեցին նետերով, որոնք թափվում էին նրանց գլխին անձրևաբեր ամպերի նման։ Ֆրանկներն ահուդողի մեջ ընկան և սասանվեցին։ Թուրքերը քաշեցին իրենց սրերը և սկսեցին
70 կոտորել առջևիններին։ Տանկրեդն ու իր հետ եղողները, // որ գալիս էին ետևից, երբ տեսան, որ առջևինները սրի մատնվեցին. երեսները շրջեցին ու փախան՝ լքելով նրանց։ Թուրքերը, ուժեղացնելով ճնշումը, դիմեցին անխնա կոտորածի, շատերին էլ բռնելով ստրկության քշեցին։ Ողջ-առողջ գերի բռնվեց նաև Ուռհայի տեր Բաղդուինը իր ազգականի՝ Թլպաշարի տեր Ժոսլին կոմսի հետ, որը մի քաջասիրտ մարդ էր։ Նրանց վրա ծանր կապանքներ դրին և կողոպտեցին նրանց ճամբարը՝ զենքերը, ձիերն ու անհամար ունեցվածքը։ Բաղդուինին ու Ժոսլինին թուրքերը գերության տարան և շղթայված հասցրին Մոսուլ, որտեղ նրանք թագավորեցին իրենց սպասածի հակառակ ձևով[123]։ Իսկ Անտիոքի տեր Տանկրեդը, գալով Ուռհա, մի քանի օր հանգիստ առավ, կերավ, խմեց ու իշխեց ինչպես ուզում էր։ Ապա այնտեղ կարգեց իր հետ եղած մեծամեծներից Ռիչարդ[124] անունով մեկին և, մեծ հարստություն ու ձիեր վերցնելով, գնաց Անտիոք։

## 264. Ուռհայում Ռիչարդի իշխանության և ուռհայեցիներին պատճառած վատությունների մասին[125]

Երբ Ուռհայում իշխեց Ռիչարդը, որը չար, դաժան, անիրավ ու ագահ մարդ էր, նենգամիտ ուռհայեցիներն իրենց վատությունը դրսևորելու հնարավորություն ստացան և սկսեցին ամբաստանել միմյանց. ով ում դեմ քեն ուներ, գտավ առիթը։ Իսկ նա սկսեց չարչարել ուռհայեցիներին դառն տանջանքներով, բանտերով ու հափշտակումներով և ահագին ոսկի կուտակեց։ Նա գիտակցում էր, իհարկե, որ ինքը ժամանակավոր ու պատահական մեկն է, և ոչ թե օրինական տեր կամ ժառանգորդ։

## 265. Այն մասին, թե ինչպես Բաղդուինը և Ժոսլինը ազատվեցին ստրկությունից

Մինչդեռ Ուռհայի տեր Բաղդուինը և նրա նշանավոր ազգական Ժոսլինը բանտարկված էին Մոսուլում, ոչ ոք չէր հոգում

նրանց փրկության մասին, քանի որ Տանկրեդը զայրացած էր
71 նրանց դեմ, // իսկ Ռիչարդը գրավել էր նրանց տիրույթներն ու կառավարում էր իր ուզածի պես։ Բաղդուին և Ժոսլին իշխանները խորհրդակցեցին բանտում, և Բաղդուինն ասաց Ժոսլինին. «Տվյալ պահին իմ փրկությունը դժվար է անվանս մեծության պատճառով. աշխատենք, որ նախ՝ դու դուրս գաս, ապա՝ հոգաս նաև իմ փրկության մասին»։ Ժոսլինի համար փրկագին սահմանվեց տասներկու հազար դինար։ Նա այդ գնի համեմատ բերել տվեց տասներկու պատանդ իր ազնվական ազգականներից, ապա ելավ գնաց հավաքելու իր փրկագինն ու հոգալու նաև Բաղդուինի մասին։ Մինչդեռ նա զբաղված էր դրանով և ոսկի էր հավաքում, պատանդները որոնք պահվում էին Մոսուլում, ծակելով բանտի պատը, փախան ու ողջ-առողջ փրկվեցին։ Այսպես կատարվեց Ժոսլինի ու նրա պատանդների փրկությունը՝ առանց որևէ վնասի։ Այնուհետև նա սկսեց հոգալ Բաղդուինի մասին։ Միջնորդությունը հանձն առավ մի մահմեդական, որը տիրում էր Եփրատի վրա գտնվող և Կալա-Ջաբար[126] անունը կրող բերդին։ Նա անվանի մարդ էր և լավ միջնորդ։ Բաղդուինի համար փրկագին սահմանվեց յոթանասուն հազար «Միքիլատես»[127] դինար։ Երբ Ժոսլինը հավաքեց մոտ քսանհինգ[128] հազար դինար, վերցրեց դրանք, անձամբ եկավ Կալա-Ջաբար և իրեն պատանդ դրեց մնացած գումարի դիմաց։ Ամիրան այդ դրամը սուրհանդակների միջոցով ուղարկեց Մոսուլ և երաշխավորեց մնացածի [վճարումը]՝ Ժոսլինին պահելով իր մոտ։

Այդ ժամանակ Մոսուլում հաստատվել էր մի նոր զորահրամանատար՝ [Ջավլի][129] անունով, որը թեև լսել էր Ժոսլինի մասին բայց անձամբ նրան չէր տեսել։ Երբ նա իմացավ, որ Ժոսլինը կրրկին հանձնվել է մահմեդականների ձեռքը և իր անձը գրավ դրել այդ ամբողջ ոսկու դիմաց, ցանկացավ տեսնել նրան։ Սուրհանդակներից ստանալով քսանհինգ[130] հազար դինարը և ընդունելով
72 Կալա-Ջաբարի ամիրայի երաշխավորությունը // մնացած քառասունհինգ հազարի համար, նա Բաղդուին կոմսին ազատ արձակեց։ Ապա զորահրամանատարը լուր ուղարկեց և պահանջեց Ժոսլինին՝ նրան տեսնելու համար, քանի որ լսել էր, թե սքանչելի, քաջամարտիկ և փառավոր մարդ է։ Կալա-Ջաբարի ամիրան հագցրեց Ժոսլինին, նրան տվեց մի հոյակապ ձի ու ֆրանկական զենք-ուզրահ և ուղարկեց Մոսուլ։ Երբ Ժոսլինը Մոսուլ հասավ, զորահրամանատարը հավաքեց իր նշանավոր մարտիկներին, որոնք զինված ասպարեզ մտան։ Զորահրամանատարը հրամայեց Ժոսլինին ձիով արշավել իր առջև։ Արշավելիս սա սկսեց խաղացնել

*ձեռքի նիզակը և այս ու այն կողմ շրջվել: Դա շատ դուր եկավ զորահրամանատարին, որի համար Բաղդուինի փրկագնից տասը հազար դինար զիջեց նրան: Ապա Ժոսլինն իջավ ձիուց և, համբուրելով գետինը նրա առջև, շնորհակալություն հայտնեց: Իր առջև ծնրադրելու համար [հրամանատարը] զիջեց ևս տաս հազար: Իսկ երբ քաղաք վերադարձան և նրա պատվին խնջույք տվեց, խնջույքի ժամանակ պակասեցրեց ես տաս հազար դինար: [Ժոսլինը] Մոսուլում մնաց մի քանի օր, և զորահրամանատարը մեծ սիրալիրություն ցույց տվեց նրա նկատմամբ: Ապա երդվեց ու երդվեցրեց, որ քանի ողջ են, չեն հակառակի միմյանց, այլ ընդհակառակն՝ անհրաժեշտության դեպքում կօգնեն իրար: Ժոսլինին նվերներ տալով՝ նա լիովին ազատ արձակեց նրան, զիջեց Բաղդուինի փրկագնի մնացած մասն էլ և խաղաղությամբ ճանապարհ դրեց: Այսպես նրանք երկուսն էլ ազատվեցին աստծու օգնությամբ:*

## 266. Բաղդուինի և Անտիոքի տիրոջ՝ Տանկրեդի միջև ծագած պատերազմի ու Բաղդուինի պարտության մասին[131]

*Երբ Բաղդուինն ու Ժոսլինը ազատվեցին, Ռիչարդը, որ գնացել էր Ուռհան, հավաքեց, ինչ որ հափշտակել էր այնտեղ, և գնաց Մարաշ՝ իր երկիրը: Բաղդուինն ու Ժոսլինը, Ուռհա գալով, իմացան ամեն ինչ, որ արել էին Տանկրեդն ու Ռիչարդն Ուռհայում:*
73 *Նրանց թշնամանքն ու ատելությունը, // որ ի սկզբանե տածում էին միմյանց նկատմամբ, ավելի ևս սաստկացան: Ապա պատրաստվեցին պատերազմել ու կռվի բռնվել իրար հետ: Ժոսլինը լուր հասցրեց Մոսուլի տիրակալին, որը նրան օգնության ուղարկեց բազմաթիվ թուրք զինվորներ: Բանակները շարժվեցին դեպի Դուբայեհի[132] երկրները՝ Կուրուսի[133] և Տլուքի[134] միջև: Նշանակված օրը մարտակարգերը բախվեցին իրար, և երկինքը փոշով ծածկրվեց: Թուրքերը թիկունք դարձրին և անտիոքացիները հետապնդելով նրանց, կարճ ժամանակում կոտորեցին: Իսկ Բաղդուինն ու իր հետ եղողները փրկություն գտան փախուստի միջոցով: Այսպես ավարտվեց նրանց ճակատամարտը: Որոշ ժամանակ անց նրանք զղջացին ու հաշտվեցին իրար հետ, և նրանց միջև մեծ ու իսկական բարեկամություն հաստատվեց:*

## 267. Մավդուդի[135] առաջին արշավանքը դեպի Ուռհա[136]

*Այդ ժամանակ, որ 1417 (1106) թվականն էր[137], երբ ֆրանկ թագավորները հաշտվեցին իրար հետ, Արևելքի Մավդուդ անունը*

*կրող հրամանատարն ու տիրակալը, պատրաստություն տեսնելով, անհամար զորք հավաքեց և նախ և առաջ մեծ ուժով շարժվեց դեպի Ուռհա։ Հազարներով ու անհամար բյուրերով նա բանակ դրեց արևելյան դաշտից ցած, ամրոցի շրջակայքում։ Ապա նա բազմաթիվ հեծյալներ ուղարկեց՝ երկիրն ասպատակելու համար։ Նրանք սկսեցին կտրատել այգիներն ու ծառերը, ապականել հողն ու քանդել վանքերը։ Սակայն նրանք ընդհուպ չմոտեցան քաղաքին՝ ճակատ տալու կամ մանգղիոններ[138] ու բաբաններ տեղադրելու համար, այլ մերձենում և ետ էին դառնում։*

## 268. Ուռհային ֆրանկների օգնության գալու մասին[139]

*Երբ ֆրանկներն Անտիոքում լսեցին, որ Մավդուդը պաշարել
է Ուռհան, արագորեն հավաքվեցին՝ Ուռհա գնալու համար և փու-
թապես եկան անցան Եփրատը։ Թուրքերը լսելով ֆրանկների գա-*
74 *լը, քանդեցին // իրենց ճամբարները, որտեղ բանակ էին դրել,
մի փոքր հեռացան և ամրացան Գալաբ[140] գետի ափին։ Իսկ ֆրանկ-
ները, երբ հասան, բանակեցին այն վայրում, որտեղ Մավդուդն
էր հաստատվել։ Ուռհային օգնության եկող ֆրանկներն էին՝ Երու-
սաղեմի թագավոր Բաղդուինը՝ Ուռհայի նախկին տերը, Սենժիլի
որդին՝ Տրիպոլիի կոմսը[141] և Տանկրեդն՝ Անտիոքից։ Նրանք մի
հսկա բազմություն էին կազմում՝ անթիվ բեռներով ու ձիերով։
Սակայն հացահատիկ և հարդ չունեին, քանի որ Մավդուդն ավերել
էր երկիրը։ Գյուղացիներից շատերը փակվել էին քաղաքում և
նեղվում էին կարիքից։ Ֆրանկները, որոնք համբերություն չունեն,
իրենց վաստ սովորության համաձայն խորհեցին անցնել Եփրատից
արևմուտք, որպեսզի տեսնեն, թե ուր է ուղղվում թշնամին, և կա-
րողանան հոգալ իրենց կարիքները։*

## 269. Ֆրանկների հետ Եփրատ հասած ժողովրդի կողոպուտի ու կորստյան մասին[142]

*Այս մեծ բազմությունը, որ գնում էր Սամոսատի ճանապարհով, վերջ չուներ, քանի որ նրան ուղեկցում էին քաղաքից ու երկրից հավաքված շատ մարդիկ։ Մի ֆրանկ, զայրանալով իր տիրոջ՝ մեծամեծներից մեկի վրա, սատանայի դրդմամբ ու առաջնորդությամբ դարձավ եկավ թուրքերի ճամբարը, որն, ինչպես ասացինք, գտնվում էր Գալաբ գետի ափին։ Մտնելով Մավդուդի մոտ, նա ասաց. «Ահա ֆրանկների անվերջ բազմությունը փախչում է՝ թուլացած քաղցից և հոգնած ճանապարհի դժվարություններից։ Եթե*

տապ հետապնդես նրանց, մեծ նախճիր կգործես նրանց մեջ»։ Մավդուդի հրամանով ճամբարում կոչնակներն անմիջապես ազդարարեցին և հնչեցրին շեփորները։ Ապա զինվորներից ամենաքաջերն ու խիզախները հեծան [ձիերը] և հետապնդեցին ֆրանկներին։ Իսկ ֆրանկները, տեղյակ չլինելով կատարվածին, ետուառաջ չէին նայում։
75 Այդ պատճառով, երբ հասան Եփրատին, [ն]ախ և առաջ դիմացի ափ անցան մարտունակ զորքերը, իսկ ողջ ժողովուրդը հետևակի և բեռների հետ մնաց մյուս ափին։ Եվ քանի որ Տերն այդ ժամանակ զայրացած էր այդ բազմության, մանավանդ, ուռհայեցիների վրա, որոնք նրա մեծ մասն էին կազմում, Թուրքերը հանկարծակի վրա հասան և, մսագործների նման ընկնելով նրանց մեջ, անխնա կոտորեցին նրանց։ Սպանվածներից ավելի եղան Եփրատ գետում խեղդվողները՝ խոցոտված թուրքերի նիզակներից։ Շատ շատերն էլ գերի ընկան։ Հետո Թուրքերը կողոպտեցին նրանց ունեցվածքն ու բեռները։ Այս եղավ ֆրանկների գալստյան տխուր վախճանը։ Իսկ Մավդուդը ելավ գնաց իր երկիրը։

## 270. Մավդուդի կողմից Ուռհայի դեմ ձեռնարկված երկրորդ արշավանքի և [քաղաքի] ճանձնման դավաճանական գործարքի մասին[143]

Հաջորդ տարի, հնձի ժամանակ, Ասորեստանի տիրակալ Մավդուդ զորագլուխը անհամար զորքերի հետ միասին, ոտքի կանգնելով, երկրորդ անգամ ուղղվեց դեպի Ուռհա և եկավ պաշարեց քաղաքը։ [Թուրքերը] կերան ու փչացրին երկիրն ու բերքը և կրտրատեցին մնացած այգիներն ու պարտեզները։ [Մավդուդը] շրջափակեց քաղաքն ու նեղ դրության մեջ գրեց նրան, ապա սկսեց ուժգին հարձակումներ գործել և կատաղի մարտեր մղել նրա դեմ։ [Կ]ռիվը տևեց ամբողջ ամառը, և ներսում եղողների նեղությունը սաստկացավ [պարենի] պակասից։ Նրանց մարմինները խիստ [հ]յուծվեցին, քանի որ տարեցտարի ցանում ու չարչարվում էին, բայց [բերք] չէին հավաքում։ Մավդուդը նրանց լուր ուղարկեց և շատ բաներ խոստացավ՝ ասելով. «Ինչո՞ւ եք այդքան չարչարանքներ կրում, ինձ հանձնեցեք քաղաքը, և դուք շատ բարիքներ կտեսնեք»։ Ուռհայեցիները հաշտության պատասխան չտվին։ Սակայն հայերից ոմանք, մոտ քսան մարդ, գաղտնի համաձայնություն եկան Մավդուդի հետ՝ քաղաքը հանձնելու խնդրում և նախապատրաստեցին այդ գործը[144]։ Դրանից հետո [Մավդուդը] վե-

րացրեց քաղաքի պաշարումը և գնաց շրջապատեց Սրուճը, որպես-
76 զի ուռհայեցիները // կարծեն, թե նա հեռանում է, և թուլացնեն
պարսպի հսկողությունը։
Քիչ ժամանակ անց, կիրակի օրվա լուսաբացին, կեսգիշերից
հետո, [թուրքերն] արագորեն եկան արևելյան կողմի պարտեզ-
ների ցանկապատերի արանքով, որպեսզի չնկատվեն։ Իրենցից
ընտրելով քաջամարտիկ պատերազմողների, նրանք պայմանա-
վորված տեղում ոտքով մոտեցան քաղաքի պարսպին։ Այն գտնը-
վում էր քաղաքի արևելյան կողմում, ներքին կամրջից ներս, որը
գցված էր ջրով լիքը խրամի վրա։ Դա գործողության համար հար-
մար մի անկյուն էր՝ ընդարձակ տարածությամբ։ Այնտեղ կար
անկյունավոր մի մեծ բուրգ, որին հսկում էր Կուրեշ անունով մի
անվանի մարգ՝ քաղաքի մեծամեծներից։ [Թուրքերն], արդ, ինչ-
պես պայմանավորվել էին, հավաքվեցին այնտեղ։ Դավաճանները
դրսում եղողներին պարաններ իջեցնելով, քաշեցին մետաքսյա
սանդուղքները և ամրացրին պարսպին։ Երբ նրանք սկսեցին մա-
գըլցել, նույն պահին պահապանները նկատեցին և աղաղակ բարձ-
րացրին։ Հետո գույժ տարածվեց, թե «Թշնամիները պարսպի վրա
են»։ Իսկ դրսում գտնվող թշնամիները աղմուկ հանեցին քաղաքի
արևմտյան կողմից՝ թմբկահարելով ու շեփորներ հնչեցնելով, որ-
պեսզի քաղաքացիները կարծեն, թե կռիվն այնտեղ է, և բոլորն
այն կողմ ուղղվեն, իսկ դավաճանները հանգիստ կերպով կարո-
ղանան [թուրքերի] բազմությունը պարիսպ բարձրացնել։ Ով
հայտնվում էր այն կողմում և անձնատուր չէր լինում, նրան սպա-
նում էին։ Իսկ Կուրեշը, հակառակ իր կամքի, վախից լռեց և թո-
ղեց, որ նրանք կատարեն իրենց գործը։ Երբ մոտավորապես
վաթսուն հոգի բարձրացան բուրգը, լուսացավ, և բոլորը թուրքե-
րին տեսան պարսպի վրա։ Թուրքերն սկսեցին ցրվել այս ու այն
կողմ։ Ֆրանկներն ու նրանց առաջնորդները խուճապի մատնվե-
ցին՝ տեսնելով, որ քաղաքում դավաճաններ են հայտնվել, դրսում
կանգնած են թշնամիները, պարիսպը լցված է թուրքերով, իսկ
մարդիկ փախչելով ապաստան են որոնում իրենց տանը և ընտա-
նիքում։ Սակայն Ժոսլին կոմսը՝ Թլպաշարի տերը, որը գտնվում
77 էր Ուռհայում, խիզախորեն // ոգեշնչված բարձրացավ այդ
կողմի պարիսպը և մոտեցավ թշնամիներին։ Երբ նրան տեսան,
բոլորը հավաքվեցին մեծ բուրգի վրա և, կանգնելով ամենաբարձր
հարթակին, սկսեցին նրա վրա բազում նետեր ու քարեր արձակել։
Համարձակորեն մտնելով այդ բուրգը, որի հարթակին նրանք
կանգնած էին, [Ժոսլինը] հանեց իր սուրը պարսպի մեջ բացված

պատուհանից, որտեղից պատերազմի ժամանակ նետեր են արձակում, և կտրեց սանդուղքը։ Նրա վրա կային բազմաթիվ մարդիկ, որ մագլցում էին. բոլորն էլ ընկան ու ջախջախվեցին։ Այդ տեսնելով՝ վերևում եղողները հուսահատվեցին և սրտակտուր եղան։ Իսկ Ժոսլինը դեպի հարթակ տանող ելքով խիզախորեն բարձրացավ թուրքերի մոտ։ Վերևից նրան քարկոծեցին ու կոտրեցին նրա վահանը։ Բարձրացավ երկրորդ անգամ, ու նորից քարկոծեցին։ Նրա վահանն ամբողջովին ջարդվեց։ Կրկին ոգեպնդվեց և, վերցնելով հարդով լիքը մի պարկ, որի վրա քնում էին պահապանները, դրեց գլխին ու կատաղած բարձրացավ նրանց մոտ։ Նրանք փախուստի դիմեցին, և [Ժոսլինն] իր ձեռքում բռնած սրով կոտորեց շատերին, իսկ մյուսները նետվեցին այս ու այն կողմ և ընկնելով ջախջախվեցին։ Այսպես ձախողվեց այդ ծրագիրն ու գլուխ չեկավ, և Մավգուդը ելավ գնաց իր երկիրը։ Մավդուդի գնալուց հետո ֆրանկները փնտրեցին դավաճաններին և, ձերբակալելով մեղավոր ու անմեղ շատ մարդկանց, կտրեցին նրանց ձեռքերն ու քթերը և կուրացրին աչքերը։ Շատերը տանջամահ եղան, շատերին էլ սպանեցին։

## 271. Մավդուդի սպանության և Անտիոքի տիրակալ Տանկրեդի մահվան մասին[145]

Տարիներ անց Մավդուդը նորից արշավեց դեպի արևմուտք և եկավ Դամասկոս։ Ավերելով, կողոպտելով, սպանելով ու գերեվարելով նա մտավ Պաղեստինի ու Գալիլեայի երկրները և հասավ Դամասկոս։ Մի ուրբաթ օր, երբ նա մահմեդականների սովորության համաձայն մտավ աղոթելու մեծ մզկիթում, իսմայելիտ-
78 ներն[146] այնտեղ սպանեցին նրան։ // Այդ տարի մեռավ նաև Տանկրեդը՝ Անտիոքի տերը։ Եվ քանի որ նա զավակ չուներ, նրանից հետո թագավորեց նրա Ռոջեր[147] անունով քեռորդին, որը մի մեծամիտ պատանի էր։

## 272. Ազազ[148] բերդի պաշարումը ֆրանկների կողմից[14]

Ռոջերը, որը, ինչպես ասացինք, թագավորեց Անտիոքում իր քեռու՝ Տանկրեդի փոխարեն, մեծամիտ մարդ էր, բայց փառահեղ կազմվածք ուներ։ Նա ամուսնացավ Ուռհայի կոմս Բաղդուինի քրոջ հետ, կորք հավաքեց ու եկավ պաշարեց Ազազ կոչվող անառիկ բերդը, որը գտնվում է Կուրոսի դաշտում։ Կատաղի հարձակումներ ձեռնարկելով՝ նա զետնի տակ խորշեր փորեց և դրանք հա-

ցրբեց մինչև պարիսպը։ Հետո նրա տակը քանդելով՝ փայտ լցրին ու կրակ տվին։ Պարիսպը երերաց ու փլվեց։ Ֆրանկները գոտեպնդված նետվեցին դեպի ճեղքվածքը և գրավեցին բերդը՝ որի մատնելով այնտեղ գտնվող բոլոր մահմեդականներին։ Այսպես Ճոսլենը տիրեց այդ նշանավոր բերդին։

## 273. Մարաշի ավերումը երկրաշարժից և Բաղդուինի ու Ժոսլինի տարաձայնությունը

Հունաց 1422 (1111) թվականին, նոյեմբեր ամսի 29-ի կիրակի օրվա լուսաբացին սաստիկ երկրաշարժ տեղի ունեցավ։ Գերմանիկեն, այսինքն՝ Մարաշը, քանդվեց ու հիմնովին կործանվեց, ավերվեցին նրա շինությունները, փլվեցին բոլոր պարիսպները։ Օտարներին չհաշված՝ զոհվեց քառասուն հազար մարդ, ինչպես նաև հարյուրից ավելի քահանա ու սարկավագ։ Ավերվեցին նաև Հիսն-Մանսուրը և բազմաթիվ այլ բնակավայրեր։

Այդ տարի Ուռհայի տեր Բաղդուինը զայրացավ Ավետյաց բլրի տիրոջ՝ Ժոսլինի վրա, բանտարկեց նրան ու շատ նեղություն պատճառեց։ Բանտից դուրս գալուց հետո վերջինս գնաց Երուսաղեմի թագավոր Բաղդուինի մոտ, որն ընդունեց նրան, մեծ սիրալիրություն ցույց տվեց և նշանակեց Տիբերիա քաղաքի ու ողջ
79 Գալիլեա երկրի տեր։ Այնտեղ // նա մի որդի ունեցավ, որին կոչեց իր անունով՝ Ժոսլին[150]։

Այդ ժամանակ մեռավ Ռիդվանը[151], որ տիրում էր Հալեպում։

## 274. Մավդուդից հետո Ասորեստանում տիրակալած զորագլխի, դեպի Ասորիք ձեռնարկած նրա արշավանքի ու պարտության մասին[152]

Քանի որ թուրքերի մեծ սուլթանը նստում էր Պարսից երկրում և մշտապես զորահրամանատարներ էր ուղարկում արևմտյան երկրների բոլոր կողմերը, որոնք իշխելով այդ կողմերում, մնում էին նրա գերիշխանության և հրամանի տակ, այդ պատճառով երբ, ինչպես ցույց տվեցինք, Մավդուդը մեռավ Դամասկոսում, Ասորեստան ուղարկվեց մի զորագլուխ և կուսակալ՝ Բուրսուխ[153] անունով։

Նա բազում զորքով արշավանքի ելավ և նախ և առաջ եկավ պաշարեց Ուռհան՝ քանդելով նրա այգիներն ու բազում ոճիրներ գործելով երկրում։ Ապա անցնելով Եփրատը, նա գնաց պաշարեց Հալեպի գավառը, որքան կարող էր վնաս պատճառեց քրիստոն-

յա երկրներին ու վերադարձավ Ասորեստան։ Հաջորդ տարի նա նորից ելավ և, ինչպես սովորությունն էր, եկավ Ուռհա՝ ավերելով երկիրն ու փչացնելով բերքը։ Ապա գնաց Հալեպ և պատրաստվեց պատերազմել ֆրանկների դեմ։ Ֆրանկները նույնպես հավաքեցին իրենց զորքերը և բանակ դրին Հալեպի և Անտիոքի միջև ընկած մի վայրում։ Կռվի պատրաստություն տեսնելուց հետո, հունաց 1427 (1116) թվականին, մարտակարգեր կազմեցին, հնչեցրին շեփորներն ու խփեցին թմբուկները, և աստված ֆրանկներին հաղթություն տվեց։ Թուրքերը պարտվեցին ու սրի քաշվեցին, նրանց ճամբարը ավարի մատնվեց, իսկ Բուրսուխը քչերի հետ փախուստի դիմեց։

### 275. Այն մասին, թե ինչպես Պիր[154] ամրոցը հանձնվեց ֆրանկներին[155]

Պիր կոչվող անառիկ ամրոցին տիրում էր մի հայ՝ Ապլղա-
րիպ[156] անունով։ Ուռհայի տեր Բաղդուինը իր ազգականներից մե-
կի՝ Գալերան[157] անունով փառահեղ պատանու և բազում ֆրանկ
80 զինվորների հետ եկավ պաշարեց այդ ամրոցը։ // Պաշարումը եր-
կար տևեց, քանի որ այն հնարավոր չէր կռվով գրավել, այլ միայն
շրջափակումով։ Երբ, ինչպես ասացինք, պաշարումը երկարաձգ-
վեց, Ապլղարիպը նեղն ընկավ, որովհետև տեսավ, որ օգնության
հասնող չկա։ Ապա նա հանձնեց ամրոցը Բաղդուինին՝ պայմանով,
որ Գալերանը կնության առնի իր դստերը։ Ամրոցը դարձավ նրա
աղջկա օժիտը, և այսպես Պիրը հանձնվեց ֆրանկների ձեռքը։

### 276. Երուսաղեմի թագավորի մահը, Ուռհայի տեր Բաղդուինի թագավորումը Երուսաղեմում և Ժոսլինի թագավորումը Ուռհայում[158]

1425 (1114) թվականին Ուռհայի տեր Բաղդուինը գնաց Երուսաղեմ աղոթելու։ Իսկ Երուսաղեմի թագավոր Բաղդուինը զորք հավաքեց և մտավ Եգիպտոսի սահմանները՝ Ֆարմի[159] կոչվող վայրում։ Սակայն վրա հասավ նրա վախճանը, ու նա հրամայեց, որ իրեն տանեն թաղեն եղբոր՝ Գոդեֆրուայի գերեզմանում, իսկ իրենց թագավոր կարգեն Ուռհայի տեր Բաղդուինին։ Այդպես էլ եղավ. Բաղդուինը թագավորեց Երուսաղեմում, հետո Տիբերիայից կանչեց Ժոսլին կոմսին և հաշտվեց նրա հետ։ Այսպիսով, Բաղդուինն այդ ժամանակ թագավորում էր Երուսաղեմում, իսկ Ժոսլինը՝ Տիբե-

րիայում։ Գալով Տիբերիա, Ժոսլինը բազում սխրանքներ էր գործել և աՀաբեկել բոլոր մյուս Հարևաններին[160]։

## 277. ԿԱՐԿԱՌԻ ԵՐԿՐՈՒՄ ԲԱԼԱԿ ԹՈՒՐՔԻ ԳՈՐԾԱԾ ՈՃԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Կարկառի երկրում այդ ժամանակ իշխում էր մի Հայ՝ Միքա-
յել[161] որդի Կոստանդնի անունով, որը Մարաշի ավերիչ երկրաշար-
ժի օրերին գտնվում էր Սամոսատի բանտում։ Այս Միքայելը, որ
մի մեծամիտ պատանի էր, մեծ վնաս էր պատճառում բոլորին՝
կողոպուտի և ավազակությունների մատնելով ողջ շրջակա վայ-
րերը։ Իսկ Անձիտի[162] երկրում և Հիսն-Զիադում[163] իշխում էր Բա-
լակ Թուրքը՝ Արտուքի սերունդներից, որը մի ժամանակ տիրում էր
Սրուճին։ Նա անընդՀատ լուր էր ուղարկում այս Միքայելին և Հա-
81 մոզում, որ ձեռք քաշի // չարագործություններից ու թույլ չտա,
որ իր ավազակները վնասեն վաճառականներին ու ճանապար-
Հորդներին։ Բայց նա չէր Համոզվում, և մարդիկ միշտ գանգատ-
վում էին Միքայելից Բալակի մոտ։ Վերջինս, չՀամբերելով, խըս-
տաշունչ դեկտեմբեր[164] ամսին Հավաքեց Թուրքմենների մի մեծ
բազմություն՝ Կարկառի բարեշեն երկիրն ասպատակելու Համար։
Տիրոջ կամքը զորավիգ եղավ նրան, օգնեց ու առաջնորդեց՝ նրա
առջև սառեցնելով աՀռելի Եփրատ գետը։ Մի ժամվա ընթացքում
նա և բոլոր Թուրքմեն զինվորները անցան մյուս կողմը։ Եթե
ստիպված լինեին շարժվել ծանծաղուտով, Հինգ օրում չէին կա-
րողանա անցնել։ Երեկոյան Հասան երկրի սաՀմանները, և նրա
զինվորները ղարանակալեցին տեղի դժվարանցանելի լեռներում։
Այդ գիշեր ձյուն եկավ, և ոչ ոք նրանց չնկատեց։ Տերը զայրացավ
երկրի բնակիչների վրա։ Ով դուրս էր գալիս գյուղից՝ լեռներով
կամ Հովիտներով անցնելու Համար, Թուրքմենները ձյան վրա թո-
ղած նրա Հետքերի շավղով գնում էին նրա ետևից և, գտնելով
նրան, սպանում կամ գերի էին քշում։ ԱյնուՀետև ցրվելով երկրում՝
նրանք ամբողջովին ավերեցին այն, այրեցին տներն ու գյուղերը
և մեծամեծ ոճիրներ գործեցին։

## 278. ԳԱՅԵՐԱՆԻ ԶՈՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ, ՈՐՈՆՔ ՀԱՐՁԱԿՎԵՑԻՆ ԹՈՒՐՔՄԵՆՆԵՐԻ ՎՐԱ

Երբ Բաղդուինը գնաց Երուսաղեմ աղոթելու, ՈւռՀայի կառավարումը Հանձնարարեց Պիրի տիրոջը՝ Գալերանին։ Սա որքան կարող էր զորք Հավաքեց և անսպասելիորեն գնաց Հարձակվեց Թուրքմենական վրանների վրա, որոնք գտնվում էին ՈւռՀայից

արևելք՝ Հեսմի[165] լեռան հարթավայրում, Արտուքի որդի Ղազիի
սահմանների մոտ։ Շուրջ հինգ հազար հոգու՝ տղամարդկանց, կա-
նանց ու երեխաների, նա գերի վարեց, ինչպես նաև ավարի մատ-
նեց հազար երկու հարյուր ձի, եզներ, ուղտեր և հարյուր հազար
ոչխար։ Ռազմունակ մարդկանցից շատերին սպանելուց հետո ա-
վարը նա բերեց Ուռհա, և դա չարիքների պատճառ դարձավ։ Այս
82 դեպքերը տեղի ունեցան 1426 (1115) թվականի մարտ ամսին։ ||

## 279. Մարդինի տիրակալ Ղազիի արշավանքը դեպի արևմուտք և Ուռհայի պաշարումը նրա կողմից[166]

*Այնուհետև Ղազին՝ Մարդինի տիրակալը, որ այդ ժամանակ Արտուքյանների պատվավոր առաջնորդն էր, զայրացավ և անսահման մեծ բազմություն հավաքած, հնձի օրերին եկավ բանակեց Ուռհայի մոտակայքում՝ քաղաքի ցանքսերից ու բերքից հեռու։ Հաշտության բանակցություններ վարելով՝ նա ետ ստացավ գերված թուրքմենների մնացորդներին և, առանց վնաս տալու, հեռացավ քաղաքից ու գնաց դեպի Խառան։ Տիրելով նրան՝ կտրեց անցավ Եփրատն ու նվաճեց նաև Հալեպն իր գավառով։ Նա այնքան զորեղացավ ու հզորացավ բոլոր թուրք զորահրամանատարների շարքում, որ նույնիսկ Ասորեստանի և Արևելքի զորագլուխները հնազանդվեցին նրան։ Այնուհետև, անթիվ բազմություն հավաքելով, նա մտավ Անտիոքի երկիրը։*

## 280. Ռոջերի՝ Անտիոքի տիրոջ պարտությունը[167]

*Ռոջերը՝ Անտիոքի տերը, լսելով, որ Ղազին մտել է իր երկիրը, ելավ Անտիոքից՝ նրան դիմադրելու համար։ Իսկ Երուսաղեմի թագավոր Բաղդուինը պատրաստվեց օգնության հասնել Ռոջերին. նույնն արեց նաև Գալերանն Ուռհայից։ Բայց Ռոջերը, այդ մեծամիտ ու ինքնավստահ երիտասարդը, չհամբերեց մինչև թագավորի գալուստը և կարծեց, թե կարող է միայնակ պարտության մատնել թուրքերին և հաղթանակ ու փառք շահել։ Նա հանդուգն կերպով մոտեցավ մահմեդականների բանակին, մի բան, որ թուրքերի սրտովն էր, քանի դեռ ֆրանկները չէին եկել։ Թուրքերն արագորեն շրջապատման օղակի մեջ առան Ռոջերին և նրա բանակի վրա կարկուտի ամպերի նման նետեր տեղացին։ Տերը բարկացավ ֆրանկների վրա և երես թեքեց չարագործ ու ամբարտավան Ռոջերից, որն անհետ կորավ այդ կռվում ու չգտնվեց ո՛չ սպան-*

*վածների, ո՛չ գերիների մեջ։ Թուրքերն ավարի մատնեցին ֆրանկ-*
83 *ների բեռները և այն ամենը, ինչ որ գտան նրանց մոտ։ ||*

## 281. Երուսաղեմի թագավորի գալուստը և թուրքերի պարտությունը[168]

*Ռոջերի ջախջախումից ու կործանումից հետո բազում զոր-քերով տեղ հասան Երուսաղեմի թագավոր Բաղդուինը, Տրիպոլիի կոմսը և Գալերանն Ուռհայից։ Անտիոքացիները դուրս եկան գի-մավորելու Երուսաղեմի թագավորին։ Այնտեղ նա իշխանությունը վերցրեց իր ձեռքը, հավաքեց եղած զորքերը և գնաց գիմագրելու Ղազիին։ Նրանց միջև ճակատամարտ տեղի ունեցավ։ Տերը բար-կացավ թուրքերի վրա, և Ղազին պարտվեց։ Նրա զինվորներից շատերը սրի մատնվեցին, իսկ ինքը քչերի հետ հազիվ փրկություն գտավ Հալեպում։*

## 282. Ժոսլինի թագավորումն Ուռհայում[169]

*Բաղդուին թագավորը, ցնծությամբ ու հաղթանակով վերա-դառնալով Անտիոք, այնտեղից գնաց Երուսաղեմ։ Ապա Տիբերիա-յից բերել տվեց Ժոսլինին և, հուրախություն եդեսացիների, ուղար-կեց կառավարելու Ուռհան։ Ուռհայում նա թագավորեց 1432 (1121) թվականին։ Գալերանը վերադարձավ Պիր կոչվող իր ամ-րոցը։ Թագավորելով Ուռհայում, Ժոսլինը զորք հավաքեց, գնաց նվաճեց թուրքմենների վրանները և նրանցից շատ գերիներ վերց-րեց։ Նրա համբավը տարածվեց ողջ Միջագետքի երկրներում, և վախը համակեց բոլոր հարևան թուրքերին։ Թուրքմենները, որոնց մի մասը գերության էր մատնվել, գնացին ապաստան գտան Ղա-զիի՝ Մարդինի տիրոջ մոտ, համոզելով նրան արշավել դեպի Ուռ-հա և առնել իրենց վրեժը։ Վերջինս բյուրաթիվ ու անհամար բազ-մություն հավաքեց և եկավ պաշարեց Ուռհան։ Շրջապատելով այն, նա հափշտակեց նրա բերքը, կտրատեց ու փչացրեց պարտեզները և գնաց։*

## 283. Իբերներից Ղազիի կրած պարտության, նրա մահվան և նրա որդու թագավորության մասին[170]

*Ղազին, որի մասին խոսեցինք, զորեղացավ, հզորացավ ու ամբարտավանեց, քանի որ նրա, ինչպես նաև իր Սուքման անու-նով եղբոր և Դաուդ[171] անունով հորեղբորորդու տերությունը տա-*

բաժվել էր մինչև Ասորեստան ու Հայաստան, մինչև Վրաստանի
84 սահմանները։ || Ողջ Հայաստանում, այդպիսով, տիրում էին նրա ցեղակիցները։ Շուտով, սակայն, նրա ու իբերների, այսինքն՝ վրացիների[172] թագավորի միջև, որը Դավիթ[173] էր կոչվում, տարաձայնություն ծագեց։ Ղազին հավաքեց տարբեր ժողովուրդների մեջ ապրող իր ցեղակիցներին և հանգգնեց մտնել իբերների երկիրը։ Այդ լսելով՝ իբերների Դավիթ թագավորը զորահավաք կատարեց և եկավ դիմադրելու նրան։ Նրանց միջև ճակատամարտ տեղի ունեցավ, և Ղազին պարտվեց։ Իբերները, հալածելով թուրքերին, կոտորեցին նրանց մեծամասնությանը և ավարի մատնեցին նրանց ողջ ունեցվածքը։ Այսպես Ղազին ամոթով դուրս եկավ իբերների երկրից և փրկություն գտավ իր աշխարհում։ Քիչ ժամանակ անց Ղազին հիվանդացավ ու մեռավ։ Մարդինում, Դարայում[174] և Նփրկերտում նրա փոխարեն թագավորեց իր որդին՝ Տիմուրտաշը[175], մինչդեռ Բալակը՝ նրա հորեղբորորդին, տիրում էր Հիսն-Զիադում և Անձիտում[176]։

## 283. Հունաց Հովհաննես[177] կայսեր գահակալումը[178]

Հույների Ալեքս կայսրը, որին հիշեցինք վերևում, կենդանության օրոք գահաժառանգ կարգեց իր Հովհաննես անունով որդուն։ Բայց մայրը դեմ էր որդու գահակալմանը. նա ուզում էր թագավորեցնել իր փեսային։ Այսպես ատելություն ծագեց Հովհաննեսի և իր փեսայի միջև։ Ալեքս կայսեր մահվանից հետո Հովհաննեսը եկավ մտնելու արքունիք։ Սակայն մոր և փեսայի դրդմամբ պահապանները փակեցին դռները նրա առջև։ Այնժամ Հովհաննեսը կոչ արեց իր զինվորներին, թե հասել է ժամանակը, որպեսզի մարտիկները ցույց տան իրենց քաջությունը և պսակի արժանանան՝ որպես ավար ստանալով պալատում եղած ամեն ինչ։ Զինվորները ոգևորված՝ չորս կողմից մոտեցան պալատի պատերին և, թափով ներս մտնելով, բացեցին դռները։ Մի ժամվա ընթացքում պալատում կուտակված բոլոր գանձերը՝ ոսկին, արծաթը, մարգարիտները և թանկարժեք անոթները ավարի մատնվեցին։ Տիրելով թագավորությանը, Հովհաննեսը կարգադրեց, որպեսզի
85 քաղաքում ոչ ոքի վնաս չհասցվի։ ||

## 284. Ոսկերեր լեռան մասին

Հովհաննեսն ամուսնացավ հունգարական թագավորի դստեր

Հետ՝ որպես օժիտ ստանալով ոսկեբեր լեռան կեսը։ Իր մորը նա կրոնավոր դարձրեց, իսկ փեսային աքսորեց։ Ինչ վերաբերում է Հիշյալ ոսկեբեր լեռանը, ապա դա մոտիկ անցյալում հայտնաբերվել էր այդ կողմերը տեղափոխված մի ասորու կողմից։ Մի օր, անցնելով տեղի քաղաքներից մեկով, նա տեսնում է կժեր պատրաստող մի բրուտի։ Զննելով կավը, նրա մեջ նա ոսկի է նկատում և օղնության կարոտ աղքատի դիմակի տակ աշակերտում կժագործին։ Մի օր, երբ նա դատարկում է մոխիրը հնոցից, սկըսում է քչփորել ու տնտղել այն, և նրա հատակին դտնում ոսկու մի դունդ, որն իր ծանր քաշի պատճառով երկար ժամանակի ընթացքում հավաքվել էր այնտեղ։ Հարմար առիթ գտնելով՝ նա հանում է այն ու պահում։ Այնուհետև այդ կավահողի մասին դնում հայտնում է հունգարական թագավորին։ Թագավորը, հավաստիանալով դրանում, այնտեղ արհեստավորներ ու ոսկի ղտողներ է նշանակում և ղտման եղանակով անհագին ոսկի ստանում։ Իսկ ասորուն նա մեծ հարստություն է պարգևում։

## 285. Մելիտենեում Դանիշմենդի որդու տիրապետության մասին

Դանիշմենդի որդիներից հետո Մելիտենեում տիրում էր մի մարդ՝ Թուրք թագավորների մեծ ցեղից[179], որի մահից հետո իշխանության գլուխ անցան նրա երկու անչափահաս որդիները իրենց մոր հետ։ Իկոնիայում և հունաց երկրի ներքին շրջաններում տիրում էր նրա Մասուդ[180] անունով անդրանիկ որդին, իսկ Սեբաստիայում, Կեսարիայում և Նեոկեսարիայում՝[181] Դանիշմենդի որդի Ղազին[182]։ Վերջինս սաստիկ հզորացավ, շարժվեց դեպի Մելիտենե ու մեծ ջանք թափեց [քաղաքը] գրավելու և նրա կառավարչին ձերբակալելու ուղղությամբ, պատրվակ բերելով, թե ուզում է ամուսնանալ նրա դստեր հետ։ Սակայն չկարողանալով
86 նրան նենգությամբ բռնել, մատնեց // իր մտադրությունը։ Զորք հավաքած նա եկավ պաշարեց Մելիտենեն և խիստ նեղության մեջ գցեց նրան։ [Պարենի] պակասից այնտեղ սաստիկ սով առաջացավ և համաճարակ ծագեց։ Դրա շնորհիվ Դանիշմենդի որդի Ղազին 1434 (1123) թվականին գրավեց քաղաքը և տիրեց նրան։ Այսպիսով. Ղազիի՝ Կապադովկիայի ամիրայի և Մելիտենեի ու մինչև հյուսիսի խավարական ծովն ընկած բոլոր քաղաքների տիրոջ իշխանությունը հզորացավ, ամրապնդվեց և տարածվեց։ Նա շարունակ մտնում էր հունաց սահմանները և կողոպտում նրանց գավառները, այսինքն Գաղատիան, Կողոնիան, մինչև Հերակլեա

և Հյուսիսային ծովի առափնյա շրջանները։ Նա գերում, ավերում և ոճիրներ էր գործում։ Այդ պատճառով Հովհաննես կայսրը պատրաստվեց ելնել և վրեժ լուծել Ղազիից։ Սակայն, երկրում հացահատիկ ու հարդ չգտնելով, ետ կանգնեց։

Այդ ժամանակներում մեռավ հույների թագուհին՝ հունգարական թագավորի դուստրը։ Մեռավ նաև Ալեքս[183] անունով արքայորդու կինը, որը վրաց թագավորի դուստրն էր։

## 286. Ուռհայի կոմս Ժոսլինի և Պիրի տեր Գալերանի գերեվարումը թուրքերի կողմից[184]

Ուռհայի կոմս Ժոսլինը ամուսնացավ Անտիոքի տիրոջ՝ Ռոջերի դստեր հետ, որպես օժիտ ստանալով Ազազ ամրոցը։ Երբ գնում էր նրան Ուռհա բերելու, անցավ Եփրատը և գիշերեց Պիր ամրոցում։ Նույն գիշերը Մերիբայից[185], Ումկայից[186] և Պիրի շրջակայքից մարդիկ եկան և հայտնեցին, որ այդ երեկո թուրքերը հարձակվել և ավարի են մատնել երկրում եղած ամեն ինչ։ Դա վերը հիշված Բալակ ամիրայի՝ Անձիտի երկրի և Հիսն-Զիադի մեծ տիրակալի զորքն էր։ Մոտ չորս հազար թուրք ձիավորների հետ անցնելով Հալեպով, ոմանց նա ուղարկել էր այս ու այն կողմ՝ եր-
87 կիրն ասպատակելու համար։ Իսկ ինքը եկել // դադար էր առել Ուռհայի գավառում՝ մի աղբյուրի մոտ, որ կոչվում էր Հայիգ, այսինքն՝ կյանքի աղբյուր[187], և որտեղ գտնվում էր մի նշանավոր բերդ՝ Ռեշ-Քեֆա[188] երկրի դիմաց։ Երբ լուրը տարածվեց ֆրանկների մեջ, նրանք վճռեցին հալածել հրոսակներին՝ չնկատելով, որ Բալակը եկել էր մտել իր ամբողջ զորքով։ Ժոսլինին այդ քայլին էր մղում ու դրդում հատկապես Գալերանը՝ մտահոգված իր երկրի բախտով։ Նույն գիշերը Գալերանն ու Ժոսլինը ֆրանկների հետ փութով հեծան արագավազ ձիերը և արշավեցին նրանց ետևից՝ հուսալով, որ Ռեշ-Քեֆայում կհասնեն նրանց։ Գալով այն վայրերը, որտեղով անցել էին թշնամիները, նրանք հայտնաբերեցին վերջիններիս երթուղիները և հետապնդեցին նրանց։ Գիշերվանից մինչև կեսօր նրանք արշավեցին այդ հետքերով՝ տոչորվելով ծարավից, փոշուց ու շոգից։ Եվ այսպես հետապնդելով՝ նրանք հասան այն մեծ ճամբարին, որտեղ բանակ էր դրել Բալակը։ Հայացք գցելով՝ նրանք տեսան մի մեծ բազմություն, մինչդեռ իրենք փոքրաթիվ էին և ճանապարհի վազքից ու հոգնությունից թուլացած։ Նկատվելով թուրքերից՝ նրանք չկարողացան ետ դառնալ, և երբ եկան ջրելու ձիերը, թուրքերը աղեղները ձեռքներին շարվեցին

գետափին։ Ֆրանկներից ով որ մոտենում էր, նրան ու ձիուն նե-
տահարում էին։ Թուրքերը բոլոր կողմերից շրջապատեցին նրանց,
շատերին կոտորեցին, իսկ մնացածներին ողջ-ողջ բռնեցին։ Ձեր-
բակալեցին նաև Ժոսլինին, Գալերանին ու նրանց հետ եղած մե-
ծամեծներին։ Երբ նրանց բերին Բալակի մոտ, սա դեռևս չէր հա-
վատում, այլ կարծում էր, թե երազ է, որ այսպիսի թագավորները
մի ժամում դարձան իր գերիները։ Այսպես անսպասելի կերպով
բռնվեցին ու գերվեցին այդ երկու անվանի իշխանները։ Բալակը,
Ժոսլինին ու Գալերանին առած, եկավ Ուռհայի դուռը, որպեսզի
88 քաղաքը հանձնեն իրեն։ || Սակայն ուռհայեցիները նրան ծաղ-
րեցին ու համաձայնություն չտվին։ Հեռանալով այնտեղից, նա
գերիներին տարավ իր հետ ու պահեց Հիսն-Զիադում։

## 287. Բաղդուին թագավորի ժամանումն Ուռհա

Այդ ժամանակ Անտիոքում էր գտնվում Բաղդուին թագավորը, որը լսելով լուրը, անմիջապես վեր կացավ, եկավ Ուռհա։ Նա խաղաղեցրեց երկիրը և զինվորներ կարգեց՝ այն պաշտպանելու համար։ Ապա իրենց պատվարժան կրոնավորներից Ժոֆրուա Վանական[189] անունով մեկին կառավարիչ նշանակեց, որպեսզի տնօրինի երկրում, մինչև տեսնեն, թե ինչ է սպասում Բալակի գերիներին։

Այդ ժամանակ Միքայել հայր՝ Կարկառի տերը, շատ նեղվելով թուրքերից, հասկացավ, որ չի կարող պահպանել բերդը, ուստի այն հանձնեց Բաղդուին թագավորին, պահելով որոշ տարածություններ իր ապրուստը հայթայթելու համար։

## 288. Բալակի կողմից Բաղդուին թագավորի ձերբակալման և գերեվարման մասին[190]

Երբ Միքայելն, ինչպես ասացինք, հանձնեց Կարկառի բերդը՝ պահելով իրեն Տլուք գավառը, և Բաղդուին թագավորը գնաց Անտիոք, Բալակը նորից սկսեց նեղություն տալ Կարկառի երկրին։ Նա իր ողջ զորքով շարունակ ասպատակում էր Կարկառի, Սամոսատի, Քյահթայի[191] և Հիսն-Մանսուրի երկրները։ Բաղդուին թագավորը հարկադրվեց օգնության գնալ երկրին և Քեսունից ու Սամոսատից հացահատիկ բերել Կարկառի բերդի համար։ Երբ Բալակը լսեց, որ Բաղդուին թագավորը հասել է Քեսուն, զորք հավաքեց և եկավ մինչև Սինճա[192] գետը՝ Քեսունի և Սամոսատի միջև։ Թագավորը չնկատեց, որ Բալակն այդքան մոտեցել է։ Հարություն

տոնն անցկացնելով Քեսունում՝ չորեքշաբթի օրը [ֆրանկները] ելան և անզգույշ ճանապարհ ընկան։ Նրանք անցան Սինճայի նշանավոր կամրջով[193] և մոտ մեկ փարսախ [առաջ շարժվեցին], 
89 մինչդեռ // թագավորի հեծյալների մեծ մասը գտնվում էր հեռվում և նույնիսկ գետին չէր հասել։ Թագավորը,· դրոշը պարզած, ոմանց հետ ընթանում էր առջևից։ Եվ հանկարծ Բալակի զինվածապատրաստ գարանակալները գիշերային գայլերի նման նետվեցին որսի վրա և պաշարման օղակի մեջ առան Բաղդուին թագավորին։ Միաժամանակ նրանք բռնեցին նրա քեռորդուն՝ մի փառահեղ պատանու, ինչպես նաև նրա հետ եղած շատ այլ մարդկանց։ Երբ ֆրանկ զորքերը հասան Քեսունի կամրջին, Բալակը վերցրեց թագավորին ու գերիներին և եկավ Կարկառ բերդի մոտ։ Այստեղ Բալակը դառն տանջանքների ենթարկեց թագավորին, մինչև որ նա հանձնեց Կարկառ բերդը։ Այսպես իրագործվեց Բալակի երազանքը, և նա տիրեց Կարկառ բերդին։ Երկիրը մաքրվեց գողերից ու ավազակներից, որոնք կողոպտում ու թալանում էին չքավորներին։ Ողջ աշխարհում հանգստություն ու խաղաղություն տիրեց։ Բալակ ամիրայի մասին նույնիսկ պատմում են, թե կախել էր տվել մի թուրքի, որը ոմն աղքատից մի կտոր հաց էր խլել։ Նրա տերության մեջ ոչ ոք իրավունք չուներ վնասելու քրիստոնյաներին, նույնիսկ խոսքով։

Կարկառ բերդը գրավելուց հետո [Բալակն] այնտեղ պահապան զորքեր կարգեց, առավ թագավորին ու գերիներին և բերեց Հիսն-Զիադ, որտեղ բանտարկված էին Ժոսլինն ու Գալերանը։ Ժոսլինը բռնվել էր սեպտեմբեր ամսին. այդ լուրը Ուռհա հասավ խաչի տոնի երեկոյան։ Եվ այդ տարի խաչի տոնը չկատարվեց Ուռհայում, քանի որ բոլոր ուռհայեցիները սուգ էին մտել։ Իսկ ապրիլին, Զատկի չորեքշաբթի օրը, ինչպես ասացինք, բռնվեց Բաղդուինը։ Պատմում են, թե Ժոսլինին ու Գալերանին գերելուց հետո մեկնելով Հիսն-Զիադից, Բալակն իբր նրանց ասել է. «Ահա դնում եմ, և եթե աստված կամենա, Բաղդուին թագավորին կբե-
90 րեմ ձեզ մոտ»։ // Այդպես էլ եղավ, վեց ամիս անց վերջինս բերվեց նրանց մոտ ու նրանց հետ բանտարկվեց Հիսն-Զիադում։

### 289. Բալակի նոր արշավանքը դեպի ֆրանկների երկրները և նրա գործած ոճիրները

Բալակն այդ տարի նորից հավաքեց իր զորքերը և եկավ պաշարեց Ուռհան։ Փչացնելով բերքն ու պարտեզները և ավերելով

երկիրը՝ նա ելավ այնտեղից ու գնաց Խառան, որը հանձնվեց նրան։ Ապա եկավ Հալեպ, և այն նույնպես հանձնվեց նրան։ Այնուհետև նա մտավ ֆրանկների երկրները՝ Ավետյաց բլուր, Տլուբ և Աղազ։ Հեղեղի նման ավարի մատնեց, կողոպտեց, քալանեց գյուղերը և ուղարկեց իր երկիրը, գրավեց Հիսն-Մանսուրն ու Քլատիան[194] և մի տարի մեծամեծ ոճիրներ գործեց ֆրանկների հողերում։

## 290. Հիսն-Զիադում ոմանց կազմակերպած դավադրության և Ժոսլին կոմսի փրկության մասին[195]

Նույն տարի, 1435 (1124) թվականի օգոստոս ամսի լիալուսնի օրերին, հայ դինվորներից ոմանք[196], մոտ քսան հոգի, որոնք ծառայում էին Քեսունի լեռան Պեհեսնի[197] կոչվող անառիկ բերդում, պատրաստվեցին և [երկրի] կուսակալ Ժոֆրուա Վանականի ու Թագուհու հետ դավադրություն կազմակերպեցին։ Նրանք չքավոր գյուղացիների տեսքով ելան գնացին Հիսն-Զիադ։ Տաս հոգին, խաղող, պտուղներ և հավեր բարձած, բարձրացան Հիսն-Զիադ մեծ բերդը՝ ձևացնելով, թե շրջակայքի գյուղերից են և եկել են բողոքելու իրենց կառավարչի դեմ, որ ճնշում ու նեղում է իրենց։ Մյուսները մնացին ետևում՝ գործը սկսվելուն պես նրանց միանալու պատրաստությամբ։ Նրանք, որ կրում էին բեռները, բարձրացան մինչև բերդի վերին դարպասը։ Երբ դռնապաններին հայտնեցին իրենց գալու պատճառը, թե գանգատ ունեն իրենց կառավարչից, նրանց մտցրին դարպասների միջանցքը, որպեսզի բերդապետին
91 տեղյակ պահեն նրանց ժամանման մասին։ // Իսկ բերդապետն այդ օրը խնջույք էր կազմակերպել և, հավաքած մեծամեծներին, զվարճանում էր։ Գինին արդեն ազդել էր նրանց վրա։ Պահապանների մեծ մասը գտնվում էր այնտեղ, իսկ դարպասի մոտ, դռնապանի ձեռքի տակ մնացել էին երկու-երեք հոգի։ Երբ ուղարկվածը գնաց ներս՝ բերդապետին հայտնելու [եկողների] մասին, սրանք թռան խլեցին դարպասների միջանցքում կախված սրերը և, ծնկի բերելով պահապաններին ու բոլոր պատահողներին, սպանեցին նրանց։ Ապա ձայն տվեցին իրենց մյուս ընկերներին, որոնք միանալով նրանց՝ մի ջոկատ կազմեցին։ Հետո փակեցին դարպասները, հարձակվեցին խնջույքի հրավիրվածների վրա և մի ժամում բոլորին կոտորեցին ու ոչնչացրին։ Այնուհետև բացեցին բանտի դռները և բանտարկվածներին ազատ արձակեցին։ Այդպի-



5—885

սով նրանք գրավեցին բերդը և տիրեցին նրան։ Քաղաքից շատ
հայեր, ովքեր կարողացան մտնել ներս, հավաքվեցին նրանց մոտ։

Այդ ժամանակ տագնապը տարածվեց քաղաքում, և շտապ
լուր ուղարկեցին Բալակին, որը գտնվում էր Հալեպում։ Թուրքերը
շրջապատեցին բերդը և բոլոր կողմերից գիշեր-ցերեկ սկսեցին
հավաքվել նրա շուրջը։ Այն առան օղակի մեջ, և ոչ ոք չէր կարող
ո՛չ մտնել, ո՛չ ելնել։ Ժոսլինը, սակայն, առաջին իսկ գիշերը
պատրաստվեց ու հանդգնեց դուրս գալ՝ երդվելով թագավորին, որ
չի հանգստանա, մինչև չհասնի Երուսաղեմ, զորք չհավաքի ու ետ
չդառնա։ Նա իր հետ վերցրեց ուրիշ երկու հոգու[198] և, ոտքով դուրս
գալով, ճեղքեց բերդը շրջապատող բազմությունն ու փրկվեց
աստծու կամքով։ Նախ գնաց Քեսուն, ապա՝ Ավետյաց բլուր և
Անտիոք, իսկ ի վերջո հասավ Երուսաղեմ։ Բոլորն ուրախանում
էին, թե շուտով Բաղդուին թագավորն ու Գալերանը կփրկվեն՝
ստանալով Հիսն-Զիադում կուտակված հարստությունը։ Իսկ Բա-
լակը, երբ լսեց այդ դեպքը, կատարված իր անառիկ բերդում, որ
92 թագավորության աթոռանիստն || ու իր հարստությունների
գանձարանն էր, նույն ժամին փութով ոտքի կանգնեց, վերցրեց
իր զորքերը և չորս օրում շտապ հասավ Հիսն-Զիադ՝ դեպքից տաս
օր հետո։ Կատաղի հարձակում ծավալելով՝ նա բերդի դեմ ուղղեց
բազմաթիվ բաբաններ, որոնք անընդհատ ու անդադար կործանում
էին նրա պարիսպները։ Կռիվը չէին դադարեցնում նույնիսկ մեկ
րոպեով՝ վախենալով, թե ուր որ է ֆրանկները վրա կհասնեն։ Մի
քանի օրում նրանք քանդեցին պարիսպը և նրա մեջ մեծ ճեղք-
վածք բացեցին։ Բալակը պաշարվածներին համոզում էր հանձնել
դիրքերը և փրկել իրենց կյանքը, քանի որ չէր կամենում բերդը
գրավել սրով ու նսեմացնել նրա արժանիքը։ Այնտեղ, աղբերա-
կունքից վեր, կար մի մեծ բուրգ, որն անընդհատ հարվածներից
գետնին հավասարվեց։ Երբ այն կործանվեց, ներսում եղողները
ձեռնթափ և հուսակտուր եղան։ Գալերանն անձամբ իջավ Բա-
լակի մոտ և նրանից երաշխիքներ ու երդում խնդրեց իրենց
կյանքի [ապահովության] մասին։ Բալակը երդվեց պատվով պա-
հել նրանց, ինչպես նախկինում։ Եվ բերդը հանձնվեց։ Բալակը,
ներս մտնելով, բռնեց դավադիր հայերին, խստագույնս տանջանք-
ների ենթարկեց և ի վերջո ողջ-ողջ մորթազերծ արեց։ Իսկ թա-
գավորին, Գալերանին ու նրանց հետ եղողներին վերադարձրեց
իրենց նախկին բանտարկության վայրը։

### 291. Ժոլինի կողմից Հալեպի պաշարման և Հալեպում քրիստոնյաներից խլված տաճարների մասին

Ժոսլինը հասնելով Եդեսիա, զորք հավաքեց և եկավ երեք
օրով բանակեց Հալեպի շուրջը՝ նրա արևմտյան դարպասի դիմաց
գտնվող Գոշան[199] լեռան վրա։ Ապա [տեղացիներից] հարկ վերց-
նելով, կամեցավ մեկնել և հասնել Հիսն-Ջիագ։ Սակայն նրան
լուր հասավ, որ Բալակն արդեն գրավել է բերդը և կոտորել այն-
տեղ գտնվող հայերին։ Այդ պատճառով Ժոսլինը քարուքանդ արեց
93 իր բանակած լեռան վրա գտնվող մզկիթները, // որոնցից մեկը
կոչվում էր Դաքքա, իսկ մյուսը շինվել էր Ռիդվան թագավորի
կողմից։ Հետո նա կտրատեց պարտեզներն ու ծառերը և գնաց։

Հալեպում այդ ժամանակ կար մի մահմեդական դատավոր, որի անունն էր Աբուլհասան իբն խաշշաբ[200]։ Նա կանչեց քրիստոնյաներին ու հրամայեց, որ նրանք գնան և վերականգնեն Ժոսլինի քանդած երկու մզկիթները։ Այդ ժամանակ Հալեպի ուղղափառնե-րի[201] եպիսկոպոսն էր Գրիգորիոս ուռհայեցին, որը կոչվում էր նաև Սամսոն։ Կար նաև մի քաղկեդոնական եպիսկոպոս։ Եկեղեցական գործակալները, որոնք վարում էին նվիրատվությունների գործը, չհամաձայնեցին և պատասխանեցին. «Մենք չենք կարող այդ անել և դուռ բացել, որպեսզի ամեն անգամ որևէ մզկիթ քանդվելիս, այն վերականգնվի եկեղեցու ծախսերով»։ Այնժամ վերոհիշյալ դատավորը հրաման արձակեց, և հազարավոր մահմեդականներ տապարներով ու քլունգներով հարձակվեցին եկեղեցիների վրա։ Մտնելով Ս. Հակոբի տաճարը, նրանք քանդեցին նրա բեմը, քերովբեներն ու խորանը և պոկոտեցին սրբապատկերները։ Ապա հարավային պատի մեջ երկրպագելու տեղ բացելով, նույն ժամին սկսեցին աղոթել մզկիթի վերածված եկեղեցում։ Այդպես վարվեցին նաև հույների Ս. Աստվածածնում և նեստորականների եկեղեցում։ Ապա նրանք կողոպտեցին եկեղեցիներն ու եպիսկոպոսական խցերը։ Քաղկեդոնականների եպիսկոպոսը փախավ Անտիոք, իսկ ուղղափառներինը եկավ Կալա-Ջաբար։ Այսպես, 1435 (1124) թվականին, Աթանասիոս Բար-Խամորո[202] պատրիարքի օրոք, ավերվեցին այդ տաճարները։

### 292. Բալակի և ֆրանկների ճակատամարտը Մաբբուգի մոտակայքում, նրա պարտությունն ու մահը և Դավիթ անունով եղբոր գահակալումը[203]

Բալակ զորագլուխը, լսելով, որ Ժոսլինը զորք է հավաքել Հալեպը պաշարելու նպատակով, փութով զորահավաք կատարեց,

*եկավ բանակ դրեց Մաբբուգի մոտակայքում և սկսեց նեղություն
պատճառել երկրին, որն իրեն չէր ենթարկվել։ Ժոսլինը, որի հետ
էին նաև Ժոֆրուա Վանականը, մի ուրիշ Ժոֆրուա և Մահին[204],
հավաքելով իր զորքը, պատրաստվեց ճակատամարտ տալ նրան։*
94 *// Բալակին նա հանդիպեց Մաբբուգի մոտակայքում, և նրանց
միջև ճակատամարտ տեղի ունեցավ։ Գնդերը բախվեցին իրար,
Բալակը պարտվեց, և նրա զորքերի մեծ մասը ոչնչացավ։ Նա
դարձավ դեպի Մաբբուգ՝ կամենալով վրեժ լուծել նրանից, որ
իրեն օգնության չէր հասել։ Եվ մինչ կատաղի հարձակումներ էր
գործում Մաբբուգի վրա, խոցվեց պարսպից արձակված նետով և
ավանդեց հոգին։ Նրան բերին Հալեպ, և Արտուքյանները թաղե-
ցին նրան քաղաքից դուրս։*

## 293. Վենետիկցիներ կոչվող ֆրանկների արշավանքի և նրանց կողմից ծովափնյա Տյուրոս քաղաքի պաշարման մասին[205]

*Այդ ժամանակ, 1435 (1124) թվականին, երբ տեղի ունեցավ
Հիսն-Զիադի դեպքը, վենետիկցի կոչվող մարդիկ, որոնք ֆրանկ-
ների ցեղից էին, պատրաստություն տեսան և մեծ բազմությամբ
ոտքի ելան։ Նրանք պատրաստեցին բազմաթիվ նավեր և իրենց
թագավորի հետ, որի անունը Դոջ[206] էր, ծով իջան՝ դեպի Պաղես-
տին լողալու համար։ Հասնելով Տյուրոսի և Սիդոնի ափը՝ նավերն
ու մակույկները շրջափակեցին ողջ ծովափը։ Երբ ֆրանկները լսե-
ցին նրանց արշավանքի մասին, Երուսաղեմի ֆրանկ պատրիարքը
եկավ նրանց մոտ, քանի որ Բաղդուին թագավորը գերության մեջ
էր։ Նրանք պաշարեցին Տյուրոս քաղաքը, որը դեռևս գտնվում էր
մահմեդականների ձեռքում և բավականին բազմամարդ էր, որով-
հետև ովքեր որ փրկվել էին մահմեդականների կորցրած երկրնե-
րից, եկել էին այնտեղ։ Այդ քաղաքն, ահա, պաշարեցին արշա-
վանքի ելած ֆրանկները և ծովից ու ցամաքից կատաղի հարձա-
կումներ գործեցին նրա վրա։ Շուրջը տեղադրեցին տարբեր տե-
սակի պաշարողական մեքենաներ՝ ահռելի րաբաններ ու բազմա-
թիվ քարարձակներ, որոնք գիշեր-ցերեկ բախում ու հարվածում
էին։ Այնուհետև շինեցին երկու փայտյա հզոր բուրգեր, բաղկա-
ցած յոթական հարկից՝ յուրաքանչյուրը տասն ամոնկ բարձրու-*
95 *թյամբ։ Դրանք զինեցին, ծածկեցին // թաց կաղնեփայտի
ամուր տախտակներով, որպեսզի կրակը նրանց վրա չազդի, և
ավարտելով՝ մոտեցրին պարսպին։ Սակայն քաղաքն ուներ ոչ թե*

մեկ, այլ երեք պարիսպ, ինչպես նաև երկու արտաքին պատ։ Բոլոր պարիսպների արանքում կային խոր խրամներ։ Պարիսպները լավ ամրացված էին, և նրանց վրա զինյալների մի խիզախ բազմություն կար։ Տյուրոսցիները կռվում էին քաջաբար, և կռիվը տևեց մոտ յոթ ամիս։ Պարիսպները ճեղքվել էին, և բազմաթիվ աշտարակներ էին քանդվել բաբաններից, բայց պաշարվածները դրանից չէին ընկճվում, քանի դեռ պարեն ունեին։ Սակայն երբ պարենն սկսեց պակասել, նրանք մեծ նեղության մեջ ընկան։ Հույս չդնելով քաղաքի տերերի՝ եգիպտացիների վրա, նրանք դիմեցին Դամասկոսի տիրակալին, որպեսզի օգնի իրենց և տիրություն անի։ Թղթակցությունը տեղի էր ունենում թռչունների միջոցով, քանի որ ոչ ոք չէր կարող մտնել կամ դուրս գալ։ Դամասկոսի ամիրան մեծ զորք հավաքեց՝ օգնության գալու համար, և աղավնու միջոցով նրանց հաղորդեց. «Այսինչ օրը բազմաքանակ զորքով ես կհասնեմ ձեզ մոտ։ Քաջալերվեցե՛ք, սրտապնդվեցե՛ք և մի՛ վհատվեք»։ Աստծու կամքով աղավնին եկավ իջավ ֆրանկների ճամբարը։ Երբ կարդացին նամակը, նրա փոխարեն կազմեցին մի ուրիշը, որի մեջ գրված էր հետևյալը. «Տյուրոսցինե՛ր, դուք գրել էիք, որ օգնության գանք ձեզ, սակայն հայտնում ենք, որ չենք կարող, որովհետև չունենք մի այնպիսի բանակ, որն ի վիճակի լիներ դիմադրավել ձեր դեմ հավաքված բազմությանը։ Մեզ վրա հույս մի՛ դրեք, այլ երաշխիքներ խնդրեցեք ձեր կյանքի ապահովության մասին և հանձնեցե՛ք քաղաքը»։ Նամակն ամրացրին աղավնուն և բաց թողեցին նրան։ Երբ նամակը տեղ հասավ, և կարդացին այն, [Թուրքերն] իրենց կյանքից ձեռք քաշեցին, մանավանդ որ նրանց պարենը բոլորովին սպառվել էր։

Պատմում են, թե Ալեքսանդր Մակեդոնացին, պաշարելով
96 Տյուրոսը և կատաղի հարձակումներից // հետո չկարողանալով
նվաճել այն, հանել է մեծ արվեստով շինված իր հայելին և ճառագայթներ ուղղել քաղաքի վրա։ Երբ նա պաշարում էր որևէ քաղաք, և վերջինս անմիջապես իրեն չէր հնազանդվում, հանում էր այդ հայելին և պահում արևի դիմաց։ Նրանից ճառագայթներն անդրադառնալով քաղաքի վրա՝ այրում էին ամենը, ինչի վրա ընկնում էին։ Ժողովուրդը փախչում էր պարիսպներից, և նա տիրում էր քաղաքին։ Սակայն տյուրոսցիները շատ խելացի էին. մի իմաստուն ծերունի նրանց խորհուրդ էր տվել վերցնել մեծ թվով թաղիքներ, թաթախել թունդ քացախի մեջ և դրանցով ծածկել պարիսպները։ Երբ Ալեքսանդրը, հանելով իր հայելին, պահել է պարըսպի դիմաց, քացախի հոտը հասել է հայելուն, դրանից ճառա-

գայթումը նվազել ու աղոտացել է և չի գործել իր սովորական ազդեցությունը՝ ձախողելով Ալեքսանդրի մտահղացումը։ Վերջինս ապշած ու զարմացած, տյուրոսցիներին ասել է. «Տվե՛ք ինձ այն մարդուն, որը ձեզ սովորեցրել է այդ բանը, և ես կհեռանամ ձեզանից»։ Մարդը գնացել է նրա մոտ, արժանացել մեծ պատիվների ու մնացել մոտը՝ թագավորական խորհրդականների և իմաստունների հետ միասին։

## 294. Տյուրոսի հանձնումը ֆրանկների ձեռքը[207]

Այնուհետև տյուրոսցիները իրենց պատվավոր մարդկանցից ոմանց ուղարկեցին ֆրանկների Դոջ անունով առաջնորդի և նրանց պատրիարքի մոտ՝ երաշխիքներ խնդրելով իրենց կյանքի ապահովության մասին։ Նրանք պայմանավորվեցին, որ ցանկացողը կարող է մնալ քաղաքում կամ իր ընտանիքով, երեխաներով և ունեցվածքով մեկնել խաղաղությամբ, ուր որ կամենա։ Նրանց թույլ կտրվի հանգիստ ու ապահով անցնել գնալ։ Այնուհետև բացեցին քաղաքի դարպասները, և ֆրանկները մտան ու տիրեցին նրան հուլիս ամսին[208], մինչ Բաղդուինը, Ժոսլինը և Գալերանը բանտարկված էին Հիսն-Զիադում։

## 295. Բաղդուինի ազատագրման և Գալերանի սպանության մասին[209]

97 // Այդ ժամանակ Բուրսուխը, որն, ինչպես վերը նշեցինք, պարտվել էր ֆրանկներից Հալեպի և Անտիոքի միջև, դտնըվելով Մոսուլում, ուրբաթ օրվա լույս գիշերը երազում տեսավ, որ տասնմեկ շներ շրջապատել և հոշոտում են իրեն։ Երբ առավոտյան զարթնեց ու պատմեց իր երազը, ոմանք նրան ասացին. «Զգուշացիր և այսօր աղոթարան մի գնա»։ Իսկ նա ասաց. «Ուրբաթ օրով ես չեմ թերանա մասնակցել համընդհանուր աղոթքին մեծ մզկիթում»։ Եվ երբ նա, մահմեդական սովորության համաձայն, կեսօրին մտավ [մզկիթի] դռնով, իսմայելիտներից տասնմեկ հոգի շրջապատեցին նրան, դաշունահարեցին ու սպանեցին։ Նրանից հետո Մոսուլում և Ասորեստանում թագավորեց նրա որդին, որը նույնպես Բուրսուխ էր կոչվում[210]։

## 296. Հալեպ քաղաքի պաշարումը ֆրանկների կողմից[211]

Այդ ժամանակ ֆրանկների Բաղդուին թագավորը, Տրիպոլիի Սենժիլ կոմսը և Ուռհայի Ժոսլին կոմսը հավաք գումարեցին։

Նրանց հետ նախապատրաստություն տեսավ նաև մի մահմեդական ամիրա՝ Դուբայս[212] անունով, որը եղել էր Հիլլայի[213] և Իրաքի տիրակալը, բայց այնտեղից հալածվելով՝ եկել էր Անտիոք ու հնազանդություն հայտնել ֆրանկներին։ Բազում զորքերով նրանք եկան պաշարեցին Հալեպ քաղաքը և ամբողջ ինն ամիս բոլոր կողմերից հարձակումներ գործեցին նրա վրա։ Ներսում եղող մարդիկ այնքան նեղվեցին [պարենի] պակասից, որ նույնիսկ պիղծ կենդանիներ կերան։ Ինն ամիս հետո, երբ նրանք արդեն պատրաստվում էին հանձնել քաղաքը, լուր հասավ, թե Ասորեստանի տիրակալ Բուրսուխը գալիս է նրանց օգնության։ Հիշյալ Դուբայս
98 արաբը // ֆրանկներին խորհուրդ տվեց՝ ասելով. «Ինձ զորք տվեք, որպեսզի գնամ Եփրատ և, խանգարելով Բուրսուխի գետանցը, ուշացնեմ նրա գալուստը, մինչև որ դուք գրավեք քաղաքը»։ Սակայն հաստակող ֆրանկները չընդունեցին նրա խորհուրդը։ Բուրսուխն անցնելով Եփրատը, եկավ գիշերով և համարձակորեն մտավ Հալեպ։ Առավոտյան հալեպցիները բացեցին քաղաքի դռները և, Բուրսուխի հետ միասին դուրս գալով, սոսկալի ճակատամարտ տվին ֆրանկներին։ Ֆրանկները, հեռանալով քաղաքից, բանակ դրին Գոշան լեռան վրա, իսկ տասն օր հետո մեկնեցին Անտիոք։ Թուրքերը Բուրսուխի գլխավորությամբ մինչև Աթարիբ[214] հետապնդեցին նրանց՝ ավազակություններ և կողոպուտներ գործելով նրանց թիկունքում։ Ապա Բուրսուխը մեծ ուրախությամբ վերադարձավ Հալեպ։

## 297. Ազազի պաշարումը Բուրսուխի կողմից և ֆրանկներից կրած նրա պարտությունը[215]

Հալեպից ֆրանկների հեռանալուց հետո Բուրսուխը գնաց պաշարեց Ազազ ամրոցը և կատաղի հարձակումներ գործեց նրա վրա՝ օգտագործելով բաբաններ, որոնք գիշեր-ցերեկ հարվածում էին նրա պարիսպներին։ Մինչև պարիսպը փորեց նաև մի գետնուղի և այդպիսով խիստ նեղության մեջ պահեց ամրոցը։ Երբ ֆրանկները լսեցին այդ, Երուսաղեմի Բաղդուին թագավորն ու Ուռհայի տեր Ժոսլինը հանդիպեցին Անտիոքում, բայց թուրքական զորքի բազմությունից վախեցան օգնության գնալ Ազազին։ Երբ պաշարվածները շատ նեղվեցին, և ոչ ոք չէր կարողանում մտնել կամ դուրս գալ, մի եռանդուն մարդ ոգևորված ասաց. «Աստծու վրա հույս դրած՝ ես կգնամ և մեր նեղության մասին լուր կտանեմ թագավորին՝ արագացնելով նրա գալուստը»։ Նրան խոստա-

ցան ողջ-առողջ վերադառնալու դեպքում զանազան բարիքների արժանացնել։ Մարդը գոտեպնդված՝ հեծավ մի ուժեղ ձի, ձեռքը սուր վերցրեց, իսկ ծոցը մի աղավնի դրեց և, կայծակի նման հան-
99 կարծակի դուրս թռչելով զարպասից, // նետվեց հետևակային զորքերի վրա, որոնք խումբ-խումբ պահակություն էին անում։ Այդ վայրի շուրջը մի խոր խրամ էր փորված, սակայն ձին թափով թռավ նրա վրայից և անցավ մյուս կողմը։ Երբ թշնամիները տեսան նրան, բոլոր կողմերից հարձակվեցին նրա վրա, բայց չկարողացան բռնել։

Գալով Անտիոք՝ նա թագավորին պատմեց այն նեղության մասին, որի մեջ ընկել էին Ազազի բնակիչները։ Ֆրանկները գոտեպնդվեցին, և աստծու վրա հույս դրած, ճանապարհ ընկան՝ նրանց միանալու համար։ Նրանք աղավնու միջոցով մի նամակ ուղարկեցին, թե՝ «Այսինչ օրը կհասնենք ձեզ մոտ, քաջալերվեցե՛ք և մի՛ վհատվեք»։ Սակայն աղավնին եկավ իջավ թուրքերի ճամբարը։ Կարդալով այն՝ վերջիններս նրա փոխարեն Ժոսլինի անունից գրեցին. «Մեզ վրա հույս մի՛ դրեք, քանի որ թագավորն զբաղված է իրեն շրջապատած եգիպտացի թշնամիներով։ Երաշխիքներ խնդրեցեք ձեր կյանքի համար և հանձնեցե՛ք բերդը»։ Երբ պաշարվածները կարդացին նամակը, կասկածեցին նրա վրա և ասացին. «Մի քիչ էլ համբերենք, որպեսզի մեզ հետ չպատահի Տյուրոսի աղավնու դեպքը և նամակը կեղծ դուրս չգա»։ Նրանք պատրաստվեցին դիմանալ որքան կարող են, և մեռնել, բայց չհանձնվել։ Թուրքերը, տեսնելով, որ այդ խորամանկությունը չօգնեց, սկսեցին իրենց մոտ գտնվող բեռներն ուղարկել Հալեպ, քանի դեռ ֆրանկները չէին հասել։ Ապա լրտեսներ ուղարկեցին մինչև Անտիոք, որպեսզի իրենց տեղեկացնեն ֆրանկների առաջխաղացման մասին։ Մի քանի օրից լրտեսները եկան և հայտնեցին, որ ֆրանկները ճանապարհ են ընկել։ Թուրքերն իրենց բոլոր ինչքը վերադարձրին Հալեպ, իսկ բաբաններն ու քարարձակները հրի մատնեցին։ Սակայն ռազմունակ զինվորները մնացին տեղում՝ զինվելով և պատրաստվելով կռվի։ Ֆրանկները, հասնելով Կուրուս, իրենց բեռները թողեցին այնտեղ և Քիլիս գյուղի վրա իշխող սարից իջան ընդարձակ դաշտը։ Թուրքերը, նկատելով ֆրանկների ժամանումը, շարժվեցին իրենց տեղից և ուղղվեցին վեր ու վար՝
100 հայտնվելով ֆրանկների ձախից // և աջից։ Ֆրանկներն առանց կռվի մեջ մտնելու, անցան նրանց արանքից և ամրացան թուրքերի ճամբարի տեղում։ Նրանք չափազանց փոքրաթիվ էին։ Թուրքերը, տեսնելով, որ նրանք քիչ են, քաջալերվեցին ու մտածեցին. «Եթե

մնան այստեղ, մենք կփակենք նրանց ճանապարհները, և նրանք կոչնչանան պարենի `պակասից։ Իսկ եթե հեռանան, դա նրանց վախկոտության նշանը կլինի, և մենք կհալածենք նրանց»։ Ֆրանկները խորհրդակցեցին և, իրենցից բավականին թվով մարդկանց բերդ մտցնելով, ասացին նրանց. «Մենք կդնանք մի փոքր դեպի արևմուտք՝ այսինչ գյուղը, և կհանգստանանք այնտեղ մեր ձիերի հետ՝ հագեցնելով մեր ծարավն ու պաշար վերցնելով, քանի որ Ազազում ջուր չկա։ Եթե թշնամիները հետապնդեն մեզ, ուշադրություն դարձրեք, թե երբ են դուրս գալու բոլոր դարանակալած զորքերը և միասնաբար ուղղվելու դեպի մեր կողմը։ Բերդի գլխից մեզ ծխի ազդանշան տվեք։ Եվ ինչ որ Տերը կամենում է, թող կատարվի։ Եթե Տերը թույլ տա, մենք կհաղթենք, իսկ եթե կործանվենք, դուք ամուր մնացեք, քանի որ որոշ ժամանակ դեռ կարող եք դիմադրել»։ Բերդապետը միաչքանի, բայց ուժեղ և քաջ մի ֆրանկ էր՝ Սիրայգ անունով։

Ֆրանկների զորքերը առավոտյան մեկնեցին՝ ճանապարհ ընկնելով դեպի Անտիոք։ Թշնամիները, տեսնելով այդ, հեծան ձիերը և հետապնդեցին նրանց։ Վերջիններս փախուստ ձևացրին, և դրանից ոգևորված՝ թուրքերի բոլոր դարանակալած զինվորները վեր թռան ու սկսեցին ամբողջ ուժով հետապնդել նրանց։ Երբ բերդից տեսան, որ այլևս դարանակալներ չմնացին, պայմանավորվածության համաձայն ծխի ազդանշան տվեցին։ Տեսնելով ծուխը՝ ֆրանկները թագավորի հրամանով հնչեցրին շեփորները և թագավորական դրոշակները ետ շրջեցին։ Տերը զայրացավ թուրքերի վրա. նրանք փախուստի դիմեցին և սրի բերան ընկան։ Թուրքերի կողմից սպանվածների թիվը հասավ մոտ երկու հազարի։ Փրկվեց միայն Բուրսուխը՝ քչերի հետ միասին, որոնք հալածվեցին մինչև // Հալեպ։ Այսպիսի դառը վախճան ունեցավ Բուրսուխի ձեռնարկած արշավանքն Ասորեստանից։ Նա ճանապարհ ընկավ Մոսուլ գնալու համար, բայց մեռավ Ռախբայում[216], Եփրատի ափին։

### 298. Բոհեմունդի[217] գահակալումն Անտիոքում և Բանիասի[218] հանձնումը իսմայելիտների ձեռքը[219]

Բաղդուին թագավորը ֆրանկների երկրից բերել տվեց Բոհեմունդ անունով մի երիտասարդի, որը որդին էր ավագ Բոհեմունդի՝ Անտիոքի առաջին տիրոջ։ Վերջինս, ինչպես վերը նշեցինք, Դանիշմենդի գերությունից ազատվելուց հետո գնացել էր իր երկիրը։

Սրա որդուն, ահա, բերել տվեց Բաղդուին թագավորը և, ամուսնացնելով իր դստեր հետ, նշանակեց Անտիոքի կառավարիչ։ Նրա հետ բերել տվեց նաև մի ուրիշ մարդու՝ կոմսերի ընտանիքից, որի անունն էր Ֆուլք[220], և ամուսնացնելով մյուս դստեր հետ՝ իր կենդանության օրոք հայտարարեց Երուսաղեմի թագավոր։

Այդ ժամանակ Դամասկոսում իշխում էր մի թուրք ամիրա՝ Տուղտեգին[221] անունով, որը տիրում էր նաև Բանիաս քաղաքին։ Տեսնելով, որ այն չի կարող պաշտպանել ֆրանկներից, քանի որ գտնվում էր նրանց սահմանների մեջ, կանչեց Բահրան[222] անունով մի իսմայելիտ մարդու և Բանիասը հանձնեց նրան։ Վերջինս, հավաքելով մոտ հինգ հարյուր հոգու, հաստատվեց այնտեղ։ Նա միշտ նվերներ էր ուղարկում ֆրանկների թագավորին՝ հնազանդություն հայտնելով նրան։

## 299. Ռուբինյան հայերի վատ արարքների մասին

Այդ ժամանակ Ռուբենի սերնդի հայերը, որոնք իշխում էին Կիլիկիայի գավառներում ու երկրի բերդերում, գլուխ բարձրացրին Դանիշմենդի որդի Ղազիի՝ Կապադովկիայի ու Մելիտենեի մեծ տիրակալի դեմ։ Նրանց հրոսակախմբերը շարունակ գնում ավազակություններ էին գործում նրա սահմաններում, ինչպես անում էին նրանց եղբայրակից Կարկառի հայերը Բալակի երկրում։ Իսկ Ղազին, որը չափազանց հզոր ու ահարկու էր և, մարտնչելով հույն
102 թագավորների հետ, ավերում // ու կործանում էր ողջ հունաց աշխարհը, խիստ զայրացավ այդ հայերի վրա և պատրաստվեց մտնել ու ավարի մատնել նրանց երկիրը։ Անտիոքի իշխան Բոհեմունդը նույնպես, զայրացած հայերի վրա, պատրաստվում էր մտնել և ավերել Կիլիկիո երկիրը։

## 300. Անտիոքի իշխան Բոհեմունդի ու Դանիշմենդի որդի Ղազիի միջև Կիլիկիո երկրում տեղի ունեցած ճակատամարտի և Բոհեմունդի սպանության մասին

Երբ Անտիոքի իշխան Բոհեմունդն իր զորքերով մտավ Կիլիկիո երկիրը, մյուս կողմից մտավ նաև Ղազին։ Ֆրանկ և թուրք զորքերը, որ եկել էին կործանելու երկիրը, հանկարծ հանդիպեցին իրար։ Թուրքական զորքերը շրջապատեցին Բոհեմունդին ու կոտորեցին նրա զինվորներին, որոնցից ոչ մեկը չփրկվեց։ Սպանվեց ու գլխատվեց նաև Բոհեմունդը՝ այդ հրաշալի երիտասարդը։ Իսկ հետո նրա հոյակապ մազերի պատճառով քերթեցին նրա

գանգը և ուրիշ թանկարժեք իրերի՝ ֆրանկական վահանների, նիզակների ու թամբերի հետ միասին գլխամաշկն ուղարկեցին ինքնակալին՝ Սպահանի մեծ սուլթանին, որպես հաղթանակի պարգևներ ու նվերներ։ Այսպիսով, այդ թագավորները կոտորեցին իրար, իսկ հայերը փրկվեցին։ Ո՜վ զարմանք. Դանիշմենդը՝ այս Ղազիի հայրը, կորստյան մատնեց ավագ Բոհեմունդի զորքերն ու, բռնելով նրան, գերության վարեց, իսկ այժմ Դանիշմենդի որդի Ղազին ջախջախեց նրա երիտասարդ որդու՝ մյուս Բոհեմունդի զորքերն ու սպանեց նրան։

## 301. Սպահանում նստող թուրքական մեծ սուլթանի մահվան մասին[223]

1442 (1131) թվականին Սպահանի երկրում մեռավ թուրքերի
103 մեծ սուլթանը*, և ողջ Խորասանում մեծ խռովություններ || ու սպանություններ տեղի ունեցան[224]։ Մահմեդականների խալիֆը, որ նստում էր Բաղդադում, իշխանությունը հանձնեց Դանիշմենդի որդի Ղազիին՝ Կապադովկիայի և Մելիտենեի տիրակալին, որն այդ ժամանակ մեր կողմերի բոլոր թուրք թագավորներից ամենահզորն ու ամենակարողն էր։

## 302. Ժոսլին կոմսի գահակալումն Ուռհայում

Ուռհայի տեր Ժոսլինն այդ ժամանակ արդեն ծեր էր և տարիքով առաջացած, սակայն դեռևս չէր հանգստանում կռիվներից։ Հալեպի և Մաբբուգի արանքում մի բերդ կար՝ Թելարան[225] անունով, որտեղ այդ ժամանակ ավազակներ էին ապրում և մշտապես կողոպտում շրջակա երկրները։ Ժոսլինը զորք հավաքեց և գնաց քանդելու այդ բերդը։ Նրա տակ գետնուղիներ փորել տալով՝ կոմսն անձամբ իջավ տեսնելու դրանք։ Սակայն հանկարծ մի հողագունդ փլվեց ու ծածկեց նրան։ Երբ նրան շտապ դուրս կորզեցին, գտան վերջին շնչում։ Նրան վերցրին բերին Ավետյաց բլուր։ Նա խիստ հիվանդացավ, քանի որ մարմինը ջախջախված էր։ Եվ մինչդեռ նա հիվանդ էր, Ղազին հավաքեց իր զորքերը՝ ռուբինյան հայերի երկրները մտնելու համար։ Լսելով այդ՝ Ժոսլինը հրամայեց զորահավաք կատարել և, հիվանդի մահճում պառկած, գնաց Ղազիի դեմ։ Երբ վերջինս լսեց, որ Ժոսլինը դեռ ողջ է, վերադարձավ իր երկիրը։ Իսկ Ժոսլինը հասավ Տլուք, այդ քաղաքում գտավ իր վախ-

* Լուսանցագրություն. «Մասուդ թագավորը»։

ճանը և թաղվեց Տլուքի եկեղեցում։ Իրենից հետո թագավորեց
որդին, մի անխելք պատանի, որի անունը նույնպես Ժոսլին էր։
Այդ տարի մեռավ նաև Երուսաղեմի Բաղդուին թագավորը։ Նրա
փոխարեն գահակալեց իր փեսան՝ սիր[226] Ֆուլքը, որին, ինչպես վե-
րը նշեցինք, նա թագավոր էր կարդել դեռ իր կենդանության օրոք։
Իսկ Անտիոքում Բոհեմունդի որդի Բոհեմունդի մահվանից հետո
թագավորեց Պուատվինը[227], որդին [սվադ] Պուատվինի, որն,
ինչպես վերը նշեցինք, ելել էր արշավի և հոռոմոց երկրում իր
104 զորքերի ջախջախումից հետո վերադարձել իր երկիրը։ //

## 303. Ասորեստանում, Մոսուլում և ողջ Միջագետքում Զանգիի[228] տիրապետության սկզբնավորման մասին

*Երբ Ոսախբայում, ինչպես վերը շարադրեցինք, մեռավ վերջին Բուրսուխը, մեծ սուլթանը 1443 (1132) թվականին արևելքի զորագլուխ նշանակեց Զանգիին, որը որդին էր Աղ-Սնղուրի։ Վերջինս Բուղանի ընկերն էր, որին հիշել ենք վերը՝ ֆրանկների արշավանքի մասին [պատմելուց] առաջ։ Սրանց սպանել էր Տուտուշը՝ կոչված նաև Թաջուլմուլուք[229], այսինքն՝ արքայական թագ։ Իսկ սուլթանը, որ գտնվում էր Բաղդադում, Մասուդն[230] էր՝ Սինջարշահ մեծ սուլթանի եղբորորդին։ Սինջարշահը որդին էր Աբուլֆաթահի, որ կոչվում էր նաև Մելիքշահ։ Վերջինս դեռ Փիլարտոս Դոմեստիկոսի ժամանակներում ելել դրավել էր Ասորիքը և Անտիոքում նշանակել Յաղի Սիանին, Ուռհայում՝ Բուղանին, իսկ Դամասկոսում՝ Տուղտեգինին։ Աբուլֆաթահի որդի Սինջարշահը ծնվել էր մեծ տիրուհուց, երբ պաշարել էին Շիգգարը, այսինքն՝ Սինջարը[231], այդ պատճառով էլ նա կոչվել էր Սինջարշահ։ Մասուդը՝ Սինջարշահի եղբորորդին, այդ ժամանակ տիրում էր Սպահանի ու Խորասանի երկրներին, Իրաքին, Բաղդադին ու ողջ հարավարևելյան շրջաններին։ Ասորեստանից արևմուտք և հյուսիս ընկած բոլոր երկրները ենթարկվում էին նրան։ Նրա հրամանով էր նշանակվում Մոսուլի առաջնորդը, որ կոչվում էր զորագլուխ. իսկ թուրքերը նրան անվանում էին աթաբեկ[232]։ Վերջինս իշխում էր ամբողջ Միջագետքում, հյուսիսում, Հալեպում և ողջ Փյունիկիայում։*

*Այդ ժամանակ Մոսուլի նշանավոր մարդիկ էին Սալահեդդինը[233], Նասրեդդինը[234] և Զեյնեդդին Ալին[235], որոնք սուլթանի կողմից ճանաչված թուրքեր էին։ Երբ Բուրսուխը մեռավ, նրանք էին վարում ողջ արևելքի գործերը և իրենք էին, որ հորդորեցին սուլ-*

*թանին զորագլուխ նշանակել Աղ-Սնղուրի որդի Զանգիին, որ կոչ-
վում էր Իմադեդդին։ Այդպես էլ եղավ. նա Զանգիին զորագլուխ
105 նշանակեց Ասորեստանի և ողջ Միջագետքի, Ասորիքի || ու Փյու-
նիկիայի վրա։ Սուլթան Մասուդը նրա մոտ ուղարկեց իր երկու
անչափահաս եղբորորդիներին, որպեսզի նրանք լինեն երկրների
տերերը, իսկ Զանգին՝ նրանց զորահրամանատարը։ Այդ ժամանակ
Սպահանում մեռավ Մասուդ մեծ սուլթանը, որի մասին խոսե-
ցինք վերը, և նրան հաջորդեց Սուլեյմանշահը[236] Համադանում։*

## 304. Զանգիի արևմտյան արշավանքի և Շենավ[237] բերդի գրավման մասին[238]

*1443 (1132) թվականին Զանգին, իր զորքերով սրշավանքի ելնելով, եկավ Ուռհայի մոտակայքը և պաշարեց քաղաքից արևելք գտնվող մի բերդ, որը ժամանակին ֆրանկները խլել էին Մունի իբն Ուտայր անունով մի արաբից։ Զանգին գրավեց Շենավ անունով այդ բերդը և մոտեցավ Ուռհա քաղաքին։ Ապա պատգամավորներ ուղարկեց ուռհայեցիներին, թե միտք չունի պատերազմել ֆրանկների դեմ, միայն թե իր հետ համաձայնության գան։ Քաղաքից նրա համար թանկարժեք իրեր, նվերներ, ուտելիք ու ըմպելիք բերեցին, և նա, անցնելով այնտեղից, գնաց Հալեպ։*

## 305. Դամասկոսի մասին, ինչպես նաև Զանգիի կողմից Բաալբեկ քաղաքի պաշարման մասին

*Դամասկոսում իր հոր՝ Տուղտեգինի մահվանից հետո թագա-
վորել էր Թաջուլմուլուքը[239]։ Սակայն որոշ ժամանակ անց Թաջուլ-
մուլուքն սպանվեց իսմայելիտների ձեռքով՝ թողնելով անչափա-
հաս եղբայրներ ու որդիներ, որոնք իրար հետ անմիաբան էին։
Թաջուլմուլուքի նշանավոր ամիրաներից մեկը, որ կոչվում էր Ու-
նար[240], կառավարում էր Դամասկոսը Թաջուլմուլուքի որդիներից
մեկի անունից։ Մյուս որդին գրավեց Բաալբեկը։ Իսկ Զանգի զո-
րահրամանատարը, զորք առած, եկավ պաշարեց Բաալբեկը և հզոր
քարարձակների օգնությամբ, որոնք գիշեր-ցերեկ թակում էին այդ
գարմանահրաշ շինությունը, կատաղի հարձակումներ գործեց նրա
106 դեմ։ Ամեն օր հազարավոր մեծամեծ քարեր էին արձակվում ||
նրա վրա, մինչև որ ստիպված հանձնեցին բերդը։ Այսպես Զանգին
տիրեց անառիկ Բաալբեկին, որից հետո սկսեց տևական պատե-
րազմ մղել Դամասկոսի դեմ։*

## 306. Երուսաղեմի թագավորի պարտությունը Զանգիից և ապա նրանց միջև կնքված հաշտությունը

Ունարը՝ Դամասկոսի ամիրան, տեսնելով, որ Զանգին հզորացել և սկսել է նեղություն պատճառել իրեն, իսկ ինքը չի կարող նրան դիմադրել, դիմեց Երուսաղեմի թագավորին. և նրան բազում ոսկի նվիրեց, որպեսզի օգնության հասնի և վանի Զանգիին։ Թագավորը զորք հավաքեց և եկավ մոտեցավ Զանգիին։ Իսկ Զանգին խորամանկաբար փախուստ ձևացնելով, խույս տվեց թագավորից, մինչև որ սա թափանցեց երկրի խորքերը։ Այնժամ Զանգին թափով ետ դարձավ, և թագավորը պարտվեց։ Նրա զորքերը թիկունք դարձրին, և թուրքերն սկսեցին նրանց սրի քաշել։ Թագավորը քչերի հետ ապաստանեց Տրիպոլիի սահմաններում գտնվող մի բերդում, որ կոչվում է Հիսն ալ-Աքրադ[241], և իր մարդկանց հետ թաքնվեց այնտեղ։ Զանգին եկավ պաշարեց այդ բերդը և սաստիկ նեղության մեջ դրեց նրան. ներսում եղողները մինչև իսկ առանց աղի կերան իրենց ձիերն ու գրաստները։

Թագավորը լուր ուղարկեց Անտիոքի տեր Պուատվինին և Ուռհայի իշխան կոմսեր Ժոսլինին, որպեսզի զորք հավաքեն և գան իրեն օգնության։ Սակայն մինչ նրանք կհավաքվեին ու կգային, թագավորը խիստ նեղության մեջ ընկավ։ Զանգին էլ լսելով, որ ֆրանկները ելել ու զորք հավաքած գալիս են, իսկ թագավորը նեղության մեջ է, վերջինիս մոտ պատգամավոր ուղարկեց՝ հետը դնելով պատվական ու ընտիր կերակուրներ, և նրա նկատմամբ բարեկամություն ու միաբանություն ցույց տվեց։ Նրանք ուխտ կնքեցին, խոստումներ ու երդումներ [փոխանակեցին], և Զանգին մեկնեց այնտեղից։ Քիչ անց հասան ֆրանկ զորքերը և ուզեցին հետապնդել Զանգիին, սակայն թագավորը թույլ չտվեց՝ Զանգիի
107 հետ կնքած ուխտի // և երդումների պատճառով։ Իսկ Զանգին, հզորացած ու զորեղացած, անընդհատ ավերում էր Դամասկոսի երկիրը՝ նվաճելով նրա բոլոր սահմանները, նույնիսկ Թադմորը, որ գտնվում է անապատում։

## 307. Աթարիբի առումը

Ֆրանկների թագավորի հետ հաշտություն կնքելուց հետո Զանգին այլևս չէր մարտնչում նրանց հետ։ Նա կռիվ ու պատերազմ էր մղում միայն մահմեդականների երկրները զավթելու և իրեն ենթարկելու համար։ Հալեպի մոտերքում մի բերդ կար, որ կոչվում էր Աթարիբ, մի ուրիշն էլ՝ Հազդանա[242], որոնց տիրում էր

ֆրանկ իշխաններից մեկը։ Սա զորքով եկավ ավազակություններ գործեց Հալեպի շրջակայքում, և ավար ձեռք բերելով, հեռացավ։ Իմանալով այդ՝ Զանգին վերցրեց իր զորքերը և գնաց պաշարեց այդ երկու բերդերը։ Երբ նեղ դրության մեջ ընկան, նրանք երաշխիքներ խնդրեցին իրենց կյանքի համար։ Զանգին նենգամտորեն երդվեց ու ասաց. «Երդվում եմ այսինչ-այնինչով, որ ձեզ կանգկացնեմ Անտիոքի դարպասով»։ Երբ բացեցին դռները, նա դուրս հանեց տղամարդկանց, կանանց, տղաների ու աղջիկների ողջ բազմությունը, բոլորին բերեց հասցրեց Հալեպ և անցկացրեց Անտիոքի դարպաս կոչվող դռնով, այսպիսով կատարելով իր երդումը։ Սպա բոլոր տղամարդկանց սրի մատնեց, իսկ կանանց ու երեխաներին ստրուկ ու աղախին դարձրեց։

## 308. Կապադովկիա երկրի և Ղազիի որդիների մասին

Դանիշմենդի որդի Ղազիի մահվանից հետո նրա պետության մեջ թագավորեց իր որդին՝ Մահմուդը[243]։ Սա զորեղացավ ու հզորացավ, և նրա լուծը սոսկալի դարձավ կապադովկյան երկրներում, մանավանդ մելիտենացիների համար, որոնց նեղում էր հարկերով ու տուրքերով։ Սակայն աստված նրան պատժեց վատ հիվանդությամբ, և նա մեռավ։ Ղազին ուներ ևս երկու որդի, մեկի անունը՝ Դաուլա[244], մյուսինը՝ Յաղուբ[245]։ Երբ Մահմուդը մեռավ, նրանից հետո թագավորեց Դաուլան։

## 309. Հունաց Հովհաննես կայսեր դեպի Անտիոք ձեռնարկած
108 արշավանքի մասին //

Այդ ժամանակ, 1446 (1135) թվականին, հունաց կայսրը, որ Հովհաննեսն էր, նախանձախնդրությունից դրդված որոշեց արշավել դեպի Ասորիք։ Հույներից, ինչպես նաև ալաման[246] և հունգար ֆրանկներից մոտ չորսհարյուրհազարանոց զորք հավաքելով՝ պատրաստվեց շարժվել դեպի Կիլիկիո ծովափը։ Նա ուզում էր օգտվել ծովից և բեռները տեղափոխել նավերով, որպեսզի նրանք անընդհատ հացահատիկ և պարեն բերեին իր զորքերի համար։

Այդ ժամանակ Կիլիկիայում իշխում էր Ռուբենի որդի Լևոն[247] անունով հայը, որը Ուռհայի իշխան կրտսեր Ժոսլինի քեռին էր։ Այս Լևոնը հպարտացել ու մեծամտացել էր։ Երբ, ինչպես վերը նշեցինք, նրա երկրում Ղազիի ձեռքով սպանվեց Անտիոքի իշխան Բոհեմունդը, նա հոխորտաց ֆրանկների վրա և, մտնելով Տագրս[248] անունը կրող ծովափնյա շրջանները, գրավեց Տարսոնն ու

Մսիսը՝ անհագին վնաս պատճառելով ֆրանկներին։ Անտիոքում
Պուատվինի գահակալումից հետո նրանց թշնամությունը շարու-
նակվեց։ Լևոնը մշտապես ավազակություններ էր գործում նաև
հունաց սահմաններում, այդ պատճառով հունաց կայսրը խիստ
զայրացած էր նրա վրա։
Հունաց կայսեր արշավանքի ժամանակ Պուատվինը նույնպես
զորք հավաքեց և մտավ կողոպտելու Կիլիկիո երկիրը։ Լևոնը պատ-
րաստվեց ճակատամարտ տալ նրան, սակայն աննկատելիորեն ըն-
կավ ֆրանկների պատրաստած ծուղակը և բռնվեց։ Պուատվինը
նրան շղթայված բերեց Անտիոք։ Եվ մինչդեռ նա բանտարկված էր
Անտիոքում, հունական զորքերը հասան մինչև Կիլիկիո դռները։
Կայսրը պատգամավորներ ուղարկեց ֆրանկների մոտ և հաղոր-
դեց. «Ով հնազանդվում է ինձ և բարի կամենում, թող վեր կենա
գա՝ ինձ պատիվ տալու»։ Ուռհայի տեր Ժոսլինն ու Պուատվինը՝
Անտիոքից, եկան ողջունելու կայսրին, որին հանդիպելով Տար-
109 սոնից վեր՝ || ուրախությամբ ընդունվեցին նրա կողմից և վերա-
դարձան իրենց քաղաքները։ Հունաց կայսրը գրավեց Տարսոնը,
Մսիսը և Ադանան, պաշարեց ու գրոհով նվաճեց նաև Անարզա-
բան, ապա շարժվեց դեպի Անտիոքի խորին հարթավայրը։ Նրա
զորքերը ցրվեցին այս ու այն կողմ՝ լեռներում ու դաշտերում, և
բազում չարիքներ գործեցին քրիստոնյաների գյուղերում։ Անտիո-
քի և Ուռհայի իշխանները նորից եկան ողջունելու նրան։ Սակայն
հունաց կայսրը պահանջեց, որ Անտիոքը տրամադրեն իրեն՝ մոտը
եղած բեռներն ու գանձերը այնտեղ պահելու համար, մինչև նա
նվաճի մահմեդականների երկրները և փոխհատուցի տիրոջը։ Ան-
տիոքի տերը դրանից խռովեց։
Հունաց կայսրը արշավանքի էր ելել ահռելի զորքով ու ան-
սպառ գանձերով, իր չորս որդիների, եղբայրների, փեսաների և
ողջ շքախմբի հետ միասին։ Նա ուխտել էր մինչև կյանքի վերջը
ետ չդառնալ իր զորքերի, կեսարների, սեբաստոսների, պատրիկ-
ների[249] և մյուս մեծամեծների հետ, քանի դեռ խոշոր հաղթանակ
չի տարել։ Նա այդպես էր խորհում։ Սակայն հաղթանակ ու կա-
րողություն տվողը և թագավորների գործերը տնօրինողն աստ-
ված է։
Երբ Պուատվինը՝ Անտիոքի իշխանը, վերադարձավ իր քա-
ղաքը, ազատ արձակեց Լևոն հային, որը գնաց իր երկիրը։ Լևոնը
եկավ և աղերսանքով ներկայացավ հունաց կայսրին։ Սակայն
վերջինս շղթայեց նրան և երեխաների ու հարազատների հետ ու-
ղարկեց Կոստանդնուպոլիս։

## 400. Կիլիկիո երկրի Ադանա քաղաքի առումը և նրա բնակիչների կոտորածը թուրքերի ձեռքով[250]

*Մինչ կայսրը բանակ էր դրել Անտիոքի հարթավայրում, և
ֆրանկները ձևականորեն՝ առանց ուղղամտության համագործակ-
ցում էին նրա հետ, հանկարծ Ադանա քաղաքից ցավալի գույժ
ստացվեց՝ նրան հասած դառնագույն փորձանքի մասին։ Ադանա
քաղաքը շատ հարուստ էր քրիստոնյաներով, և նրա ողջ բնակչու-
110 թյունը հակոբիկներ էին։ // Այնտեղի մետրապոլիտն այդ ժամա-
նակ Հովհաննեսն էր՝ Իշո բար-Արիքան՝ Ուռհայից։ Երբ հունաց
կայսրը տիրեց նրանց, այնտեղ պահապան զորքեր թողնելով՝ գնաց
Անտիոքի երկիրը։ Նրանք ուրախացան, թե հնազանդվելով հույնե-
րին՝ վերջապես հանդիստ դտան և ազատվեցին ֆրանկների դառն
հարկերից։ Եվ մինչդեռ այսպես հանդիստ ու անհոգ էին, կիրակի
օրվա լուսաբացին թուրքերը վրա հասան ու շրջապատեցին նրանց.
և անմիջապես խելահեղ կռիվ սկսելով, լափող կրակի նման հար-
ձակում ծավալեցին։ Ապա պարիսպներին սանդուղքներ հենելով՝
սկսեցին վեր մագլցել։ Եվ մինչ մի կողմից վանում էին նրանց,
նրանք հայտնվում էին մյուս կողմից։ Ներսում գտնվողները թու-
լացան նետերի ու քարերի հարվածներից և շրջապատող հսկայա-
կան կրակից։ Թեև առավոտից մինչև կեսօր դիմացան այդ նեղու-
թյանը, բայց Տերը նրանցից երես թեքեց. և նրանք մատնվեցին
թշնամու ձեռքը։*

*Դա այնպես զարմանալիորեն կատարվեց, որ լսողները չեն
հավատա։ Թուրքերից մեկը, մագլցելով պարսպին հենված սան-
դուղքով, հասավ մինչև նրա վերին ծայրը, բայց պարիսպը դեռ
բարձր էր նրանից։ Այնտեղ սակայն մի ճյուղ գտնվեց, որ աճել էր
պարսպի վրա։ Թուրքը բռնեց այն ու բարձրացավ կանգնեց նրա
վրա։ Պաշարյալներից մեկը, որ գտնվում էր պարսպի վրա, նրա
գլխավերևում, փորձեց իր ձեռքում եղած նիզակով խանգարել հա-
կառակորդին և նրան վայր գցել։ Սակայն թուրքը ձգեց ձեռքը և
բռնեց նիզակը։ Վերևում կանգնածը սկսեց ուժգնորեն այն քաշել
իր կողմը՝ նրա ձեռքից ազատելու համար։ Թուրքն այսպես կախ-
ված [նիզակից], բարձրացավ պարիսպը և թուրը քաշեց այդ
111 դժբախտի վրա, որն ուժատված ընկավ։ Իսկ մյուսներին, // որ
մոտ էին կանգնած, ահուդող համակեց, և նրանք սկսեցին փախ-
չել։ Թուրքերը ոգևորված բարձրացան առաջինի ետևից և գրավե-
ցին պարիսպը։ Մի ժամում պարիսպը լցվեց թուրքերով, որոնք*



6—885

*այնուհետև իջան քաղաք և բացեցին դարպասները։ Թուրքական զորքը ներս մտավ։*

*Աստված պայքացավ Ադանայի ու նրա բնակիչների վրա։ [Թուրքերը] ողջ ժողովրդին դուրս հանեցին, տղամարդկանց ծնկի բերելով սրի մատնեցին, ապա սկսեցին կողոպտել տները, սրահներն ու եկեղեցիները՝ ղավթելով ահագին հարստություն։ Տղաներին ու աղջիկներին խումբ-խումբ գերի տարան։ Բռնվեցին նաև մետրապոլիտը, քահանաները և երիտասարդ սարկավագները, որոնց կապկպելով պարաններով՝ նույնպես դառն գերության քշեցին։ Ապա քաղաքը սրի մատնելով՝ այն վերածեցին անապատի և վերադարձան իրենց երկիրը։*

*Երբ այդ լուրը հասավ հունաց կայսրին, նրա զորքերը ոտքի ելան և ընկան Թուրքերի ետևից, բայց չհասան նրանց, քանի որ արդեն յոթ օր էր անցել։ Գերիներին բերին վաճառեցին տարբեր վայրերում, մանավանդ Մելիտենեում։ Իսկ ովքեր փրկվել էին, վերադարձան քաղաք։ Հովհաննես կայսրը հոգ տարավ նրանց մասին և ապահովեց ապրուստի միջոցներով։ Ադանայի աղետը տեղի ունեցավ հունաց կայսեր արշավի ելնելուց հինգ ամիս հետո։ Շուտով վրա հասավ ձմեռը և կայսրն իր զորքերով ձմեռեց Կիլիկիայում։ Նրանց մեջ հիվանդություններ և համաճարակներ տարածվեցին։*

## 401. Ուռհայեցիների քարավանի ոչնչացումը և մի մեծ բազմության կոտորածն ու կողոպուտը Տափքիլում[251] Տիմուրտաշի կողմից

*Այդ տարվա հոկտեմբեր ամսի վերջին, մինչ կայսրը գտնվում էր Կիլիկիայում, Սամոսատ քաղաքում մի մեծ բազմություն հավաքվեց՝ Ուռհա գնալու համար։ Եթե մեծ բազմություն չէր հավաքվում, չէին կարողանում գնալ՝ վախենալով թշնամիներից, որոնք դարան մտած շարունակ հսկում էին նրանց ճանապարհները։ Այսպես ուրեմն, հավաքվեց հացահատիկ, գինի և ապրուստի միջոց-*
112 *ներ բարձած մի մեծ բազմություն՝ // անհամար մարդկանցով, գրաստներով ու ամենայն անհրաժեշտ բեռներով, որոնց ուղեկցում էին ֆրանկ հեծյալներն ու հետևակայինները։*

*1447 (1136) թվականի հոկտեմբերի 29-ի ուրբաթ օրվա լույս գիշերը, երբ նրանք անցել էին Եփրատը և մի քանի մղոն առաջացել դեպի Ուռհա, տաս հազար հեծյալներով վրա հասան Մարդինի և Նփրկերտի ամիրա Տիմուրտաշի՝ Ղազի Արտուքյանի որդու*

հրոսակները և ողջ գիշեր մարտնչեցին նրանց հետ։ Երբ բացվեց այդ դժբախտ օրվա առավոտը, մինչև կեսօր կարողացան մի կերպ դիմանալ։ Աստվածային ճշմարտությունն այդ քարավանի վրա որոտաց Տափթիլ կոչվող գյուղի մոտ՝ Ուռհայի ճանապարհին։ Մերկացրած սրերով հարձակման անցնելով՝ [թուրքերը]․անհաշիվ թվով մարդկանց կոտորեցին, հազարներով գերի վերցրին և անըսպառ հարստություն, անթիվ դրաստներ՝ ձիեր, ջորիներ ու էշեր խլեցին։ Ապա առնելով խումբ-խումբ կապկպված գերիներին՝ նրանց հասցրին Ուռհայի դարպասին ու պարիսպներին և, դիմելով ուռհայեցիներին, ասացին. «Ո՜վ թշվառներ, ի՞նչ եք սպասում. հանձնեցեք քաղաքը, և մենք կազատենք ձե՛ր գերիներին»։ Սակայն [Տիմուրաշի] ցանկությանը բավարարություն չտվին, և նա ելավ գնաց, քանի որ քաղաքը պաշարելու համար անհրաժեշտ ռազմական գործիքներ չէր պատրաստել։

## 402. Հունաց կայսեր թափանցումը ասորոց երկրները

Երբ ձմեռն անցավ, և եկավ գարունը, հունաց կայսրը պատրաստվեց մտնել ասորոց երկրները։ Նա լուր ուղարկեց ֆրանկ իշխաններին, որպեսզի հավաքվեն իր մոտ։ Ապա ելավ գնաց Մարաշ[252], Տլուք, Այնթապ[253] ու Թլպաշար և ի վերջո եկավ Մաբբուգ։ Այնուհետև վերցնելով Ուռհայի տեր Ժոսլինին, նրան ստիպեց պաշարել Մաբբուգի և Հալեպի միջև գտնվող Բուզաա[254] անունով բերդը։ Գրավելով բերդը՝ կայսրն այն կողոպուտի մատնեց։ Իսկ հե-
113 տո, նրա տերերին գերեվարելով, բերդը հանձնեց Ժոսլինին։ //

## 403. Շիզար[255] անառիկ բերդի պաշարումը հունաց կայսեր կողմից

1448 (1137) թվականին մեկնելով Բուզաայից, նրանք ուղղվեցին դեպի Հալեպ և անհամար մարդկանցով ու զորքերով մորեխի նման հայտնվեցին այնտեղ։ Հալեպցիների սիրտը դողաց, քանի որ կարծեցին, թե պատրաստվում են պաշարել իրենց։ Եթե իսկապես պաշարեին Հալեպը, կարող էին կարճ ժամանակում գրավել այն։ Սակայն օրհնյալ ֆրանկները, որոնք բարի չէին տրամադրված հունաց կայսեր նկատմամբ և նրա հետ համագործակցում էին կեղծ սիրալիրությամբ, խորհուրդ չտվին տվյալ պահին պաշարել Հալեպը։ Նրանք մի չարամիտ և կործանարար առաջարկ արեցին, որ նա գնա պաշարի Շիզար անառիկ բերդը։ Դա մի ամուր բերդ էր, կառուցված բարձր լեռան գագաթին, որի ետևում լեռան

լանջերով մի գետ էր հոսում։ Նրան տիրում էին պատվական մար-
դիկ՝ Մունկիդի որդիներ[256] կոչվող արաբներից։ Սրանք ցեղակից-
ներն էին Կալա-Ջաբարի տիրոջ, որի երաշխավորությամբ, ինչպես
վերը նշեցինք, Մոսուլից փրկաղնվել էր Բաղդուին իշխանը։ Բնա-
վորությամբ բարի ու օտարասեր մարդիկ էին և միշտ էլ լավ միջ-
նորդներ էին հանդիսանում։

Ջանգին, որ այդ ժամանակ գտնվում էր Հալեպում, տեսնելով
հույների ու ֆրանկների ձախորդ քայլը, խիստ ուրախացավ. քանի
որ նախ՝ գիտեր, որ նրանք ճիշտ չեն վարվում, և երկրորդ՝ որ պա-
տերազմն առժամանակ հեռացավ իրենից։ Եվ մինչդեռ նրանք
պաշարել էին Շիզար բերդը, Ջանգին քաջաբար հսկում էր իր սահ-
մանները և մոտենում հույների ճամբարին։ Երբ հույները, հար-
ձակվելով բերդի վրա, ոչինչ չկարողացան անել, նրանց զորքերն
սկսեցին նեղվել [պարենի] պակասից, քանի որ նրանց մոտ մի
անհամար բազմություն էր հավաքվել։ Իսկ Ջանգին խելամտորեն
խանգարում և հսկում էր, որ նրանք ոչինչ չստանան։ Երբ կարիքը
բանակում սաստկացավ, ժամանակը ձգձգվեց, և հնար չգտան
114 բերդը գրոհով գրավելու, // կայսրը հասկացավ ֆրանկների նեն-
գությունը, որ նրանք իր ժամանակը վատնելու համար են իրեն
բերել և պաշարել տվել այդ բերդը։ Ներսիններն իրենց հերթին
պատգամավորներ ուղարկեցին հունաց կայսեր մոտ և ասացին.
«Ֆրանկները քեզ խիստ մոլորեցրել են, ո՛վ արքա, բերելով և պա-
շարել տալով այս բերդը։ Մենք ոչ ոքի վնաս չենք պատճառում և
չենք վշտացնում քրիստոնյաներին»։ Եվ նրան ուղարկեցին նվեր-
ներ ու պարգևներ, ոսկուց և արծաթից պատրաստված եկեղեցա-
կան սպասներ, ինչպես նաև ոսկեղեն խաչեր, որ հույն թագավոր-
ների դեմ իրենց նախնիների տարած հաղթանակների ժամանակ-
ներից պահում էին իրենց մոտ։ Կայսրը մեկնեց Շիզարից ու եկավ
Անտիոք, իսկ այնտեղից գնաց Անարզաբա՝ վշտացած այն բանից,
որ ողջ ամառը ոչինչ չէր արել։

## 404. Թե ինչպես Բուզաան նորից ընկավ մահմեդականների ձեռքը, և նրա գերիները փրկվեցին ստրկությունից

Ջանգին ուղղվեց դեպի Բուզաա և, գրավելով այն, կոտորեց այնտեղ գտնվող բոլոր ֆրանկ զինվորներին։ Ինչ վերաբերում է այնտեղից գերի տարված մարդկանց, նրանք գտնվում էին Աղադ ամրոցում։ Պարենի պակասի պատճառով ամեն օր նրանց հանում էին ոլոռի դաշտերը՝ սնվելու։ Ջանգին մի ուժեղ զորագունդ ուղար-

կեց, որը դարանակալեց նրանց։ Երբ [գերիները] ցրվեցին դաշտերում, նրանք փակեցին ելումուտի ճանապարհները և բոլորին հավաքեցին։ Նրանց հետ եղած պահապաններից շատերն սպանվեցին, իսկ գերիները փրկվեցին և եկան Բուղաա։

## 405. Հունաց կայսեր որդիների մահը և նրա ամոթալի վերադարձն իր երկիրը

Մինչ հունաց կայսրը նստած էր Կիլիկիայում, մեռավ նրա անդրանիկ որդին՝ Ալեքսը։ Նրան զմռսեցին և ուղարկեցին մայրաքաղաք։ Որոշ ժամանակ անց մեռավ նաև մյուս որդին, և նրան էլ զմռսելով մայրաքաղաք ուղարկեցին։ Կայսրը՝ խիստ վշտացած, նույնպես վերադարձավ // Կոստանդնուպոլիս, մահմեդականներից գրավել չկարողանալով անգամ մի տուն և չտանելով ոչ մի հաղթանակ։

## 406. Դեպի Կիլիկիա հունաց կայսեր ձեռնարկած երկրորդ արշավանքի և նրա մահվան մասին[257]

Հաջորդ տարի հունաց Հովհաննես կայսրը, նորից պատրաստություն տեսնելով, ոտքի կանգնեց և եկավ մինչև Տարսոն։ Նա հավաքեց ֆրանկ թագավորներին և նրանց կշտամբեց նախորդ դեպքերի համար։ Հետո որոշեց նրանց հետ խնամություն հաստատել՝ ամուր կապեր ապահովելու նպատակով։ Եվ մինչ խորհում էր դրա մասին, մի օր զվարճանալու համար գնաց որսի։ Նրա առաջ մի եղնիկ հայտնվեց, և նա լարեց նետաղեղը՝ առջևից փախչող որսին խփելու համար։ Սակայն սայրը քսվեց նրա ձախ ձեռքին և, մի փոքր քերծելով այն, վերք առաջացրեց։ Դրանից հետո նրա թևն ամբողջովին ուռավ, և մի քանի օրից նա մեռավ։ Նրա մոտ էր գտնվում իր Մանուել[258] անունով փոքր որդին, որին էլ կայսր հռչակեց, քանի դեռ ողջ էր։ Նրա զինվորները զմռսեցին նրան և, վերցնելով նաև որդուն, մեծ սգով վերադարձան Կոստանդնուպոլիս։

Այդ ժամանակ՝ 1449 (1138) թվականին ուժեղ երկրաշարժ տեղի ունեցավ, և բազմաթիվ քաղաքներ կործանվեցին, մանավանդ Կիլիկիայում և Ասորիքում։ Աթարիբ ամուր բերդը գետնին հավասարվեց, կարծես երբեք գոյություն չէր ունեցել։ Սակայն Երուսաղեմը չտուժեց։ Նույն ժամանակ մեռավ Երուսաղեմի թագավորը և գահակալեց նրա որդին՝ Բաղդուինը[259]։

## 407. Ալամանաց[260] թագավորի[261] արշավանքն իր զորքերի հետ[262]

*1455 (1144) թվականին[263] ալամանաց թագավորը արշավանքի ելավ երկու հարյուր հիսունհինգ հազար ֆրանկների ուղեկցությամբ։ Նրա հետ էր նաև մի այլ ֆրանկ թագավոր[264], հարյուր հազար հոգով։ Նրանք եկան մինչև Կոստանդնուպոլիս և հունաց*
116 *կայսրից || ուղեկիցներ խնդրեցին, որպեսզի իրենց առաջնորդեն ցամաքային ճանապարհով։ Իսկ կայսրը հույների վատ սովորության համաձայն՝ նրանց հետ մարգիկ ուղարկեց և հրամայեց, որպեսզի նրանց մոլորեցնեն ամայի ճանապարհներում։ Ապա լուր ուղարկեց Կապադովկիայի թուրքերին, որպեսզի կորստյան մատնեն նրանց։ Ուղեկցելով նրանց և տասն օր քայլելով առջևներից այդ առաջնորդողները նրանց բերին մի անբնակ անապատ ու ետ դարձան։ Կարիքն սկսեց նեղել դժբախտ ֆրանկներին։ Չկար մի քաղաք կամ վայր, որտեղ կարողանային որևէ բան գնել ու դիմանալ։ Նրանք թուլացան քաղցից և տոչորվեցին ծարավից։ Ասլա վրա հասան թուրքական զորքերը և հնձվորների նման ընկան նրանց վրա։ Թագավորները փոքրաթիվ զորքերի հետ կարողացան փրկվել և ծովով գնալ Իտալիա, որտեղից նավով եկան Անտիոք։ Թուրքերը ոսկու և արծաթի անսպառ հարստություն խլեցին և բազմաթիվ գերիներ ձեռք բերին։ Այսպիսի դառը վախճան ունեցավ այդ թագավորների արշավանքը օրհնյալ հույների նենգության պատճառով։*

## 408. Ալֆոնս[265] անունով մի այլ թագավորի արշավանքը և նրա վախճանը

*Այդ ժամանակ Ալֆոնս անունով մի այլ թագավոր, արշավանքի ելնելով, հազար ընտիր հեծյալների հետ նավով հասավ Աքքա[266] քաղաքը։ Լսելով այդ լուրը, Տրիպոլիի կոմսը եկավ Աքքա՝ նրան տեսնելու։ Բայց երբ իմացավ, որ իր ազգականներից է, կոմսը վախեցավ, որ նա կարող է իր երկրում ժառանգություն պահանջել։ Այդ պատճառով վերցնելով նրան ու բերելով Տրիպոլի՝ նրա պատվին ընթրիք կազմակերպեց և մահաղեղ տվեց։ Այդպես, [Ալֆոնսը] հրաժեշտ տվեց իր անցավոր կյանքին։*

## 409. Դամասկոս քաղաքի պաշարումը ֆրանկների կողմից

*Այդ ժամանակ Երուսաղեմի թագավոր Բաղդուինը, նրա եղբայր Ամորին[267], ալամանաց թագավորն ու նրա հետ արշավանքի*

ևլած մյուս թագավորը պատրաստություն տեսան և իրենց զորքե-
117 րով եկան պաշարեցին // Դամասկոսը: Ալամանաց թագավորը
կատաղի հարձակումներ գործեց քաղաքի վրա, մինչև որ պաշար-
վածները նեղության մեջ ընկան և պատրաստակամություն հայտ-
նեցին հանձնել քաղաքը: Սակայն Երուսաղեմի թագավորը նա-
խանձոտ քրիստոնյաների վատ սովորությամբ գոհ չէր դրանից:
Նա վախենում էր, որ ալամանաց թագավորը տիրելով Դամասկո-
սին, իրեն կենթարկեր նաև Պաղեստինն ու Երուսաղեմը: Եվ տես-
նելով, որ պաշարվածներն ակնհայտորեն պատրաստվում են
հանձնվել, նա թաքուն լուր ուղարկեց նրանց՝ ասելով. «Ի՞նչ կտաք
ինձ, եթե վերցնեմ թագավորներին ու հեռացնեմ նրանց քաղա-
քից»: Ներսիններն ուրախացան և որոշեցին նրան տալ հարյուր
հազար դինար ոսկով: Այնժամ Բաղգուինն ասաց ալամանաց թա-
գավորին. «Ավելի լավ կլինի, եթե վերացնենք պաշարումը և հետո
գանք երկրորդ անգամ պաշարենք քաղաքը»: Ալամանաց թագա-
վորը հավատաց նրան: Երբ մեկնեցին, տեղավորվեցին մի այն-
պիսի վայրում, որտեղ ոչ մի հարմարություն, նույնիսկ ջուր չկար:
Այսպես [Բաղգուինը] չարչարեց նրանց ու շեղեց պատերազմա-
կան գործից: Ալամանաց թագավորը խռովեց և ի վերջո վեր կա-
ցավ գնաց Աքքա: Մյուս ֆրանկ թագավորի հետ միասին նրանք
ծով գուրս եկան և, առանց որևէ բան արած լինելու, գնացին իրենց
երկիրը: Իսկ Բաղգուին թագավորը, ստանալով հարյուր հազար
դինարը, տեսավ, որ բոլորն էլ պղնձյա են, հմտորեն պատրաստ-
ված դամասկացիների կողմից՝ իր անմտության վրա ծիծաղելու
համար:

### 410. Զանգիի պատերազմը Արտուքյանների դեմ և նրա գժտությունը Ժոսլին ուռհայեցու հետ

Զանգին՝ Արևելքի երկրների և Հալեպի տիրակալն ու թուր-
քերի մեծ զորահրամանատարը, այլևս մտահոգություն չունենալով
քրիստոնյա թագավորների կողմից, անցավ Եփրատը և սկսեց պա-
տերազմել Արտուքի սերունդների՝ Տիմուրտաշի և Դաուդի որդի-
ների դեմ, ասպատակելով նրանց սահմանները: Նա գրավեց Դու-
118 րա քաղաքը, Թլմոզը[268], // Ջամալինն ու ողջ Շարաքտանը[269], ինչ-
պես նաև՝ Խանինը, Արկնինը[270] և Խամիմթան[271]: Արտուքյանները
նեղ դրության մեջ ընկան և գնացին օգնություն խնդրեցին Ուռ-
հայի տեր Ժոսլինից՝ նրան զիջելով Կարկառի երկրում գտնվող
Պեպու բերդը[272]: Վերջինս պատրաստվեց նրանց հետ միասին պա-

*տերազմելու Զանգիի դեմ։ Իսկ Զանգին, որն, ինչպես վերը նշեցինք, խորամանկ և խելացի մարդ էր, Արտուքյանների հետ հաշտություն կնքեց։ Սրանք իրենք էլ շահագրգռված էին հաշտությամբ, քանի որ Ժոսլինը չկարողացավ նրանց օգնել, ինչպես հույս ունեին։ Իսկ Զանգիի հոգում կայրույթ և ատելություն կուտակվեց Ժոսլինի նկատմամբ, և նա շարունակ առիթ էր որոնում Ուռհան գրավելու համար։ Նա անընդհատ լրտեսներ էր ուղարկում իմանալու, թե երբ է այն դատարկվելու զորքերից։ Խառան քաղաքում ապրում էր մի ազնվական մարդ՝ Ֆադլալլահ իբն Ջաֆար անունով, որը արաբների ցեղապետն էր և ուռհայեցիների թշնամին։ Լրտեսները միշտ նրա մոտ էին ապաստանում, և նա առաջնորդում էր նրանց։ Իսկ Զանգին այդ ժամանակ պաշարել էր Ամիդ քաղաքը։*

## 411. Ուռհայի պաշարումը Զանգիի կողմից

*Այդ ժամանակ Ուռհայի տեր Ժոսլինը հավաքեց իր բոլոր զոր-
քերը և գնաց ավազակություններ գործելու Եփրատի առափնյա
շրջաններում՝ Բալիսի[273] և Ռակկայի[274] մոտ։ Խառանի վերոհիշյալ
կառավարիչը շտապ լուր ուղարկեց Զանգիին, որը պաշարել էր
Ամիդը, և հայտնեց նրան, որ քաղաքը դատարկվել է զորքերից։
Իր զինվորներից ամենամարտունակներին՝ վերոհիշյալ Սալահեդ-
դին անունով խիզախ մարդու գլխավորությամբ, Զանգին անմի-
ջապես ուղարկեց Ուռհա՝ այն գրավելու հույսով։ Իսկ եթե դա չհա-
ջողվեր, նրանք պետք է պաշարեին քաղաքը և ստուգեին նրա
ուժը։ Եթե հանդիպեին նրա կորովին ու զորությանը[275], պետք է ետ
դառնային, իսկ եթե ոչ՝ պետք է նրա շուրջը հսկիչներ կարգեին և
իրեն լուր տային, որ գա։ Երբ ուղարկվածները ճանապարհ ընկ-
119 կան, Զանգին նույնպես հետևեց նրանց։ || Ողջ այդ օրը և հա-
ջորդ գիշերը նրանք քայլում էին արագությամբ։ Եվ եթե նույն
գիշերը տեղ հասնեին, կարող էին գրավել քաղաքը, քանի որ ուռ-
հայեցիները դեռևս բանից անտեղյակ էին։ Սակայն երեկոյան հորդ
անձրև սկսվեց, և խավար տիրեց։ Հասնելով քաղաքի մոտակայքին՝
զորքերը մոլորվեցին և, երբ լույսը բացվեց, նրանք գտնվում էին
Խառանի ճանապարհին։ Ետ դառնալով՝ նրանք այլևս չկարողա-
ցան օգտվել անակնկալից։ Քաղաքի վրա նրանք հարձակումն
սկսեցին 1455 (1144) թվականի նոյեմբերի 28-ի երեքշաբթի[276] օր-
վա առավոտյան։ Երբ հասան քաղաքի դերեզմանատանը, պա-
րիսպների արանքում նրանք սպանեցին մի քանի հոգու և, տես-*

նելով քաղաքի թուլությունը, Զանգիի մոտ աղավնիներ արձակե-
ցին, որպեսզի արագացնի իր ժամանումը։ Եվ ահա հինգշաբթի[277]
օրվա առավոտյան Զանգին հասավ նրանց, և նրա հետ միասին
երկնքի աստղերի չափ զորքեր հայտնվեցին, լցնելով քաղաքի
շրջակա ողջ հարթությունը։
Նրանք խմբերով շրջապատեցին քաղաքը և իրենց վրանները
խփեցին նրա շուրջը։ Շատ փորձեցին վրաններ խփել նաև ար-
տաքին պարսպից ներս։ Զանգին իր վրանը խփեց քաղաքի հյու-
սիսային կողմում՝ Ժամացույցի կոչվող դարպասի դիմաց, Խոս-
տովանողաց[278] տաճարից վեր գտնվող բարձունքի վրա։ Նրանից
դեպի արևելք խփեցին մեծ արքայազնի՝ վերը հիշատակված սուլ-
թանի որդու վրանը, իսկ դեպի հյուսիս՝ Ջամալեդդին[279] անունը
կրող մի խելացի պարսկի վրանը, որը Զանգիի պետության վե-
զիրն էր և հարկերի ու եկամուտների վերահսկիչը։ Վերջինս, այդ-
պիսով, հաստատվեց դիտակետերի բարձունքի վրա։ Իսկ Սալահ-
եդդին մեծ զորավարն ու իմաստուն առաջնորդը, որ Զանգիի
բոլոր զորքերի հրամանատարն էր, իր վրանը խփեց քաղաքի արև-
մտյան կողմում՝ Աղբյուրի դարպասի դիմաց, գերեզմանոցի բլրի
վրա, որտեղ գտնվում է սուրբ Եփրեմի[280] գերեզմանը։ Սալահեդ-
120 դինից վեր՝ Սողոմոնի հովտի եզրին, || Բարսումայի անունը կրող
ցանկապատի դիմաց հաստատվել էր Արբելայի[281] և Շահրզորի[282]
տիրակալ Զեյնեդդին Ալի Քուչուկը։ Քասասի[283] դարպասի արևելյան
կողմից բանակել էր Դուբայս անունով մեծ ամիրան՝ Բաբելոնի դի-
մաց փռված ստորին երկրների տիրակալը, որը, ինչպես նշել էինք
վերը, մի ժամանակ խռովել և ապաստան էր գտել ֆրանկների մոտ։
Նրանից հյուսիս, Բուզանի այգում բանակ էր դրել Ջաֆարանի[284] և
Արկնինի ամիրա Աբուալին։ Հյուսիս-արևելքում հաստատվել էին
Պողոսակի[285] սերունդները՝ Սևերակի[286] և Եփրատի ափերի տերերը։
Քասասի դարպասի հարավում բանակել էր Այնուդդաուլան՝Շաբաք-
տանի տերը, նրանից էլ հարավ՝ Թուրքմենների զանազան ցեղերը։
Դեպի Խառան նայող հարավային դարպասի մոտ տեղավորվել էին
քրդական բազմաթիվ ցեղեր, իսկ նրանցից վեր՝ մեծ թվով արաբ և
հալեպցի աշխարհազորայիններ։ Արևմտյան կողմից, բերդի դիմաց,
ճամբար էր խփել Մաբբուգի ամիրա Հասանը[287]։
Իսկ քաղաքը շատ թույլ էր. այնտեղ զինվորներ չկային, այլ
միայն կոշկակարներ, ջուլհակներ, մետաքսագործներ, դերձակներ,
քահանաներ ու սարկավագներ։ Կար նաև երեք եպիսկոպոս, մեկը
ֆրանկ, որ կոչվում էր Պապիոս[288] և վարում էր քաղաքի գործերը,

մեկն՝ ասորի, այն է՝ Բարսեղ բար-Շումմանան[289], որը նույն քաղաքից էր, իսկ մյուսը՝ հայ, որի անունն էր Հովհաննես։

Խիզախաբար կռվի մեջ մտնելով, [քաղաքացիները] դիմադրում
էին, որքան կարող էին։ Դրսում եղողները բաբաններ տեղադրե-
ցին, իսկ ամիրաներից ամեն մեկը քարարձակներ հաստատեց,
որոնք ուժգնորեն թակում էին պարիսպը։ Ապա քաղաքի հյուսի-
սային մասից սկսեցին գետնուղիներ փորել պարսպի և ժամա-
ցույցի դարպասի մյուս կողմում գտնվող կամրջի տակ։ Փորելով,
նրանք հասան մինչև պարսպի հիմքը։ Կռիվը դեռևս չէր դադա-
րում։ Զանգին շարունակ խոսք էր բացում հաշտության մասին,
121 բայց [պաշարվածները] չէին // համոզվում։ Նա շատ էր
ուզում խաղաղությամբ նվաճել քաղաքը, որպեսզի այն չավերվի,
և բնակչությունը չոչնչանա։ Նա ասում էր. «Ո՛վ թշվառականներ,
տեսնում եք, որ արդեն ձեր կյանքը փրկելու հույս չկա։ Խնայեցեք
ուրեմն ձեզ և ձեր որդիներին, դուստրերին, կանանց ու հարս-
զատներին, ինչպես նաև ձեր քաղաքը, որպեսզի այն չավերվի ու
չամայանա»։

Սակայն քանի որ քաղաքում չկար մի ղեկավար, որի խոսքը վճռական լիներ, և ամեն մեկն ուզում էր իր կամքով շարժվել, դրա համար նրանց գործը ձախողվեց և վատ վախճան ունեցավ։ Նրանք Զանգիին պատասխանեցին խիստ խոսքերով, ծաղրուծանակով և չափից դուրս անմիտ վիրավորանքներով։ Սակայն ասորոց վերոհիշյալ եպիսկոպոսը մտածեց ու խորհուրդ տվեց ֆրանկ եպիսկոպոսին՝ նամակ գրել Զանգիին և նրանից մի քանի օր խնդրել, մինչև իրենց օգնության հասնելը։ Այդ բանը վերջինիս ընդունելի թվաց։ Խոսելով նաև մյուս խորհրդականների հետ, նրանք, որպեսզի ձգձգեն գործը և կարողանան շունչ քաշել, գրեցին այդ նամակը և կարդացին բազմության առջև։ [Եդեսացիները] հուսահատվել էին կյանքից, հոգնել, մաշվել ու ջլատվել գետնուղիների դեմ շինություններ կառուցելուց։ Կանայք, աղջիկներն ու տղաները անասելի չափով հյուծվել էին արհեստավորներին ու շինարարներին քար, ջուր և այլ անհրաժեշտ բաներ մատուցելուց։ Մանավանդ որ դրսից էլ նրանց հարվածում էին մանգղիոններից արձակված քարերը։ Սահման չկար այն դառն չարչարանքին, որին դատապարտվել էին այդ թշվառները։ Ահա թե ինչու եպիսկոպոսը որոշեց դադար խնդրել՝ հուսալով շունչ քաշել և մի փոքր հետաձգել իրենց սպառնացող վտանգը։ Նրանք իրենց աչքերով տեսնում էին բաբանների հարվածներից ամենևին ճաքճքված պարիսպը, ինչպես նաև հյուսիսային կողմից փորված գետնուղին,

որի միջոցով քանդել էին պարսպի հիմքերը, տեղը փայտի ու քրջի կտորտանքներ լցրել ու արանքները կուպր, ճարպ և ծծումբ
122 ցողել, // որպեսզի կրակը հեշտությամբ բոցավառվեր, և պարիսպը կործանվեր։ Սակայն մի անկիրթ մետաքսագործ, որի անունը Հասանուն էր, ձգելով ձեռքը՝ վերցրեց նամակը և պատռեց այն։ Ապա խառնվեցին իրար, և այդ հրաշալի մտահղացումը ձախողվեց։ Զանգին նրանց շարունակ ասում էր. «Եթե մի քանի օր ժամկետ եք խնդրում, կհամբերենք, գուցե ձեզ օգնություն հասնի, իսկ եթե ոչ՝ հանձնվեցե՛ք»։ Նա ամենևին չէր ուզում ոչնչացնել նրանց, սակայն տեսավ, որ համոզելը չի օգնում, քանի որ, ինչպես ասված է Սուրբ Գրքում, «Տերը խստացրեց փարավոնի սիրտը»՝ նրան կործանելու համար[290]։

## 412. Ուռհայի ողբալի առումը և նրա բնակիչների բնաջնջումը[291]

Այնուհետև Զանգիի կարգադրությամբ պարսպի տակ կրակ տվին։ Աստված[292] հրաման արձակեց կորստյան մատնել ու կործանել Ուռհան։ Գուժկանները ճամբարում ազդարարեցին, որ պատրաստվեն հարձակման և պարսպի փլվելու հետ մեկտեղ, բացվածքով նետվեն քաղաք։ Քաղաքը [Զանգին] երեք օրով հանձնեց նրանց՝ կողոպտելու։ Նախ՝ բոցավառվեցին կուպրն ու ծծումբը. ապա՝ փայտերը, իսկ ճարպն սկսեց եռալ նրանց վրա։ Հյուսիսից քամի փչեց և ծուխը քշեց ուռհայեցիների կողմը։ Պարիսպը երերաց ու փլվեց։ Երբ այն փլվեց, պարզվեց, որ ուռհայեցիների կողմից ներսում նրա դիմաց շինված կառույցը երկու կողմից էլ կարճ էր, որովհետև փլվածքն ավելի մեծ էր, քան շինությունը։ Ծննդյան տոնի նախօրյակին՝ դեկտեմբերի 24-ի շաբաթ օրվա առավոտից մինչև ցերեկվա ժամը երեքը ուռհայեցիները կռվեցին երկու ճեղքվածքների մոտ։ Այդ բացվածքում զոհվեցին շատերը, և թուրքերը ներխուժեցին քաղաք։ Տերը զայրացավ նրա բնակիչների վրա, և սկսեցին նրանց սրի քաշել՝ չխնայելով ոչ մեկին։ Այդ օրը կոտորվեց մոտ վեց հազար մարդ։

## 413. Բերդի դռան դիմաց առաջացած սոսկալի հրմշտոցի մասին[293]

123 // Երբ թուրքերը քաղաք մտան, կանայք, երեխաներն ու պատանիները սկսեցին վազել դեպի քաղաքի վերին բերդը՝ թշնամիներից պատսպարվելու և սրից թաքնվելու համար։ Սակայն տեսան,

որ ֆրանկներն իրենց վատ սովորության համաձայն փակել էին դուռը։ Ֆրանկ եպիսկոպոսը նրանց հրամայել էր. «Մինչև չտեսնեք իմ դեմքը, դուռը չբացեք»։ Այսպիսով բազմությունը խռնվեց իրար և կոտորածի ու գերության վախից՝ մի խումբը ոտնատակ անելով մյուսին, բարձրացավ նրա վրա։ Դա մի ողբալի և ահավոր տեսարան էր։ Նրանք խեղդվում, ջարդուբուրդ էին լինում և ճզմում իրար։ Սոսկալի շնչահեղձության զոհ դարձավ մոտ հինգ հազար մարդ, գուցե և ավելի։ Իսկ տաս հազարի չափ տղաներ ու աղջիկներ գերի քշվեցին։ Երբ Զանգին, քաղաք մտնելով, հասավ բերդի մոտակայքին ու տեսավ այդ սարսափելի հրմշտոցը, շատ տխրեց և անմիջապես հրամայեց դադարեցնել կոտորածը։ Բերդի ճանապարհին սպանվեց ֆրանկների եպիսկոպոսը. գլխին տապարի հարված ստացավ ու մեռավ։ Կոտորածին զոհ գնացին նաև բազմաթիվ քահանաներ, սարկավագներ, վանականներ ու կրոնավորներ։

## 414. Բերդի հանձնումը Զանգիի ձեռքը[294]

Հասնելով վերին բերդի դռանը, Զանգին հաշտություն առաջարկեց՝ երաշխավորելով պաշարվածների կյանքը։ Նրա մոտ իջան մի քանի հոգի՝ բերդում պատսպարված ֆրանկների համար երաշխիքներ և երդումներ խնդրելու նպատակով։ Զանգիին այցելողներից մեկը մի՛ անաստված քահանա էր, որ կոչվում էր Բարսումա Իսմայելի։ Թող նրա անունը ջնջվի կենաց դպրությունից, ինչպես և եղավ, քանի որ նրա բռնած ուղին միշտ խոտոր էր, և նրա համար աստծու դատաստան կամ աստվածավախություն գոյություն չուներ։ Նա ո՛չ աստծուց էր վախենում, ո՛չ էլ մարդկանցից պատ-
124 կառում, ո՛չ կանոններն էր // հարգում, ո՛չ էլ օրենքին ենթարկվում, ո՛չ Քրիստոսին էր ճանաչում, ո՛չ էլ առաքյալներին ընդունում, ո՛չ մահն էր հիշում, ո՛չ էլ դատաստանից երկյուղում, ո՛չ գեհենից էր դողում, ո՛չ էլ հավիտյանը հավատ ընծայում։ Խոսքը, սակայն, երկարեց այդ մարդու մասին, որը, դժբախտաբար, նույնպես գտնվում էր բերդում։

Արդ, երդումներ ստանալով Զանգիից, [պաշարյալները] հանձնեցին բերդը քաղաքի գրավումից երկու օր հետո։ Մյուս օրը Զանգին հրամայեց բոլոր վրաններից հավաքել գերիներին։ Սակայն ովքեր բռնվել էին սկզբում և հեռու տարվել, գերության քշվեցին։ Ապա քաղաքը հսկելու համար պահապաններ կարգեցին, որպեսզի թուրքերը չանհանգստացնեն քաղաքացիներին։ Պահա-

պաններ դրեցին նաև քաղաքի դարպասի մոտ, որպեսզի ոչ մի զինվոր քաղաք չմտնի։ Այսպես ուռհայեցիները հաստատվեցին իրենց տեղերում, և Զանգին բավարարեց նրանց բոլոր կարիքները հացահատիկով և այլ բաներով։ Նրանց սիրտը բացվեց, և ամեն մարդ բնակվեց իր տանը։

## 415. Ուռհայի բերդում գտնվող ֆրանկների հետ պատահած դեպքը

Ավելացնենք նաև թուրքերի ձեռքն անցնելուց հետո քաղաքի բերդում գտնվողների հետ պատահած դեպքերի նկարագրությունը։ Ինչպես վերը ցույց տվեցինք, մի մեծ բազմություն ոչնչացավ, և մոտ երկու հազար կին ու երեխա գերի քշվեցին։ Բերդի առջև կոտորածից ու շնչահեղձությունից զոհվեց մոտ վեց հազար մարդ, գուցե և ավելի։ Զորագլուխը զինվորների ձեռքից ազատեց մոտ տաս հազար հոգու։ Փրկվեցին նաև նրանք, ովքեր թաքնվել էին գետնի տակ և երկու բերդերում։ Երբ, ինչպես ասացինք, վերին բերդի դռները բացվեցին, և [պաշարյալները] երաշխիքներ ստացան իրենց կյանքի համար, Զանգին բերել տվեց վերոհիշյալ տեր Բարսեղ մետրապոլիտին, որը գտնվում էր մի զորախմբի հսկողության տակ։ Ապա սկսեցին դուրս թողնել բերդում գտնվող ժողովրդին և ֆրանկներին՝ իրենց կանանց, երեխաների, քահանա-
125 ների // ու սարկավագների հետ, բազմաքանակ ոսկով, արծաթյա անոթներով ու հագուստեղենով։ Շատ քաղաքացիներ հետևեցին նրանց, որպեսզի գնան նրանց հետ, որովհետև Զանգին երդվել էր անցկացնել նրանց Եփրատի մյուս ափը, որ գնան, ուր կամենում են։

Սալահեդդին անունով ամիրան, մտնելով բերդ, բռնեց մետրապոլիտի ձեռքը և սկսեց խոսել նրա հետ, ասելով. «Սրբազան, խնդրում ենք երդվես խաչով ու ավետարանով, որ մեզ հավատարիմ կմնաք։ Դու շատ լավ գիտես, որ բոլորդ էլ մահապարտ եք, քանի որ ընդվզեցիք մեր ամիրայի դեմ ու ծաղրեցիք մեր մարդաբերին։ Մենք այժմ պատրաստ ենք ձեզ լավություն անել։ Մենք ազատ արձակեցինք ձեր բոլոր գերիներին։ Շատ լավ գիտես նաև, որ այս քաղաքը, մահմեդականների կողմից նվաճվելուց հետո երկու հարյուր տարի մնալով նրանց տիրապետության տակ, բարգավաճում էր մայրաքաղաքի նման։ Իսկ ահա հիսուն տարի է, որ ֆրանկները տիրում են նրան և, ինչպես տեսնում եք, ավերել ու ամայացրել են երկիրը։ Ամիրան, թող ապրած կենա, հոժար է ձեզ լավություն անել։ Ապրեցեք խաղաղությամբ, մտեք նրա իշխանության հովանու տակ և աղոթեցեք նրա կյանքի համար»։

Դրանից հետո բերդից դուրս թողեցին բոլոր ասորի և հայ քաղաքացիներին, որոնք գնացին իրենց տները։ Ինչ վերաբերում է ֆրանկներին, ապա նրանց ողջ ունեցվածքը՝ ոսկին, արծաթեղենը, եկեղեցական սպասքները, արծաթյա բաժակներն ու դավաթները, խաչերը և բազմաքանակ զարդեղենը կողոպտելի մատնեցին։ Այնուհետև նրանցից անջատելով քահանաներին, ազնվականներին ու ավագներին, մերկացրին նրանց հանդերձները և գերի վարեցին Հալեպ։ Անջատեցին նաև արհեստավորներին և որպես գերիներ պահեցին իրենց մոտ, որպեսզի յուրաքանչյուրն զբաղվի իր արհեստով։ Մնացած մարդկանց՝ մոտ հարյուր հոգու, տանջանքների ենթարկեցին։ Մի մասին նետաձգության թիրախ դարձրին, մյուսներին սրի բերան մատնեցին և այսպես կոտորեցին բոլորին։

## 416. Զանգիի մեկնումն Ուռհայից և նրա արած կարգադրությունները

126 // Դրանից հետո Զանգին կանչեց մետրապոլիտին և նրան թախանձագին խորհուրդ տվեց հավատարիմ մնալ մահմեդականներին։ Ուռհայեցիներին նա մթերքներ, տավար ու հացահատիկ բաժանեց և քաղաքում նշանակեց մի թուրք ամիրա՝ Զեյնեդդին Ալի Քուչուկ անունով, որը Արբելայի և Շահրզորի տերն էր։ Քաղաքը պաշտպանելու համար նրա մոտ թողեց նաև յոթ այլ ամիրաների՝ բազմաքանակ զորքերի հետ միասին։ Իսկ նվաճումից չորս օր հետո Զանգին մեկնեց և, անցնելով Խառանով, գնաց Եփրատի ափին գտնվող Կալլինիկոս քաղաքը։ Ուռհայեցիները գնացին փրկագնեցին իրենց գերիներին, և քաղաքը վերաբնակեցվեց։ Զեյնեզգին ամիրան լավ բնավորություն ուներ և շատ լավ էր վարվում նրանց հետ։

## 417. Սրուճի առումը և Պիր կոչվող անառիկ ամրոցի պաշարումը

Ուռհայի նվաճումից քառասուն օր հետո Զանգին իր զորքերն ուղարկեց Սրուճ, որտեղից քրիստոնյաները փախան Պիր։ Թուրքերը գրավեցին Սրուճը, ապա մեկնելով այնտեղից, 1455 (1144) թվականի[235] մարտ ամսի լիալուսնի օրերին պաշարեցին Պիրը։ Զանգին իր զորքերով անձամբ եկավ ու պաշարեց այն, ապա նրա շուրջը տասը բաբան տեղադրելով, թափով հարձակվեց նրա վրա։ Զատկի հինգշաբթի օրվանից մինչև Հարության կիրակի օր-

վա երեկոն նա պատերազմեց բերդի դեմ, և կռիվը չդադարեց նույնիսկ մեկ ժամով։ Բոլորովին քանդելով արտաքին պարիսպը, [Թուրքերը] կրկին հարձակում գործեցին նրա վրա։ Հետո ոգևորված նետվեցին դեպի պարիսպները և գրավեցին արտաքին բերդը։ Գետնի պատռվելու նման սոսկալի աղաղակ բարձրացավ։ Սակայն ներսում եղողները սրտապնդվեցին, քաշելով իրենց սրերը՝ նետվեցին Թուրքերի վրա և վանեցին նրանց։ Վերջիններս շրջեցին
127 իրենց երեսները և, Թիկունք դարձնելով, փախուստի դիմեցին։ //

## 418. Պիրին օգնության հասած ֆրանկների մասին

Մինչդեռ նրանք շարունակում էին մարտը, կոմսի[296] զորավարներից ու զորահրամանատարներից մեկը, որի անունն էր Ռոբերտ Հսկա[297], նույնպես Ռոբերտ անունով մի ուրիշ զորավարի հետ, որոնք երկուսն էլ խիզախ և մարտերում փորձված մարդիկ էին, երկու հարյուր հոգով եկան Հռոմկլա, որը գտնվում է Եփրատի ափին, Պիրից մի օրվա ճանապարհի կամ մի փոքր քիչ հեռավորության վրա։ Նրանք բարձրացան երկու նավ և խիստ զինվեցին։ Նավերը նրանք ծածկեցին լայն տախտակներով ու ամուր վահաններով, վերցրին պարեն ու զենք, որքան պահանջվում էր, և ընթացան գետով։ Հասնելով բերդի մոտակայքին, նրանք մի սխալ գործեցին՝ հնչեցրին փողերը։ Երբ Թուրքերը լսեցին շեփորների ձայնը, զինվորների մեջ խլրտում առաջացավ, և նրանք փութացին բոլոր կողմերից։ Նկատելով դեպի պաշարվածներն ընթացող նավերը, նրանք գետի երկու ափերից և նրա մեջտեղում գտնվող մակույկներից սկսեցին մարտնչել նրանց դեմ։

Իսկ [պաշարյալները] չգիտեին, թե ինչ է պատահել, և վախը պատել էր նրանց։ Լսելով շեփորների ձայնը՝ նրանք կարծել էին, թե դրանք Թշնամիներն են, որ եկել են կռվի։ Այդ պատճառով, երբ նավերը մոտեցան գետափին, ոչ ոք չկար, որին կարողանային պարան կամ նիզակ մեկնել՝ նավը կանգնեցնելու համար։ Նրանք սկսեցին մեկ առ մեկ ցատկել ջրի մեջ և մեծ սարսափով դուրս լողալ։ Մի մասը հաղթվեց ջրերից և ցած քշվելով՝ բռնվեց Թշնամիների կողմից, մի մասն էլ ջրահեղձ եղավ։ Իսկ այն նավը, որի վրա էր Ռոբերտ Հսկան, պոկվելով իր տեղից՝ բերդի առջևից, քշվեց Թշնամիների մեջտեղը, քանի որ չկար մեկը, որ այն կանգնեցներ։ Շատերը հուսահատված նետվեցին ջուրն ու խեղդվեցին։ Իսկ ովքեր մնացին նավերի վրա, Թուրքերը եկան և կոտորեցին նրանց։

128 Ինչ վերաբերում է Ռոբերտ Հսկային, ապա նա նետվեց || գետը և, շարժվելով տիղմի միջով, հասավ մի գյուղ, որ գտնվում էր գետից արևմուտք։ Բայց քանի որ նա բոկոտն ու ծանրամարմին էր, չկարողացավ երկար քայլել։ Նա մտավ թաքնվեց մի տան մեջ, որտեղ լիքը հարդ կար։ Նույն օրը թուրքերը եկան այդ գյուղը հարդ հայթայթելու համար։ Նրան հայտնաբերեցին այդ տանը, և բռնելով, բերին մեծ զորավար Զանգիի մոտ, որը նրան գերիների հետ Հալեպ ուղարկեց։ Իսկ մյուս Ռոբերտը փոքրաթիվ փրկյալների հետ բերդ մտավ։ Սակայն բերդի դեմ ձեռնարկված մի հարձակման ժամանակ նա նետով վիրավորվեց աչքից և անմիջապես մեռավ։ Այսպես, քառասուն օր կռիվ մղվեց բերդի դեմ։

## 419. Նասրեդդինի սպանությունը Մոսուլում և Պիրի անսպասելի փրկությունը

Մինչդեռ Զանգին, պաշարելով Պիրը, կատաղի կռիվ էր մղում նրա դեմ, գիշերով մի սուրհանդակ հասավ, մրրիկի նման սուրացող ուղտ հեծած, և ասաց. «Քո փոխանորդը՝ Նասրեդդինը, սպանվել է Մոսուլում, և Ասորեստանում մեծ խռովություն է ընկել։ Ես շտապ ելա այնտեղից և չգիտեմ, թե ինչ է տեղի ունենում քաղաքում»։ Լսելով այդ բաները, Զանգին ապշեց ու երկյուղի մեջ ընկավ, քանի որ կարծեց, թե այնտեղ իշխանության գլուխ է անցել սուլթանի պատանի որդին, որը կարող էր հափշտակել իր ողջ տերությունը։ Նա վախենում էր, մանավանդ նրա մոտ եղած զորքերից։ Այդ պատճառով անմիջապես կանչեց Զեյնեդդինին՝ Արբելայի տիրոջը, որին նշանակել էր Ուռհայում, և շտապ կերպով նրան ուղարկեց Մոսուլ, որպեսզի գրավեցնի Նասրեդդինի տեղը։ Իսկ ինքը՝ Զանգին, նույն գիշերը Պիրից մեկնեց Հալեպ՝ վախենալով, որ այնտեղ էլ խռովություն չծագի։ Երբ բացվեց առավոտը, ճամբարում ոչինչ չէր մնացել՝ ո՛չ վրան, ո՛չ մարդ։ Բերդից նկատեցին այդ և մեծապես զարմացան, որ հուրը շրջանցեց իրենց։ Եվ այդպես Պիրն ազատվեց Զանգիից, որը քառասուն օր պատե-
129 րազմեց նրա դեմ։ ||

## 420. Թե ինչպես Նասրեդդինը սպանվեց Մոսուլում

Քանի որ հիշատակեցինք Նասրեդդինի սպանության մասին, ասենք, թե ինչպես նա սպանվեց։ Այս Նասրեդդինը մի զորեղ և ահարկու մարդ էր իր զինվորների համար։ Ահարկու և սարսափազդու էր նաև բոլոր ասորեստանցիների համար։ Նա նստում էր

Մոսուլում և Զանգիի փոխանորդն էր։ Լինելով խորամանկ և խելացի մարդ, նա պահպանում էր Զանգիի իշխանությունը։

Ինչպես վերը նշեցինք, Զանգիի մոտ էին գտնվում Պարսկաստանում թագավորող Թուրքերի մեծ սուլթանի երկու որդիները, որոնց հոր մահից հետո գահակալել էր նրանց հորեղբայրը՝ սուլթան Մասուդը։ Այս վերջինս էր, որ Զանգիին իշխանություն տալով, ուղարկեց կառավարելու այդ երկրները։ Զանգին երկու պատանիներին վերցրեց հետը, քանի որ այդ երկրներն իրենց հորեղբոր կողմից տրվել էին նրանց, իսկ ինքը նրանց կառավարիչ և զորագլուխ էր կարգվել։ Նրանք արքայական պատիվ էին վայելում նրա մոտ։ Մեկը նստում էր Մոսուլում, իսկ մյուսին Զանգին շրջեցնում էր իր հետ՝ ձևացնելով, թե նրա համար է երկրներ նվաճում։ [Զանգին] անվանապես էր ենթարկվում նրանց, իրականում նրանք էին, որ ենթարկվում էին իրեն։ Երբ Մոսուլում նստողը մեծացավ ու չափահաս դարձավ, ոմանք նրան խորհուրդ տվին և ասացին. «Դու ես թագավորը, և քեզ ու քո հորն են պատկանում այս երկրները։ Բայց դու իշխանություն չունես և կարծես գերի լինես։ Այժմ արդեն դու տղամարդ ես, ինչպե՞ս ես հանդուրժում՝ տեր լինելով ենթարկվել ստրուկների հրամանին»։ Նա անսաց այդ խորհրդին։ [Դավադիրները] որոշեցին սպանել Նասրեդդինին և Մոսուլի երկրներում գահ բարձրացնել [արքայազնին]՝ վերացնելով Զանգիի տան իշխանությունը։ Եվ երբ Նասրեդդինը սովորության համաձայն առավոտյան եկավ պատիվ տալու սուլթանի որդուն, պալատի մուտքում ծառաները սպանեցին նրան։ Քաղաքում
130 մեծ խուճապ առաջացավ։ Զորքերը հավաքվեցին, // Մոսուլի քուրդ զինվորներն ու Նասրեդդինի ծառաները սիրտ առան և, պալատ մտնելով, բռնեցին սուլթանի պատանի որդուն ու պահեցին պալատի սենյակներից մեկում։ Տաս օր հետո Ջեյնեդդինը ժամանեց և ցույց տվեց Զանգիի նամակներն ու կնիքները։ Քաղաքը, բերդերը, պետական գանձարանը և երկրի ողջ իշխանությունը հանձնեցին նրա ձեռքը։ Իշխանության գլուխ անցնելով՝ նա ամրապնդեց իր գիրքերը և, բռնելով դավադիրներին, կախաղան բարձրացրեց։ Ծածուկ կերպով նա կորստյան մատնեց նաև սուլթանի պատանի որդուն։

### 421. Առաջին գրավումից հետո Ուռհայի հոգևորականների և աշխարհականների գործած վատ արարքների մասին

Ջեյնեդդինից հետո Ուռհայի տիրակալն ու պահապանը Այնուդդաուլան էր՝ Շարաքտանի տերը։ Այնտեղ կար նաև մի այլ



7—885

կառավարիչ՝ խառանի իշխան Ֆագլալլահ իբն Ջաֆարը, որը քաղաքի նվաճման և նրա դեմ գործված դավադրության պատճառն էր հանդիսացել։ Երբ ժողովուրդը առաջին գերությունից հետո վերաբնակվեց, չհրաժարվեց իր վատ սովորություններից, թեև եպիսկոպոսը՝ վերոհիշյալ Բարսեղը, միշտ խրատում էր նրան։ Նա հիշեցնում էր պատահած գեպքերը և համոզում՝ մանավանդ մեծամեծներին ու հարուստներին, առավել և հոգևորականներին, որ ետ կանգնեն իրենց սովորություններից ու խոտոր ճանապարհից։ Վերջիններս ատում, խայթոտում ու զրպարտում էին իրար, ագահությունից ճնշում, զրկում ու կողոպտում էին միմյանց և անխիղճ անօրենություններ գործում իրար նկատմամբ՝ կատաղած շների նման հարձակվելով իրար վրա։ Ավելին, նրանք մեծ վիշտ էին պատճառում նաև թշվառ հովվին, գայլերի պես աննկատելիորեն հոշոտում էին նրա մարմինը և թաքուն զրպարտում նրան։ Ով իր մեղքերի համար արժանանում էր եպիսկոպոսի հանդիմանությանը, նրան սատանա էր համարում։

131 Այդ ժամանակ իր չարագործություններով հռչակվեց // Արգուն ավագերեցը՝ չարության պատվանդանը և եկեղեցու հուզումների ու խռովությունների աղբյուրը։ Չնայած քաղաքի կրած ղըրկանքներին ու ավերներին, եկեղեցու կործանմանը, ժողովրդի կոտորածին ու քահանաների ոչնչացմանը, և նույնիսկ քաղաքի գրավման ժամանակ իր երիտասարդ որդու սպանությանը՝ նա քարից ավելի կարծր սիրտ ունեցող մի բռնակալ էր, որ չէր հրաժարվում ու ետ չէր կանգնում իր չարագործություններից։ Մոտ ութսուն տարեկան կլիներ, խոր ծերության էր հասել, բայց մեջը բարության նշույլ չկար. սրան ատում էր, նրան արհամարհում, մյուսին ճնշում, իսկ եկեղեցին շահամոլաբար էր նայում։ Այդ բոլոր չարիքների հետ մեկտեղ նա ուրանում և հայհոյում էր հոգու փառահեղ խորհուրդները։ Սուտ էր համարում մարդասիրական մտքի սրբազան խոսքերը և ամենևին չէր հավատում Սուրբ Գրքին ու սրբերի պատմություններին, չհաշված բազմաթիվ այլ բաները, որոնք չարժե հիշատակել։ Երանելի Բարսեղն իր գրքում[238] գրում է. «Այս բաները մենք ոչ թե ուրիշներից ենք իմացել, այլ նրա նենգ բերանից ենք շարունակ լսել։ Շատ անարդար ենք վարվել, որ լռել ենք և չենք հակադրվել նրան՝ վախենալով ժամանակի անպատեհությունից։ Սակայն մինչ մենք լռեցինք, աստված չհամբերեց և, բարկանալով ինչպես մեզ, այնպես էլ նրա վրա, մեզ գլխովին կործանեց»։

Կար նաև մի ուրիշ ամբարիշտ քահանա, որ կոչվում էր Բար-

սումա Իսմայելի։ Սա արդեն բոլորովին տգետ ու խելագար էր։ Մերժում էր Սուրբ Գիրքը, չէր ճանաչում աստծու զորությունը և չէր ընդունում Քրիստոսին։ Բռնած ուղին միշտ խոտոր էր, և նրա աչքում աստվածավախություն չկար։ Իր ողջ կյանքը՝ , սկսած ֆրանկների օրերից, նա անց էր կացրել չարիքներ գործելով, ոտնահարելով կանոններն ու արհամարհելով բոլոր օրենքները։ Իսկ երբ տեղի ունեցավ այդ փոփոխությունը, և մահմեդականները
132 տիրեցին // քաղաքին, նա բոլորովին հրաժարվեց հավատացյալների օրենքից ու կենցաղավարությունից և սկսեց ծառայել թուրքերին։ Նա բազում թշնամանք գործեց և, շատերին զրպարտելով, փորձանքի մեջ գցեց ու վնաս պատճառեց։

Ուռհայեցի կանայք խառնակվեցին թուրքերի հետ և իրենց կամքով նրանց կին դարձան։ Այս բանը առավել ևս տրտմեցրեց աստծու հոգին։ Հազիվ մի տարի էր անցել, որ թուրքերը գտնվում էին քաղաքում, բայց հարյուրից ավելի կանայք ամուսնացել էին հեթանոսների հետ։ Այդ պատճառով աստված բարկացավ և իր զայրույթը թափեց նրանց գլխին։ Նա լքեց նրանց և մատնեց բռնակալի ձեռքը։

### 422. Զանգի ամիրայի ժամանումն Ուռհա

Զանգին՝ Իմադեդդին իբն Աղ-Սնղուր անունը կրող մեծ տիրակալը, մի տարի Հալեպում մնալուց հետո մեկնեց այնտեղից և հաջորդ տարվա հնձի ժամանակ եկավ Ուռհա[299]։ Նա իր զորքերը թողեց Գալաբ կոչվող գետի մոտ, որոնք ճամբար խփեցին նրա ափին՝ Քասաս բերդի և խառանի միջև։ Իսկ ինքը՝ ամիրան, հետը վերցնելով իր մեծամեծներին, զորահրամանատարներին, գավառապետերին և մյուս խորհրդականներին, հինգ օրից՝ Պենտեկոստեի երեքշաբթի օրը, եկավ քաղաք։ Նրան դիմավորելու ելան մետրապոլիտը, քահանաները, սարկավագները և քրիստոնյա ողջ ժողովուրդը մի կողմից, իսկ մյուս կողմից՝ մահմեդականների բազմությունը, որն այնտեղ էր հավաքվել համայն երկրից։

Ամիրան քրիստոնյաներին սիրալիր ընդունելություն ցույց տվեց, վերցրեց ավետարանն ու համբուրեց այն, ապա ողջունելով մետրապոլիտին՝ հարցրեց նրա որպիսությունը և ասաց. «Ձեզ համար եմ եկել, որպեսզի բավարարեմ ձեր կարիքները»։ Այնուհետև շրջանցելով քաղաքի արևելյան դարպասը՝ նա գնաց մտնելու հյուսիսային դարպասով, որտեղից գրավվել էր քաղաքը։ Պարսպի ճեղքը և բաբանների կողմից հիմնովին քանդված յոթ հզորաշեն

133 բուրգերը վերակառուցվել էին։ // Նրանց վրա արաբերեն գրությամբ արձանագրել էին նվաճման պատմությունը և ամիրայի անունը։ Քաղաքից դուրս գտնվող Խոստովանողաց տաճարը քանդել և նրա քարերով վերանորոգել էին պարիսպը։ Սուրբ Հովհաննեսի հոյակապ տաճարի[300] մոտ սկսել էին կառուցել մի բերդ ամիրայի համար, որպեսզի նա հաստատվեր այնտեղ։ Տաճարի շուրջը հսկիչներ էին կարգել, որպեսզի այն չփչացնեն, քանի որ ֆրանկներն այն զարդարել էին շքեղորեն։ Փոխել էին նրա տանիքը, նորոգել կղմինդրը։ Նա ուներ բազմաթիվ պատուհաններ՝ մոտավորապես հարյուրի հասնող։ Բոլորի համար արճճե ցանցեր էին պատրաստել, որպեսզի լույսը թափանցեր. բայց թռչունները ներս չմտնեին։ Տաճարի մեջ, բեմի ետևում, թաղված էին ֆրանկ եպիսկոպոսները։ Պապիոսը նույնպես, որ սպանվեց [քաղաքի] գրավման ժամանակ, այնտեղ էր թաղված։ Գերեզմանի վրա դրված էր եպիսկոպոսի արձանը՝ քանդակված կարմիր մարմարից։ Գերեզմանի տապանաքարը մի կտորից էր։ Թադևոս առաքյալի և Աբգար թագավորի աճյունները նույնպես ամփոփված էին այդ տաճարում՝ արծաթյա ոսկեպատ նշխարատուփի մեջ։ [Քաղաքի] գրավման ժամանակ այդ տուփը դողացվել էր, և ոսկորները ցիրուցան էին եղել։ Հավատացյալները սակայն հավաքել էին դրանք՝ սրբերի բազմաթիվ մասունքների հետ և, ամփոփելով մի տուփի մեջ, գրել էին ասորական Սուրբ Թեոդորոս եկեղեցու հյուսիսում գտնվող գանձարանը։

Մահմեդականները գրավեցին նաև Սուրբ Ստեփանոսի և Թովմա առաքյալի տաճարները, քանի որ ֆրանկները պաշտոն էին մատուցում այդ երեք եկեղեցիներում։ Սուրբ Թովմայի [եկեղեցին] վերածեցին ախոռի, Սուրբ Ստեփանոսինը՝ հացահատիկի և ամիրայի մյուս եկամուտների պահեստի։ Իսկ Խոստովանողաց տաճարը, որը գտնվում էր քաղաքից դուրս և կառուցված էր մոտ հարյուր տարի առաջ, ինչպես ասացինք, քանդեցին։ Քանդեցին
134 նաև Սուրբ Թեոգորոսի // և Միքայել հրեշտակի տաճարները, որոնք գտնվում էին քաղաքի հարավային կողմում։ Նրանց քարերով վերականգնեցին այդ կողմի պարսպի և վերին բերդի քանդված մասերը, ինչպես նաև պետք եղած մյուս տեղերը։ Մահմեդականները վերանորոգեցին և նորից հաստատեցին իրենց մզկիթն ու աղոթատունը, որը դարձել էր ֆրանկ եպիսկոպոսի նստավայրը։

Արդ, Զանգին, ինչպես ասացինք, մտավ Ժամացույցի կոչվող հյուսիսային դարպասով և դիմեց դեպի Սուրբ Հովհաննեսի տա-

ճարը։ Ապա իջնելով աղբյուրի կողմը, ուշադիր դիտեց [շուրջը] և եկավ Թովմաս առաքյալի տաճարը ճաշելու։ Դրանից հետո նա հեծավ [իր ձին] և գնաց դեպի կլոր ավազանը, որ կոչվում է Աբգարոս, քանի որ ժամանակին այնտեղ է գտնվել Աբգար թագավորի պալատը։ Այն վաղուց ավերվել է և տեղը այգի է տնկվել, որը մինչև օրս էլ կոչվում է Մետրապոլիտի [այգի]։ Ուշ երեկոյան նա բարձրացավ Սուրբ Հովհաննեսի տաճարը, որովհետև այնտեղ էր իջևանել։ Տաճարի շուրջը խփված էին նրա մեծամեծների վրանները։ Առավոտյան նա կանչել տվեց մետրապոլիտին և հարցուփորձ արեց այն ջրհորի մասին, որը գտնվում է քաղաքից դուրս՝ նրա հարավային կողմում, և որի շնորհիվ ապաքինվում են բորոտները։ Մետրապոլիտը պատմեց նրան ողջ իրողությունն սկզբից մինչև վերջ, ինչպես որ եղել էր։

## 423. Բորոտների աղբյուրի մասին, որ գտնվում է քաղաքից դուրս

Այժմ շարադրենք նաև մենք այգ ջրհորի պատմությունը։ Մենք արդեն գրել ենք մեր տեր Քրիստոսի դաստառակի մասին[301], որն ուղարկվեց Ուռհայի Աբգար թագավորին, նաև այն մասին, թե ինչպես վերջինս բուժվեց իր ախտից։ Իսկ այժմ խոսենք վերոհիշյալ ջրհորի մասին, թե ինչպես և որտեղից նա ձեռք բերեց բուժիչ զորությունը։ Վերը մենք նշել էինք, որ այգ կողմերում կա մի նշանավոր վանք՝ նվիրված երանելի սուրբ Կոզմային՝ ճշմարիտ խոստովանողին և վկային, որը մարմինների բժիշկ էր Ուռհայում՝
135 // իր Դամիանոս անունով ընկերոջ և հոգևոր եղբոր հետ[302]։ Նրանք իրենց ունեցած գեղերով ձրի բուժում էին ամենքին, իսկ ի վերջո երկուսն էլ նահատակվեցին, ինչպես գրված է նրանց պատմության մեջ։ Կոզման թաղվեց այդտեղ, և նրա [գերեզմանի] վրա կառուցվեց այն վանքը, որ հիշեցինք։ Իսկ Դամիանոսը թաղվեց ավելի վեր՝ լեռներում, և նրա [գերեզմանի] վրա նույնպես մի հոյակապ վանք կառուցվեց։ Նրանց ոսկորները բուժիչ զորություն ունեին։

Ժամանակին Ուռհայում Արևմուտքից մի մարդ հայտնվեց։ Սպասելով որոշ ժամանակ՝ նա հարմար առիթ որսաց և եկեղեցուց գողացավ այն դաստառակը, որ ուղարկվել էր մեր Տիրոջից Աբգարին և պահվում էր Ուռհայի եկեղեցում։ Վերցնելով այն՝ նա երեկոյան կողմ դուրս եկավ քաղաքի հարավային դարպասից և գիշերեց սուրբ Կոզմայի վանքում։ Սակայն նրա ծոցում դրած

դաստառակը կարծես կրակով լցված լիներ և այրում էր նրան։ Ստիպված նա հանեց այն իր ծոցից և վախից նետեց վանքում գտնվող այդ խոր ջրհորի մեջ։ Նույն պահին նրա վրա մի հրեղեն սյուն հայտնվեց՝ իջնելով երկնքից մինչև ջրհորը։ Մարդիկ ցանկացան տեսնել, թե ինչ է պատահել։ Երբ զննեցին ջրհորը, ջրի մեջ արեգակի գնդի նման փայլփլող մի բան տեսան։ Մտնելով ջրհորը՝ նրանք գտան դաստառակը և վեր բարձրացրին։ Վանքում գտնվող բոլոր հիվանդները, լվացվելով այդ ջրով, բուժվեցին։ Լուրը տարածվեց ողջ երկրում, և շատ շատերը, հատկապես բորոտները և բոլոր նրանք, ովքեր տառապում էին Աբգար թագավորի ախտով[305], սկսեցին գալ այնտեղ։ Նրանք լվացվում էին այդ ջրհորի ջրերով և բուժվում։ Անմիջապես բուժվում էին նաև նրանք, ովքեր օտար էին մեր քրիստոնեական դավանանքին։

## 424. Զանգիի մասին, որն իր հիվանդության պատճառով լվացվեց ջրհորի ջրերով

136 // Երբ Զանգին մետրապոլիտից լսեց այդ ջրհորի պատմությունը, ասաց. «Ես հավատում եմ, որ Քրիստոսի օրհնությունը կարող է այդպիսի զորություններ գործել»։ Զանգի ամիրան ոտքերի հոդացավ ուներ և շատ էր տառապում դրանից։ Նա վեր կացավ, հեծավ [իր ձին] և, գալով այդ ջրհորի մոտ, նրանից ջուր հանեց ու լվաց իր ոտքերը։ Վանքը վաղուց արդեն քանդված էր, նրանից պահպանվել էր միայն արևելյան խորանը։ Զանգի ամիրան հրամայեց այնտեղ մի մեծ պանդոկ կառուցել՝ ժամանող հիվանդների և ախտահարվածների պետքերի ու հանգստի համար։ Նաև կարգադրեց, որպեսզի շրջապատի դաշտերից բավարարեն պանդոկի կարիքները։ Սակայն աստված չկամեցավ, որ գործը գլուխ գա, և այն ի գերև հանեց ամիրայի մահով, ինչպես ցույց կտանք։

## 425. Զանգիի մեկնումն Ուռհայից

Զանգին այցելեց մեր՝ ասորիներիս եկեղեցիները և, տեսնելով նրանց գեղեցկությունը,. կարգադրեց բերել երկու խոշոր զանգ՝ նրանց վրա գնելու համար, ինչպես սովորություն էր ֆրանկների օրոք։ Ապա պատրաստվելով մեկնել՝ մետրապոլիտին և ժողովրրդին պատվիրեց հոգ տանել քաղաքի պահպանության մասին և չդավաճանել իր իշխանությանը։ Պենտեկոստեին հաջորդող ուրբաթ օրը նա մեկնեց նրանց մոտից և գնաց նախ՝ Խառան, իսկ այնտեղից՝ Ռակկա։ Ապա իր դինվորներին ուղարկեց կողոպտելու

Կալա-Ջաբար անառիկ ամրոցի շրջակայքը։ Նրանք գերեցին մոտ երեք հարյուր հրեա ընտանիք՝ կանանց ու երեխաների հետ միասին, և բնակեցրին Ուռհայում։

## 426. Կալա-Ջաբարի պաշարումը Զանգիի կողմից, վերջինիս ոճրալի սպանությունը[304], նրա զորքերի ցայքայումը, բանակի խռովությունը և նրա որդիների տիրակալումը

Որոշ ժամանակ Ռակկայում մնալուց հետո Զանգին իր զորքերով մեկնեց այնտեղից և եկավ պաշարեց Կալա-Ջաբար անառիկ ամրոցը՝ ուժգին հարձակում գործելով նրա վրա։ Սակայն ի՞նչ
137 կարող էր նա // անել այդ հզոր ամրոցին։ Նա դրավել էր բերդի շրջակայքը և իր հարձակումներով նեղում էր նրան՝ երդվելով, որ չի հեռանա, մինչև այն չնվաճի։ Սակայն սեպտեմբերի 14-ին, Սուրբ խաչի տոնի լույս գիշերը, մինչ նա հանգիստ քնած էր, երազելով երկար կյանքի մասին, նրա հավատարիմ ներքինիներից երկուսը սպանեցին նրան իր մահճում և փախչելով մտան բերդը։

Նույն գիշերը, երբ իմացվեց, որ Զանգի ամիրան սպանվել է, նրա հզոր բանակում հուզումներ և խռովություններ ծագեցին։ Գիշերով սկսեցին կողոպտել իրար։ Ով մեկի դեմ ոխ ուներ և ուժը պատեց, իր ուզածի պես վրեժ լուծեց նրանից։ Իսկ մեծամեծներն ու զորահրամանատարները՝ հինգ-վեց հոգով խորհրդակցելով, որոշեցին, որ յուրաքանչյուր մարդ ապաստան գտնի իր երկրում։ Զորքերի մնացորդները, հավաքված ժողովուրդը և ճամբարում գտնվող վաճառականները կողոպուտի մատնվեցին։ Նրանցից խլեցին, ինչ որ ունեին, անգամ վրանները։ Կողոպտեցին և հափշտակեցին մինչև իսկ ամիրայի վրանը և այնտեղ եղած գանձերը, զենքերն ու թագավորական զարդերը, ինչպես նաև անհամար անասուններ և ձիեր։ Հետո ամեն մարդ գնաց իր ուզած կողմը։ Իսկ նա, ով դեռ երեկոյան սարսափի մեջ էր պահում աշխարհը, առավոտյան գտնվեց բոլորովին լքված, այնպես որ թաղող անգամ չուներ։

Նա ուներ չորս որդի։ Անդրանիկը, որ կոչվում էր Ղազի Սեյֆեդդին[305], գտնվում էր Պարսից երկրում՝ Մարաստանի և Բաբելոնի սուլթանի մոտ։ Հաջորդը՝ Մահմուդ Նուրեդդինը[306], [Զանգիի] սպանության ժամանակ գտնվում էր նրա ճամբարում։ Մյուս երկուսը՝ Կուտբեդդին Մավդուդը[307] և Ամիր Ամիրանը[308], Մոսուլում էին։ Հենց որ Սալահեդդին ծերունի ամիրան և իմաստուն առաջ-

նորդր ճամբարում լսեց Զանգիի սպանության մասին, վերցրեց Մահմուդին՝ Զանգիի որդուն և մյուս մեծամեծներին, որոնք հետևեցին իրեն, և փութապես գալով Հալեպ, իշխանությունը վերցրեց
138 իր ձեռքը՝ // տիրելով այնտեղ կուտակված բազմաթիվ գանձերին ու մեծ հարստություններին։

Զանգիին չթաղեցին։ Բոլորը նրան լքեցին ու հեռացան։ Հասարակ մարդիկ նրան վերցրին, բերին Ռակկա և թաղեցին այնտեղ։ Մոսուլում գահակալեց վերոհիշյալ Կուտբեդդին Մավդուդը, մինչ Զեյնեդդինը վարում էր այնտեղի գործերը։ Իսկ Նուրեդդինը 1458 (1147) թվականին տիրեց Հալեպին և Միջագետքի երկրներին։ Նա նվաճեց նաև Համան, Հոմսը և Դամասկոսը, որոնք իր հայրը չէր կարողացել գրավել։ Ապա հաշտություն և բարեկամություն հաստատելով ֆրանկների հետ՝ հանդիպեց Ժոսլինին, և նրանք երդումներ փոխանակեցին։ Նա իր հորից ավելի խորամանկ և նենգամիտ էր։ Այդպես նա հզորացավ ու զորեղացավ, և թագավորությունը նրա ձեռքում ամրապնդվեց։ Նա գրավեց Ազազ ամրոցը և Տախիք անունով մի եգիպտացուց խլեց Բաալբեկը։

## 427. Համառոտ կերպով թշվառ Ուռհայի վերջին առման և նրա իսպառ կործանման մասին[309]

Ֆրանկներից ամեն մեկը նստել էր իր երկրում և հանգիստ ապրում էր։ Իսկ Ուռհայի տեր Ժոսլին կոմսը տանջվում էր Ուռհայի համար, բայց չէր կարողանում որևէ բան անել։ Երբ նա լսեց Զանգիի սպանության մասին, շատ ուրախացավ՝ կարծելով, թե մահմեդական կուսակալների և զորահրամանատարների միջև պառակտում ու խռովություն կառաջանա, և նրանք հոգ չեն տանի Ուռհայի մասին։ Նա օգնության համաձայնություն ստացավ Քեսունի և Մարաշի տեր Բաղդուինից[310], որը պատրաստություն տեսավ նրա հետ և խոստացավ օժանդակել և օգնել նրան։ Իսկ Անտիոքի իշխան Պուատվինը դժգոհ էր երկուսից էլ և խիստ զայրացած էր նրանց վրա, որովհետև իրեն չէին հնազանդվում, այդ պատճառով նա հրաժարվեց նրանց օգնել։ Զանգիի սպանությունից հետո քառասուն օրում Բաղդուինն ու Ժոսլինը գործի անցան և, իրենց զորքերը հավաքելով Տլուք քաղաքում, պատրաստվեցին արշավել դեպի Ուռհա։ Նրանք կարծում էին, որ գիշերով հավա-
139 նաբար կկարողանան գրավել այն։ // Երբ Հալեպում գտնվող զորագլուխները լսեցին նրանց հավաքի մասին, Ուռհայի կառավարիչների մոտ սուրհանդակներ ուղարկեցին՝ ասելով. «Ահա ֆրանկ-

ները հավաքվել են, բայց թե որ կողմ են պատրաստվում դիմել,
չգիտենք։ Մենք էլ ենք հավաքում մեր զորքերը, և եթե ուղղվեն
ձեր կողմը, մենք նույնպես կգանք արագորեն։ Ուշադիր եղեք և
պահպանեցե՛ք քաղաքը։ Երդվեցրե՛ք քրիստոնյաներին և նրանցից
պատանդներ վերցրեք»։ Ստանալով հրամանը, քրիստոնյաներից
մոտ հիսուն հոգու՝ ճարտարապետների, արհեստավորների ու դար-
բինների, պատանդ վերցրին և քաղաքի բերդերում նրանց համար
պատրաստեցին բոլոր անհրաժեշտ բաները։

Առաջին գրավման երկրորդ տարվա հոկտեմբեր ամսի 27-ի
կիրակի օրը օրհնյալ ֆրանկները անսպասելիորեն հայտնվեցին և
մինչև երեկո թաքնվեցին մի հովտում։ Երբ մութն ընկավ, բազ-
մաթիվ խիզախ հետևակայիններ պատրաստվեցին և արևմտյան
կողմից մոտեցան քաղաքի մատույցներին։ Ընտրելով մի անկյուն,
որտեղ պահապաններ չկային, նրանք անմիջապես մագլցեցին
պարսպով և, պարաններ կախելով, վեր քաշեցին սանդուղքներն
ու բարձրացրին իրենց ընկերներին։ Նկատելով այդ, պահապան-
ները մոտեցան տեսնելու, թե ովքեր են։ Վերջիններս ձեռքերը եր-
կարելով ու բռնելով [թուրքերից] մի քանիսին՝ նրանց սպանեցին
և պարսպից դուրս նետեցին։ Ողբի ձայներից մեծ աղմուկ առա-
ջացավ։ Իսկ ֆրանկները պարսպի վրա մեծաձայն գոչյուն բարձ-
րացրին և փառք տվին աստծուն։ Հեռվում դարանակալած զինվոր-
ները կռահեցին և, ցատկելով տեղից, հեղեղի նման հորդեցին ու
հասան քաղաք։

Գիշերվա ժամը երեքն էր՝ առաջին գիշերապահը։ Նրանք իջան
և բացեցին քաղաքի արևմտյան դարպասը, որ գտնվում է աղբյու-
րից վեր։ Ֆրանկ հեծյալներն ու նրանց հետ եղող հետևակային-
ները ներս մտան։ Ներխուժումից հետո այդ անմիտ թշվառները
դադարեցին կռվել ու քաղաքը սպաշտպանել բերդերում գտնվող
մահմեդականներից՝ անցնելով տների կողոպուտին և ունեցվածք-
140 ների հափշտակմանը։ Նույն գիշերը նրանք սկսեցին ջարդել //
լավ և վատ մարդկանց, մահմեդականների և քրիստոնյաների խա-
նութների ու տների դռները՝ կողոպտելով եղած ամեն ինչ։ Քա-
ղաքում գտնվող մահմեդականները, տեսնելով հանկարծակի վրա
հասած եղեռնագործությունը, շտապ վազեցին դեպի բերդերը։ Իսկ
ովքեր գտնվում էին բերդերում, բացեցին դռները և նրանց հան-
գիստ ներս առան՝ երեխաների և ունեցվածքի հետ միասին։ Նրանք
չկրկնեցին ֆրանկների վատ արարքը, որոնք առաջին գրավման
ժամանակ փակեցին դռները՝ տեղիք տալով սոսկալի շնչահեղձու-
թյան ու եղեռնի։ Շատ մահմեդականներ էլ գիշերն իջան պարիս-

*պից և փրկություն գտան խառանում, որովհետև նրանց հետապընդող չկար։*

*Երբ լուսացավ, կոմսը բերել տվեց ասորիների մետրապոլիտին և պահանջեց, որ նա բաբաններ պատրաստի բերդերի մոտ տեղադրելու համար։ Բաբանները բերին և տեղադրեցին։ [Ֆրանկները] մոտեցան ներքին բերդին և թափով հարձակվեցին նրա վրա, բայց ոչինչ չկարողացան անել, որովհետև այն շատ բարձր ու ամուր էր։ Իսկ վերին բերդի վրա չկարողացան հարձակվել, քանի որ այնտեղ մեծ ու հզոր բազմություն էր հավաքվել։ Եվ այսպես թշվառ քաղաքը վեց օր մնաց այս փորձանքի մեջ։*

*Երբ ֆրանկները տեսան, որ քաղաքի բերդերից ոչ մեկը չեն կարողանում գրավել, իսկ թշնամիները շատանում և բոլոր կողմերից հավաքվում են, ընկան մեծ մտահոգության և վախի մեջ։ Ուռհայեցիները թուրքերի վախից ամեն երեկո հավաքվում էին ֆրանկների մոտ, Աբգարի վանքի շուրջը, որտեղ նրանք բանակ էին դրել։ Շաբաթ օրը թշնամիների մոտից մի լրտես եկավ և ասաց Ժոսլինին. «Հոգ տար քո անձի և քեզ հետ եղողների մասին։ Ահա Հալեպի և Մաբբուգի զինվորները՝ բազմաթիվ թուրքմեններն ու զանազան ցեղերը, հասել և դարան են մտել լեռներում։ Վաղը նրանք ձեզ շրջապատման օղակի մեջ կառնեն։ Նրանք պատրաստվում են ձեզ ընկճել քաղաքի ներսում և բոլորիդ կորստյան մատնել»։ Երբ Ժոսլինը լսեց այս բաները, նրա սիրտը վախ ընկավ։*
141 *Նա գլուխը կորցրեց // և չգիտեր ինչ աներ, քանի որ բազմաքանակ թուրք զորքերը հասել և բռնել էին հարավային դաշտն ու լեռները։*

*Ֆրանկները որոշեցին գիշերով թաքուն դուրս գալ քաղաքից, որպեսզի բերդերում նստած մահմեդականները և հարավային դաշտում ու լեռներում գտնվող թուրքերը չնկատեն իրենց։ Սակայն ինչպե՞ս կարող էին բազմահազար մարդիկ, ձիերն ու անասունները առանց նկատվելու դուրս գալ մեկ դռնով։ Եթե ցերեկով դուրս գային, իրենց վրա ուշադրություն կհրավիրեին։ Այդ պատճառով սպասելով մոտավորապես մինչև գիշերվա ժամը երեքը, նրանք բացեցին քաղաքի հյուսիսային դարպասը, որ կոչվում է Ժամացույցի, և զինվորներն սկսեցին դուրս գալ։ Երբ ուռհայեցիները, որոնք իրենց կանանցով ու երեխաներով հավաքված էին այնտեղ, նկատեցին այդ և տեսան, որ ֆրանկները մեկնում են՝ իրենց թողնելով հեթանոս հալածիչների ձեռքում, սոսկացին, տագնապեցին և ընկան ահուդողի մեջ։*

*Քաղաքում մեծ սուգ տիրեց՝ կանանց ու երեխաների լացու-*

կոծով և դառն հառաչանքներով։ Մայրը կանչում էր իր երեխաներին, և նրան չէին արձագանքում։ Երեխաները գոռում էին, ընկնում այս ու այն կողմ՝ դառնադի լացով փնտրելով իրենց մայրերին, բայց նրանց չէին գտնում։ Նետվում էին դեսուդեն՝ մարդկանց, ձիերի և անասունների արանքը, տրորվելով, հրմշտվելով ու ջախջախվելով ձիերի և գրաստների սմբակների տակ, բայց ոչ ոք նրանց չէր բարձրացնում։ Խավար և անլույս գիշեր էր։ Բոլորը վազում էին դեպի Ժամացույցի դարպասը տանող փողոցով։ Զինվորներն ու զինակիրները, ձիերն ու գրաստները, տղաները, կանայք և երեխաները խառնիխուռն առաջ էին շարժվում՝ հրմշտելով և անգթաբար ճզմելով միմյանց։ Ընկնում էին անասունները, ջորիներն ու գրաստները, որոնք կրում էին Ֆրանկների կողմից քաղաքում կողոպտված ծանր բեռներն ու բազմաքանակ զարդեղենը։ Երբ նրանք ընկնում էին, ոչ ոք ի վիճակի չէր կանգ առնել՝ նրանց բարձրացնելու կամ բեռներն արձակելու համար։ Երեխաները
142 ճզմվում էին նրանց արանքում, // տանջվում և ողբերգաբար հրաժեշտ տալիս կյանքին։ Բոլոր փողոցներում բազմաթիվ ընկածներ կային՝ տղամարդիկ, անասուններ, կանայք, մանուկներ, ծծկերներ, որոնք անխղճաբար ոտնակոխ էին լինում։ Ոչ ոք չկար, որ խղճար նրանց և ձեռք մեկներ։ Այսպես տեղի ունեցավ նրանց տխրահռչակ մեկնումը՝ թողած բարիքներով ու ինչքով լի տները, բաց դռները, վառվող ճրագներն ու հարդարված անկողինները։

## 428. Ֆրանկների հետ մեկնող ժողովրդին վիճակված դառը փորձության մասին

Երբ ֆրանկ զորքերը և նրանց հետ հեռացող բազմությունը ելան քաղաքից, հավաքվեցին Խոստովանողաց տաճարի առջև գտնվող բուրգի, այսինքն՝ Ծգնավորների սյան շուրջը։ Թուրքերը շրջապատման օղակի մեջ առան նրանց և, անձրևի տարափի պես նետեր արձակելով, սոսկալի կերպով խոցոտեցին շատերին։ Ապա խառնվեցին ժողովրդին և մսագործների նման սկսեցին կոտորել նրան։ Կացինների ձայն էր լսվում. կարծես անտառ էին հատում։ Նախճիրը տեղի էր ունենում գիշերվա մթության մեջ, երբ քրիստոնյան թուրքից չէր ջոկվում։ Ֆրանկ զինվորները խառնվել էին ժողովրդին, և նրանցից յուրաքանչյուրը վախից թաքցնում էր իր անձն ու խցկվում բազմության կենտրոնը։ Ֆրանկ իշխաններն ու զորահրամանատարները կոչեցին հետևակայիններին և ողորմագին աղաղակեցին. «Հանուն Տիրոջ դո՛ւրս եկեք ամբոխից և վա-

նեցե՛ք հակառակորդի ճնշումը»։ Հեծյալները, իջնելով ձիերից,
շրջապատեցին ժողովրդին և մնացին այդպես։
Վաղ լուսաբացին Բաղդուինն ու Ժոսլինը [ձի] հեծան և դա-
սավորություններ կատարեցին։ Բաղդուինն անցավ ժողովրդի առ-
ջևը, Ժոսլինն սկսեց ընթանալ ետևից, իսկ բոլոր հետևակայիննե-
րը՝ բազմության աջից և ձախից։ Նրանք մեկնեցին սուրբ Գևորգի
տոնին՝ նոյեմբերի երեքի այդ շարագուշակ կիրակիի արշալույսին
և դանդաղորեն շարժվեցին Սամոսատի ճանապարհով։ Իսկ թշնա-
143 միները // հազարներով ու անհամար բյուրերով վխտում
էին նրանց շուրջը։ Ժողովրդից և զինվորներից շատերը վիրավոր-
վեցին, սակայն հետևակայինները, որոնց շարքերում կային բազ-
մաթիվ խիզախ նետաձիգներ, հերոսաբար կանգնած, թույլ չէին
տալիս, որ թուրքերը մոտենան ժողովրդին։ Այսպես նրանք տա-
ռապանքով և մեծ վտանգի ենթակա առաջ էին շարժվում։
Ո՞վ կարող է նկարագրել Ուռհայի խուճապահար ժողովրդի
ցավագին և չափազանց ողբալի տեսքը։ Արագ-արագ և բոբիկ ոտ-
քերով բոլորը վազում էին քարերի, փշերի, տատասկների ու սրա-
ծայր մոլախոտերի վրայով։ Նրանց ոտքերը ասես կտրատվում էին
դանակներով, և արյունն առատորեն հոսում էր նրանցից։ Նրանք
խռնվում ու հրմշտում էին իրար, սայթաքում և ընկնում էին, կոխ-
կըրտում ու ճզմում էին մեկը մյուսին և իրենց վրա արձակվող
բազմաթիվ նետերի վախից թաքնվում միմյանց թիկունքում։ Մեկը
վիրավորվում և ընկնում էր, մյուսը սրտապնդվում և վազում էր
փրկվելու հույսով։ Մի ուրիշը ընկնում և փռվում էր՝ հայացքն ուղ-
ղած դեպի արևելք, իսկ հետապնդողները վրա էին հասնում ու ոչ-
խարի պես մորթում։ Ոտաբոբիկ երեխաներն ու մանուկները տան-
ջահար վազում էին տատասկների միջով, և նրանց փափլիկ ոտ-
քերը արյունոտվում ու ծակծկվում էին սուր փշերից։ Նրանց լեզու-
ները ծարավից կախ էին ընկել, բերանները դառնացել հալվեի նը-
ման, իսկ ատամները սևացել, ինչպես ածուխ։ Նրանք հրմշտվում
ու տրորվում էին բազմության մեջ, կոխկրտվում ձիերի սմբակնե-
րի տակ, ջախջախվում ու չարաչար կործանվում։
Այդ բոլոր տառապանքներից ու դառն չարչարանքներից բացի,
նրանք ընթանում էին անտանելի ճանապարհով։ Այն հովտում,
որտեղով նրանք անցնում էին, շատ խռիվ ու մացառ կար։ Թշնա-
միները կրակ տվեցին, և նրանց առջևն ու շուրջը բոցավառվեց։
Այլ կողմ շրջվելու հնարավորություն չկար. այդ պատճառով մեծ
վտանգի ենթարկվելով՝ նրանք քայլեցին կրակի վրայով և այրե-
144 ցին իրենց ոտքերը։ Այսպես // նրանք տառապեցին մինչև

օրվա իններորդ ժամը։ Նրանց շրջապատող թշնամիները, որոնք նույնպես հոգնած էին ողջ այդ գիշերվա ու ցերեկվա դժվարին մարտերից և արագ վազքից, պատրաստվեցին ետ դառնալ։ Նրանք վախենում էին, որ ֆրանկները կարող են ժողովրդին տեղավորել մի բերդում և շրջվել իրենց վրա։ Բացի այդ, նրանք ցանկանում էին մասնակցել քաղաքի կողոպուտին, քանի որ նրանց հետ եղած բազմաթիվ հետևակայիններ մնացել էին քաղաքում, իսկ ովքեր գտնվում էին բերդերում, նույնպես դուրս էին եկել և սկսել կողոպտել ու հափշտակել քաղաքի հարստությունն ու ունեցվածքը։ Երբ թշնամիները հավաքվեցին և պատրաստվեցին ետ դառնալ, ժողովրդի շուրջը մնացին փոքրաթիվ թուրքեր, հավաքագրված թուրքմեններից։

## 429. Ֆրանկների ձախորդ վարմունքի, նրանց կրած պարտության և Ուռհայի թշվառ ժողովրդի իսպառ բնաջնջման մասին

Այնուհետև ֆրանկները մի չար և կործանարար միտք հղացան։ Նրանք իրար հետ պայմանավորվեցին նետվել և հարձակվել իրենց շուրջը մնացած թուրքերի վրա։ Ձախորդ նախաձեռնությամբ Ժոսլին կոմսն ու իր կողմնակիցները, որոնք գտնվում էին բազմության ետևում, հարձակվեցին իրենցից ձախ, արևմտյան կողմում կանգնած թշնամիների վրա։ Իսկ Քեսունի տեր Բաղդուինը, տեսնելով, որ կոմսը պոկվեց տեղից, և շեփորները հնչեցրին, իր հերթին թռավ և արշավեց դեպի հարավ։ Այսպես խառնիխուռն և անկանոն կերպով ֆրանկ հեծյալներն սկսեցին արշավել։ Թուրքերը մի փոքր ցրվեցին այս ու այն կողմ, մինչև առաջինները թափով անցան, որից հետո հարձակվելով ետևից՝ ջախջախեցին նրանց։ Ֆրանկներն այլևս չնայեցին ո՛չ ժողովրդի, ո՛չ էլ իրար վրա։ Ամեն մեկը դարձավ իր աչքը կտրած կողմը և ամոթալի փախուստի դիմեց։ Նրանք նետեցին նիզակներն ու վահանները,
145 շպրտեցին զրահներն ու իրենց կրած բոլոր զենքերը, // վախից դեն գցեցին նույնիսկ ձեռքերում պահած սրերը։ Իսկ հետևակն անկարգ հասավ ձախ կողմում գտնվող մի բերդ, որը տեղադրված էր Արծվի բլրի[311] վրա։ Այնտեղ ապաստանեց մոտ երկու հազար հոգի՝ ուռհայեցի քաջասիրտ պատանիներ ու երիտասարդներ։ Կանայք, երեխաները և մանուկները գերի քշվեցին, իսկ ողջ հարստությունը ավարի մատնվեց։ Ժոսլինը նետով վիրավորվեց ազդրից և ահուդողով փրկություն գտավ Սամոսատ քաղաքում։

*Իսկ Բաղդուինը՝ այդ փառահեղ ու գեղեցկատես երիտասարդը, որ մի ամբողջ գլխով բարձր էր իր ժամանակի բոլոր մարդկանցից և հայտնի պատերազմող էր, զոհ գնաց այդ նախճիրին և սպանվեց նետահարումներից ու սրերի հարվածներից, քանի որ այդ պահին չիմացան, թե ով է նա։ Ջարդին զոհ գնացին նաև բազմաթիվ քահանաներ, սարկավագներ ու վանականներ, որոնք փրկվել էին առաջին կոտորածից։ Թուրքերն ավարի մատնեցին ողջ քաղաքը՝ Ժոսլինի, Բաղդուինի և բոլոր քաղաքացիների անհամար բեռներն ու ինչքը։*

### 430. Վերջնական անկման ժամանակ քաղաքում սանձազերծված կոտորածի, կողոպուտի և ոճիրների մասին

*Թուրքերն ու զանազան այլ ցեղերը, ներխուժելով այդ նշանավոր քաղաքը, տիրեցին նրան։ Սելևկիոսի[312] օրոք հիմնադրվելու ժամանակներից ի վեր հազար չորս հարյուր վաթսուն տարի այն կողոպուտի չէր ենթարկվել։ Առաջին պատերազմի ժամանակ, երբ [Ուռհան] գրավվեց, միայն երկու օր ավարի մատնվեց։ Մեծահզոր Զանգիի հրամանով քաղաքն անմիջապես պաշտպանության տակ առան և դադարեցրին ու արգելեցին կոտորածն ու կողոպուտը։ Սակայն այս վերջնական կործանման ժամանակ ոչ թե երկու*
146 *օր, // այլ մի ամբողջ տարի շրջում էին քաղաքում և, փորփրելով ու խուզարկելով պատերի ու ձեղնահարկերի թաքստոցները, բազում գանձեր էին գտնում, պահված հայրերի ու նախնիների վաղեմի ժամանակներից։ Գտնվեցին նույնիսկ բազմաթիվ գանձեր էլ, որոնց մասին քաղաքի բնակիչներն անգամ գաղափար չունեին։*

### 431. Ասորական եկեղեցու հնագույն թաքստարանների հայտնաբերման և այս սոսկալի ավարառության ընթացքում կողոպուտի մատնված մյուս գանձերի մասին

*Այդ օրերին հայտնաբերվեցին նաև մեր ասորական եկեղեցու թաքստոցները, որոնք գտնվում էին Կաթուղիկե մեծ եկեղեցում։ Այնտեղից մեծ հարստություն և եկեղեցական սպասքներ հանեցին՝ խաչեր, ավետարաններ, գավաթներ, սկիհներ, սրբազան մեռոնի մեծ անոթը, բուրվառներ, գավազանների գլխիկներ և դանազան այլ զարդեր, բոլորն էլ պատրաստված ոսկեզօծ արծաթից, ինչպես նաև արքայական բազմաթիվ շքեղ ու թանկագին քողեր, խորանածածկեր, կրկնոցներ, որոնք նվիրվել էին հին թագավորների և ազնվականների կողմից և վաղուց պահվում էին այնտեղ,*

չհաշված այն զարդերն ու արքայական դորդերը, որ ձեռք էին բերվել վերջին ժամանակներս։ Դրանք ամեն տարի ուղարկվում էին մայրաքաղաքից Եղիա անունով մի հավատացյալ ուռհայեցու, ինչպես նաև Սլիրա անունով մի այլ հավատացյալի կողմից, որի մականունն էր Քիմաշ։ Նրանք ապրում էին մայրաքաղաքում և մշտապես հող էին տանում Ուռհայի եկեղեցիներին։ Ամեն տարի նրանք բազում ոսկի էին ուղարկում եկեղեցիներին, աղքատներին ու հիվանդներին։ Սակայն Աբդուն Արբելացին, որին վերը հիշեցինք, դրանք թաքցնում ու յուրացնում էր։ Այսպես Ուռհան կործանվեց, նրա բնակիչները ցրվեցին ողջ աշխարհում և վաճառվեցին զանազան երկրներում։

### 432. Գերությունից խուսափողների, սպանվածների և նրանց մասին, ովքեր այլ երկրներում կարեկցանք ցուցաբերեցին ուռհայեցիների նկատմամբ

147 Այն բազմությունը, // որ փրկվեց կոտորածից և ապաստանեց վերը հիշված բերդում, մութն ընկնելուց հետո սկսեց հինդտասական հոգով ցրվել։ Փրկվեցին քչերը. բազմաթիվ մարդիկ սպանվեցին, իսկ շատերն էլ գերի ընկան։ Աբդուն ավագերեցը, ավելի ճիշտ՝ ավագ խառնակիչն ու եկեղեցու մեծ խռովարարը, այգ սոսկալի գիշերը բռնվեց քաղաքի դարպասից դուրս։ Նա ընկել էր փոսը և գոռում էր. «Ո՞վ է ուզում հարյուր դինար ինձ հանելու համար»։ Նա հույս ուներ, թե քրիստոնյաները կիջնեն և կբարձրացնեն իրեն։ Սակայն իջավ մի թուրք և սպանեց նրան։ Նա խլեց նրա մոտ եղած ոսկու քսակը և խեղդեց նրան։ Նրա դիակը շների կեր դարձավ, իսկ հոգին ընկավ հավիտենական տանջանքների մեջ։ Եթե Տերը նրան չգթա, հավիտենական դժոխքն էլ քիչ է նրա համար։

Ժողովրդի գերվելուց հետո նրանք, ովքեր խուսափել էին գերությունից ու կոտորածից, մոլորված՝ հույս էին փայփայում գտնել իրենց գերիներին։ Այդ ժամանակ իրենց ողորմածությամբ ու մարդասիրությամբ աչքի ընկան Եփրատից արևելք ապրող քրիստոնյաները, հատկապես Մարդինի, Շաբաքտանի և Սևերակի բնակիչները, թող Տերը նրանց գթասրտություն ցույց տա։ Նրանց մեջ էր Մարդինի Հովհաննես[313] սրբազան եպիսկոպոսը, որը ծագումով ուռհայեցի էր։ Անհնար է՝ նրան գովաբանելը, քանի որ նրա հիշատակը դրոշմված է վերին Երուսաղեմում։ Ինչ վերաբերում է Եփրատից արևմուտք ընկած երկրներում ապրող քրիստոնյանե-

րին, հատկապես քահանաներին ու եպիսկոպոսներին, ապա նրանք ոչ թե կարեկցանք, այլ դաժանություն, անգթություն, խստասրր-
148 տություն ու չարամտություն ցուցաբերեցին։ //

## 433. Ֆրանկ թագավորների արշավանքը դեպի այս երկրներ՝ քրիստոնյաներին օգնելու նպատակով[314]

1158 (1147) թվականին, Ուռհայի վերջնական անկումից հետո, ալամանների և ֆրանկների թագավորները երեք հարյուր իննսունհինգ հազար զինվորների հետ միասին ծովով եկան հույների մայրաքաղաքը։ Հունաց կայսրը նրանց տեղափոխեց վատ ճանապարհով և հետները առաջնորդներ ուղարկեց, որպեսզի նրանց մոլորեցնեն մի այնպիսի վայրում, որտեղ ո՛չ ջուր լիներ, ո՛չ էլ ապրուստի միջոցներ։ Կոստանդնուպոլսից տասն օրվա ճանապարհ կտրելուց հետո [ֆրանկների] պարենը վերջացավ։ Չկար մի բնակավայր կամ գյուղ գնումներ կատարելու, մանավանդ ջուր հայթայթելու համար։ Նրանք ընկել էին մի ամայի անապատ և չգիտեին ուր գնան, քանի որ առաջնորդները գիշերով նրանց լքել ու հեռացել էին։ Միաժամանակ լուր էր ուղարկված Կապադովկիայի թուրքերին։ Եվ Մասուդ թագավորը բազում զորքերով վրա հասավ։ Գտնելով նրանց այդ անապատում՝ տոչորված սովից ու ծարավից, [թուրքերը] հարձակվեցին նրանց վրա և սրի մատնեցին։ Ընդ որում, շատերը սովամահ էին եղել։ Ալամանների և ֆրանկների թագավորները փոքրաքանակ զորքով ճողոպրեցին ծովափ և գնացին Իտալիա, հետո նավով եկան Անտիոք՝ զրկված իրենց ողջ ու նեցվածքից։ Իսկ թուրքերը չափազանց հարստացան և քարերի չափ անհամար ոսկի և արծաթ ձեռք բերին։

Որոշ ժամանակ անց, նույն տարվա մեջ, ծովով արշավի ելավ
և Աքքա հասավ Ալֆոնս անունով մի այլ թագավոր՝ կնոջ, երեխաների և հազար հեծյալների հետ միասին։ Նա Տրիպոլիի կոմսի մո-
տիկ ազգականներից էր։ Վերջինս տեսնելով նրան, վախեցավ, որ
149 նա կարող է իր երկրից բաժին պահանջել։ // Այդ պատճառով նրա
ընտանեկիցներից մեկի հետ մահադեղ ուղարկեց և, տալով նրան,
մեռցրեց։

## 434. Դամասկոսի պաշարումը ֆրանկների կողմից

Այդ ժամանակ Երուսաղեմի թագավորն էր Բաղդուինը։ Ալամանների և ֆրանկների թագավորները հավաքվեցին նրա մոտ, Երուսաղեմում, և պայմանավորվեցին գնալ պաշարել Դամասկոս

քաղաքը։ Դալով և պաշարելով քաղաքը, նրանք, մանավանդ ալա-
մանները, կատաղի հարձակում գործեցին նրա վրա։ Երբ դամաս-
կացիները նեղ դրության մեջ ընկան, ուզեցին հանձնել քաղաքը։
Սակայն ֆրանկների չար նախանձը՝ իրար նկատմամբ ունեցած
անբարյացակամությունը, կործանեց նրանց։ Երուսաղեմի թագա-
վորը մտածեց. եթե այդ օտարները գրավեն Դամասկոսը և Հզո-
րանան, կխլեն նաև իր երկրները։ Նա գաղտնի լուր ուղարկեց պա-
շարյալներին՝ ասելով. «Ի՞նչ կտաք ինձ, եթե այնպես անեմ, որ
այդ օտար թագավորները հեռանան ձեր մոտից։ Ես ձեր հարևանն
եմ և ձեզ բարիք եմ կամենում»։ Լսելով այդ՝ պաշարյալները մե-
ծապես ուրախացան և խոստացան, որ Երուսաղեմի թագավորին
կտան հարյուր հազար ոսկե դինար։ Այնուհետև նա թագավորներին
խորհուրդ տվեց փոխել քաղաքի պաշարման դիրքերը և հարմար
տեղից նրանց տեղափոխեց մի ուրիշ, դժվարին վայր։ Թագավոր-
ները, նկատելով Երուսաղեմի թագավորի հակառակությունը, վըշ-
տացած բոլորովին հեռացան Դամասկոսից և եկան Աքքա։ Երու-
սաղեմի թագավորը, երբ ստացավ հարյուր հազար դինարը, որոշ
ժամանակ անց նկատեց, որ դրանք պղնձյա են։ Իսկ թագավորները,
ծով դուրս գալով, գնացին իրենց նախկին հայրենիքը։

## 435. Երկրում գտնվող Ջուբարա[315] վանքերի և բերդի կողոպուտի մասին

Այդ ժամանակ Մելիտենեի ամիրան, որ կոչվում էր Դաուլա
որդի Ղազիի որդի Դանիշմենդի, երբ լսեց Ժոսլինի և Ուռհայի
բնակչության հետ պատահած չարիքի մասին և հավաստիացավ.
150 || որ Քեսունի տեր Բաղդուինը, որի իշխանությունը տարածվում
էր Ջուբարա կոչվող վանքերի և մինչև Մելիտենեի սահմանը ձըգ-
վող լեռան վրա, զոհվել է, բազում զորք հավաքեց և եկավ նշված
վանքերը, որոնք պատկանում էին հայերին։ Դրանք էին՝ Ջուբարի
մեծ վանքը և Տաչնքար, Շամանոգ ու Շիբքար վանքերը[316]։ Երեք
օրում նա գրավեց դրանք և շրջապատի մյուս վանքերն ու գյու-
ղակները, չնայած նրանք խիստ ամրացված էին։ Դրանք բարգա-
վաճող, բարիքներով լեցուն և բերքառատ վայրեր էին, որովհետև
վաղ ժամանակներից թշնամին երբեք չէր տիրել նրանց։ Նա գերի
վարեց այնտեղի բնակիչներին՝ յոթ հազար չորս հարյուր հոգու.
և նրանց ողջ ունեցվածքը ավարի մատնեց։ Նույնիսկ կողոպտիչ-
ներն ու հափշտակիչները զարմացան իրենց ձեռք բերածի առա-
տությունից, այդուհանդերձ նրանք չխնայեցին [անգամ] կարի-
քավորներին ու նեղյալներին։ Ամեն ինչ կողոպտելով և ժողովըր-

դին գերելուց հետո նրանք այդ վայրերը կրակի մատնեցին ու այրեցին։ Այնտեղ անչափ գինի, չամիչ, թուզ, ընկույզ, հացահատիկ և բանջարեղեն ոչնչացավ՝ բազում և բազմատեսակ գրքերի հետ։

Նույն ժամանակ թուրքերը գրավեցին Սամոսատից վեր գտնըվող մի բերդ, որ կոչվում էր Թել-էդնա կամ Ագնադթալ[317]։ Այնտեղ եղած բոլոր տղամարդկանց սրի բերան մատնեցին, կանանց ու երեխաների մեծ բազմությունը գերի վարեցին, իսկ բերդն այրեցին ու ավերակի վերածեցին։ Թուրքերը գրավեցին նաև մի ուրիշ բերդ՝ Թլպաշարի երկրում, որ կոչվում էր Շիրզագ[318]։ Այստեղ էլ տղամարդկանց կոտորեցին, կանանց ու երեխաներին գերեցին և բերդն ավերեցին։

Այդ ժամանակ Թել-Արսանում[319], որ գտնվում է Եփրատի մեջ թափվող Արածանի[320] գետի ափին, տիրում էին Արտուքյան Դաուդ ամիրայի որդիները։ Իրենց հոր մահից հետո նրանց միջև երկպառակություն ծագեց։ Նրանցից ամենազորեղները եկան և մի քանի
151 օրվա պաշարումից հետո // սրով նվաճելով այդ վայրը, մոտ հինգ հազար ասորի քրիստոնյաների գերության քշեցին, կողոպտեցին ու հափշտակեցին. ինչ որ գտան, և հեռացան։

## 436. Սուրբ Բարսումա վանքի կողոպտումը Ժոսլինի կողմից[321], որը պատճառ դարձավ վերջինիս անհետ կորստյան

*1459 (1148) թվականին, ուռհայեցիների ողբալի և վերջնական գերեվարությունից մի տարի հետո, սատանան մի չար միտք հուշեց Ուռհայի կոմս Ժոսլինին։ Վերջինս լուր տարածեց, թե ուզում է գնալ ավարի մատնել Մելիտենեի և Կղոդիայի[322] երկրները։ Սակայն երբ հասավ Սպիտակ[323] լեռանը՝ Դիզա[324] կոչվող գետի ակունքին, որ գտնվում է Կղոդիայի ծայր արևմուտքում, պատրվակ բռնեց, թե երկրի մարդիկ նկատել են իրեն։ Նա իր ճանապարհը շրջեց դեպի Սուրբ Բարսումայի վանքը՝ իբրև թե աղոթելու, չնայած գա կդանդաղեցներ իր ընթացքը։ Հունիսի 28-ի շաբաթ օրը Ժոսլինը սուրհանդակ ուղարկեց վանք՝ հաղորդելու, որ գալիս է։ Վանականները շատ ուրախացան, որ քրիստոնյա մի թագավոր գալիս է աղոթելու իրենց վանքում։ Բոլորը խաչերով ու ավետարաններով ընդառաջ ելան նրան մինչև վանքի վրա իշխող աղոթարանը։ Նենգամիտը ծաղրանքով իջավ ջորուց։ Երբ վանք մտավ, նրա ողջ զորքը նույնպես ներս խուժեց։ Նրա հետ էին նաև ծովի մյուս կողմից նոր ժամանած ֆրանկներ։ Վանականները նրանց*

չխանգարեցին ներս մտնել իրենց զենքերով, թեև սովորության
համաձայն զենքով մտնելն արգելված էր։ Նրանց գիտակցությունն
այդ պահին բթացել էր, թերևս կարծում էին, թե ֆրանկներից
շատ ոսկի և նվերներ կստանան։ Այդ պատճառով նրանք զարդա-
րել էին վանքը և, հանելով սրբության տուփը, գրել էին բազ-
մոցին, որպեսզի ֆրանկները օրհնություն ստանան նրանից։
Սրբի առջև աղոթելուց հետո այդ նենգամիտը մի թուղթ դրեց
պատարագի սեղանի վրա։ Ապա ելնելով տաճարից՝ նստեց եկե-
152 ղեցուց դուրս գտնվող զավթում, և հավաքելով || վանականներին,
ասաց. «Իմ հորեղբորորդին, որ ահա եկել է Հռոմից, ուզում է
տեսնել վանքի վերին ծայրում գտնվող բուրգը»։ Վանահայրը
կարգադրեց թույլատրել։ Երբ այդ զորագլուխը և իր հետ եղող
մարդիկ մտան բերդը, կոմսի հրամանով հետևակայինները փա-
կեցին բուրգի դարպասը և շարվեցին պարսպի վրա։ [Ժոսլինը]
վանականներին ասաց. «Ես ուզում եմ այստեղ պահապաններ
թողնել, որպեսզի նրանք մտնեն Մելիտենեի երկիրը և պատժեն
նրա տիրոջը՝ Ջուբարի վանքերում գործած ավերումների և գերե-
վարումների համար։ Ես լսել եմ, որ ձեզ մոտ են պահվում թուր-
քերից խլված հարստությունները, և երկրի մեծամեծները ձեզ մոտ
են թաքցնում իրենց ունեցվածքը։ Մինչդեռ ինքս կարիքի մեջ եմ»։
Երբ նա նեղեց նրանց, վերջիններս բերին, ինչ որ պահվում էր
տաճարում, և դրին նրա առաջ։ Ապա նա վանականներին բան-
տարկեց նախասրահում, այսինքն՝ խոհանոցում, և մի ֆրանկ քա-
հանայի ու նրա հետ եղած մարդկանց ուղարկեց հանելու եկեղե-
ցու ողջ սպասքները՝ գավաթները, սկիհները, խաչերն ու ավետա-
րանները։ Տաճարում եղած ամեն ինչ վերցնելուց հետո ձեռք ձգե-
ցին վանականների խցերին և մեկ առ մեկ խուզարկեցին դրանք։
Ոճրագործները յուրացրին ու հափշտակեցին ամեն ինչ։
Երբ [Ժոսլինը] խլեց վանքի ողջ ունեցվածքը, բարձեց ուղ-
տերին ու վանքին պատկանող տասներկու ջորիներին, դրանից հե-
տո պահանջեց, որ իրեն տան տաս հազար դինար, որպեսզի դուրս
գա վանքից։ Նրան պատասխանեցին. «Ինչ որ ունեինք արդեն
վերցրիր, մենք այլևս ոչինչ չունենք, որտեղի՞ց տանք քեզ»։ Այն-
ժամ նա վանքում երկու կառավարիչ նշանակեց, իսկ բերդում
ավազներ ու մարդիկ թողեց՝ վանքը հսկելու և նրա հացահատիկը,
պաշարը, դինին ու մնացած բաները խժռելու համար։ Ապա վերց-
րեց Սուրբ Բարսումա վանքի վանականներին և մեկնեց Քյահթայի
կողմը։ Այնտեղից նա եկավ Հիսն-Մանսուր, իսկ հետո մեկնեց

Ավետյաց բլուր։ Թլպաշարի քրիստոնյաները նրան խնդրեցին վան-
153 քը վերադարձնել վանականներին։ // Այնտեղ գտնվող ուռհայեցի մարդկանց երաշխավորությամբ նրանց համար սահմանեցին տաս հազար դինար և հինգ ծերունի վանականների պատանդ թողին նրա մոտ։ [Ժոսլինը], իր մոտ պահելով նաև սրբի աջը, մյուս վանականներին բաց թողեց, որպեսզի գնան իրենց վանքը։ Նրանք վանք եկան այդ տարվա օգոստոս ամսին Քեսունի մետրապոլիտ, սրբազան տեր Հովհաննեսի՝ Եղիա Շաքքամցու[326] ուղեկցությամբ։ Հասնելով վանք՝ նրանք տեսան, որ խցերն ու խորանները քարուքանդ են արված հնամյա ավերակների նման։ Նրանք շինեցին, վերանորոգեցին ու կարգի բերեցին վանքը և իրենց վանահայր ընտրեցին Ղազարոս ծերունուն։ Ապա նվիրակները, շրջելով, հավատացյալներից հավաքեցին հինգ հազար դինար և 1461 (1150) թվականի Քանուն[327] ամսի սկզբին բերին տվին Ժոսլինին։ Նա վերադարձրեց սրբի աջը և սաստեց նրանց։ Վերջիններս երաշխիքներ տվին, որ կբերեն նաև մյուս հինգ հազարը և, վերցնելով սուրբ աջը, բերին վանք։

## 437. Զանգիի որդի Նուրեդդինի պարտությունը Ցագրայի[328] մոտ

Այդ տարի Նուրեդդինը, հավաքելով իր զորքերը, եկավ պաշարեց Անտիոքի երկրում գտնվող Ցագրայի բերդը և կատաղի հարձակում գործեց նրա վրա։ Անտիոքի տերը գտնվում էր Գաբալայում[329], ծովի ափին։ Երբ նա լուր ստացավ, վերցրեց իր զորքերը և, վրա հասնելով, հանկարծակի հարվածեց թուրքերին։ Վերջիններս պարտություն կրեցին, և Նուրեդդինը երկու հարյուր հեծյալներով փախավ մտավ Հալեպ։ Նրա զորքերի մեծ մասը, մոտ տաս հազար հոգի, սպանվեց։ Ֆրանկները կողոպուտի մատնեցին թուրքերի վրանները, այդ թվում նաև Նուրեդդինինը, և ոսկի, արծաթ, ծառաներ ու աղախիններ ձեռք բերին։ Նրանք տարեցին նաև նրանց թմբուկներին, շեփորներին և անգամ երգչուհիներին ու մյուս երաժիշտներին։ Անտիոքի տերը և ֆրանկները վերցրին այդ ամենը և ցնծությամբ մտան Անտիոք։ Ցնծությամբ էլ դիմավորե-
154 ցին նրանց. բոլոր քրիստոնյաները մեծ ուրախության մեջ էին։ // Ֆրանկների մոտ էր գտնվում նաև մի արաբ ամիրա՝ Ալի իբն Վաֆա անունով, որը գժտվել էր Նուրեդդինի հետ և ծառայում էր Անտիոքում։

## 438. Ֆրանկների պարտությունը Նուրեդդինից և Ուռհայի կոմս Ժոսլինի գերեվարումը[330]

Թուրքերի վերը նկարագրված պարտությունից երեք ամիս հետո Նուրեդդինը հավաքեց իր զորքերը և եկավ պաշարեց Ինաբ[331] անունը կրող բերդը։ Լսելով այդ, Պուատվինը՝ Անտիոքի տերը, ելավ առավ իր զորքերը և եկավ ճակատամարտ տալու նրան։ Իսկ Նուրեդդինը, երբ լսեց ֆրանկների գալուստը, հեռացավ բերդից և բարձրացավ լեռը։ Ֆրանկները եկան և բանակեցին Թելլայի[332] և Ինաբի միջև գտնվող դաշտում։ Երբ Նուրեդդինը լրտեսների միջոցով իմացավ, որ ֆրանկները փոքրաթիվ են, զինեց իր զինվորներին, որոնք հնչեցնելով շեփորները՝ հարձակվեցին ֆրանկների վրա։ Տերը բարկացավ ֆրանկների վրա. նրանք թիկունք դարձրին ու պարտվեցին։ Սպանվեց Ժոֆրուան՝ Մարաշի տերը[333], ինչպես նաև Ալի իբն Վաֆա արաբը[334]։ Ֆրանկ զինվորներից շատերը սրի քաշվեցին։ Դուքսի[335] երկիրը ավարի մատնվեց և քարուքանդ եղավ։ Գրավվեցին Հարիմը[336], Իմմը[337], Արտախը[338] և Հարիմի բերդի շուրջը գտնվող բոլոր գյուղերը։ Այս ճակատամարտում զոհվեց նաև Անտիոքի տերը[339]։ Դա մի սոսկալի պարտություն էր։ Թուրքերը անսահման թվով ստրուկներ, գերիներ, ձիեր ու ինչ ձեռք բերին։

Ինչ վերաբերում է Ժոսլինին՝ Ուռհայի կոմսին ու կառավարչին, ապա նա այդ ժամանակ գտնվում էր Աղաղում։ Երբ նա լսեց, որ Անտիոքի տերն սպանվել է, փոքրաթիվ մարդկանց հետ դուրս եկավ Աղաղից ու ճանապարհ ընկավ՝ Անտիոք գնալու և այնտեղ թագավորելու նպատակով։ Սակայն երբ հասավ Կուրուսին և ուզեց անցնել Շիխ[340], ծառերի արանքից վրա թռան թուրքմենները։ Բռնվելով՝ [Ժոսլինն] ասաց. «Ինձ տարեք Աղաղ, և ես ձեզ կտամ ինչ որ ուզեք»։ Նրան վերցրին և բերին մի գյուղ, որի անունը Շիխ-Աղդեյր[340ա] էր, սակայն չգիտեին, թե ով է նա։ Տեղի քրիստոնյա-

155 ները // ճանաչեցին նրան և ուզեցին փրկագնել թուրքերից՝ առաջարկելով վաթսուն դինար։ Սակայն աստված կամեցավ լքել նրան մի բան, որին նա արժանի էր։ Մի հրեա ներկագործ գյուղով անցնելիս ճանաչեց նրան և թուրքմեններին հայտնեց, որ դա Ժոսլինն է։ Թուրքմենները նրան վերցրին բերին Հալեպ։ Նուրեդդինը հրամայեց կուրացնել նրա աչքերը և ծանր շղթաներով բանտ նետել։ Բանտում նա մնաց ինը տարի և այնտեղ էլ մեռավ։

## 439. Ասկալոն քաղաքի պաշարումը ֆրանկների կողմից և նրա նվաճումը մահմեդականների ձեռքից

*1463 (1152) թվականին Բաղդուինը՝ Երուսաղեմի թագավորը,
պատրաստություն տեսավ, կարգավորեց իր զորքերը և եկավ պաշա-
րեց Ասկալոն քաղաքը։ Ֆրանկների երևելի մարդկանցից մեկը,
որի անունը Ռայմոնդ[341] էր, մեծ հերոսություն գործեց քաղաքի
դեմ մղվող այդ հարձակման ժամանակ։ Ապա նա խնդրեց թա-
գավորից, որ իրեն կնության տա պատերազմում սպանված Ան-
տիոքի տիրակալի կնոջը։ Թույլտվություն ստանալով՝ նա գնաց
ամուսնացավ Անտիոքի տիրուհու հետ, իշխանությունը վերցրեց
իր ձեռքը և վերադարձավ։ Բաղդուին թագավորը դեռ շարունակում
էր Ասկալոնի պաշարումը։ Նրանք կատաղի և ուժգին հարձակում-
ներ գործեցին նրա վրա։ Շինեցին մի փայտյա աշտարակ և մո-
տեցրին քաղաքին, աշտարակն ավելի բարձր էր, քան պարիսպը։
Աշտարակի մեջ տեղավորեցին մարտունակ մարդկանց, իսկ վրան
դրին մի քարարձակ մեքենա, որը քարեր և նետեր էր արձակում
քաղաքի վրա։ Այսպիսով, ով հայտնվում էր քաղաքի փողոցներում
կամ դուրս էր գալիս իր տնից, սպանվում էր։ Քաղաքացիները
խիստ նեղության մեջ ընկան և ընկճվեցին քաղցից ու արտաքին
հարձակումներից։ Կռիվը երկար տևեց ու ձգձգվեց։ Եվ երբ տեսան,
որ փրկիչ չկա, քանի որ, ինչպես ցույց կտանք, եգիպտացիները
156 զբաղված էին իրար դեմ մարտնչելով, իսկ որևէ այլ տեղից //
փրկություն չէր սպասվում, նրանք երաշխիքներ խնդրեցին իրենց
կյանքի համար։ Նրանց ավագներից մի քանիսը եկան թագավորի
մոտ, երդվեցրին թագավորին ու պատրիարքին և հանձնեցին քա-
ղաքը։ Ով ուզում էր մնալ քաղաքում՝ ֆրանկների տիրապետու-
թյան տակ, մնաց, իսկ ով ուզում էր գնալ Եգիպտոս, ստանալով
իր ընտանիքն ու ունեցվածքը՝ գնաց խաղաղությամբ։*

## 440. 1470 (1159) թվականին պատահած դեպքերի մասին

*Այդ տարի սաստիկ երկրաշարժ տեղի ունեցավ, որի ժամանակ ավերվեց Շիզարը։ Զոհվեց քառասուն հազար մարդ, որոնց թվում նաև նրանց կառավարիչը՝ իր երեխաների և ընտանիքների հետ։ Լեռը, որի վրա կառուցված էր այդ բերդը, կիսով չափ փլվեց։ Բազմաթիվ մարդիկ զոհվեցին նաև Համայում, Սալամիայում[342] և շրջակայքի շատ գյուղերում։*

Այդ տարի Նուրեդդինը եկավ և խլեց խառանը իր եղբոր՝ Ամիր Ամիրանի ձեռքից։ Ապա պաշարեց ու գրավեց նաև Պեհեսնին։ Թուրքերը կողոպտեցին Արիդում[13] գտնվող վանքը, որտեղ սպանվեցին չորս վանականներ։ Նույն տարի Նուրեդդինը եկավ և սրի ուժով գրավեց Այնթապը՝ քարուքանդ անելով, ինչ որ գտավ այնտեղ։ Նա չխնայեց որևէ մեկին, գերիներ ու ավար վերցրեց և բերեց Հալեպ։

Միևնույն տարվա հունիս ամսին Մելիտենեում սատանայի դրդումով մի հայ քահանա նետվեց իր մոտ մտած մի աղջկա վրա, ձեռք գցեց և բռնի ուժով տիրեց նրան։ Վախենալով, որ վերջինս կարող է բռնաբարության ցավից ձայն բարձրացնել, ձեռքը գրեց բերանին, և այգ թշվառականը չզգաց, որ նա տանջանքից մեռավ։ Ավարտելով իր ամոթալի գործը, նա տեսավ, որ աղջիկը մեռած է։ Հետո կորզեց նրա վրայի ոսկիներն ու զարդերը, նրան գրեց պարկի մեջ, գցեց ուսը և տարավ խցկեց մի աշտարակի մեջ, որտեղ հարդ էր լցված։ Քաղաքի դարպասը բաց էր, քանի որ ուրբաթ օր-
157 վա կեսօրն էր։ Երբ փնտրեցին աղջկան ու չգտան // ողջ քաղաքում, բոլոր հարևաններին, որոնց թվում նաև քահանային, ձերբակալեցին։ Նրանց տանջանքների ու գրկանքների ենթարկեցին, բայց ոչ ոք չխոստովանեց։ Թշվառական քահանան նույնպես, կտտանքների ենթարկվելով, չհամարձակվեց բացահայտել իրողությունը։ Սակայն Արդարությունը զայրացավ նրա վրա և թույլ տվեց ապրել։ Ազատվելով բանտից, նա փորձեց փախուստի դիմել, բայց հազիվ էր հեռացել քաղաքից, երբ թուրքերը հասան ու բռնեցին նրան։ Տանջանքների ենթարկվելով՝ նա խոստովանեց, ապա գնաց ցույց տվեց այն տեղը, ուր նետել էր դժբախտին։ Երբ վերջինիս հանեցին հարդի տակից, տեսան, որ նրա գեղեցկությունն արդեն եղծվել է, իսկ սիրուն դեմքը փչացել է նեխումից։ Քաղաքացիներն սկսեցին լալ ու ողբալ գեղեցկատես օրիորդի այդքան ապականված և ցավալի տեսքի համար։ Բոլորն անխնա հարվածներ հասցրին թշվառ քահանայի գլխին, մանավանդ թուրքերը, որոնք այդ պղծին ստիպեցին տանել մեռյալի նեխած դին մինչև գերեզմանոց։ Նրա դավանակից հայերից մեկը, բռնված խելագար մոլուցքով, ողջ-ողջ մորթազերծ արեց նրան քաղաքի դարպասից դուրս հավաքված ամբոխի առջև։ Քրիստոնյաները, հատկապես քահանաները, ծաղրի առարկա դարձան մարդկանց համար։

## 441. Ֆրանկ թագավորների ծովային արշավանքը, Խարիմի նվաճումը մահմեդականներից և նրանց երկրների կողոպտումը, հունաց կայսեր արշավանքը և այդ ժամանակ Ասորիքում պատահած դեպքերը

*1470 (1159) թվականին ֆրանկ թագավորների ցեղից մի նշանավոր մարդ, որի անունն էր Կոնդֆլանդ[344], բազում զորքով եկավ Երուսաղեմ և ֆրանկներին հավաքեց ծովափում։ Դրանց մեջ էին Երուսաղեմի թագավորը, Տրիպոլիի կոմսը և Թորոս[345] Հայը՝ Կիլիկիայի իշխանը։ Նրանք մեծ բանակ կազմեցին, գնացին պաշարեցին*
158 *|| Շիզար բերդը և ավարի մատնեցին ողջ երկիրը։ Գրավելով բերդը՝ նրանք կողոպտեցին ու հափշտակեցին այնտեղ եղած ամեն ինչ, սպանեցին մեծ թվով մարդկանց, մոտ հինգ հազար հոգու՝ կանանց ու երեխաների գերի քշեցին և անհամար ոսկի ու արծաթ ձեռք բերեցին։ Ապա մեկնելով այնտեղից՝ եկան պաշարեցին Խարիմ բերդն ու խաղաղ ճանապարհով տիրեցին նրան։ Տեղի մահմեդականները գնացին Հալեպ։*

*Հաջորդ տարի հունաց կայսր Մանուելը իջավ եկավ Անտիոք։ Նա բանակ դրեց Աֆրին[346] գետի ափին՝ դեպի Հալեպ արշավելու և այն պաշարելու նպատակով։ Նուրեդդինը հավաքեց մահմեդականների բոլոր զորքերը Ասորեստանից, Միջագետքից, Ամիդից, Մարդինից ու Նփրկերտից՝ հունաց կայսեր դեմ պատերազմելու համար։ Մահմեդականները շատ վախեցած էին։ Այդ միջոցին հունաց կայսրին մայրաքաղաքից լուր հասավ Անդրոնիկոս անունով մի իշխանի ապստամբության մասին։ Լսելով այդ՝ կայսրը հաշտություն կնքեց Նուրեդդինի հետ, և վերջինս ազատեց Հալեպում պահվող գերիներին։ Դրանց մեջ էր վերոհիշյալ Ալֆոնս թագավորի որդին[347], որի հայրը մահադեղով սպանվել էր Տրիպոլիի կոմսի ձեռքով։ Հունաց կայսրը վերադարձավ մայրաքաղաք՝ առանց որևէ բան արած լինելու։*

*Նույն այդ տարի սաստիկ երկրաշարժ տեղի ունեցավ, որից ավերվեց ծովափին գտնվող Գաբալան։ Մոտ երկու հազար մարդ խեղդվեց այնտեղ։*

*Միևնույն տարվա մեջ Անտիոքի իշխան Ռայմոնդը և Ժոսլինի որդի Ժոսլինը[348], որը տիրում էր Խարիմին, եկան ավարի մատնելու Հալեպի գավառը։ Նրանք կողոպտեցին ու հափշտակեցին, ինչ կամեցան, և ողջ-առողջ ետ դարձան։ Ռայմոնդը գնաց Անտիոք, իսկ Ժոսլինը, նստած մի գյուղում, կերուխում էր անում։ Սակայն վրա հասան թուրքական զորքերը, բռնեցին նրան այդ գյուղում և,*

բերելով Հալեպ, շղթայակապ պահեցին իր հոր տեղում։
Որոշ ժամանակ անց, նույն տարվա մեջ, Անտիոքի իշխան
Ռայմոնդը դուրս եկավ ասպատակելու Հալեպի շրջակայքը։ Երբ
159 || նա ավար առած ետ էր դառնում, թուրքական զորքերը Սև գե-
տի[349] մոտ վրա հասան, կոտորեցին նրա բանակը, ապա՝ բռնելով
նրան՝ տարան շղթայեցին։ Այդ տարի Անտիոքում դահ բարձրա-
ցավ ավագ Պուատվինի որդին[350]։ Նա վռնդեց իր մորը, որը գնաց
Լաոդիկե[351]։

## 142. Պոնտոսի և Հյուսիսի երկրներում այդ տարիներին պատահած դեպքերի մասին

1474 (1163) թվականին Աղուբ Արսլանը՝ [Սեբաստիայի][352] տիրակալը, մտավ Կամախի[353] երկիրը, ասպատակեց այն ու դուրս եկավ։ Թուրքերի գերած մարդկանց մեջ էր մի հայ երեցկին՝ երկու երեխաներով։ Թուրքերն ուզեցին պղծել նրան, ապա վաճառել։ Իսկ նա ջերմեռանդ հավատով ասաց նրանց. «Ես ձեզ երկու հարյուր դինարի չափ փրկագին կտամ իմ և երեխաներիս համար, սակայն խնդրում եմ՝ ինձ չմոտենաք։ Մեր օրենքով երեցկնոջն արգելվում է մերձենալ այլ տղամարդու։ Եթե դա պատահի, երեցը կկորցնի իր քահանայությունը։ Գթացեք ինձ ու իմ ամուսնուն»։ Իսկ նրանք ամբարտավանորեն պատասխանեցին. «Այս գիշեր մենք բոլորս կպառկենք քեզ հետ, իսկ հետո կվաճառենք»։ Քիչ անց, երեկոյան կողմ նա թույլտվություն խնդրեց նստել Եփրատ գետի ափին և իր երեխաների գլուխները սանրով մաքրել ոջիլներից։ Երբ թույլ տվին, նա գնաց գետի ափը, խաչակնքեց, երեխաներից մեկին վերցրեց աջ թևի տակ, մյուսին՝ ձախ և նետվեց ջուրը։ Այսպիսով նա փրկվեց անպատվությունից, իսկ իր երեխաները՝ ստրկությունից։

Այդ ժամանակ անձրևի առատությունից մեծ ջրհեղեղ առա-
ջացավ, իսկ Սուրբ Բարսումայի վանքի շրջակայքում ձյան ծած-
կույթ նստեց։ Գետը խիստ վարարեց, ջրերը լցվեցին վանքի աղո-
րիքը և ողողեցին այն։ Աղորիքում գտնվող վանականները մագլ-
160 ցեցին բարձր տեղեր և չտուժեցին։ || Աղորիքում նրանք մի գինու
կարաս ունեին, որը թեև ողողվեց, բայց չթափվեց։ Նույնիսկ աղո-
րիքի ճրագը, որ լողում էր ջրերի վրա, չհանգավ։

Այդ ժամանակ ջրհեղեղի պատճառով մեծ համաճարակ առաջացավ Հյուսիսի երկրներում, հատկապես Եփրատի ափերին։ Մի ոմն թուրք եկավ Կարկառի սահմաններում գտնվող Ալիոս[354] դյու-

ղը և ասաց. «Իմացեք, թե ով է առաջինը մեռել այս համաճարակից»: Հարցուփորձ անելով՝ իմացան, բացեցին [մեռյալի] գերեզմանը և տեսան, որ չորս ամիս անցնելուց հետո նա դեռ չէր փտել: Նրա աչքերը բաց էին, մեկ թիզ և չորս մատ բացվածք ուներ նաև բերանը: Պատանքի գլխամասն ու կրծքամասը կերված էին, իսկ դեմքի շուրջը ասես ածելիով կտրված լիներ: Աջ ձեռքը կրծքից ընկել էր կողքի վրա: Թուրքը փակեց նրա բերանը և նրա մեջ մի մեծ գամ մեխեց: Այդ օրվանից այլևս ոչ ոք չմեռավ:

Այդ տարի համաճարակ բռնկվեց նաև Սևերակում: Հոկտեմբերից մինչև մարտ հազարից ավելի մարդ մեռավ: Գավառի բրդական չորս գյուղեր գլխովին բնաջնջվեցին իրենց կանանցով ու երեխաներով: Մարդիկ հիվանդանում էին միայն երկու օր և մեռնում:

### 443. Հալեպի մոտակայքում գտնվող Խարիմ բերդի գրավումը և ֆրանկների կրած մեծ կորուստն այնտեղ

1475 (1164) թվականին Նուրեդդինը զորահավաք կատարեց: Նա կանչել տվեց իր Կուտբեդդին անունով եղբորը, որը տիրում էր Ասորեստանում ու Մոսուլում, ինչպես նաև՝ Արբելայի Զեյնեդդին ամիրային, Սինջարի ամիրային, Անձիտի երկրում գտնվող Հիսն-Քեֆայի[355] Ֆախրեդդին[356] ամիրային, Մարդինի Խուսամեդդին[357] ամիրային, Ջեզմայի և Պիրի Շիհաբեդդին ամիրային, նրա Մաջդեդդին անունով հորեղբորորդուն ու Մաբբուգի և Ուռհայի Սեյֆեդդին ամիրային: Երբ զորքերը հավաքվեցին, եկան պաշարեցին Խարիմի բերդը: Հաշվելով իրենց զորքերը՝ [թուրքերը] տեսան, որ վաթսուն հազար հեծյալ և քառասուն հազար հետևակ ունեն:
161 Նրանք || մանգղիոնների օգնությամբ կատաղի հարձակումներ գործեցին բերդի վրա: Բերդին այդ ժամանակ տիրություն էր անում Ռենալդ[358] անունով մի ֆրանկ, որը քաջասիրտ մարդ լինելով, ուժեղ դիմադրություն ցույց տվեց թուրքերին:

Ֆրանկները Տրիպոլիի կոմսի[359], Անտիոքի տիրոջ և Թորոս հայի գլխավորությամբ հավաքեցին մոտ վեց հարյուր հեծյալ ու շուրջ վեցհազարանոց հետևակ և, դուրս գալով Անտիոքից[360], ուղղվեցին դեպի Խարիմ: Երբ թուրքերն իմացան, որ ֆրանկները ելել են Անտիոքից և գալիս են դեպի իրենց, հեռացան բերդից ու եկան Իմմ գյուղը, որը մի փոքր հեռու էր բերդից: Ֆրանկները, ժամանելով, ճամբար խփեցին բերդի շուրջը, որտեղ նախապես բանակել էին թուրքերը: Թորոս հայը՝ Կիլիկիայի իշխանը, նրանց ասաց. «Բավարարվենք այն սխրանքով, որ նրանց վռնդեցինք բերդից:

*Այժմ դուրս հանենք բերդում դտնվող Թույլերին և այնտեղ տեղավորենք մարտունակ ու քաջ մարդկանց՝ բավարար սննդամթերքով։ Իսկ մենք վերադառնանք Անտիոք, մինչև Երուսաղեմի թագավորը ետ դա եգիպտացիների երկրից»։ Ի դեպ, Երուսաղեմի թագավորն իր զորքերով մտել էր Եգիպտոսի երկիրը, որ ստորև ցույց կտանք Տիրոջ օգնականությամբ։ Տրիպոլիի կոմսը չանսաց այդ խորհրդին, այլ ասաց. «Եկեք հարձակվենք Թուրքերի վրա և ջախջախենք նրանց, այլապես մեզ ի՞նչ կհամարեն, եթե ոչ չներ»։*

*Նրանք մեկնեցին Խարիմից ու եկան Իմմ։ Երբ մոտեցան, և Թուրքերը լեռներից տեսան, որ նրանք սակավաթիվ են, հնչեցրին շեփորները, հարձակվեցին նրանց վրա և, շրջապատման օղակի մեջ առնելով, ծանր հարվածներ հասցրին նրանց։ Կոմսն[361] ու Թոբոսը ճողոպրեցին, հույների դուկը[362] բռնվեց, իսկ ողջ հետևակը սրի բերան մատնվեց։ Գերի ընկան նաև Անտիոքի տերը և ֆրանկ հեծյալների մեծ մասը։ Այդ տարվա օգոստոս ամսին շատերը կորստյան մատնվեցին ձիերի և անսահման գույքի հետ միասին։*
162 *// Ֆրանկների ջախջախումից հետո Թուրքերը եկան պաշարեցին Խարիմ բերդը, և վերջինս խաղաղությամբ հանձնվեց նրանց։ Գրավելով բերդը՝ նրանք մտան ղուկի երկիրը և ավարի մատնեցին այն։ Ապա գնացին Սիման[363] անունը կրող մեծ վանքը, որտեղ հույն վանականներ էին բնակվում, և կողոպտեցին, ինչ որ գտան նրանց մոտ՝ ոսկեղենը, արծաթեղենը, թանկարժեք իրերն ու գրքերը, ինչպես նաև սկիհները, գավաթները, խաչերը, բուրվառները, ոսկուց ու արծաթից պատրաստված սրբապատկերները, բարձրարժեք սփռոցներն ու վանականների ողջ ունեցվածքը։ Բոլոր վանականներին, որպես գերի, բերին Հալեպ։ Խարիմի պարտության ժամանակ զոհված ֆրանկների թիվը անցավ տաս հազարից։ Դրանից էլ ավելի Թուրք սպանվեց։ Այնուհետև Թուրքերը գնացին պաշարեցին Բանիասը և խաղաղ ճանապարհով տիրեցին նրան, քանի որ նրա տերը՝ Երուսաղեմի թագավորը, գտնվում էր Եգիպտոսում։*

### 444. Երուսաղեմի թագավորի եգիպտական արշավանքի պատճառը, Նուրեդդինի մեծամեծներից մեկի՝ Շիրկուհի[364] մուտքը Եգիպտոս և այդ ժամանակ երկրում տեղի ունեցած իրադարձությունները

*Եգիպտոսում արաբական նվաճումներից ի վեր տիրում էին Ալի իբն Աբուտալիբի[365] ցեղի խալիֆները։ Սրանք հակառակու-*

*թյան մեջ էին Բաղդադի խալիֆների հետ, որոնք մարգարե կոչված Մուհամմեդի քեռու՝ Աբասի[366] ցեղից էին։ Մեկն ասում էր, թե ինքն է խալիֆների ժառանգորդը, մյուսը թե՝ ինքը։ Արևմտացիներն ու եգիպտացիները Եգիպտոսի խալիֆի կողմնակիցներն էին և հերձվածի պես մի բան էին[367]։ Իսկ Ասորիքը, Արևելքը, Թուրքերը և այդ կողմերի ժողովուրդները ենթարկվում էին Բաբելոնի խալիֆին և նրա գահն էին ճշմարիտ համարում։ Եգիպտոսի խալիֆին ոչ ոք*
163 *չէր տեսնում, // քանի որ նա, ինչպես Բաղդադինը, իր անձը գաղտնի էր պահում։ Նա ուներ մի վեզիր, այսինքն՝ փոխանորդ, որ վարում էր իր գործերը։ Եգիպտոսի խալիֆը որևէ աղդեցություն չուներ։ Իշխում էր նա, ով հզորանում և իր կողմն էր գրավում եգիպտացի մեծամեծներին։ Խալիֆը նրան շնորհում էր արքայական զգեստներ ու հանդերձներ, հռչակում վեզիր, և վերջինս անցնում էր իշխանության գլուխ։ Այսպես, մինչ իրար կործանում էին, խալիֆը, փակված իր պալատում, զբաղվում էր կերուխումով, երգուպարով ու զվարճություններով։*

*Այդ ժամանակ, այսինքն՝ 1476 (1165) թվականին, Եգիպտոսի խալիֆն էր Ադուդեդդին Ալլահը[368], իսկ կառավարիչը, իշխանապետն ու հրամանատարը՝ Սալիհ իբն Ռուզայկը[369]։ Նա էր վարում ողջ Եգիպտոսի և Կահիրեի գործերը։ Քուշում[370] և արևմտյան երկըրներում տիրում էր արաբների ցեղից մի մարդ, որի անունն էր Շավիր[371]։ Շավիրի և Եգիպտոսի վեզիր ու կառավարիչ Ռուզայկի միջև հակառակություն առաջացավ։ Սակայն այդ ընթացքում Սալիհը մեռավ, և նրան հաջորդեց, այսինքն՝ նրա տեղն զբաղեցրեց իր որդին, որի անունն էր Ռուզայկ[372]։ Շավիրը ելավ եկավ Եգիպտոս։ Եգիպտական զորքերը դավաճանեցին Ռուզայկին. դրանց մեջ էր նաև Եգիպտոսի հայտնի մեծամեծներից մեկը՝ Դիրղամ ամիրան։ Սա էր, որ գրեց և բերել տվեց Շավիրին։ Վերջինիս և Ռուզայկի միջև պատերազմ ծագեց, Ռուզայկը պարտվեց ու փախավ, իսկ Շավիրը մտավ Եգիպտոս և, գրավելով իշխանությունը, ողջ երկրի գործերը վերցրեց իր ձեռքը։*

## 445. Շավիրի մեկնումը Եգիպտոսից

*Որոշ ժամանակ անց Դիրղամն այս անգամ դավաճանեց Շավիրին և սկսեց սիրաշահել զորքերին՝ իշխանությունը զավթելու նպատակով։ Բոլոր մեծամեծներին իր կողմը գրավելուց հետո նա*
164 *բացահայտ դարձրեց իր հակառակությունը։ // Նրանց միջև տեղի ունեցած ճակատամարտում Շավիրը պարտվեց ու փախավ,*

իսկ նրա որդին սպանվեց։ Դիրգամը տիրեց Եգիպտոսին և երկրի իշխանությունն ու տնօրինումը վերցրեց իր ձեռքը։ Իսկ Շավիրը գնաց Դամասկոս և օգնություն խնդրեց Նուրեդդինից։ Վերջինս տաս հազարանոց մի զորաբանակով նրա հետ ուղարկեց մի խորամանկ և քաջասիրտ հրամանատարի, որի անունն էր Շիրկուհ Ասադեդդին։ Ապահովության նպատակով նրանք ոսկի և նվերներ տվին Եգիպտոսի ճանապարհի վրա գտնվող Կրակ և Շուբակ[174] ամրոցների ֆրանկ իշխանին, որի անունն էր Ֆիլիպ Դգիյ[175]։ Երբ հասան Բիլբայս[176], Դիրգամը նրանց դեմ ուղարկեց եգիպտական զորքերը իր եղբոր գլխավորությամբ, որի անունն էր Ֆարիս ալ-Մուսլիմին։ Նրանք բախվեցին իրար, և եգիպտացիները պարտություն կրեցին։ Դամասկացիները կողոպտեցին նրանց, հարստացան ու եկան պաշարեցին Կահիրեն՝ կատաղի հարձակումներ գործելով նրա վրա։ Եգիպտական զինվորները իրենց վատ սովորության համաձայն սկսեցին դավաճանել և մեկ առ մեկ անցնել Շավիրի կողմը։ Մի քանի օրից քաղաքը դրավվեց։ Դիրգամը ձի հեծավ ու փախավ, սակայն քաղաքից դուրս նրան գտան և սպանեցին։ Շավիրը կրկին տիրեց Եգիպտոսին և ողջ երկրի գործերը վերցրեց իր ձեռքը։ Ասադեդդինը բանակել էր քաղաքից դուրս։ Շավիրը ամեն օր գալիս էր նրա ողջությունը հարցնելու և շարունակ նվերներ ու պարգևներ էր ուղարկում նրան։

## 446. Ասադեդդինի և Շավիրի տարաձայնությունը

Որոշ ժամանակ անց տարաձայնություն ծագեց Ասադեդդինի
և Շավիրի միջև։ Ասադեդդինը՝ դրսից, իսկ եգիպտացիները ներ-
սից սկսեցին մարտնչել իրար դեմ։ Ասադեդդինը չկարողացավ
ոչինչ անել, գնաց պաշարեց Բիլբայսը և սկսեց կողոպտել ու շա-
րունակ նեղության մեջ պահել եգիպտացիներին։ Իսկ Շավիրը օգ-
նություն խնդրեց Երուսաղեմի Ամորի թագավորից՝ խոստանալով
նրան տալ օրական հազար եգիպտական դինար՝ իր երկրից դուրս
165 գալու օրվանից մինչև օգնության հասնելը։ // Ամորի թագա-
վորը բազում զորքերով եկավ պաշարեց Բիլբայսը, իսկ Շավիրը
եգիպտական զորքերով գնաց նրա մոտ։ [Ֆրանկ] զինվորներին
ամեն օր դրամ և մթերք էին վճարում։ Ֆրանկները ելումուտ էին
անում Եգիպտոսում ինչպես մի տնից մի այլ տուն։ Նրանք կա-
տաղի հարձակում գործեցին Բիլբայսի վրա և նրա դեմ մի փայտ-
յա աշտարակ կանգնեցրին։ Կռիվը տևեց երեք ամիս։ Պաշարված-
ներից շատերը կոտորվեցին՝ սպանվելով ու սովահարվելով։ Երբ

*Ասադեդդինը տեսավ, որ այլևս հնար չկա, քանի որ [զորքերը] հուսահատվել էին կյանքից, խոստում և երդումներ խնդրեց, որպեսզի թողնեն և ձեռնունայն հեռանան։ Այդպես էլ եղավ։ Թագավորը գնաց Երուսաղեմ, իսկ Ասադեդդինը փոքրաթիվ մարդկանց հետ վերադարձավ Դամասկոս։*

## 447. Ասադեդդին Շիրկուհի երկրորդ արշավանքը Եգիպտոս

*1478 (1167) թվականին Ասադեդդինը նորից վերցրեց իր զորքերը և եկավ Եգիպտոս։ Շավիրը սուրհանդակներ ուղարկեց և դարձյալ օգնություն խնդրեց Երուսաղեմի Ամորի թագավորից։ Երբ վերջինս եկավ, Ասադեդդինը փախավ գնաց Ալեքսանդրիա և գրավեց այն։ Ֆրանկներն ու եգիպտացիները հետապնդեցին նրան։ Տեղեկանալով, որ նրանք հասնում են, [Շիրկուհը] Ալեքսանդրիան թողեց իր Սալահեդդին[377] անունով եղբորորդուն և գնաց Քուշ։ Ֆրանկներն ու եգիպտացիները պաշարեցին Ալեքսանդրիան և երեք ամիս նեղեցին, որից հետո այն հանձնվեց, և նրանց միջև հաշտություն կնքվեց։ Ասադեդդինը եկավ Քուշից ու գնաց Դամասկոս։ Երուսաղեմի Ամորի թագավորը վերադարձավ Երուսաղեմ։ Որոշ ժամանակ անց եգիպտացիների և ֆրանկների միջև կնքված դաշինքը խախտվեց, և Երուսաղեմի թագավորը շարժվեց դեպի Եգիպտոս։*

## 448. Երուսաղեմի թագավորի երրորդ արշավանքը դեպի Եգիպտոս, Բիլբայսի առումը, Շավիրի սպանությունը և Ասադեդդինի գահակալումը Եգիպտոսում

*1480 (1169) թվականին Երուսաղեմի թագավորը, կոտորելով*
166 *ու ավար առնելով, մտավ Եգիպտոսի սահմանները։ // Ապա եկավ պաշարեց Բիլբայսը և, հարձակում գործելով նրա վրա, բռնի ուժով գրավեց այն։ Նա կոտորեց նրա բնակիչներին՝ ավելի քան չորս հազար հոգու, և այն ամայացրեց։ Այնուհետև եկավ պաշարեց Կահիրեն։ Եգիպտացիները, նեղ դրության մեջ ընկնելով, սուրհանդակներ ուղարկեցին Նուրեդդինի մոտ։ Բազում զորքերով և երևելի մարդկանցով վերջինս նրանց մոտ ճանապարհեց Ասադեդդինին։ Իսկ ֆրանկները, երբ իմացան այդ բանը, հաշտություն կնքեցին եգիպտացիների հետ և, ոսկի ստանալով, վերադարձան իրենց երկիրը։*

*Երբ Ասադեդդինը եկավ, եգիպտացիները նրան ընդառաջ ելան։*

Նա բանակ դրեց Կահիրեի մոտակայքում, Նեղոս գետի ափին։ Շավիրն ամեն օր գալիս էր նրա ողջույնը հարցնելու։ Ասադեդդինի ժամանելուց հաղիվ մի քանի օր էր անցել, երբ Շավիրը դավ նյութեց՝ նրան սպանելու նպատակով։ Նա իր մեծամեծներին հրամայեց, որպեսզի նրանցից յուրաքանչյուրը խնջույք կազմակերպի Ասադեդդինի երևելի մարդկանցից որևէ մեկի պատվին, և հանձնարարեց, որ նրանք սպանեն իրենց մոտ խնջույքի եկողներին։ Նա մարդիկ նախապատրաստեց նաև Ասադեդդինին սպանելու համար։ Ասադեդդինը զգաց ամեն ինչ և, երբ հրավիրվեց խնջույքի, չգնաց՝ պատճառաբանելով, թե հիվանդ է։ Շավիրը ձի հեծավ և անձամբ գնաց՝ նրան խնջույքի հրավիրելու։ Հասնելով Ասադեդդինի վրանին՝ նա իջավ ձիուց։ Ասադեդդինը նրան ընդառաջ ելավ մինչև վրանի դուռը։ Վրանի պահապաններն ու նախապատրաստված մարդիկ սպանեցին Շավիրին։ Ասադեդդինը անմիջապես հեծավ Շավիրի ձին և իր զորքերի հետ եկավ քաղաք։ Նա մտավ արքունական պալատ և վայելեց ճաշկերույթը։

Այսպիսով նա տիրեց Կահիրեին և այնտեղ իշխանության գլուխ անցավ։ Խալիֆը փակված էր Կահիրեի ամրոցում, այսինքն՝ միջնաբերդում, արքունական սրահների մեջ։ Նա իշխանություն չուներ, այլ միայն անուն։ Ասադեդդինը տիրեց Եգիպտոսի ողջ երկրին, զորեղացավ ու չափազանց հզոր դարձավ։ Նա ծանրացրեց եգիպտացիների հարկերն ու տուրքերը և դաժանություն ցու-
167 ցաբերեց քրիստոնյաների նկատմամբ։ // Ավելացրեց նրանց հարկերն ու տուրքերը, ջնջեց նրանց հին օրենքները, հրամայեց գոտի կապել[378], գլխին փաթթոց չկրել և ձի կամ ջորի չհեծնել։ Այդ տարի Եգիպտոսում ավելի քան տասնչորս հազար մարդ մահմեդականություն ընդունեց։

Երկրին տիրելուց հետո դեռ չէր անցել մի տարի և երկու ամիս, երբ Ասադեդդինը մեռավ, Եգիպտոսի տնօրինումը հանձնելով իր եղբորորդուն, որի անունն էր Յուսուֆ Սալահեդդին իբն Այուբ և որը առատաձեռն ու իմաստուն կառավարիչ էր։ Ցանկանալով անցնել իշխանության գլուխ, բայց տեսնելով, որ իր հորեղբոր՝ Ասադեդդինի մեծամեծներից ու ծառաներից շատերը դա չեն կամենում, նա սկսեց հարստություն ու գանձեր բաշխել և աստիճանաբար հարթեց բոլոր դժվարությունները։ Հետո նա Եգիպտոսից գնաց Դամասկոս և հաստատվեց Եգիպտոսի իշխանության գլուխ, ինչպես ցանկանում էր։ Ապա դավադրաբար սպանեց խալիֆին, ձերբակալեց բոլոր նրանց, ովքեր ծառայում էին նրան, ինչպես նաև նրա երեխաներին ու եղբայրներին, և դրեց պահապան-

ների հսկողության տակ։ Գանձարաններից ու պահեստներից նա հանեց բազում թանկագին քարեր, մարգարիտներ և սրբայական զարգերի մի այնպիսի հարստություն, որի նմանը երբեք տեսնված չէր։ Դրանով նա շահեց Բաղդադի խալիֆի սերն ու հարգանքը և նրա կողմից մեծ սուլթան հռչակվեց, ինչպես ստորև ցույց կտանք Տիրոջ օգնականությամբ։

## 449. Արևելքի երկրներում և Ասորիքում Նուրեդդինի կատարած գործերի մասին

Մինչ Սալահեդդինը գտնվում էր Եգիպտոսում, 1481 (1170) թվականին Նուրեդդինը ուղղվեց դեպի արևելք, որովհետև մեռել էր նրա եղբայր Կուտբեդդինը՝ Մոսուլի տիրակալը։ Երբ հասավ
168 Մծբին, // մահմեդականները ամբաստանեցին քրիստոնյաներին, թե իբր նրանք վերականգնում են իրենց եկեղեցիները։ Նուրեդդինը հրամայեց քանդել բոլոր այն կառույցները, որոնք նոր`էին կանգնեցվել։ Այսպիսով քանդեցին նեստորականների ձեռքում գտնվող Սուրբ Հակոբի տաճարի, ինչպես նաև հակոբիկների Սուրբ [.....][379] եկեղեցու որոշ մասերը։ Այդ ժամանակ Մարդինի մահմեդականները նույնպես ոտնձգություն կատարեցին և խլեցին Քառասուն վկաների եկեղեցու գավիթը։ Նուրեդդինը, հասնելով Մոսուլ, տիրեց նրան և Ասորեստանի բոլոր քաղաքներին։ Նա ամուսնացավ իր մեռած եղբոր՝ Կուտբեդդին Մավդուդի կնոջ հետ։ Իշխանությունը վերցնելով իր ձեռքը՝ նա Մոսուլում թողեց իր պատանի եղբորորդուն, որի անունն էր Սեյֆեդդին Ղազի[380]։ Իսկ Ֆախրեդդին Աբդլմասիհ[381] անունով մի ներքինու, որը Կուտբեդդինի օրոք Մոսուլի և նրա շրջակայքի կառավարիչն էր և որը սիրում էր քրիստոնյաներին, նա վերցրեց իր հետ և առաջնորդ ու ղեկավար կարգեց իր զորքերի վրա։ Նա քրիստոնյաներին նորանոր ծանր պարտավորությունների ենթարկեց։ Հրամայեց քանդել բոլոր նոր շինված եկեղեցիներն ու կառույցները, պարտադրեց գոտի կապել[382], բոլոր քրիստոնյա դպիրներին հեռացրեց դիվանատնից և քրիստոնյաներին արգելեց ձի կամ թամբած ջորի հեծնել։ Բոլոր դպիրները վռնդվեցին արքունիքից, բացի Աբդուն սարկավագից, որը մի ծերունի ասորի էր՝ խելացի և իմաստուն, ոսկու և գիտելիքների հարուստ պաշարով։ Այնուհետև Նուրեդդինը մեկնեց Մոսուլից և եկավ Դամասկոս։ Նուրեդդինի գնալուց հետո քրիստոնյաները գտան իրենց հանդստությունը և ազատվեցին իրենց պարտադրված

*օրենքներից Նուրեդդինի եղբորորդու՝ Սեյֆեդդին բարի կառավար-
չի մարդասիրության շնորհիվ։*

*Այդ ժամանակ քրդերը •կողոպտեցին Սուրբ Մատթայի վան-
169 քը[383], // որը գտնվում է Նինվեի շրջանի Ալփաֆ[384] լեռան վրա։
Նրանք ավարի մատնեցին ողջ սպասքները և սպանեցին տասնը-
հինդ վանականի։ [Կողոպտեցին] նաև Ծարավ լեռան[385] վրա գըտ-
նըվող Սուրբ Սարգսի վանքը, որտեղ ուսում էր ստացել Մովսես
բար-Քեֆան[386]։*

*1482 (1171) թվականին սաստիկ երկրաշարժ տեղի ունեցավ։ Ավերվեց Անտիոքի· մեծ մասը, և անհամար մարդիկ ղոհվեցին այնտեղ։*

## 450. Նուրեդդինի մահվան մասին

*1485 (1174) թվականին հիշյալ Նուրեդդինը մեծամտաբար խորհեց գնալ պաշարել Երուսաղեմը։ Նա լուր ուղարկեց Ասորեստան, Միջագետք, Ասորիք, Պաղեստին ու Եգիպտոս՝ իր տիրապետության տակ գտնվող բոլոր զորքերին, որպեսզի շտապ հավաքվեն իր մոտ։ Սակայն նույն տարվա մայիսի 23-ին[387], մինչ զորքերը ժամանում էին բոլոր կողմերից, նա հանկարծակի մեռավ Դամասկոսում՝ քսանութ և կես տարի տիրելուց հետո։*

## 451. Նուրեդդինի բնավորության և սովորույթների մասին

*Սա սկզբից ևեթ փառք ձեռք բերեց իր հաղթանակների շնորհիվ՝ նվաճելով բազմաթիվ քաղաքներ։ Կեղծավոր ու խորամանկ էր և հետևում էր իր օրենքներին։ Գինի բոլորովին չէր խմում և ոչ էլ թույլատրում էր խմել։ Նա արհամարհում ու իրենից վանում էր երգերը, խաղերն ու պարերը, որոնք սովորական են թագավորների համար։ Ասում են, որ նրան ոչ ոք չի տեսել ծիծաղելիս։ Նա ոչ ոքի հետ չէր ճաշում, այլ՝ առանձին և այն էլ օրական մեկ անգամ։ Ամուսնության կամ բազմամուսնության նկատմամբ ցանկասեր չէր, որպիսի պղծությունը սովորական է թուրք թագավորների համար։ Հագուստ-կապուստի մեջ գերադասում էր հասարակ զգեստները։ Նա մեղմ ու հանդարտ էր, միշտ ծոմ էր պահում և ընթերցում իրենց Գիրքը[388]։ Նա արդարադատ, ողորմած և գթասիրտ էր աղքատ մահմեդականների և բարեպաշտ քրիստոնյաների նկատմամբ։ Միշտ և ամենուրեք ջանում էր ամրապնդել մահմեդա-
կան օրենքներն ու սովորույթները։ [Վերացնում էր] զանազան բը-
170 նույթի հարկերն // ու ամեն կարգի անիրավությունները։ Իր տիրա-
պետության տակ գտնվող բոլոր երկրներում վերացրել էր մաքսա-*

վճարը։ Երբ նա լուր էր ստանում կատարված անիրավությունների մասին, իսկույն հարթում էր դրանք և հատուցում վնասը։ Առանց դատի և ճշմարիտ վկայության երբեք չէր պատժում հանցավորներին։ Նրա ճամբարում ժխոր, խաղ կամ աղմուկ չկար, այնտեղ հանդարտություն և խաղաղություն էր տիրում։

### 452. Նուրեդդինի որդու գահակալման, Երուսաղեմի թագավորի մահվան և Ուռհայի եկեղեցիների ավերման մասին

*Նուրեդդինի մահվանից հետո Հալեպ քաղաքում թագավորեց նրա քսանամյա պատանի որդին, որի անունն էր Մելիք Սալիհ։ Երուսաղեմի թագավորը լսելով, որ Նուրեդդինը մեռել է, սրտապնդվեց և, մտնելով Դամասկոսի երկիրը, կողոպուտի և ավարի մատնեց այն։ Նա պաշարեց մի ամրոց, որ կոչվում էր Բանիաս, և նեղ վիճակի մեջ դրեց։ Սակայն աստծու հրամանով թագավորը հիվանդացավ և, գալով Աքքա քաղաքը, մեռավ Նուրեդդինի մահվանից մեկ ամիս հետո։ Սարսափը տիրեց բոլոր քրիստոնյաներին երիտասարդ թագավորի ողբալի մահվան պատճառով։ Նրան հաջորդեց իր տասնհինգամյա պատանի որդին, որը հաշտություն կնքեց մահմեդականների հետ։*

*Այդ ժամանակ դեռևս կանգուն էին Ուռհայի Այա-Սոֆիա կոչվող մեծ եկեղեցու ողջ հարավային մասը, խորանը և արևմտակողմը։ Սակայն դրանք սկսեցին քանդել և այդ հոյակապ կառույցը իջեցրին մինչև հիմքերը։ Քարերն օգտագործեցին բերդապարսպի շինության համար՝ նրանց մեծ մասը խառնելի մահմեդական մզկիթը տեղափոխելուց հետո։ Ամբողջովին կանգուն և անխաթար էր նաև Առաքելոց մեծ եկեղեցին։ Սակայն երբ նրա հյու-*
171 *սիսային կողմը փլվեց, դա էլ սկսեցին քանդել // և քարերը բերդ տեղափոխել։ Սկսեցին քանդել նաև Սուրբ Ստեփանոսի տաճարը, որը նույնպես ամբողջովին կանգուն էր։ Այն հիմնահատակ արին և քարերը տարան՝ բերդը շինելու համար։ Հիմնովին ավերեցին նաև մահմեդականների մզկիթի մոտակայքում գտնվող Քառասուն վկաների տաճարը։*

### 453. Մոսուլի տիրակալի դեպի արևմուտք ձեռնարկած արշավանքը և Ուռհայի պաշարումը նրա կողմից

*Մոսուլի տիրակալը՝ Սեյֆեդդին Ղազին, որը Նուրեդդինի եղբորորդին էր, լսելով իր հորեղբոր մահը, դուրս ելավ Մոսուլից և*

եկավ պաշարեց Մծբինը։ Մի քանի օրից նա գրավեց այն և վերականգնեց հորեղբոր վերացրած հարկերն ու տուրքերը։ Նա թույլ տվեց բացահայտորեն գինի խմել և վերցրեց ջարդեց մզկիթի դռան վերևում գրված քարե տախտակը, որի վրա Նուրեդդինի կողմից նզովքներով ու լուտանքներով գրված էր, որ անվերապահորեն կատարվեն իր հրամանները։ Նա լուր ուղարկեց և իր մոտ կանչեց բոլոր հարևան կուսակալներին։ Դրանց թվում էին Մարդինի և Հիսն-Քեֆայի տերերը, որոնք դաշինք կնքեցին նրա հետ։ Բազում զորք հավաքելով՝ նա եկավ պաշարեց Խառանը և մի քանի օրից գրավեց այն։ Ապա այնտեղից անցավ պաշարեց Ուռհան։ Եվ եթե ուռհայեցիներն իրենց կյանքը փրկելու համար շտապ չընդունեին հաշտության առաջարկը ու չհանձնեին [քաղաքը], իսպառ կորսյան կմատնվեին։ Այնուհետև նա գնաց գրավեց Սրուճն ու Եփրատի շրջակայքի բոլոր երկրները և ուղղվեց դեպի Հալեպ ու Դամասկոս։ Տեղի մարդիկ սասանվեցին նրա առջև և, աղերսող պատգամավորներ ուղարկելով, հաշտություն կնքեցին նրա հետ։ Նա վերադարձավ Մոսուլ՝ իր մայրաքաղաքը։

## 454. Սալահեդդին Յուսուֆ իբն Այուբի թագավորության սկիզբը, որը կոչվեց նաև Մելիք ան-Նասիր

Այդ տարի՝ 1486 (1175) թվականին Սալահեդդինը, որ թագավորել էր Եգիպտոսում, ուղարկելով իր Շամսուլիսլամ[390] եղբորը, իր հերթին գրավեց
172 || Եմենն ու Յատրիբը[391], այդպիսով տիրելով մինչև Նուբիայի[392] և Հաբեշստանի սահմաններն ընկած հարավարևելյան բոլոր երկրներին։ Նա ուներ վեց եղբայր[393], որոնք էին՝ Մելիք ալ-Ադիլ Սեյֆեդդին Աբուբաքրը[394], Սեյֆուլիսլամը[395], Շահանշահը[396], Ֆարուխշահը[397], Շամսուլիսլամը և Թաջուլմուլուքը[398]։ Այս բոլորին նա երկրներ պարգևեց, ապա պատրաստվեց ուժեղ զորաբանակով արշավել դեպի Ասորիք, որ ցույց կտանք Տիրոջ օգնականությամբ։

Արաբական տիրապետությունն սկիզբ առավ 933 (622) թվականին[399], հունաց Հերակլիոս[400] և պարսից Խոսրով[401] արքաների ժամանակ, որով և ավարտվեց պարսից թագավորությունը։ Արաբների տիրապետությունից չորս հարյուր քսաներեք տարի հետո, ինչպես վերը նշեցինք, աշխարհի ծայրագույն սահմանից հայտնըվեցին թուրքական ցեղերը և, խառնվելով արաբների հետ, հետևեցին նրանց հավատին։ Մուհամմեդի դավանանքը, այդպիսով, որդեգրեցին ոչ միայն արաբները, այլ նաև թուրքերը, քրդերը և

պարսիկները։ Եվ քանի որ թուրքական գաղթերի ժամանակ արաբ-
ների թագավորությունը թուլացած էր, վերջիններս թուրքերի օգ-
նության կարիքն ունեցան քրիստոնյաների դեմ։ Թուրքերի շնոր-
հիվ մահմեդականների տիրապետությունն ամրապնդվեց։ Թուր-
քերն աստիճանաբար հողեր ձեռք բերին և տիրեցին դրանց։ Սկզ-
բում նրանք քաղաքներ ու երկրներ էին խլում Հոռոմոց թագավո-
րությունից, սակայն հետո սկսեցին զավթել նաև մահմեդականնե-
րից։

Այսպիսով, հարյուր երեսուն տարի անց, այսինքն մեզ մոտիկ
ժամանակներում, արաբական թագավորությունն արդեն լիովին
դադարել էր ողջ աշխարհում, և թուրքերն էին տիրում ծայրագույն
արևելքից մինչև Պոնտոսի ծովը։ Արաբների ցեղից թագավոր կամ
սուլթան չէր մնացել, բացի Բաղդադում նստողից, որին սակայն
173 ոչ թե թագավոր, // այլ խալիֆ, այսինքն՝ իրենց մարգարեի
փոխանորդ էին կոչում։ Եգիպտոսում նստողը, որն իրենց մար-
գարեի քրոջ սերունդներից էր, նույնպես եգիպտացիների կողմից
խալիֆ էր կոչվում, սակայն, ինչպես տեսանք վերևում, նա այլևս
գոյություն չուներ։ Սալահեդդինը, Եգիպտոսում իշխանության
գլուխ անցնելով, որոշել էր վերացնել սրան, որի անունն էր Ադու-
դեդդին Ալլահ։ Խալիֆն, ինչպես ասացինք, զգալով այդ բանը,
լիզեց իր մատանու ակը, որը մահացու զորություն ուներ, և հրա-
ժեշտ տվեց կյանքին։ Բաղդադում և Եգիպտոսում նստող [խա-
լիֆների] դավանանքների միջև ինչ-որ տարբերություն կար[402]։
Թուրքերը հետևում էին Բաղդադինին։ Այդ պատճառով նրանք վե-
րացրին Եգիպտոսի գահը, որպեսզի բոլոր մահմեդական ժողո-
վուրդներն ունենան մի խալիֆ։

## 455. Սասունի երկրում գտնվող բերդերի մասին, որոնք գրավվեցին թուրքերի կողմից[403]

Այդ տարի թուրքերը տիրեցին նաև Սասնո լեռանը, որը գտնը-
վում է Նփրկերտից վեր։ Նրանք այնտեղից դուրս քշեցին հայե-
րին, որոնք վաղնջական ժամանակներից պահպանում էին իրենց
ինքնուրույնությունն այդ լեռներում։ Ասում են, որ Սենեքերիմի[404]
որդի Ասարհադոնի[405] օրերից մինչև նշված ժամանակները հայերն
ինքնագլուխ էին այդ լեռներում, որոնք կոչվում են Սասուն և մտը-
նում են Կորդվաց[406] երկրի մեջ։ Նրանք չէին ենթարկվում ոչ մի
թուրքական իշխանության, որոնք բոլոր կողմերից շրջապատել էին
իրենց։

*Այդ ժամանակ հայերը հինգ տարուց ի վեր բախման մեջ էին Նփրկերտի և Մարդինի Թուրքերի հետ։ Երբ նրանց Թշնամությունը խորացավ, Մարդինի ամիրան սկսեց անընդհատ մարդիկ ուղարկել՝ նրանց երկիրը կողոպտելու համար։ Հայերը մերթ պարտվում, մերթ էլ հաղթում էին։ Այսպես հինգ տարի հայերը ենթարկվեցին*
174 *Թուրքերի ճնշմանը // և ի վերջո ընկճվեցին։ Նեղվելով նաև սովից՝ նրանք իրենց բերդերը հանձնեցին Հայաստանի մեծ տիրակալին՝ Խլաթի տիրոջը, որ Շահարմենն*[407] *էր։*

*Այդ ժամանակ հայերն ունեին մի իշխան, որն այդ լեռան և բերդերի տերն էր և կոչվում էր Վիգեն*[408]*։ Նրան իր երկրում մի քանի գյուղ Թողին ապրուստի համար։ Հետո այդ Վիգենը հագարացավ, այսինքն՝ մահմեդական դարձավ, որևէ բերդ ստանալու նպատակով. բայց դա նրան չօգնեց։*

## 456. Հայոց երկրի Անի քաղաքի մասին

*Այդ տարի իբերների Թագավորը*[409] *գրավեց Հայոց երկրի մեծ քաղաքը, որ կոչվում էր Անի։ Նրա բնակիչներին նա փրկեց մահմեդականների դաժան լծից, որովհետև այն ամբողջությամբ բնակեցված էր քրիստոնյա հայերով։*

## 457. Ամինեդդին ներքինու սպանությունը Մարդինում

*1486 (1175) Թվականին կար մի ներքինի, որը կոչվում էր Ամինեդդին և ազգությամբ հայ էր։ Ստրկության քշելով՝ նրան ներքինի էին դարձրել և սնուցել Ամիդ քաղաքի մեծամեծների տներում։ Նա յուրացրել էր ամիրաների վարվելակերպն ու կառավարման ձևերը և շատերից առաջ անցել։ Այնուհետև տեղափոխվելով Մարդին՝ պաշտոնի էր անցել Մարդինի ամիրայի՝ Նաջմեդդինի*[410] *տանը և ամենայն կարողությամբ կառավարում էր նրա տիրույթները։ Նա դաժան և անգութ էր մարդասպանների ու գողերի նկատմամբ և, որքան հնարավոր էր, անաչառ կերպով էր վարում դատական գործերը։ Նրա օրոք այդ կողմերում կայուն խաղաղություն էր տիրում։ Նրա անունը մեծարվեց ու հռչակվեց ողջ աշխարհում։ Իր բնավորությամբ նա իսկապես արժանի էր կառավարելու։ Երբ Նաջմեդդին ամիրան հիվանդացավ, զառամեց ու անկարող դարձավ, ներքինին իր ձեռքը վերցրեց պետության ղեկավարումը։*

Սակայն Նաջմեդդինն ուներ մի երիտասարդ և փառահեղ որդի,
175 || որի անունն էր Կուտբեդդին[411]։ Դա մի քաջասիրտ մարդ էր, բայց զրկված իշխանությունից ու ազդեցությունից։ Ոմանք շարժեցին նրա նախանձը, և թեև շատ համառեց, նախանձը տեղ գըտավ նրա սրտում։ Մի անգամ, դեկտեմբերի 15-ի կիրակի օրը, Ամինեդդինը եկավ Մարդինի բերդը՝ ողջունելու Կուտբեդդինին։ Նրա հետ զինվորներ չկային, բացի մի ծառայից, որն իրենց սովորության համաձայն կրում էր նրա սուրը։ Ամիրայի մի փոքրիկ ակնարկով զինվորներից մեկը հարվածեց ներքինուն և ամիրայի աչքերի առջև կտրեց նրա գլուխը։ Երբ դա պատահեց, Ամինեդդինի զինակիրը քաշեց սուրը և վրա եկավ, որպեսզի խփի Կուտբեդդինին։ Սակայն զինվորներից մեկը գլխատեց նաև սրան, և այսպիսով երկուսն էլ սպանվեցին։ Կուտբեդդինը, վերցնելով գլուխը, գնաց իր հոր մոտ։ Իսկ դիակը բերդի գլխից քաղաք շպրտեցին։ Եվ այն մարդուն, որը քիչ առաջ դողացնում էր աշխարհը, այժմ քարշ էին տալիս փողոցի կեղտաջրերի մեջ։ Բոլորն ահուդողի մեջ ընկան։ Մի փոքր ևս, և քաղաքում կարող էր կոտորած ու կողոպուտ սկսվել, եթե գուժկանները չշտապեին խաղաղության կոչ անել բոլորին։ Ձերբակալվեցին միայն սպանվածի զինվորներն ու հարազատները։ Նրա ողջ ունեցվածքը՝ անհամար ոսկին, հարստությունը, ծառաներն ու ձիերը մուծվեցին Կուտբեդդին ամիրայի գանձարան։ Վերջինս առանց կռվի գրավեց նաև ներքինուն ենթակա բերդերը։ Կուտբեդդինը տեր ու տիրակալ հայտարարվեց իր հոր հետ միասին։

### 458. Մելիտենեի առումը և նրա տիրոջ սպանությունը նույն տարվա փետրվար ամսի լիալուսնի օրերին

Մելիտենեի ամիրան[412] թողել ու դառնացած հեռացել էր
Նրան հաջորդել էր իր եղբայրը[413], որը, սակայն, որոշ ժամանակ անց, ընկնելով ձիուց, մեռել էր։ Սրանից հետո թագավորել էր
176 մյուս [եղբայրը][414] և ամուսնացել || մեռնողի կնոջ հետ, որը Հիսն-Զիադի տիրոջ դուստրն էր։ Հիշյալ ամիրան, որի անունն էր Մուհամմեդ, սկսել էր ցոփությամբ շրջագայել տարբեր երկրներում։ Սակայն նա բռնվեց Նուրեդդինի կողմից և որոշ ժամանակ բանտարկվեց։ Այնտեղից նա փախավ Անտիոք, իսկ հետո եկավ Հիսն-Զիադ։ Այդ միևնույն տարվա մեջ, համաձայնության գալով որոշ մարդկանց և իր եղբոր կնոջ հետ, նա գաղտնի եկավ

*Մելիտենե՝ առանց ճանաչվելու որևէ մեկի կողմից, բացի իր հետ եղած երկու մարդուց։ Փետրվար ամսի լիալուսնի կիրակի օրվա գիշերը, վտանգելով իր կյանքը, նա մագլցեց այն սրահի պատով, որտեղ քնած էր իր եղբայրը, և գաղտագողի ու հապշտապ սպանեց նրան։ Ապա վերցնելով նրա գլուխը և բերդի բանալիները, նույն գիշերը եկավ այն մեծամեծների մոտ, որոնք, ինչպես նա համոզված էր, իր կողմնակիցներն էին։ Ցույց տալով իր եղբոր կտրված գլուխը, նա ահաբեկեց ու սարսռացրեց նրանց, և վերջիններս համաձայնեցին երդում տալ նրան։ Դա տեղի ունեցավ ժամը տասի և տասներկուսի միջև։ Իսկ լուսաբացին նա բարձրացավ բերդը, և լուր տարածվեց, որ իշխանության գլուխ է անցել մի նոր ամիրա, որ ժամանակով առաջինն էր[415]։ Եվ քանի որ պարիսպն ու դարպասները հսկողության տակ առնվեցին, նա առանց կռվի տիրեց [քաղաքին]։ Ապա ամուսնացավ եղբոր կնոջ հետ, որը, ինչպես նրանց պիղծ սովորությունն էր, իրենից առաջ պատկանել էր իր երկու եղբայրներին։*

## 459. Կիլիկիայի իշխան Մլեհի[416] սպանության մասին, որ տեղի ունեցավ նույն տարում

*Կիլիկիայի իշխանը, որի անունն էր Մլեհ, բռնությամբ ու դաժանությամբ էր կառավարում։ Նա իր ամբարշտությամբ գերազանցեց ոչ միայն քրիստոնյա անօրեն իշխաններին, այլ նույնիսկ մահմեդական և հեթանոս բնակալներին։ Սակայն զինվորներն ու ժողովուրդը չհանդուրժեցին նրա անիրավությունները, և զորքերն ապստամբեցին նրա դեմ։ Իմանալով այդ՝ նա փախավ և փորձեց մտնել իր երկրում գտնվող մի անառիկ բերդ։ Սակայն*
177 *երբ հասավ [......][417] կոչվող բերդի դարպասին, // բերդում եղող զինվորները դուրս գալով բռնեցին և չարաչար սպանությամբ պատառոտեցին նրան, իսկ հետո մարմնի մասերը նետեցին շներին։ Դա մի սահմռկեցուցիչ և դաժան արարք էր։ Այնուհետև Տարսոնից կանչել տվեցին Մլեհի պատանի եղբորորդուն, որի անունը Ռուբեն[418] էր և որն այնտեղ էր փախել իր հորեղբոր չարագործությունների պատճառով։ Մլեհի կինը հայոց Գրիգոր[419] կաթողիկոսի քույրն էր։ Երբ Մլեհն սպանվեց, և իշխանության գլուխ անցավ Ռուբենը, կաթողիկոսը գնաց այնտեղ և, վերցնելով քրոջը, բերեց Հռոմկլա։ Ռուբենը վերջինիս երեք բերդ տվեց Կիլիկիո երկրում. մեկը կոչվում էր Քեֆա դ-Սարնուդ, մյուսը՝ Սիման, իսկ երրորդը՝ Բանբին[420]։*

## 460. Բաղդադի խալիֆի[421] դեմ ծագած ապստամբության մասին

Այդ տարի Բաղդադում նույնպես ապստամբություն ծագեց, երբ խալիֆը իր սիրելի ծառաներից մեկին, վեր դասելով բոլոր հարազատներից ու մեծամեծներից, կառավարիչ նշանակեց իր տիրույթների ու տան վրա։ Վերջինիս անունն էր Կուտբեդդին։ Նա այնքան առաջ գնաց, որ ամբողջությամբ իր ձեռքը վերցրեց զորքերի ու քաղաքների կառավարումը։ Այնուհետև նա որոշեց ապստամբել և, ի կատարումն այդ մտադրության, գլուխ բարձրացրեց իր տիրոջ դեմ։ Զորահավաք կատարելով՝ նա շրջապատեց խալիֆի ապարանքը և կատաղի գրոհներով ու նետարձակումներով նեղ դրության մեջ դրեց նրան։ Երբ խալիֆը հուսահատված պատրաստվում էր արդեն տեղի տալ, բարձրացավ վերին հարկահարթակը և սկսեց լացուկոծ անել։ Ողջ քաղաքի բնակչությունը, տեսնելով նրա անձի անպատվությունն ու լսելով նրա ողբի ձայնը, գրգռվեց, և քաղաքի բյուրհազարավոր մարդիկ հավաքվելով պատրաստվեցին ճակատամարտ տալ այդ ծառային։ Վեր-
178 ջինս պարտվեց // ժողովրդի բազմությունից և փախուստի դիմեց դեպի Մոսուլ՝ հետն ունենալով երեսուն հազար հեծյալ ու հետևակ զինվորներ։ Երբ նա հասավ Մոսուլի մոտակայքը, վերջինիս տիրակալը վախեցավ նրանից և նվերներով ու հաշտության առաջարկով պատգամավորներ ուղարկեց նրան դիմավորելու համար։ Սակայն մինչ նրանք գտնվում էին այդ ամայի և անմարդաբնակ ճանապարհին, հանկարծ մի կիզիչ քամի փչեց, և թանձրամած ու հեղձուցիչ խավար տիրեց, որ կաշկանդում էր նրանց շնչառությունը։ Բոլորը շնչահեղձ եղան, և նրանց դիակները փռվեցին այրված փայտածուխի նման։ Փրկվեցին միայն Կուտբեդդինը և մոտ հարյուր հոգի՝ մեծամեծներից ու երևելիներից։ Սակայն երբ որոշ ժամանակ անց հասան Մոսուլ, Կուտբեդդինը մեռավ այնտեղ։

## 461. Սալահեդդին մեծ տիրակալի արշավանքը դեպի Ասորիք և նրա տիրապետության սահմանների ընդարձակումն այդ կողմերում

Այդ տարի, որ 1486 (1175) թվականն էր, Սալահեդդինը մեծ զորքով և հսկայական հարստությամբ ելավ Եգիպտոսից ու եկավ Դամասկոս՝ ցույց տալով, թե իբր ուզում է օգնել Նուրեդդինի որդուն և ամրապնդել նրա թագավորությունը։ Սակայն նա կեղ-

*ծում էր և իրականում իր ձեռքն էր վերցնում բոլոր գործերը։ Եգիպտոսում նա թողեց իր Սեյֆեդդին Աբուբաքր[422] անունով եղբորը։ Երբ հասավ Դամասկոս, այն հանձնեցին իր ձեռքը։ Այնտեղից նա մեկնեց դեպի Հըմս և գրավեց ինչպես այդ, այնպես նաև Համա [քաղաքն] ու ողջ Փյունիկիան՝ մինչև Հալեպի մոտակայքը։ Մելիք Սալիհը՝ Նուրեդդինի որդին, գտնվում էր Հալեպում։ Սալահեդդինը եկավ և հինգ ամսով բանակ դրեց Հալեպի մոտակայքում։ Նա դեսպաններ էր ուղարկում և խոստանում ենթարկվել Նուրեդդինի պատանի որդու հրամանին, ծառայել միայն որպես զորահրամանատար, իսկ թագավորությունը, հռչակն ու ազ-*
179 *դեցությունը թողնել նրան։ Սակայն քանի որ գիտեին // նրա խորամանկությունը, թույլ չտվին, որ նա մտնի Հալեպ, և պատանին ընկնի նրա ձեռքը։ Այնժամ Սալահեդդինն սկսեց բացահայտ պատերազմ մղել Նուրեդդինի որդու դեմ, գրավելով Լիբանանի լեռնալանջերի ու Հալեպի շրջակայքի ողջ տարածությունները։*

*Այդ տարի, ապրիլի 11-ի կիրակի օրվա առավոտյան արևի խավարում տեղի ունեցավ։ Նրա գունդն ամբողջությամբ մթնեց, և աստղերը երևացին ինչպես խոր գիշերվա մեջ։ Դա 1486 (1175) թվականն էր[422a]։*

## 462. Եփրատից արևելք տիրող ամիրաների պատերազմը Սալահեդդինի դեմ և Մոսուլի տիրակալ Սեյֆեդդինի պարտությունը

*1486 (1175) թվականին վերոհիշյալ Սեյֆեդդինը՝ Մոսուլի և Միջագետքի տիրակալը, որը Նուրեդդինի եղբորորդին էր, հավաքելով իր և հարևան ամիրաների զորքերը, պատրաստվեց գնալ պատերազմել Սալահեդդինի դեմ և օգնության հասնել իր հորեղբորորդուն՝ Հալեպի տիրոջը։ Բազմաքանակ զորքերը, որոնց մեջ Սեյֆեդդինը չկար, եկան և հասան մինչև Հալեպի մոտակա հարթությունը։ Այստեղ էլ տեղի ունեցավ արևելցի և եգիպտացի զորքերի ճակատամարտը։ Տերը հաղթանակ տվեց եգիպտացիներին։ Ջախջախիչ պարտություն կրելով՝ արևելցիները փախուստի դիմեցին, և նրանց ճամբարը ավարի մատնվեց։ Փրկվեցին միայն նրանք, ովքեր իրենց տակ ուժեղ ձիեր ունեին։ Այս հաղթանակը տանելուց ու հաղթողի պսակին արժանանալուց հետո Սալահեդդինի հռչակը տարածվեց, և բոլոր թագավորներն ահուդողի մեջ ընկան։ Ապա նա վերադարձավ Դամասկոս և հաշտություն կնքեց ֆրանկների հետ։*

## 463. Սեյֆեդդինի ճակատամարտը Սալահեդդինի հետ և նրա ծանր պարտությունը

*Հաջորդ տարի՝ 1487 (1176) թվականին, Սեյֆեդդինը նորից*
*պատրաստվեց և, անհամար զորք հավաքելով, հսկայական զո-*
*րաբանակներով եկավ հասավ մինչև Ուռհա։ Նա դեսպաններ ու-*
180 *ղարկեց Սալահեդդինի մոտ՝ ասելով. // «Վերադարձրու այն եր-*
*կրները, որ զավթել ես Հալեպում նստող իմ պատանի հորեղ-*
*բորորդուց։ Ապա թե ոչ՝ պատրաստվիր մարտի»։ Իսկ Սալահեդ-*
*դինը խորամանկաբար պատասխանեց. «Ես Նուրեդդինի որդու*
*ստրուկն եմ և նրա համար էլ դուրս եմ եկել Եգիպտոսից, որպես-*
*զի ամրապնդեմ նրա թագավորությունը։ Ես պատրաստվում եմ*
*նրան տալ ոչ միայն իմ ձեռքում եղած երկրները, այլ նաև նրանք,*
*որոնք թեև այժմ գտնվում են քո ձեռքում, բայց պատկանել են*
*նրա հորը»։ Երբ նրանց հակասությունը սրվեց, Սեյֆեդդինը*
*ուղղվեց դեպի Հալեպ։ Կողմերը պատրաստվեցին բախվել այն-*
*տեղ, որտեղ տեղի էր ունեցել առաջին ճակատամարտը։ Սեյ-*
*ֆեդդինն ուներ ավելի քան հարյուր հազար զինվոր։ Իսկ Սալահ-*
*եդդինի զորքերի թիվը հազիվ հասնում էր տասներկու հազարի։*
*Երբ մարտակարգերը դասավորվեցին, և կողմերը, խփելով թմբուկ-*
*ները, հարձակվեցին իրար վրա, արևելցիները իրենց մեջ եղած*
*դավաճանության պատճառով թիկունք դարձրին։ Նրանք ընկրկե-*
*ցին թշնամու առաջ և, ջախջախիչ պարտություն կրելով, փախուս-*
*տի դիմեցին։ Փրկվողները հետիոտն էին և զրկված ամեն ինչից։*
*Ինչ վերաբերում է Սեյֆեդդինին, ապա նրա տակի ձին հազիվ*
*դիմանալով մինչև Եփրատ, ընկավ ու սատկեց։ Նա մնաց հետիո-*
*տրն։ Սակայն այն գյուղում, որտեղ հայտնվեց, նրան մի դրաստ*
*տվին, և նա ճողոպրեց Մոսուլ՝ ճանապարհին վախից չհայտնելով*
*իր ով լինելը։ Այս եղավ նրա արշավանքի դառն վախճանը։ Իսկ*
*եգիպտացիները ոսկու, արծաթի, ձիերի, անասունների, վրաննե-*
*րի, զանազան զարդերի ու զենքուզրահի տեր դարձան։*

## 464. Մաբբուգի պաշարման մասին

*Հալեպում Նուրեդդինի պատանի որդու մոտ էին գտնվում*
*Սեյֆեդդինի եղբայրը*[423]*, Գյումուշտեգին*[424] *անունով ներքինի կա-*
*ռավարիչը, ինչպես նաև Նուրեդդինի մյուս մեծամեծները։ Սալահ-*
181 *եդդինը միաժամանակ թողեց Հալեպը և եկավ պաշարեց // Մաբ-*
*բուգ քաղաքը։ Մաբբուգին տիրում էր Կուտբեդդին իբն Հասան ա-*
*նունով մի մարդ, որն առաջ, երբ Ուռհան ընկավ մահմեդականնե-*

րի ձեռքը, իշխում էր այնտեղ, մինչև որ եկավ Նուրեդդինը և, իշխանությունը նրանից վերցնելով, տվեց Մասուդ Ֆախրեդդին Ջաֆարանի անունով մի մարդու՝ Համայի, Հոմսի և Բարինի[425] տիրոջը։ Իսկ Կուտբեդդինն ստացավ Մաբբուգը, որը նախկինում պատկանում էր իր հորը։ Կուտբեդդինն Ուռհայում շատ ոսկի էր ձեռք բերել և հարուստ էր ոչ միայն ունեցվածքով, այլ նաև գիտելիքներով։ Սակայն ո՛չ ոսկին, ո՛չ էլ խելքը չօգնեցին, որովհետև ժողովուրդն ամենուրեք դավաճանեց նրան։ Մի քանի օրից Սալահեդդինը գրավեց Մաբբուգը և, բռնելով ամիրային, բանտ նետեց։ Ապա յուրացրեց ողջ այն հարստությունն ու ոսկին, որ նա հավաքել էր երկար տարիների ընթացքում։

## 465. Ազազի պաշարումը և այդ կողմերի բնակավայրերի ու բերդերի առումը

Առանց կռվի գրավելով Թլպաշարը, Այնթապն ու նրանց պատկանող տարածությունները՝ Սալահեդդինը եկավ պաշարեց Աղազ ամրոցը և ուժեղ գրոհ ձեռնարկեց նրա դեմ։ Նրա զինվորների հարվածներից շատերն սպանվեցին այնտեղ։ Ի վերջո նա գրավեց այն ու քարուքանդ արեց։ Ապա մեկնելով այնտեղից, եկավ պաշարեց Հալեպ քաղաքը և կատաղի հարձակումներ գործեց նրա վրա։ Հալեպցիները օգնություն խնդրեցին ֆրանկներից։ Ֆրանկները մտան Եգիպտոսի սահմանները և սկսեցին կողոպտել ու ավերածություններ գործել։ Ֆրանկներից ոմանք էլ պատրաստվեցին հարձակվել նրա ճամբարի վրա։ Ընկնելով նեղ դրության մեջ՝ նա հեռացավ Հալեպից և եկավ Դամասկոս։

Այդ տարի, դեկտեմբեր ամսի շաբաթ օրերից մեկում հորդառատ և ուժգին անձրև տեղաց։ Սակայն կեսօրից հետո անձրևը տեղի տվեց ուժեղ քամու պատճառով, որը ողջ Միջագետքում, Ասորիքում և Պաղեստինում կարմիր փոշի լցրեց կտուրների, տնե-
182 րի ու դաշտերի վրա։ Տեղեր կային, //որտեղ մարդու հասակից ավելի փոշի էր կուտակվել, իսկ որոշ տեղեր էլ՝ մոտ երկու թիզ։

Այդ տարի մեռավ Նաջմեդդինը՝ Մարգինի տերը, որը մի բարեհամբույր և հաճելի մարդ էր։ Նա լավ էր տրամադրված քրիստոնյաների, եկեղեցիների ու վանքերի նկատմամբ և քրիստոնյաներից ավելի հոգ էր տանում իր երկրում եկեղեցիներ շինելու գործին։ Նա շարունակ շրջում էր վանքերը և սիրում էր իջևանել այնտեղ ու կերուխում անել։

## 466. Իկոնիայի սուլթանի, Պոնտոսի երկրի, ինչպես նաև քրիստոնյաներին օգնելու նպատակով հունաց կայսեր ձեռնարկած արշավանքի և նրա անփառունակ ու ձեռնունայն վերադարձի մասին

*1486 (1175) թվականին Հունաց կայսրը, որի անունն էր Մանուել, որսի ժամանակ վիրավորվեց ազդրից՝ վարազի դեմ [արձակված] մի նետով։ Լուր տարածվեց, թե նա մեռել է։ Այդ պատճառով Իկոնիայի սուլթան Քիլիչ Արսլանը[426] սրտապնդվեց ու շարժվեց դեպի Պոնտոսի ծովը։ Սակայն երբ Դանիշմենդի ցեղի շառավիղներն իմացան, որ Հոռոմոց կայսրն ապաքինվել է, օգնություն խնդրեցին նրանից և հորդորեցին պատերազմ սկսել թուրքերի դեմ։ Վերջինս մեկնեց մայրաքաղաքից և եկավ բանակ դրեց սահմանամերձ երկրներում։ Նա սկսեց կռիվ մղել սուլթանի դեմ, և պատերազմը նրանց միջև թեժացավ։ Հույն զինվորներից շատերը զոհվեցին։ Թուրքերը հույներին անասունների նախիրների նման խումբ-խումբ դերի էին քշում իրենց երկրից։ Կապադովկիան, Հայաստանը, Ասորիքը և Միջագետքը լցվեցին տղաներով ու աղջիկներով, որոնք դարձան թուրքերի ստրուկներն ու աղախինները։ Վաճառականները նրանց տարան նույնիսկ մինչև աշխարհի ծայրը։ Դա մի ցավալի և ողբի արժանի տեսարան էր։*

## 467. Նեոկեսարիա քաղաքի պաշարումը հունաց կայսեր կողմից

183 *Այդ ժամանակ Հունաց կայսրն // իր քրոջ որդուն և դանիշմենդյան Դանուն անունով ամիրային մոտ երեսունհազարանոց բանակով իր բանակավայրից ուղարկեց պաշարելու Նեոկեսարիա քաղաքը։ Իսկ ինքն զբաղված էր երբեք ավերված քաղաքների վերակառուցմամբ, որոնք քանդվել էին շատ ժամանակներ առաջ։ Պաշարելով Նեոկեսարիան, [հույները] տասներկու օր կատաղի հարձակումներ գործեցին նրա վրա, որն արդեն քիչ էր մնում ընկներ նրանց ձեռքը։ Սակայն թուրքերը, որոնք փակված էին ներսում, հնար գտան և քաղաքի քրիստոնյաների անունից հունարեն դրով մի նամակ գրեցին դրսում եղող հույներին, որտեղ ասված էր. «Այդ Դանուն թուրքը, որ ձեզ առաջնորդել է այստեղ, նենգորեն դավ է նյութում ներսի իր ցեղակից թուրքերի հետ՝ ձեզ ոչընչացնելու նպատակով»։ Նամակն արձակեցին նետով։ Երբ անմիտ հույները կարդացին այն, սկսեցին դողալ կանանց նման, և Տերը նրանց զրկեց հաղթանակից։ Նրանք ահուդողի մեջ ընկան և փախուստի դիմեցին։ Թուրքերը դուրս եկան քաղաքից և, հետապըն-*

դելով նրանց, ավելի քան հազար հոգու սրի մատնեցին և խլեցին նրանց ողջ ունեցվածքը։ Հունաց կայսեր քրոջ որդին սպանվեց, իսկ Դանունը բռնվեց և տանջանքներով ու չարչարանքներով շղթաների դատապարտվեց։

## 468. Կայսեր առաջխաղացումը, նրա զինվորների և ունեցվածքի կորուստը և նրա անփառունակ վերադարձը մայրաքաղաք

Մանուել կայսրը, լսելով պատահարի մասին, զայրացած վեր կացավ իր բանակած տեղից և հինգ օրաճանապարհ թափանցեց թուրքերի երկրի խորքը։ Սուլթանը փախավ նրա առջևից և բարձրացավ լեռը։ Սակայն թուրքմենները, որոնք ծովափի ավազի նման լցված էին այդ երկրում, տեսնելով, որ հունաց կայսրը մտել է իրենց բնակության վայրերը, իսկ սուլթանից որևէ օգնություն չի սպասվում, հավաքվեցին բոլոր կողմերից և շրջապա-
184 տեցին կայսեր բանակը, // ոմանք՝ լեռներից, ոմանք՝ դաշտերից, ոմանք էլ՝ աջից ու ձախից։ Ովքեր ընթանում էին առջևից, այրում էին գյուղերը, խոտը, հարդը, հացահատիկն ու մնացած ամեն ինչ, ինչպես նաև պղծում էին ջրերը։ Իսկ ովքեր գալիս էին ետևից, հսկում էին ճանապարհները, որպեսզի նրանցով պարեն չմատակարարվի։ Հինգ օր պարեն չստանալով՝ [հույները], քանի որ հսկայական բազմություն էին կազմում, թուլացան քաղցից ու ծարավից՝ իրենց ձիերի հետ միասին։ Տիրոջ բարությունը երես էր թեքել նրանցից։ Թեև նրանք երեք հարյուր հազար հոգի էին, սակայն նույնիսկ տաս մարդ դուրս չեկավ ճամբարից՝ որևէ բան հայթայթելու կամ իրենց մատակարարումն արգելակող թուրքերին վանելու համար։ Նրանք թուլամորթների նման կուտակվել էին ճամբարի ներսում, ինչպես ուլերը՝ փարախում։ Չիմանալով, թե ինչ պիտի անեն, և հալումաշ եղած, նրանք սկսեցին վազել Իկոնիա քաղաքի կողմը։

Երբ թուրքերն զգացին նրանց թուլությունը, համարձակություն ստացած՝ թիկունքից ծանր հարված հասցրին նրանց։ Խլեցին նրանց երինջները, երամակները, եզներն ու ձիերը, ինչպես նաև ետևից փոխադրվող անհամար բեռներն ու գույքերը։ Կայսերն ուղեկցում էր հիսուն բեռ ոսկե դինարի արժողությամբ մի հարստություն։ Թուրքերը հարձակվեցին ու զավթեցին այն։ Հույները ծարաված, քաղցած ու սպառված՝ առաջ էին շարժվում, բայց Իկոնիան դեռ հեռու էր։ Եվ մինչդեռ նրանք գտնվում էին այդ լեռներում, թուրքերը հարձակվեցին նրանց վրա և, շրջապատելով, սկսեցին գազանների պես գազազել նրանց վրա։ Ապա լուր

*ուղարկեցին սուլթանին, որն առջևում բազմաթիվ ջահեր սլարզած՝ գիշերով միացավ նրանց։*

*Երբ հույները լսեցին թմբուկների ու շեփորների ձայնը, ինչպես նաև ամբոխի ու զորքի աղաղակը, սարսափելի ահուդողի մեջ ընկան։ Նրանց ձեռքերն ու ոտքերը դողացին, և նրանք սկսե-*

185 *ցին աղաչել կայսրին. // «Կյուրիե էլեեսոն[427], քո մոտ եղած ոսկին նետիր թուրքերին, որ ձեռք քաշեն մեզնից»։ Սակայն կայսրը գիտակցելով, որ դա ոչնչով չի օգնի, հնար գտավ և սուլթանին ուղարկեց հետևյալ լուրը. «Հիշիր իմ և քո միջև եղած նախկին բարեկամությունը։ Ես իմ կամքով չէ, որ եկել եմ այս երկիրը, ինձ խաբելով այստեղ բերին քո ցեղակիցները։ Արդ, բարությամբ հաշտություն կնքիր, և ես քեզ կվերադարձնեմ իմ վերականգնած երեք քաղաքները, ինչպես նաև ուրիշ վայրեր»։ Սուլթանը համաձայնեց և, կայսեր մեծամեծների ու ազգականների միջից ընտրելով հիսուն պատանդ, նրան օգնության ուղարկեց մի զորագունդ։ Սակայն թուրքմենները չհանդուրժեցին դա և, աղաղակելով, հափշտակելով ու գռփելով, մինչև մայրաքաղաք հետևեցին նրանց։ Այս եղավ Մանուելի արշավանքի դժբախտ վախճանը։*

*Այդ տարի անձրևի պակասությունից սով առաջացավ։ Հաջորդ տարի սովը սաստկացավ ու ծավալվեց հատկապես Պաղեստինի, խորին Ասորիքի, Դամասկոսի, Փյունիկիայի և Հաուրանի[428] երկրներում։ Շատ վայրեր մարդաթափ եղան։ Այդ երկրներում ցորեն ու գարի բոլորովին չկար, և սնվում էին խոտով ու խոզականով։*

## 469. Մաադների, այսինքն՝ արաբների բազմամարդ ժողովրդի մասին, որը ժայթքելով դուրս ճորդաց անապատից

*[14]88 (1177) թվականի ապրիլին անապատից ժայթքելով դուրս հորդացին սև արաբների բազմամարդ ցեղեր, որոնք արաբերեն լեզվով կոչվում էին բեդուիններ։ Սովից նեղված՝ նրանք լքեցին իրենց բնակության վայրերը և հասան մինչև Եփրատի ափերը։ Սակայն նկատելով այդ, Կալլինիկոսի քաղաքագլուխը, որի անունն էր Կուտբեդդին և որը ժամանակին եղել էր Ուռհայի կառավարիչը, թույլ չտվեց նրանց անցնել։ Նա ասաց. «Ես չեմ կարող առանց Ասորեստանի տիրակալի հրամանի ձեզ թույլ տալ*

186 *մտնել // Միջագետք»։ Անցնելու թույլտվության դիմաց նրան առաջարկեցին հինգ հազար ոսկե դինար, ինչպես նաև ձիեր և ուղտեր։ Սակայն նա նրանց մասին տեղեկություն ուղարկեց Մոսուլ*

թույլ տալու կամ չտալու խնդրանքով։ Պատասխան եկավ՝ չթույլատրել, որպեսզի սովը ավելի չսաստկանա երկրում։

Կալլինիկոսի կառավարիչը նրանց վաճառեց իր մոտ կուտակված հացահատիկը։ Գնելով այն և մի փոքր հագեցնելով իրենց քաղցը, [արաբները] համարձակվեցին անցնել առանց թույլտվության՝ բռնի կերպով։ Նրանք թափով մտան գետը և գտան մի ծանծաղուտ, որտեղով կարողացավ անցնել տղամարդկանց, կանանց ու երեխաների ավելի քան հարյուրհազարանոց հետիոտն բազմությունը՝ ձիերի և ուղտերի հետ միասին։ Երբ թուրքերը նկատեցին այդ, նրանց դեմ զորքեր հավաքեցին Կալլինիկոսից, Խառանից, Ուռհայից ու Սրուճից և գիշերով հարձակվեցին նրանց ճամբարի վրա։ Վերջիններս պարտություն կրեցին և, թիկունք դարձնելով, փախուստի դիմեցին։ Նրանք ուղղվեցին դեպի Եփրատ՝ իրենց երկրում ապաստան գտնելու նպատակով։ Սակայն, երբ ուղտերը, ձիերը, մարդիկ ու հոտերը կուտակվեցին ծանծաղուտում, ինչպես ականատեսներն են պատմում, գետի մեջ մի ամուր պատնեշ ստեղծվեց, որը խոչընդոտում էր ջրերի ընթացքը։ Ջրերը ճնշման տակ հոսեցին դեպի գետի ափերը։ Սակայն հանկարծ ջրերի այդ հսկայական շեղջը քշեց տարավ մի ահագին բազմություն և անասուններ։ Խառնաշփոթի մեջ փրկվեցին միայն հատուկենտ մարդիկ։

## 470. Մելիտենեի պաշարումը սուլթան Քիլիչ Արսլանի կողմից

Այդ տարի, 1488 (1177) թվականին, Իկոնիայի սուլթանը, որ զավթել էր Սեբաստիայի շրջակա:յքն ու Դանիշմենդի ցեղի բոլոր տիրույթները և, ինչպես վերը տեսանք, հաղթանակ էր տարել հույների նկատմամբ ու ջախջախել Մանուել կայսրին, մեկնելով իր երկրից, եկավ պաշարեց Մելիտենե քաղաքը։ Նրա նպատակն էր ձեռք գցել Դանիշմենդի ցեղի շառավիղը հանդիսացող մի ա-
187 միրայի՝ հատկապես այն պատճառով, // որ այդ թշվառականը հանդգնել էր անգթաբար սպանել նրա եղբորը։ Ուստի նա նույնպես պետք է մատնվեր չարաչար պատժի։ Մելիտենեի բնակիչները, որոնք չէին սպառվել իրենց բաժին ընկած բազմաթիվ փորձանքներից, լսելով բռնակալի գալուստը, ցրվեցին Միջագետքի երկրներում, և խեղճերը, օրվա հացի կարոտ, կոտորվեցին այդ նեղ տարում։ Իսկ ովքեր մնացել էին ներսում, անասելիորեն տառապեցին սովահարությունից։

Շրջապատելով քաղաքը՝ զորքերը չորս ամիս և հինգ օր ուժեղ աքցանի մեջ պահեցին այն՝ սկսած այդ տարվա հունիսի 19-ից

մինչև 1489 (1178) թվականի հոկտեմբերի 25-ը[429]։ Ներսում եղող ամիրան ողորմածաբար էր վարվում քաղաքացիների հետ։ Սակայն երբ տագնապն ու վայնասունը փողոցներում սաստկացան, կառավարիչը խորհեց իր մտքում. մի փոքր ևս՝ և հացը կվերջանա, զինվորները կսպանեն իրեն ու կհանձնեն քաղաքը։ Այդ պատճառով նա ծածուկ կերպով, զինվորներից աննկատ լուր ուղարկեց և իր կյանքի ապահովության երաշխիք խնդրեց։ Նրան տվին Քեսունն իր շրջակայքով, ինչպես նաև հազար դինար։ Նա ահուդողով դուրս եկավ և գնաց Հիսն-Զիադ։ Իսկ սուլթանը չորեքշաբթի օրը մտավ քաղաք, և այնտեղ լիակատար խաղաղություն հաստատվեց։

Այդ ժամանակ սուլթանը վերացրեց երանելի Մար-Բարսումայի մեծ վանքին պարտադրված ոսկու տուրքը։ Երբ նա մտավ Մելիտենե, Միքայել[430] պատրիարքը եկավ նրա մոտ և պատվավոր ընդունելության ու սիրալիրության արժանացավ նրա կողմից։ Նրա պատվին էլ հենց վերացվեցին վանքի վրա դրված հարկերը[431]։

## 471. Ինչպես սուլթանի եղբայրն ընկավ ֆրանկների ձեռքը

188 Այդ տարի՝ 1489 (1178) թվականին, գերվեց Շահանշահը, // որը սուլթան Մասուդի[432] որդին և Քիլիջ Արսլանի եղբայրն էր։ Մինչ նա ծովում նավագնացություն էր կատարում, քամին նրան քշեց Լաոդիկեի նավահանգիստը, որտեղ գտնվում էր Պրինցը՝ Անտիոքի տերը[433]։ Վերջինս ձերբակալեց ու շղթայեց նրան, որի մոտ բազում ոսկի, թանկարժեք անոթներ ու ձիեր կային, քանի որ վերադառնում էր մայրաքաղաքից՝ հունաց կայսեր մոտից։ Նա գնացել օգնություն էր խնդրել նրանից և, քրիստոնեություն ընդունելով, մեծ հարստություն ստացել։ Սակայն նա ուզեց խաբել կայսրին և նավ նստեց, որպեսզի գնա Սալահեդդինի մոտ՝ Եգիպտոս։ Բայց աստված նրան մատնեց ֆրանկների ձեռքը։ Միաժամանակ ձերբակալվեցին նաև նրա երեք որդիները և քառասուն երևելի անձնավորություններ՝ իրենց ծառաներով։

## 472. Սալահեդդինի պարտությունը ֆրանկներից Ասկալոնի երկրի Ռամլա[434] կոչվող վայրում

1489 (1178) թվականին Եգիպտոսի տիրակալ Սալահեդդինը բազում զորքերով վճռական և հոխորտալից արշավանքի ելավ, ունենալով երեսուներեք[435] հազար զինված հեծյալներ և ավելի քան տասներկու հազար հետևակ զինվորներ՝ զենք ու պարեն

բարձած ուղտերի հետ միասին։ Հասնելով Ասկալոնի մոտակայքը, նա համարձակվեց անցնել ֆրանկների սահմանը, որովհետև արհամարհում էր ֆրանկների Բաղդուին[436] թագավորին՝ հանգուցյալ Ամորիի որդուն, որը տառապում էր բորոտությամբ։ Բոլորը ձեռք էին քաշել այս հիվանդ և գրեթե կիսամեռ թագավորի կյանքից։ Սակայն վերջինս ուժ գտավ իր մեջ և ելավ դիմակայելու Սալահեդդինին։ Նրա հետ էին Ֆրեր[437] կոչվող եղբայրները և Ռենալդ պրինցը[438], որն ազատվել էր տասնհինգամյա բանտարկությունից Նրանք սկսեցին մարտնչել ու պատերազմել թուրքական ցեղերի դեմ։ Երկու օր կոտորելուց ու կոտորվելուց հետո Տերը ցույց տվեց
189 իր ողորմածությունը։ Ֆրանկները ուժ առան // և ջախջախիչ պարտության մատնեցին թուրքերին։ Տերը զայրացավ վերջիններիս վրա և, նրանք թիկունք դարձնելով, փախուստի դիմեցին։ Ֆրանկները մի ամբողջ օր կոտորելով հետապնդեցին նրանց։ Ովքեր չկարողացան ճողոպրել, հինգ օր տոչորվեցին անապատում՝ տառապելով քաղցից ու ծարավից։ Նրանցից շատերը կորստյան մատնվեցին, իսկ Սալահեդդինը հազիվհազ փրկություն գտավ Եգիպտոսում։ Հաղթանակը նշանակալից էր, և մահմեդական ժողովուրդներն ամենուրեք սուգ մտան։

## 473. Գյումուշտեգին ներքինու սպանության և ֆրանկների կողմից Խարիմի բերդի պաշարման մասին, որը գտնվում է Անտիոքի մոտակայքում

Այդ տարի Հալեպում էր գտնվում Գյումուշտեգին անունով նշանավոր ներքինին, որը պատիվ էր վայելում Նուրեդդինի ընտանիքում։ Մահանալիս Նուրեդդինն այս ներքինուն, նրա խելքի և հավատարմության համար, կարգել էր իր փոքր որդու՝ Մելիք Սալիհի դայակ ու դաստիարակ։ Իշխանության գլուխ անցնելով՝ նա հաջող գործեր ձեռնարկեց և հռչակվեց իր վարվեցողությամբ։ Նա պահպանում էր պատանու տիրապետության տակ գտնվող երկրները, իսկ նրան էլ լավ դաստիարակություն էր տալիս։ Նա խելամտությամբ դիմակայում էր ինչպես թուրքերին, այնպես էլ ֆրանկներին՝ իր ձեռքում պահելով բոլոր քաղաքների, բերդերի, ամրոցների ու գյուղերի կառավարումն ու տնօրինումը։ Խարիմի բերդը, որը գտնվում է Անտիոքի մոտակայքում, նույնպես ամբողջովին նրան էր պատկանում Նուրեդդինի կենդանության օրերից։ Սակայն ներքինու ընկերակիցները նախանձից խորհուրդ տվին, ավելի ճիշտ՝ մոլորեցրին Նուրեդդինի պատանի որդուն, որը ձերբակալեց և սպանեց Գյումուշտեգին ներքինուն։ Երբ վեր-

ցինս սպանվեց, Խարիմի բերդում գտնվող զինվորները ապստամբեցին Մելիք Սալիհի դեմ և բերդը նրան չհանձնեցին։ Նրանք, լուր ուղարկելով, օգնություն խնդրեցին ֆրանկներից և ընդունեցին նրանց գերիշխանությունը։ Ֆրանկները սիրալիր ընդունելություն ցույց տվին և վստահություն ներշնչեցին նրանց՝ երդվելով
190 // խաչով ու ավետարանով։

Այդ ժամանակ ոմն կոմս, որի անունն էր Կոնդֆլանդ[39], ծովով օգնության եկավ քրիստոնյաներին։ Նա հավաքեց բոլոր ֆրանկներին, որոնք մի հսկայական և մինչ այդ չտեսնված բազմություն դարձան։ Դրանց մեջ էին Երուսաղեմի և առափնյա երկրի զորքերը, Տրիպոլիի կոմսը, Անտիոքի պրինցը, Կիլիկիայի իշխան Ռուբեն Հայը և ինքը՝ Կոնդֆլանդը, ինչպես նաև բազմաքանակ աշխարհազորայիններ, որոնց թիվը հասնում էր երեսուն հազարի։ Թշվառական ֆրանկները թափով առաջ շարժվեցին և եկան պաշարեցին այդ քաղաքը, այսինքն՝ Խարիմի բերդը, մնալով այնտեղ դեկտեմբերի սկզբից մինչև մարտի վերջը։ Նրանք նեղ դրության մեջ դրին այդ երկրի և ողջ լեռան, ինչպես նաև Իմմ և Արթախ գավառների գյուղացիներին։ Զանազան տուրքերով և հարկադրանքներով բռնադատեցին նաև Անտիոքի բնակիչներին՝ պարեն հայթայթելու նպատակով, որն անհրաժեշտ էր իրենց և իրենց անասուններին ու գրաստներին։ Չքավորներն անգամ տուժեցին այդ նեղությունից։

Սակայն աստված, որ տնօրինում է ամեն ինչ և հաղթանակ տալիս՝ ում կամենում է, զայրացավ [ֆրանկների] վրա և չօգնեց նրանց։ Նա աջակցություն ցույց տվեց բերդում գտնվող թուրքերին, որոնք փոքրաթիվ էին, բայց կարողացան պահպանել իրենց անձը, չնայած ֆրանկները քարեր արձակող մանգղիոնների և բազմազան պատերազմական մեքենաների օգնությամբ կատաղի մարտեր էին մղում նրանց դեմ։ Շատ ֆրանկներ զոհվեցին ներսից արձակված քարերից ու նետերից, ինչպես նաև կուպրից, որն այրում էր նրանց։ Երկու կողմերն էլ, այսինքն՝ և՛ պաշարվածները, և՛ պաշարողները, թուլացան ու հոգնեցին կռվից։ Երբ բերդի թուրքերը, ընկճված և ի վիճակի չլինելով այլևս պաշտպանվել, ըստ ամենայնի պատրաստվում էին հանձնվել, մտածեցին ու խորհրդակցեցին իրար հետ, որ ավելի լավ է հանձնվել իրենց դավանակից թուրքերին, քան թե ֆրանկներին։ Նրանք լուր ուղարկեցին Հալեպ՝ Նուրեդդինի որդի Մելիք Սալիհին, որ եթե նա
191 իրենց փրկի ֆրանկներից, // բերդը կհանձնեն նրան։ Այդ պատանին ֆրանկների մոտ մի պատգամավոր ուղարկեց, որն առան-

ձին-առանձին [հանդիպելով] բոլոր նրանց մեծամեծների հետ, երկպառակություն սերմանեց նրանց միջև։ Դա վերաբերում է հատկապես Անտիոքի [տիրոջը], որին խոստացան հիսուն հազար դինար և բերդապատկան գյուղերի կեսը։ Երբ Անտիոքի տերն իր զորքերով հեռացավ, մյուսներն նույնպես ամոթով ետ քաշվեցին՝ դառնալով ամենքի ծաղրուծանակի առարկան։

## 474. Սալահեդդինի արշավանքը Եգիպտոսից Ասորիք, Մոսուլի տիրակալ Սեյֆեդդինի մահը, նրա եղբոր գահակալումը և այդ ժամանակ տեղի ունեցած իրադարձությունները

*1490 (1179) թվականին Սալահեդդինը ելավ եկավ Դամասկոս, իսկ այնտեղից մեկնեց պաշարելու Բաալբեկը, որի տերը՝ իր մեծամեծներից մեկը, ապստամբել էր իր դեմ։*

*Այդ ժամանակ մեռավ Սեյֆեդդինը՝ Մոսուլի տիրակալը։ Նրանից հետո ողջ Ասորեստանում և Մոսուլում՝ մինչև Մծբին, թագավորեց նրա եղբայր Իզզեդդինը[440]։ Այսպես ուրեմն, այդ ժամանակ Մոսուլին տիրում էր Իզզեդդինը։ Նա ուներ մի կառավարիչ, որը տնօրինում էր արևելքի բոլոր երկրների գործերը։ Դա Մուջահիդեդդին Կայմազ[441] անունով ներքինին էր։ Սինջարին և նրա շրջակայքին տիրում էր Իմադեդդինը[442], Մոսուլի տիրոջ եղբայրը։ Ջեզիրեում իշխում էր Սեյֆեդդինի. պատանի որդին, որ կոչվում էր Սինջարշահ[443]։ Արբելային, Շահրզորին ու նրա շրջակայքին տիրում էր վերևում հիշված Ջեյնեդդին Ալի Քուչուկի որդին[444]։ Ինչ վերաբերում է Ուռհային, ապա նրան տիրում էր մի թուրք ամիրա, որի անունն էր Ֆախրեդդին Մասուդ իբն Զաֆարանի։ Ինչպես վերը նշեցինք, այդ [քաղաքը] նա կառավարում էր Նուրեդդինի օրերից։ Նուրեդդինի օրոք նրան էին պատկանում նաև Համան, Հոմսը, Բարինը և ուրիշ վայրեր։ Սակայն Նուրեդդինի մահվանից հետո, նրա որդու օրոք, դրանք խլվեցին նրանից Գյումուշթեգին ներքինու ձեռքով։ Ֆախրեդդինը փախավ եկավ*
192 *// Ուռհա, ապա մեկնելով դեպի արևելք՝ Մոսուլ, Սեյֆեդդինից ստացավ Ուռհան։*

## 475. Ուռհայեցիների գանգատը իրենց կառավարչից

*Հազիվ էր Ֆախրեդդինն Ուռհայում տեղավորվել, երբ որոշ անմիտ ու անդաստիարակ մարդիկ, որոնք ուզում էին քաղաքում բարձր տեղ զբաղեցնել, բայց ֆրանկների օրերի սովորությամբ, այսինքն՝ աղքատների ու այրիների տները կողոպտելու միջոցով,*

չէին հասել իրենց նպատակին, ինչպես նաև որոշ վաշխառուներ
ու հարկահավաքներ, որոնցից պահանջվել էր իրենց յուրացրած
ոսկին, կազմակերպելով ամբոխին, խռովություն ու գրգռություն
առաջացրին կառավարչի դեմ և հավաքվեցին եկեղեցում: Նրանք
ամեն օր, խփելով զանգերը, հավաքում էին հասարակ մարդկանց
և շինծու ջերմեռանդությամբ ցուցադրում իրենց հոգացողությունը
քաղաքի և աղքատների նկատմամբ: Նրանք եկեղեցու մեջտեղում
մի ավետարան և խաչ էին դրել, որոնցով երդվեցնում էին բոլոր
ներս մտնողներին: Այս չար գործն ու խռովությունը գլխավորում
էին Մլեհի որդի Բարսումա քահանան, Սահդա անունով մի բժիշկ,
որը վատահամբավ Շումնա ցեղից էր, և ուրիշ խռովարարներ:
Նրանց մեջ էր նաև սևերակցի մի խելառ երիտասարդ՝ Բարսեղ
անունով, որը հավաքում էր քաղաքի հայերին և գրգռություններ
հրահրում փողոցներում:

Եվ այսպես, երբ նրանք իրար հետ չարամիտ համաձայնու-
թյան եկան, իրենցից որոշ մարդկանց ուղարկեցին Մոսուլ: Այս-
տեղ նրանք սկզբում ընդունելություն գտան, և նրանց հետ ու-
ղարկվեց մի ամիրա՝ հարցը տեղում պարզելու նպատակով:
Անմիտները, երբ տեսան, որ իրենց ուղեկցում է մի ամիրա, մեծ
գրգռություն առաջացրին քաղաքում: Ողջ ժողովուրդը մի մարդու
պես հավաքվեց և ուղղվեց դեպի կառավարչի պալատը, ինչպես
մի ժամանակ վարվել էին նրանց ծնողները Հեթումի որդու[15] հետ:
Սակայն դա ոչ թե բարիք, այլ չարիք եղավ նրանց համար: Ֆախ-
րեդդին ամիրան կաշառքով շլացրեց ուղարկված մարդուն, որը
նրանց թողեց շաղակրատելու: Այնժամ կառավարիչը ձևացրեց,
թե ուզում է գնալ Մոսուլ, իսկ Մոսուլից եկած մարդը պատրաստ-
193 վեց մեկնել նրա հետ: // Ուռհայեցիները նույնպես որոշեցին նրա
հետ Մոսուլ գնալ: Այդպես էլ եղավ: Նրանք երկրորդ անգամ ճա-
նապարհ ընկան դեպի Մոսուլ: Բայց կառավարիչը չմեկնեց, այլ
միայն պարգևներ ուղարկեց: Ուռհայեցիները դատարկաձեռն ետ
դարձան: Դրանից հետո Ֆախրեդդինը պատրաստվեց և գնաց Մո-
սուլ: Ուռհայեցիները երրորդ անգամ ներկայացան այնտեղ: Սա-
կայն կառավարչի տված կաշառքների պատճառով այդ թշվառա-
կանները չարագույն կերպով վռնդվեցին այնտեղից: Երբ նրանք
վերադարձան քաղաք, կառավարիչը ձերբակալեց խռովության
կազմակերպիչներին և իրենց կանանց ու երեխաների հետ վր-
որնդեց քաղաքից: Դրանց թվում էին վերոհիշյալ Բարսումա քա-
հանան, Սահդա բժիշկը, Աբրահամ երեցը և ուրիշներ: Նրանք
գնացին Սամոսատ և որոշ ժամանակ մնացին այնտեղ: Իսկ այնու-

*հետև, բաղում նեղություններ կրելուց հետո, վերադարձան քաղաք, որին մեծ վնաս էին պատճառել՝ նրա բնակիչներին թշնամացնելով կառավարչի հետ և վատ համբավ ստեղծելով նրանց մասին։*

*Խառանում այդ ժամանակ տիրում էր մի երիտասարդ մարդ Մուզաֆֆարեդդին[446] անունով, որը վերը հիշված Զեյնեդդին Ալիի որդին էր և նույնպես ենթարկվում էր Մոսուլի տիրակալին։ Նա թուլություն ուներ Ուռհայի նկատմամբ և շատ անգամ կաշառքներ մատուցելով, այն խնդրել էր Մոսուլի տիրակալից, բայց չէր ստացել։ Այդ պատճառով նա քեն էր պահել արևելքի ամիրաների դեմ և դրա համար էլ գաղտնի կերպով գրեց ու սուրհանդակներ ուղարկեց Սալահեդդինի մոտ՝ նրան խորհուրդ տալով անցնել Եփրատը։*

## 476. Նուրեդդինի որդի Մելիք Սալիհի մահվան և Հալեպում Իզզեդդինի թագավորության մասին

*Այդ ժամանակ, 1493 (1182) թվականին, Հալեպում մեռավ Մելիք Սալիհը՝ Նուրեդդինի որդին, թագավորությունը կտակելով իր հորեղբորորդուն՝ Մոսուլի տիրակալ Իզզեդդինին։ Վերջինս այնտեղ գահակալել էր իր եղբորից՝ Սեյֆեդդինից հետո և, ինչպես նկարագրեցինք, նրա օրոք էլ հենց ուռհայեցիները ներկայացրել էին իրենց գանգատը։ Իզզեդդինը շտապ եկավ և թագավորեց Հալեպում։ Ինչպես ասացինք, Սինջարում տիրում էր*
*194 // նրա եղբայր Իմադեդդինը։ Սրանք մշտապես վեճ ու կռվի մեջ էին իրար հետ։ Եվ մինչ Իզզեդդինը գտնվում էր Հալեպում, նրա միտքը Մոսուլում էր։ Վախենում էր, որ եղբայրը կարող է այնտեղ որևէ դավ նյութել իր դեմ։ Այդ պատճառով նա ինքը մի անվայել միտք հղացավ. դեսպաններ ուղարկեց եղբոր մոտ և նրա հետ հաշտություն կնքեց՝ Սինջարը Հալեպի հետ փոխանակելու պայմանով։ Դա գլուխ եկավ, և Իզզեդդինը մեկնեց Հալեպից հետը տանելով իր հորեղբոր՝ Նուրեդդինի օրերից այնտեղ պահվող բոլոր գանձերը։ Իմադեդդինը եկավ տիրեց Հալեպին, իսկ Իզզեդդինը, ստանալով Սինջարը, այն տվեց իր մյուս եղբորը, որի անունն էր Շիհաբեդդին։*

## 477. Սալահեդդինի առաջխաղացումը և թափանցումն արևելք

*Այդ ժամանակ վերոհիշյալ Մուզաֆֆարեդդինը՝ Խառանի տերը, ելավ գնաց Համա՝ Սալահեդդինի մոտ և նրան դրդեց շարժ-*

վել դեպի արևելք։ Երբ Սալահեդդինը տեսավ, որ Իզզեդդինը հեռացավ Հալեպից՝ այն թողնելով իր եղբորը, հասկացավ նրա չար մտադրությունը։ Նա սրտապնդված մեկնեց Համայից և գնաց պաշարեց Հալեպը։ Սակայն մի քանի օր [քաղաքին] նեղություն պատճառելուց հետո հեռացավ այնտեղից և կտրեց անցավ Եփրատը։ Նա պաշարեց և բռնի ուժով գրավեց Մաբբուգը, որտեղ տիրում էր Կուտբեդդին իբն Հասան անունով մի մարդ՝ նախկինում Ուռհայի կառավարիչը։ Սալահեդդինը խլեց նրա մոտ եղած բոլոր գանձերը և տարիների ընթացքում ապօրինի կամ օրինական միջոցներով Ուռհայում հավաքած ամեն ինչ։ Այնտեղից մեկնելով, նա նորից կտրեց անցավ Եփրատը և եկավ պաշարեց Խառանը։ Մի քանի օր այնտեղ հանգստանալուց հետո նա իր զորքերն ուղարկեց պաշարելու Ուռհան։

## 478. Ուռհայի և մինչև Մոսուլ ընկած միջագետյան մյուս քաղաքների պաշարումը Սալահեդդինի կողմից

1494 (1183) թվականին Սալահեդդինը և վերոհիշյալ Մուզաֆֆարեդդինը՝
195 // Խառանի տերը, իրենց զորքերով եկան պաշարեցին Ուռհան։ Քաղաքի կառավարիչն էր Ֆախրեդդինը, որին հիշեցինք վերևում։ Իսկ վերին բերդում նստում էր Համամ անունով արևելցի մի ամիրա՝ նշանակված Մոսուլի տիրակալ Իզզեդդինի ձեռքով։ Երբ քաղաքի հարավային կողմից հարձակումն բսկըսվեց, ամիրան դավաճանաբար վաճառեց այդ բերդը տաս հազար ոսկով։ Ֆախրեդդինը նկատելով դավաճանությունը, ինքը նույնպես հանուն իր անձի փրկության հաշտություն կնքեց և հանձնեց քաղաքը։ Այսպես Սալահեդդինը տիրեց նրան և այն տվեց Մուզաֆֆարեդդինին։ Ապա նա մեկնեց այնտեղից և գնաց պաշարեց Կալլինիկոսը, այսինքն՝ Ռակկան, որը գրավելով, ժամանակավորապես հանձնեց Ֆախրեդդինին։ Հետո Սալահեդդինը մեկնեց և իջավ դեպի Խաբուր[447], իսկ այնտեղից գնաց պաշարեց Սինջարը և կատաղի հարձակում գործեց նրա վրա։ Մի քանի օրից գրավելով այն, նա ետ դարձավ և գնաց պաշարեց Մոսուլը՝ նրա դեմ նույնպես ուժեղ հարձակում ձեռնարկելով։ Նա անթիվ-անհամար զորքերով բանակ դրեց Տիգրիս գետի երկու ափերին։ Սակայն մինչ շարունակում էր Մոսուլի պաշարումը, լուր ստացավ, որ իր հորեղբորորդի Նասրեդդին իբն Շիրկուհը[448] սրևմուտքում ապստամբություն է նախապատրաստում իր դեմ։ Վերջինս կարողացել էր իր կողմը գրավել հոր [....][449] ծառաներին, և շատ զինվորներ միացել էին նրան։ Նա ուզում էր ապստամբել և զավթել

*իշխանությունը։ Այդ պատճառով Սալահեդդինը թողեց Մոսուլը և ետ դարձավ։ Սակայն հասնելով Խառան, նա ծանր հիվանդացավ։ Ասում են, թե նրան մահադեղ էին տվել վերոհիշյալ Նասրեդդինի*
196 *դրդմամբ։ Ավելի քան չորս ամիս նա հիվանդ մնաց Խառանում։* ||

## 479. Թուրքմենների և քրդերի միջև տեղի ունեցած կռվի մասին

*Այդ տարի վեճ, կռիվ, կոտորած ու խժդժություններ ծագեցին թուրքմենների և քրդերի միջև։ Նրանց թշնամությունը սաստկացավ, և սկսեցին անխնայորեն կոտորել միմյանց։ Մեծաթիվ ժողովուրդ ոչնչացավ։ Թուրքմենները, ավելի ու ավելի հանդուգն դառնալով, սկսեցին կոտորել ոչ միայն իրենց թշնամի քրդերին, այլ նաև ճանապարհին պատահող ցանկացած մարդու։ Նրանք քարուքանդ էին անում գյուղերը և կողոպտում ճանապարհ ընկած վաճառականներին։ Նրանք համարձակություն ստացան հատկապես հզոր սուլթան Սալահեդդինի հիվանդությունից հետո և սկսեցին լուր տարածել, թե նա մեռել է։ Իսկ քրդերն այլևս չէին կարողանում բացահայտ կերպով երևալ ճանապարհներին։ Բազմաթիվ քրդական գյուղեր ավերվեցին, ամայացան նաև այն լեռները, որտեղ նրանք բնակվում էին։ Իսկ ովքեր փրկվեցին, փախան և չքավորության մեջ բնակվեցին քաղաքների շուրջը։ Թուրքմեններն այն ժամանակվանից սովորություն դարձրին արյուն թափելը, կողոպուտն ու համատարած կոտորածները։*

## 480. Սալահեդդինի ապաքինման և Նասրեդդինի մահվան մասին

*Սալահեդդինը առողջացավ և մեկնեց Խառանից։ Ճանապարհին նա լուր ստացավ, որ Հոմսում մեռել է իր հորեղբորորդի Նասրեդդինը, որը միաժամանակ իր փեսան էր, այսինքն՝ քրոջ ամուսինը։ Տեղ հասնելով՝ նա խլեց նրա բոլոր գանձերը, ողջ ունեցվածքը և անհամար ձիերն ու ուղտերը, որոնց արժեքը կարող էր զուգակշռվել այնքան արծաթյա դրամի հետ, որքան կարելի էր տեղավորել Հոմսի միջնաբերդի բուրգերից մեկում։*

## 481. Հալեպ քաղաքի առումը

*Որոշ ժամանակ մնալով Դամասկոսում՝ Սալահեդդինը նորից զորահավաք կատարեց. Նախապատրաստված եկավ պաշարեց*

Հալեպը և կատաղի հարձակումներով սաստիկ նեղեց նրան։ Ի վերջո, Իմադեդդինը, որը ժամանակին եղել էր Սինջարի տերը, հաշտություն կնքեց նրա հետ և, հանձնելով Հալեպը, փոխարենն
197 ստացավ Սինջարը, դրան գումարած // նաև Ռակկան, ողջ Խաբուրի գավառը և Մծբինն իր շրջակայքով։ Այսպես տեղի ունեցավ Հալեպի առումը։ Սալահեդդինը տիրեց նրան և հանգստացրեց իր սիրտը, որովհետև դա Ասորիքի թագավորության մայրաքաղաքն էր։ Այնտեղ նա նշանակեց իր որդուն, որի անունն էր Ղազի Մելիք ազ-Զահիր[450]։ Օսման Մելիք ալ-Ազիզ[451] անունով մյուս որդուն կարգեց Եգիպտոսի վրա։ Իսկ Դամասկոսը տվեց իր ավագ որդուն, որի անունն էր Ալի Մելիք ալ-Աֆդալ[452]։ Հոմսում տիրում էր վերոհիշյալ Նասրեդդինի տղան, որը Սալահեդդինի քրոջ որդին էր։ Համային ու նրա ողջ շրջակա երկրին տիրում էր Սալահեդդինի եղբորորդի Տաքիեդդինը[453]։ Սալահեդդինի մի եղբայրը, որի անունն էր Մելիք ալ-Ադիլ Աբուբաքր, կառավարում էր Եգիպտոսի թագավորությունը։ Այսպիսով, բոլոր այդ կողմերում տիրում էին նրա որդիները, ազգականներն ու եղբայրները։

## 482. Սալահեդդինի նոր արշավանքը դեպի արևելք

1495 (1184) թվականին Սալահեդդինը նորից շարժվեց իր զորքերով և, ուղղվելով դեպի Նփրկերտ, պաշարեց ու գրավեց այն։ Ապա նա եկավ և պաշարեց Ամիդը, որտեղ այդ ժամանակ տիրում էր Հասանի ցեղի մարդկանցից մեկը։ Դրանք արաբներ[454] էին, որոնք հաջորդելով մեկը մյուսին, պահում էին [քաղաքը]։ Մահմեդական շատ թագավորներ բազում անգամ պաշարել էին այն, բայց չէին կարողացել նվաճել։ Սալահեդդինը, գալով և կատաղի հարձակում գործելով նրա վրա, մի քանի օրից զենքի ուժով գրավեց այն։ Նա կողոպտեց երկար տարիների ընթացքում այնտեղ կուտակված ողջ հարստությունն ու ունեցվածքը, սակայն քաղաքացիներին որևէ անհանգստություն չպատճառեց։ Քաղաքը նա տվեց Նուրեդդին իբն Դաուդ իբն Կարաասլանին[455], որը Տիմուրտաշի սերունդներից էր։ Հետո նա ետ դարձավ և գնաց երկրորդ անգամ պաշարեց Մոսուլ քաղաքը։ Եվ թեև առաջին անգամվանից ավելի կատաղի հարձակում ձեռնարկեց նրա վրա, սակայն
198 չկարողացավ ոչինչ անել։ Լուր ստանալով, որ // առափնյա շրջանների ֆրանկները հանդգնել են վնաս պատճառել իր երկրին, նա ետ դարձավ այնտեղից և եկավ Դիմաշկ, այսինքն՝ Դամասկոս։

### 483. Պատերազմը ֆրանկների դեմ և վերջիններիս ջախջախումը. նրանց քաղաքների գրավումը և երկրների ավերումն ու կողոպուտը. Երուսաղեմի առումը և նրա բնակչության իսպառ բնաջնջումը

*Հունաց 1498 (1187) թվականի հուլիս ամսին, նախապատրաստություն տեսնելով, Սալահեդդինը բազմաքանակ զորքեր հավաքեց ողջ արևելքից, արևմուտքից ու Եգիպտոսից և եկավ բանակ դրեց Հաուրանի դաշտում, Տիբերիայի լճից վեր։ Ֆրանկները նույնպես հավաքվեցին և պատրաստվեցին կռվի։ Կողմերը դասավորվեցին դեմ-դիմաց [.......][456] կոչվող դաշտում։ Հաղթանակը բաժին ընկավ մահմեդականներին, և ֆրանկները ջախջախվեցին ու դառնագույն պարտություն կրեցին իրենց չար գործերի պատճառով։ Ամսի 4-ին, շաբաթ օրը, մի անթիվ-անհամար բազմություն սրի մատնվեց։ Գերիներն այնքան շատ էին, որ ավելի քան քսան հազար հոգու շների նման կապեցին պարաններով և քարշ տվին մեկը մյուսի ետևից։ Իսկ ավելի քան երեսուն հազար մարդ սրի բերան մատնվեց։ Ողջ-ողջ բռնվեցին Երուսաղեմի թագավորը, Սիդոնի տերը, այսինքն՝ կառավարիչը, Գաբալայի իշխանը, Բիրզանի որդին, Սիթայի երկու որդիները, ինչպես նաև ծերունի սիր Ռենալդ պրինցը[457], որ Շուբակ[458] բերդի տերն էր։ Ձերբակալվեցին նաև Ֆրեր եղբայրներից և Հոսպիտալիերներից[459] ավելի քան հարյուր հիսուն երևելիներ։ Նրանց բոլորին ուղարկեցին Դամասկոսի բանտը, բացի ծերունի պրինց Ռենալդից, որին բազմաթիվ ուրիշ երևելի գերիների հետ գլխատեցին Սալահեդդինի աչքի առջև։ Վերջինիս վրանի առաջ սպանվածներից մի բլուր*
*199 գոյացավ։ // Երկու օր անց նա գրավեց Տիբերիա քաղաքը և երկուշաբթի օրը կրակի մատնեց այն։ Ապա գնաց պաշարեց Աքքան, որը գրավեց ամսի 9-ին, հինգշաբթի օրը։ Վերջինս գրավվեց խաղաղ ճանապարհով, այդ պատճառով [Սալահեդդինը] ոչ ոքի նեղություն չպատճառեց։ Ամսի 24-ին, երեքշաբթի օրը, նա գրավեց Նազարեթը[460] և այն տվեց Ուռհայի տեր Մուզաֆֆարեդդինի զինվորների ձեռքը՝ կողոպտելու։ Բնակիչներին թալանեցին, տղամարդկանց մատնեցին սրի բերան, իսկ երեխաներին ու կանանց ստրուկներ ու աղախիններ դարձրին։*

*Այսպես կամաց-կամաց նա պաշարեց ու գրավեց երկրի և ծովափնյա շրջանների բոլոր բերդերը, դրանք մատնելով ավարի, կոտորածի ու բնաջնջման։ Զինվորներն անհամար հարստություն, ստրուկներ ու աղախիններ ձեռք բերին։ Այնուհետև նա պաշարեց*

Տյուրոսը, բայց չկարողանալով այն գրավել, մեկնեց այնտեղից և գնաց պաշարեց Աշկալոնը, այսինքն՝ Ասկալոնը։ Նա հարձակվեց նրա վրա, բայց նրա զինվորներից շատերը զոհվեցին այնտեղ։ Այդ պատճառով Դամասկոսից կանչել տվեց թագավորին և խոստացավ, որ եթե Ասկալոնը հանձնեն իրեն, ապա նրան թույլ կտա գնալ, ուր կամենում է։ Այսպիսի հնարքով նա գրավեց քաղաքը և, նվերներ ու հանդերձներ շնորհելով, ազատ արձակեց թագավորին։ Հետո Սիթայի երկու որդիների և Բիրղանի տղայի ուղեկցությամբ նրան ուղարկեց Տյուրոս։ Ասկալոնը նա գրավեց շաբաթ օրը, այն հիմնահատակ արեց, քանդեց նրա պարիսպը և ամայացրեց։ Տրիպոլիի կոմսը, որն այդ պարտության ժամանակ փախուստի էր դիմել, հասնելով իր քաղաքը, մի քանի օրից մեռավ վշտից։ Ասում են, որ նա էր դավաճանել ֆրանկներին, և նրա պատճառով էին վերջիններս պարտություն կրել։ [Սալահեդդինը] հիմնովին վերակառուցեց Աքքան, նրա պահպանությունը հանձնարարեց մարտունակ մարդկանց, ապա Կարակուշ[461] անունով ումն ներքինու մի քանի ուրիշ կառավարիչների հետ նստեցրեց այնտեղ։

## 484. Երուսաղեմի առումը

Նույն տարվա սեպտեմբեր ամսին Սալահեդդինն իր զորքե-
200 րով մեկնեց Ասկալոնից և եկավ պաշարեց Երուսաղեմ // քաղա-
քը։ Նա կատաղի հարձակում ձեռնարկեց նրա դեմ, որովհետև այնտեղ էին հավաքվել ամեն կողմից փախած բոլոր փրկյալները։ Սակայն քանի որ նրանք փրկություն չունեին և որևէ տեղից օգնություն չէին սպասում, նեղ դրության մեջ ընկան և, երաշխիքներ ստանալով, հանձնեցին քաղաքը։ Ֆրանկները դուրս եկան, և նրանց թույլատրվեց գնալ, ուր ուզում են։ Սակայն մինչ նրանք հիսունական կամ հարյուրական հոգով հեռանում էին, մահմեդականները հարձակվում կոտորում էին նրանց.և կողոպտում նրանց ունեցվածքը։ Ինչ վերաբերում է քաղաքում մնացած մյուս բնակիչներին՝ հայերին, հոռոմներին և ասորիներին, ապա նրանցից պահանջվեց, որ տղամարդիկ վճարեն տասական, իսկ կանայք հինգական դինար և ելնեն գնան, ուր ուզում են։ Խեղճերն արժանի էին լացի ու ողբի, որովհետև նրանք չնչին գներով թափում էին իրենց ունեցվածքը, բայց գնող չկար։

Այդ ժամանակ Երուսաղեմում էր գտնվում Աթանասիոս[462] եպիսկոպոսը՝ Միքայել պատրիարքի եղբայրը, վանականների

հետ։ Դրանց թվում էր Սահդա Ուռհայեցին, որը Աթանասիոսի մահվանից հետո եպիսկոպոս դարձավ և կոչվեց Իգնատիոս[463]։ Եպիսկոպոսի մոտ էր նաև Թեոդորոս բար-Վահբունը[464], որը բազում փորձանքներ բերեց վանքի գլխին, վնասեց և՛ սրբազանին, և՛ վանքին, շատ թշնամանք հարուցեց եպիսկոպոսի դեմ՝ հավակնելով պատրիարքության, սակայն հետո նորից բարեկամացավ սրբազանի հետ, որովհետև նրա հայրենակիցն էր և որովհետև եպիսկոպոսը լավ բնավորություն ուներ։

Այդ ժամանակ ես՝ նվաստս, որ գրում եմ այս բաները, նույնպես գտնվում էի Երուսաղեմում։ Լեզուն ու գիրն անկարող են նկարագրել մեր աչքերի տեսած այն ոճիրները, որ գործվեցին քաղաքում. ինչպես այլազգիների[465] ձեռքով քաղաքի փողոցներում վաճառքի հանվեցին սրբազան անոթները, ինչպես եկեղեցիներն ու խորանները վերածվեցին ձիերի ու գրաստների ախոռների կամ
201 պղծության, կերուխումի // ու երգուպարի սրահների, ինչպես ծաղրուծանակի ենթարկվեցին վանականները, ինչպես այլազան ցեղերի հետ պղծության մատնվեցին երևելի կանայք և սրբակենցաղ կրոնավորուհիները, ինչպես տղաներն ու աղջիկները դարձան թուրքերի ծառաներն ու աղախինները՝ ցրվելով չորս կողմ։ Եկեղեցիներից պոկոտելով երկաթեղենը, փայտեղենը, դռներն ու նույնիսկ պատերի և հատակի մարմարյա ծածկերը՝ բարձեցին ու տարան ուրիշ երկրներ։ Խնայեցին միայն Հարության մեծ եկեղեցին, որի վրա պահապաններ նշանակեցին՝ նրա տված օգուտի պատճառով, քանի որ ամեն մի քրիստոնյա, որ մտնում էր երկրպագելու սուրբ գերեզմանին, տաս դինար էր վճարում։

## 485. Ֆրանկների նոր արշավանքը և Աքքայի պաշարումը նրանց կողմից. Ալամանների թագավորի արշավանքը ցամաքով և նրա կործանումը Կիլիկիայում

Հաջորդ տարի, երբ այդ լուրը հասավ ֆրանկների բուն երկրները, Մարքիզ[466] անունով մի կոմս, նախապատրաստություն տեսնելով, ծովով եկավ Տյուրոս և տիրեց նրան։ Հետո նա իր զորքերով գնաց պաշարեց փյունիկյան Աքքան։ Սալահեդդինը նույնպես պատրաստվեց և, բազում զորք հավաքած, եկավ բանակ դրեց մի մարդագետնում, ֆրանկների դիմաց։ Այսպես մնալով մեջտեղում, ֆրանկները երկու տարի կռիվ մղեցին մի կողմից աքքացիների, մյուս կողմից՝ Սալահեդդինի դեմ։

Այդ նույն ժամանակ Ալամանների թագավորը[467] նույնպես

պատրաստություն տեսավ և ելավ օգնության հասնելու քրիստոն-
յաներին։ Նա շարժվեց ցամաքով և հասավ Կոստանդնուպոլիս։
Ապա մտավ հոռոմոց երկիրը և, հասնելով Իկոնիա, գրավեց այն՝
կողոպտելով ու կոտորելով շատերին։ Իսկ այնտեղից նա շարա-
բաստիկ կերպով մտավ Կիլիկիո երկիրը։ Եթե ներխուժեր մահ-
մեդականների երկրները, գուցե կարողանար որևէ օգուտ տալ,
քանի որ հողը դղրդում էր նրա առջև, և ողջ Ասորիքի մահմեդա-
202 կանները ահուդողի մեջ էին ընկել // նրա գալու պատճառով։ Սա-
կայն նա եկավ Կիլիկիո երկիրը և, երբ մի անգամ մտավ լողա-
նալու երկրի լճերից մեկում, խեղդվեց։ Նրա զորքերը ոչնչացան.
ոմանք մեռան հիվանդություններից, ոմանք էլ ձեռնունայն եկան
Անտիոք։ Եվ այսպես առանց որևէ օգուտ տալու նրանք ցրվեցին։

## 486. Աքքայի առումը ֆրանկների կողմից

Աքքայի պաշարումից երկու տարի անց, ինչպես ասացինք, ֆրանկներն արժանացան հաղթանակի և սկսեցին նեղել քաղաքը։ Թուրքերը հուսահատվելով, կոտորեցին քաղաքի բոլոր քրիստոնյաներին։ Ի վերջո, զենքի ուժով այն գրավվեց, իսկ բազմահազար քաջամարտիկ և ընտրյալ Թուրքերը, որոնք պահապան էին կարգվել այնտեղ և շարունակ աճում էին, կոտորվեցին։ Սալահեդդինը [ֆրանկների] հետ որոշ ժամանակով հաշտություն կնքեց և վերադարձավ Դամասկոս։

## 487. Սալահեդդինի մահը 1504 (1193) թվականին

Սալահեդդինը խաղաղության պայմանագիր կնքեց ֆրանկների հետ և մնաց Դամասկոսում։ Ուռհայի տերը գրավեց Արբելան ու Շահրզորի գավառը։ Այդ պատճառով Սալահեդդինը Ուռհան տվեց իր Տաքիեդդին եղբորորդուն, որը տիրում էր նաև Խառանին, Սամոսատին ու Նփրկերտին։ Երկու տարի այնտեղ մնալուց հետո վերջինս գնաց պատերազմելու Խլաթի երկրի դեմ և պաշարեց Արզունը[468]։ Սակայն այստեղ նա գտավ իր օրհասը և մեռավ՝ իր երկրները թողնելով որդուն, որի անունն էր Մուհամմեդ Մելիք Մանսուր[469]։ Մի տարի հետո հիշյալ երկրները՝ Ուռհան և մնացած վայրերը [Սալահեդդինը] տվեց իր Մելիք ալ-Ադիլ Աբուբաքր եղբորը, դրանց գումարելով նաև Եփրատի վրա գտնվող Կալա-Ջաբար անառիկ ամրոցը։ Երբ սա եկավ և, ստանալով այդ երկրները, տիրեց նրանց, նրա եղբայրը՝ մեծահզոր Թագավոր

Սալահեդդինը, մեռավ Դամասկոսում 1504 (1193) թվականի
203 փետրվար ամսին։ Ոչ ոք նրա ընտանիքից չտուժեց և ոչ ոք //
որևէ վնաս չկրեց, քանի որ նրա որդիներից և եղբայրներից ամեն մեկը, ինչպես ասացինք, տիրում էր իրեն հատկացված երկրներին։

## 488. Արևելքի տիրակալների արշավանքը

Ինչպես ցույց տվեցինք, Մոսուլում թագավորում էր Իզզեդդինը, իսկ Սինջարում՝ նրա եղբայր Իմադեդդինը։ Լսելով Սալահեդդինի մահը, նրանք պատրաստություն տեսան և միաբանեցին իրար հետ։ Նրանց հարեցին նաև Մարդինի Կուտբեդդին ամիրան և Ամիդի [տերը]։ Նրանք եկան մինչև Թլմոզ, որը գտնվում է Ռեշայնայի[470] մոտակայքում, և երեք ամիս մնացին այնտեղ՝ վախենալով, սակայն, մարտի բռնվել և դիմել դեպի Խառան կամ Ուռհա։ Մելիք ալ-Ադիլը փոքրաթիվ զորքերով բանակել էր Խառանում։ Երեք ամիս հետո Մոսուլի տիրակալ Իզզեդդինը հիվանդացավ և մեկնեց իր երկիրը։ Մյուսները նույնպես ցրվեցին։ Մոսուլ հասնելուց որոշ ժամանակ անց Իզզեդդինը մեռավ, և թագավորեց նրա անդրանիկ որդին՝ Նուրեդդինը[471]։ Մեռան նաև Իմադեդդին Սինջարցին և Կուտբեդդին Մարդինցին։ Իսկ Մելիք ալ-Ադիլը գնաց հասավ մինչև Մծբին՝ մտադրվելով շարժվել դեպի Մոսուլ և պաշարել այն։ Սակայն այնտեղ հաշտություն կնքեցին նրա հետ։ Նա ստացավ Ռակկան և Սրուճը, որոնք պատկանում էին Սինջարի տիրոջը։ Այնուհետև Մելիք ալ-Ադիլը, պատրաստություն տեսնելով, դիմեց դեպի Խլաթ։ Նա այնտեղ մնաց մինչև աշուն և ավերեց, կործանեց ու կողոպտեց երկրի մեծ մասը։ Սակայն երբ ձյուն իջավ, նա վերադարձավ այնտեղից։ Այս դեպքերը տեղի ունեցան 1505 (1194) թվականին։

## 489. Սալահեդդինի որդի Մելիք ալ-Ազիզի արշավանքը և Դամասկոսի պաշարումը նրա կողմից

Վերը նշեցինք, որ իր կենդանության օրոք Սալահեդդինը որդիներից ամեն մեկին մի որոշակի երկիր էր հատկացրել։ Անդրանիկ որդուն՝ Մելիք ալ-Աֆդալին տվել էր Դամասկոսը և նրան էլ իր կենդանության օրոք թագավոր էր հռչակել, որը պետք է հաջորդեր իրեն։ Սակայն Սալահեդդինի մահվանից հետո՝ 1506
204 (1195) թվականին, // Մելիք ալ-Ազիզը, որը տիրակալ էր Նշա-

նակվել Եգիպտոսում, պատրաստվեց գալ Դամասկոս և պահանջել, որպեսզի իրեն գահ բարձրացնեն և շնորհեն թագավորությունը։ Եվ ահա նա իր զորքերով եկավ պաշարեց Դամասկոսը։ Մելիք ալ-Աֆդալը մարդիկ ուղարկեց և օգնություն խնդրեց իր հորեղբայր Մելիք ալ-Ադիլից, որն իր զորքերով մեկնեց Ուռհայից, գնաց Դամասկոս և, պատերազմելով իր եգիպտացի եղբորորդու դեմ, հաղթեց նրան։ Վերջինս վերադարձավ Եգիպտոս, բայց Մելիք ալ-Ադիլը[472] նրան հետապնդեց մինչև այնտեղ։ Եգիպտոսում նրանց միջև կնքվեց հետևյալ պայմանագիրը, որ ողջ Եգիպտոսում, Ասորիքում և Միջագետքում՝ մինչև արևելք, պետք է ազդարարվի եգիպտացի Մելիք ալ-Աղիզի անունն ու թագավորական իշխանությունը։ Իսկ Մելիք ալ-Ադիլը պետք է դառնա այդ երկրների կառավարիչը, և Դամասկոսը պետք է պատկանի նրան։ Այդ պայմանով Մելիք ալ-Ադիլը եկավ գնաց։ Հասնելով Դամասկոս, նա խլեց այն իր եղբորորդի Մելիք ալ-Աֆդալից և նրան տվեց Բոսրան ու Սալքաթը[473]։ Այսպիսով վերջինս զրկվեց թագավորությունից։

## 490. Թեբնին[474] ամրոցի պաշարումը ֆրանկների կողմից

Այդ ժամանակ, 1507 (1196) թվականին, երբ լրացավ հաշտության պայմանագրի ժամկետը, ֆրանկները շարժվեցին իրենց տեղերից և եկան պաշարեցին Թեբնին կոչվող ամրոցը, որը գտնվում է Տյուրոսի մոտակայքում։ Եվ մինչ նրանք կատաղի ու երկարատև կռիվ էին մղում նրա դեմ, Մելիք ալ-Ադիլը եկավ և բանակեց նրանց դիմաց։ Բայց նա չկարողացավ նրանց վռնդել բերդի մոտից, այդ պատճառով պաշարվածները նեղվեցին կարիքից։ Նրանք արդեն պատրաստվում էին հանձնվել, երբ Մելիք ալ-Աղիզի հետ վրա հասան եգիպտական զորքերը։ Եվ հանկարծ, մինչ ֆրանկներին ոչ ոք չէր անհանգստացնում, նրանք լքեցին ճամբարը և մտան Աքքա։ Ամրոցը փրկվեց, թուրքերը գնացին պաշարեցին ծովափնյա Յաֆա քաղաքը և զենքի ուժով տիրեցին նրան։ Ապա այն ավարի մատնեցին, սպանեցին այնտեղ եղած բոլոր տղամարդկանց, իսկ երեխաներին ու կանանց դարձրին ծառաներ ու աղախիններ։ Դա Յաֆայի երկրորդ գերեվարումն էր։
205 // Եգիպտացիները վերադարձան Եգիպտոս, իսկ Մելիք ալ-Ադիլը՝ Դամասկոս։ Երուսաղեմը տրվեց եգիպտացուն։ Մելիք ալ-Ադիլը որոշակի ժամկետով հաշտություն կնքեց ֆրանկների հետ և եկավ գնաց Ուռհա։

## 491. Մարդինի պաշարման, Մելիք ալ-Ազիզի մահվան և այդ ժամանակի իրադարձությունների մասին

*1509 (1198) թվականին Մելիք ալ-Ադիլը ողջ Ասորիքում և Արևելքում զորահավաք կատարեց։ Դամասկոսում նա թողեց իր կրտսեր որդուն, որի անունն էր Շարաֆեդդին Մելիք ալ-Մուադղամ[475], իսկ Ուռհայում, Խառանում և Սամոսատում՝ իր մյուս որդուն՝ Մելիք ալ-Քամիլ[476] անունով։ Նփրկերտում տիրում էր նրա մի այլ որդին, որի անունն էր Մելիք ալ-Աուհադ[477], իսկ Ամիդում նրա փեսան՝ Կուտբեդդին իբն-Նուրեդդին[478] անունով, որը Տիմուրտաշի սերունդների ցեղից էր։*

*Այդ ժամանակ Մարդինի անառիկ և նշանավոր բերդաքաղաքին տիրում էր վերոհիշյալ Կուտբեդդինի ծառաներից մեկը, որը դայակություն էր անում նրա երկու անչափահաս երեխաներին և որի անունն էր Նիզամեդդին։ Մելիք ալ-Ադիլը աչք ուներ Մարդինի այս անառիկ բերդի վրա։ Այդ պատճառով նա հավաքեց բազմաթիվ հեծյալներ ու հետևակայիններ և գնաց պաշարեց այն։ Տիրելով ողջ շրջակա երկրին, նա հափշտակեց նրա բերքը։ Ամեն օր նա կատաղի կռիվներ էր մղում և ի վերջո 1511 (1200) թվականի[479] հոկտեմբերին բռնի ուժով գրավեց քաղաքի միջնաբերդից դուրս գտնվող մասը։ Ողջ ձմեռ վերին բերդը մնաց պատերազմական դրության մեջ, և բերդում եղող մարդիկ խիստ նեղվեցին քաղցից։*

*Այդ տարվա դեկտեմբեր ամսի վերջին լուր ստացվեց Եգիպտոսի Մելիք ալ-Ազիզ թագավորի մահվան մասին։ Նրա մեծամեծներն ու հոր ծառաները եկան և, վերցնելով Մելիք ալ-Աֆդալին, նրան թագավորեցրին Եգիպտոսում։ Սակայն վերջինս մի չա-*
*րաբաստիկ գործ ձեռնարկեց։ Զորք հավաքելով՝ անմիջապես*
206 *դուրս եկավ Եգիպտոսից // և գնաց նվաճելու Դամասկոսը։ Երբ*
*Մելիք ալ-Ադիլը լսեց այդ լուրը, փութով ելավ և միայնակ մեկ-*
*նեց Մարդինից՝ բաժանվելով բոլոր զորքերից և իր որդուց՝ Ուռ-*
*հայի տիրոջից։ Քչերի հետ նա շուտափույթ կերպով անապատի*
*ճանապարհով հասավ Դամասկոս։ Հենց որ նա մտավ Դամասկոս, նրա եղբորորդի Մելիք ալ-Աֆդալը հասավ Եգիպտոսից։ Եկան նաև նրա մյուս եղբորորդիները՝ Մելիք աղ-Զահիրը՝ Հալեպից և մեկ ուրիշը՝ Համայից ու Հոմսից։ Սրանք միաբանած՝ պաշարեցին Դամասկոսը և իրենց հարձակումներով նեղ դրության մեջ դրին նրան։*

## 492. Մարդինի բերդի փրկության մասին

*Ինչպես ասացինք, Մարդինի բերդում գտնվողները սաստիկ հյուծվել էին պարենի պակասությունից։ Այդ պատճառով նրանք երաշխիքներ խնդրեցին՝ հանձնվելու պատրաստակամությամբ։ Սակայն այդ քայլին դիմեցին խորամանկաբար, քանի որ պահանջեցին, որպեսզի երաշխիքներն ուղարկվեն Դամասկոսից՝ Մելիք ալ-Ադիլի անունով։ Վերին բերդի դադաթին նրանք պարզեցին Մելիք ալ-Քամիլի դրոշը։ Նրանք ուտելիք, խմելիք, ոսկի և նվերներ ստացան, բայց դրսից ոչ ոք բերդ չմտավ։ Այդ տարվա[480] մայիս ամսին նրանք դեսպան ուղարկեցին Դամասկոս՝ երաշխիքների խնդրով։ Հետո սկսեցին իջեցնել թույլերին և նրանց փոխարեն բարձրացնել մարտունակ մարդկանց։ Սուրհանդակներ էին ուղարկել նաև Մոսուլի տիրակալ Նուրեդդին իբն Իզզեդդինի մոտ։ Մի քանի օրից վերջինս ժամանեց իր հորեղբորորդիների՝ Սինջարի ու Ջեզիրեի տերերի և նրանց զորքերի հետ միասին։ Նրանց շուրջը հավաքվեցին ողջ Մարդինի երկրի աշխարհազորն ու Դունայսիրի[481] բնակիչները։ Կազմելով մի մեծ բազմություն, նրանք շրջապատեցին ողջ լեռան լանջերը, որտեղ առաջ բանակ էր դրել Մելիք ալ-Ադիլը։*

*Այսպիսով, ինչպես Մարդինում գտնվողները, այնպես նաև վերին բերդում նստածները ասես բանտի մեջ լինեին՝ լուռումունջ և առանց որևէ ձայն արձակելու։ Արևելցիները սրտապնդված, շտապփույթ կերպով հարձակում սկսեցին և շատ օրեր քաջաբար*
207 *կռիվ մղեցին։ // Բերդում նստածները, խախտելով իրենց խոստումը, պատրաստվեցին առավոտյան իջնել վերևից, մինչ դրսինները ճնշում պետք է գործադրեին իրենց դիրքերից և այսպիսով շրջապատման մեջ առնեին [թշնամուն]։ Գիշերը Մելիք ալ-Քամիլի կողմնակիցները պատրաստվեցին և, կրակի մատնելով բոլոր պահեստները, լեռան արևելյան կողմից ճողոպրեցին դեպի Նփրկերտ։ Նրանք իրենց հետ տարան միայն այնքան բան, որքան կարող էր կրել նրանցից յուրաքանչյուրը։ Զորքերը, տագնապի մեջ ընկնելով, ողջ գիշեր փախեփախ եղան։ Առավոտյան արևելցիները բարձրանալով, իսկ բերդում եղողները ցած իջնելով, տարվեցին հարստությունների, վրանների, զենքերի ու զանազան իրերի կողոպուտով և ձեռք քաշեցին փախչողներին հետապնդելուց։ Այսպես փրկվեց Մարդինի անառիկ բերդը, որը նվաճման վտանգի տակ էր։ Քամիլը՝ Ադիլի որդին, իր զորքերով ուղղվեց դեպի Նփրկերտ ու Ամիդ, ապա Սևերակի ճանապարհով հասավ Ուռհա։ Իսկ Մոսուլի տիրակալը մեծամտացած ճանապարհ ընկավ և*

*հասավ Ռեշայնա՝ դեպի Ուռհա դիմելու և այն պաշարելու մտադրությամբ։ Սակայն որոշ ժամանակ Ռեշայնայում մնալուց հետո նա հիվանդացավ և իր զորքերի հետ միասին վերադարձավ Մոսուլ։*

## 493. Մելիք ալ-Քամիլի ժամանումը Դամասկոս և այդ քաղաքի խնդրի լուծումը

*Սալահեդդինի որդիները, որոնք, ինչպես ասացինք, պաշարել էին Դամասկոսը, իրենց ամենօրյա կատաղի հարձակումներով սաստիկ նեղության մեջ էին պահում այն։ Ներսում գտնվող նրանց հորեղբայրը ծանր դրության մեջ էր ընկել, բայց իր իմաստության շնորհիվ կարողանում էր քաջաբար դիմանալ։ Նրա որդին, որն, ինչպես ցույց տվեցինք, վերադարձավ Մարդինից, հավաքեց իր զորքերը և փութաց դեպի Դամասկոս՝ հորը օգնության հասնելու նպատակով։ Երբ հասավ նրա մոտերքը, Սալահեդդինի որդիների զինվորները հանկարծակիորեն խուճապի մատնվեցին, և ամեն մարդ, թողնելով իր ողջ ունեցվածքը, փախավ աչքը կտրած ուղղությամբ։*

208 *// Հալեպի տերը դիմեց դեպի իր երկիրը, իսկ Մելիք ալ-Աֆդալը՝ դեպի Եգիպտոս։ Ինչ վերաբերում է Մելիք ալ-Ադիլին, ապա նա ընդառաջ ելավ իր որդուն և մեծ խնդությամբ դիմավորեց նրան։ Դամասկացիները դուրս գալով, տիրեցին ճողոպրածների ողջ ունեցվածքին։ Մելիք ալ-Ադիլը զորք վերցրեց, և իր որդու հետ եգիպտացիներին հետապնդելով մինչև Կահիրեի մատույցները, այնտեղ ճակատամարտ տվեց նրանց։ Եգիպտացիները ջախջախիչ պարտություն կրեցին, և Մելիք ալ-Աֆդալը փախավ մտավ քաղաք։ Կահիրեցիները սակայն մեծ ցնծությամբ ընդառաջ ելան Մելիք ալ-Ադիլին և նրան Կահիրե հրավիրեցին։ Նա տիրեց [քաղաքին], իսկ Մելիք ալ-Աֆդալը, վերցնելով իր մարդկանց, գիշերով փախավ Բոսրա։*

## 494. Եգիպտոսում Մելիք ալ-Քամիլի թագավորման և այդ ժամանակ Ասորիքում կատարված իրադարձությունների մասին

*Տիրելով Եգիպտոսին և, ինչպես երազում էր, այդ կերպ դառնալով սուլթան, Մելիք ալ-Ադիլը Ուռհայից բերել տվեց իր որդուն և թագավորեցրեց այնտեղ, իսկ ինքը ելավ գնաց Դամասկոս։ Ուռհայում զանազան կառավարիչների և զորագլուխների հետ միասին նա նստեցրեց իր մյուս որդուն, որի անունն էր*

Մելիք ալ-Ֆաիզ[482]։ Համայի տերը՝ Մելիք ալ-Մանսուր իբն Տաքիեդդինը տեսնելով, որ Մելիք ալ-Ադիլը հաղթեց իր եղբորորդիներին և սեփականեց թագավորությունը, նրա հետ դաշն կնքեց և նրան հանձնեց Մաբբուգն ու Եփրատի ափին գտնվող մի բերդ, որ կոչվում էր Կալա-Նաջմ[483]։

## 495. Իկոնիայի Ռուքնեդդին[484] սուլթանի արշավանքի մասին

1512 (1201) թվականին, մինչ Մելիք ալ-Ադիլը գտնվում էր Եգիպտոսում, Իկոնիայից առաջ խաղաց Քիլիջ Արսլանի որդի Ռուքնեդդինը և եկավ պաշարեց Մելիտենեն, որը պատկանում էր իր Մուիզեդդին[485] անունով եղբորը։ Վերջինս Մելիք ալ-Ադիլի փեսան էր դստեր կողմից։ Մելիտենեն պաշտպանելու համար ուղարկվեցին Ուռհայի զորքերը։ Սակայն այդ ժամանակ հա-
209 մարձակություն ստացավ Հալեպի տիրակալ // Մելիք աղ-Զա-
հիրը, որը պաշարելով Մաբբուգը, գրավեց այն և կործանեց նրա պարիսպներն ու միջնաբերդը։ Նա գրավեց նաև Եփրատի ափին գտնվող վերոհիշյալ բերդը։ Հետո շարժվեց դեպի Ապամեա և ավարի մատնեց Համայի տիրոջ ողջ երկիրը, որովհետև վերջինս դաշինք էր կնքել իր հորեղբոր հետ։ Բանակելով Համայի մոտակայքում՝ նա մեկ ամիս շարունակ կատաղի հարձակումներ էր գործում նրա վրա։ Համայի տերը, նեղ դրության մեջ ընկնելով, հաշտություն կնքեց նրա հետ։ Վերջինս մեկնեց այնտեղից և եկավ ճամբար խփեց Հոմսի մոտակայքում՝ պատրաստվելով երկրորդ անգամ պաշարել Դամասկոսը։

## 496. Ամիդի տիրոջ մահվան և Մոսուլի եկեղեցիների կողոպուտի մասին

Այդ ժամանակ Ամիդի տերն էր վերոհիշյալ Կուտբեդդինը, որը մի փառահեղ երիտասարդ էր։ Մի գիշեր Հիսն-Քեֆայում, որ գտնվում է Տիգրիս գետի վրա, նրա ծառաները խեղդեցին նրան և սենյակի պատուհանի հսկայական բարձրությունից նետեցին այգու մեջ։ Առավոտյան նրան մեռած գտան։ Հիսն-Մանսուրում նա ուներ մի եղբայր՝ Նասրեդդին[486] անունով, որը երեք օրից հասնելով Ամիդ, տիրեց եղբոր ողջ երկրին և նվաճեց բոլոր բերդերը։ Տիրախեղդ ծառային, որի անունն էր Ֆախրեդդին, Ամիդի տիրակալը մեծ պատիվներ էր տվել։ Շատ սիրելուց նրան կնության էր տվել նաև իր քրոջը և հիշյալ եղբորն էլ վռնդել էր նրա

պատճառով։ Սակայն նա դավաճանեց և չարությամբ հատուցեց [տիրոջը]։ Եվ ահա Նասրեդդինը, ձերբակալելով [Ֆախրեդդինին], հափշտակեց նրա ողջ ունեցվածքը և նրան դառնագույն տանջանքների ենթարկելուց հետո նետեց գուբի մեջ։ Հետո նա ամուսնացավ իր հանգուցյալ եղբոր կնոջ հետ, որ Մելիք ալ-Ադիլի դուստրն էր։

Այդ ժամանակ, մինչ Մոսուլի տիրակալը իր զորքերի հետ գտնվում էր դրսում՝ պատրաստվելով արշավել դեպի արևմուտք,
210 // սատանայի՝ դրդմամբ Նինվեի երկրի Բարտելա[467] գյուղում հակառակություն ծագեց քրիստոնյաների և տեղի մահմեդական քարոզչի միջև։ Երբ գանգատվեցին նրանից, գյուղապետը նրա գործած մեղքի համար պատժեց նրան գանահարությամբ։ Վերջինս եկավ Մոսուլ և, գոտի կապելով, ուրբաթ օրը աղաղակ բարձրացրեց մեծ մզկիթում։ Թեթևամիտ մահմեդականների մի բազմություն հետևեց նրան, և քաղաքում մեծ խռովություն ծագեց։ Նրանք թափով դուրս եկան մեծ մզկիթից, որպեսզի գնան ավերեն Բարտելան։ Սակայն հասնելով քաղաքի դարպասին և տեսնելով, որ այն փակ է, կտրուկ շրջվեցին դեպի Թագրիտցիների[488] մեծ եկեղեցին, խորտակեցին նրա դռները և, ներս մտնելով, հափշտակեցին այնտեղ եղած ամեն ինչ։ Նրանք եղծեցին նրա ողջ շքեղությունը՝ դռները, բեմը, և խլեցին եկեղեցու բոլոր գեղեցիկ սպասքները՝ արքայական վարագույրները, խաչերը, ավետարանները, ինչպես նաև եկեղեցում պահվող բոլոր արծաթյա և ոսկյա գավաթներն ու սկիհները։ Մաֆրիանը[489] Մոսուլում չէր։ Նրանք բռնությամբ մտան նրա սրահը և կողոպտեցին այնտեղ եղած ամեն ինչ։ Փորփրեցին սրահի հատակը, ջարդեցին դռներն ու պահարանները և խուզարկեցին պատերը։ Նրանք ահռելի քանակությամբ պարեն, հացահատիկ, ցորեն ու տարբեր տեսակի մթերքներ հափշտակեցին։

## 497. Մելիտենեի մասին

Արդ, Ռուքնեդդինը՝ Քիլիչ Արսլանի որդին, [1]512 (1201) թվականի հունիս ամսին եկավ պաշարեց Մելիտենեն և ութ օրից գրավեց այն։ Նրա եղբայրը, որ գտնվում էր ներսում, նեղ դրության մեջ ընկնելով, հանձնեց [քաղաքը] և, լքելով երկիրն ու իշխանությունը, թշվառ ու ձեռնունայն եկավ Ուռհա։

Այդ ժամանակ Կահիրեում և ողջ Եգիպտոսում սաստիկ սով էր տիրում, որովհետև Նեղոս գետը սովորականի պես չէր վա-

211 բարել և չէր ողողել այդ հողը։ Սովն այնպես սաստկացավ, // որ մարդիկ նույնիսկ սատկած անասուններ էին ուտում և շուկաներում նեխած միս վաճառում։ Սովից հետո [եգիպտացիները] պատժվեցին մահտարաժամով։ Հավասարապես մեռնում էին և՛ հարուստները, և՛ աղքատները։ Տները, գյուղերն ու քաղաքները ամայացան և անհամար թվով մարդիկ բնաջնջվեցին։ Իսկ փրկվողները, թշվառացած և հյուծված, ցրվեցին ողջ աշխարհում՝ հասնելով մինչև 'ստորին Բաբելոն։

## 498. Արևելցիների զորահավաքը և Դամասկոսի պաշարումը նրանց կողմից. Մելիք ալ-Ադիլի մեկնումը Եգիպտոսից

Այդ ժամանակ Սալահեդդինի վերոհիշյալ որդիները, որոնք կանգնած էին իշխանության գլուխ, նորից հավաքվեցին և պատրաստվեցին պաշարելու Դամասկոսը։ Այդ տարվա հունիս ամսին նրանք եկան պաշարման մեջ առան այն և սուրհանդակներ ուղարկեցին արևելցիների մոտ, որպեսզի նրանք էլ ելնեն ու պաշարեն Ուռհան։ Մոսուլի, ինչպես նաև Սինջարի ու Ջեզիրեի տերերը, պատրաստություն տեսնելով, եկան հասան մինչև Դունայսիր, ապա մեկնելով այնտեղից, գնացին Ռեշայնա։ Ուռհայի և Խառանի երկիրը դողաց սարսափից։ Մոտ երեք ամիս նրանք մնացին իրենց տեղում։ Ամիդի տերը նույնպես հավաքեց իր զորքերը և եկավ Ուռհա՝ իր աներձագների մոտ։ Երբ լուր ստացվեց, որ Մելիք ալ-Ադիլը դուրս է եկել Եգիպտոսից և հասել Երուսաղեմ, որոշվեց պատերազմ սկսել արևելցիների դեմ։ Սակայն արևելցիների սիրտը վախ ընկավ, և նրանք, հաշտություն խնդրելով, ձեռնունայն վերադարձան իրենց երկրները։

Մելիք ալ-Ադիլը Երուսաղեմ հասավ այդ տարվա հուլիս ամսին, մինչ նրա եղբորորդիները մարտնչում էին Դամասկոսի դեմ։ Դամասկոսում էին գտնվում վերը հիշված Շարաֆեդդինը և մի ուրիշ խելացի առաջնորդ, որի անունն էր Սարեմեդդին։ Ուռհայեցի զինվորներն այլևս հակառակորդ չունեին, քանի որ արևելցիները հաշտվել և վերադարձել էին իրենց երկիրը, իսկ հոռոմների
212 երկրի սուլթան Ռուքնեդդինը // գնացել պաշարել էր Արզրումը։ Այդ պատճառով նրանք պատրաստություն տեսան, և Մելիք ալ-Ֆաիզը բոլորին վերցրեց՝ Դամասկոսին օգնություն հասնելու համար։ Իսկ Մելիք ալ-Ադիլը հնարամտությամբ և խորամանկությամբ երկպառակություն սերմանեց իր եղբորորդիների միջև,

որոնք գժտվեցին իրար հետ։ Ավագին՝ Մելիք ալ-Աֆզալին նա տվեց Սամոսատի բերդն ու Սրուճը, և նա, հաշտություն կնքելով, հեռացավ Դամասկոսից։ Հալեպի տերը նույնպես գիշերով փախուստի դիմեց։ Դամասկացիները, նորից դուրս գալով, ավարի մատնեցին նրանց ճամբարը, որոնք երկրորդ անգամ ծաղրի առարկա դարձան։ Մելիք ալ-Ադիլը եկավ Դամասկոս և իր Մելիք ալ-Ձահիր որդուն տվեց Ալեքսանդրիան, իսկ Ուռհան հանձնեց իր մյուս որդուն, որը նշանակված էր Երուսաղեմի վրա և որի անունն էր Մուսա Մելիք ալ-Աշրաֆ[490]։ Սրան զորքերի հետ ուղարկեց Ուռհա։

## 499. Մարդինի պաշարման, Ռուքնեդդինի՝ իբերներից կրած պարտության և ժամանակի իրադարձությունների մասին

1513 (1202) թվականի ապրիլ ամսին Մելիք ալ-Ադիլը հաշտություն կնքեց իր եղբորորդու՝ Հալեպի տիրոջ հետ։ Ապա նա իր որդուն՝ վերոհիշյալ Մելիք ալ-Աշրաֆին, զորքերով ուղարկեց պաշարելու Դունայսիրը և Մարդինի լեռան ողջ շրջակայքը։ Ամբողջ ամառը նրանք մնացին այնտեղ՝ ավերելով երկիրը, ուտելով նրա բերքը և անարգել կերպով անելով իրենց ցանկացածը։

Այդ տարի Քիլիջ Արսլանի որդի Ռուքնեդդինը ջախջախիչ պարտություն կրեց իբերներից։ Արզումն ու շրջակա երկրները գրավելուց և Անձիտի ու Հիսն-Զիադի գավառները հնազանդեցնելուց հետո նա ճամբար էր խփել Հայոց երկրում, և նրա շուրջն էին հավաքվել իր զորքերը։ Իբերները հարձակվեցին և, սոսկալի հարված հասցնելով նրանց, անհամար ավար ձեռք բերին։ Նրա զորքերից մոտ քսան հազար մարդ սպանվեց, իսկ շատերը, այդ թվում նաև նրա եղբայրը, գերի ընկան։

## 500. Զորքերի վերադարձը Մարդինից

213 // Ինչպես ասացինք, ողջ ամառը Մարդինի երկրում մնալուց հետո, երբ վրա հասավ ձմեռը, զորքերը թողեցին եկան Ուռհա։

Այդ տարի քիչ անձրևներ եկան, և ամենուրեք հացահատիկի թանկություն ընկավ։ Հացահատիկն ու հարդը այնքան նվազեցին, որ մի քաշ[491] ցորենը վաճառվեց 12 արծաթով[492]։ Հացահատիկի նվազությունն այսպես զգացվեց ողջ այդ և հաջորդ տարին։

Այդ տարի ապրիլ ամսին զորքերը նորից պատրաստվեցին

գնալ Մարդինի երկիրը։ Երբ այնտեղի տիրակալները նեղ դրության մեջ ընկան և տեսան, որ օգնող չունեն, հարկադրված զիջեցին Ռեշայնան և հիսուն հազար ոսկյա դինար՝ ի հատուցումն Մարդինից փախչելու ժամանակ Մելիք ալ-Քամիլի կորցրած [հարստության]։ Այսպիսով հաշտություն կնքվեց, և նրանք ձեռք քաշեցին արշավանքից։ Ռեշայնան տրվեց Սալահեդդինի որդի Մելիք ալ-Աֆդալին։ Սակայն հաջորդ տարի նա գժտվեց իր հորեղբոր հետ։ Վերջինս ետ խլեց Սրուճն ու Ռեշայնան և տվեց իր որդուն, որ Ուռհայի տերն էր։

Այդ տարի Ամիդի տերը զայրացավ Սևերակի տիրոջ վրա և, բռնելով ու բանտարկելով նրան, գրավեց նրա բոլոր տիրույթները։

Նույն տարվա մեջ Կիլիկիայի իշխանը[493] պաշարեց Անտիոքը և, սաստիկ նեղելով նրան, կերավ ու փչացրեց նրա բերքը։ Հաջորդ տարի նա ավելի ևս ուժեղացրեց ճնշումը քաղաքի վրա և, հարձակվելով արևմտյան կողմից, ներխուժեց քաղաք ու տիրեց նրան։ Ֆրանկները սիրտ առան և, զենքի դիմելով, փորձեցին բռնել նրան, բայց նա ճողոպրեց ու փախավ և կարողացավ դուրս պրծնել։ Նրան հետապնդեցին, բայց չհասան։ Քաղաքը փրկվեց։

Այդ տարի Ամիդի տերը եկավ պաշարեց Կատտինա[494] կոչվող բերդը, որ գտնվում է Եփրատի ափին, և հարձակում ձեռնարկեց նրա դեմ։ Սակայն նա կորցրեց իր զինվորներից շատերին և ձեռնունայն ետ դարձավ։

Մենք նկարագրեցինք մինչև այժմ, այսինքն՝ մինչև 1514
214 (1203) թվականը կատարված դեպքերը։ // Թող աստված օգնի մեզ ողորմածաբար և հաշտություն ու խաղաղություն հաստատի իր ժողովրդի և եկեղեցու մեջ, ամեն։

## 501. Եգիպտոսում ծագած մահտարաժամի մասին

Այդ տարի, 1515 (1204) թվականին, Եգիպտոսում առաջացած սոսկալի ուժեղ սովից և դրան ուղեկցող մահտարաժամից հետո, որ վերը նկարագրեցինք, Նեղոս գետը սովորականի պես վարարեց և ողողեց այդ երկիրը։ Վարուցանք կատարեցին, առատ բերք ստացան և երկիրը շենացավ։ Սակայն հետո հանկարծակի մի սարսափելի մահտարաժամ ծագեց։ Մեռնողներն այնքան շատ էին, որ թաղող չկար։ Համաճարակին անթիվ բազմությամբ մարդիկ զոհ գնացին։

## 502. Ֆրանկ թագավորների արշավանքը դեպի Կոստանդնուպոլիս[495]

*Այդ տարի ֆրանկ թագավորները ոտքի ելան՝ Ասորիքի քրիս-
տոնյաներին օգնության հասնելու և հնարավորության դեպքում
սուրբ քաղաքը մահմեդականների ձեռքից փրկելու նպատակով։
Նրանցից ոմանք շարժվեցին դեպի կղզիները, իսկ այնտեղից
եկան Կոստանդնուպոլիս և, կատաղի հարձակում գործելով նրա
վրա, այն խլեցին հույների ձեռքից։ Տիրելով նրան՝ նրանք այն-
տեղ նստեցրին մի հույն պատանու։ Սա որդին էր այն կայսեր,
որին հույները որոշ ժամանակ առաջ կուրացրել և զրկել էին թա-
գավորությունից։ Այս պատանու մայրը ծագում էր ֆրանկներից։
Նրանից հետո հույներն այլևս երբեք թագավոր չունեցան[496]։ Պա-
տանին օգնություն խնդրեց [ֆրանկներից] և հնազանդվեց նրանց
բռնատիրությանը։ Ֆրանկները ողջ ձմեռ, մինչև Քառասնորդաց
պահքը, տիրեցին Կոստանդնուպոլսում և հաշտություն կնքեցին
Իկոնիայի սուլթան Ռուքնեդդին իբն Քիլիչ Արսլանի հետ։ Վեր-
215 ջինս նրանց խոստացավ ճանապարհ տալ իր երկրում՝ || հոգալով
նրանց կարիքները և ուղևորության համար անհրաժեշտ բաները։
Ոմանք էլ եկան ծովի ուղղությամբ մինչև Տյուրոս, Սիդոն, Աք-
քա ու Փյունիկիա և, դուրս գալով, ասպատակեցին մինչև Երու-
սաղեմի և Տիբերիայի մատույցները։ Նրանք մահմեդական գյու-
ղերից ահագին բազմություն գերեցին։ Առևանգեցին նաև բազ-
մաթիվ մարդկանց, որոնք գնում էին Եգիպտոս, ինչպես նաև
երևելիների կանանց ու երեխաներին, որոնք ճամփա էին ընկել
Դամասկոսից դեպի Եգիպտոս։*

## 503. Մելիք ալ-Աշրաֆի արշավանքը դեպի արևելք և արևելցիների դեմ մղված պատերազմը

*Հունաց 1515 (1204) թվականին Մոսուլի տիրակալ և աթաբեկ Նուրեդդինը պատրաստվեց և, զորք հավաքած, եկավ պաշարեց Թելլ-Աֆարը[497] իր հորեղբորորդու՝ Սինջարի տիրոջ հետ ունեցած· քենի պատճառով։ Սինջարի տերը դիմեց Մելիք ալ-Աշրաֆին, որը զորք հավաքեց՝ նրան օգնության հասնելու նպատակով։ Մեկնելով Ուռհայից՝ նա գնաց բանակեց Բեթ-Շաղե[498] անունը կրող գյուղի աղբյուրների մոտ։ Այնտեղ էլ հավաքվեցին եղբայրները՝ Մելիք ալ-Աշրաֆը, Սինջարի տերը, Նփրկերտի տեր Մելիք ալ-Աուհադը, Ամիդի, ինչպես նաև Սինջարի ու Ջե-*

զիրեի տերերը։ Լսելով այդ, Մոսուլի տիրակալը պատրաստված եկավ դիմակայելու նրանց։ Երբ մարտակարգերը դասավորվեցին և հնչեցրին շեփորներն ու թմբուկները, աստված մի քամի ուղղեց դեպի Մոսուլի տիրակալի կողմնակիցները։ Նրանց աչքերը կուրացան փչող քամուց, հողափոշուց և զորքերի ծխից։ Մոսուլցիները պարտվեցին ու փախան։ Դա Մելիք ալ-Աշրաֆի առաջին հաղթանակն էր։ Մելիք ալ-Աշրաֆի կողմնակիցները առաջ շարժվեցին և, հասնելով Մոսուլի մոտակայքը, հափշտակեցին Երկրի հանդերում կուտակված բերքը, կողոպտեցին գյուղերն ու ետ դարձան։

## 504. Ռուքնեդդին սուլթանի մահվան մասին

216 || 1517 (1206) թվականին մեռավ Աբուլֆաթահ մեծ սուլթանի որդի Քիլիջ Արսլանի որդի Ռուքնեդդինը։ Ռուքնեդդինից հետո թագավորեց և հոռոմոց երկրներին տիրեց՝ նրա մանկահասակ որդին, որի անունն էր Քիլիջ Արսլանշահ[499]։ Այդ ժամանակ հայտնվեց պատանու հորեղբայր Խոսրովշահը[500], որը, հալածվելով իր եղբայր Ռուքնեդդինից, ապաստան էր գտել մայրաքաղաքում և այնտեղ ամուսնացել մի հույն կնոջ հետ։ Լսելով եղբոր մահը, նա մեկնեց Կոստանդնուպոլսից և, թուրքմենական ցեղերի ուղեկցությամբ գալով պաշարելով Իկոնիան, պատերազմ սկսեց իր եղբորորդու դեմ։ Վերջինս պարտվեց և քաղաքն ընկավ [Խոսրովշահի] ձեռքը, որը բռնեց ու բանտարկեց պատանուն, իսկ նրա մեծամեծներին կոտորեց։ Այսպես Խոսրովշահը տիրեց հոռոմոց երկրներին։

## 505. Խոսրովշահի պարտությունը Մելիք ալ-Աշրաֆից

Այդ ժամանակ Խոսրովշահը դաշինք կնքեց Հալեպի տիրակալ Մելիք աղ-Զահիրի հետ, և վերջինս նախապատրաստված եկավ պաշարեց Համան։ Ութ ամիս շարունակ նա ամենօրյա հարձակումներ գործեց նրա վրա։ Մելիք ալ-Աշրաֆը պատրաստվեց Համայից դուրս վռնդել իր հորեղբորորդի Մելիք աղ-Զահիրին, որովհետև այն նվեր էր տրված իր դստերը։ Երբ Մելիք աղ-Զահիրը տեսավ, որ Մելիք ալ-Աշրաֆը կազմ ու պատրաստ հասել է Մաբբուգ, օգնական զորք խնդրեց Կապադովկիայի սուլթան Խոսրովշահից։ Վերջինս անհամար զորքեր ուղարկեց, որոնք մոտեցան Սամոսատի շրջակայքին։ Տեղեկանալով այդ մասին,

Մելիք ալ-Աշրաֆը իր զորքերի և բազմաթիվ արաբների հետ մեկնեց Մաբբուգից և ճակատամարտ տվեց ռումաց[501] զորքերին։ Վերջիններս պարտվեցին, և տրաբները գերեցին Խոսրովշահի զինվորներին, որոնք բաղկացած էին քսան-երեսուն հոգիանոց խմբերից։ Ռումաց [զորքերը] թիկունք դարձրին, և արաբներն ու Մելիք ալ-Աշրաֆի զինվորները տիրեցին նրանց ձիերին ու ու-
217 նեցվածքին, // մինչդեռ դրանից առաջ երկրները դողում էին Խոսրովշահի զորքերից։ Դա Մելիք ալ-Աշրաֆի երկրորդ հաղթանակն էր։ Մելիք ալ-Աշրաֆը բարյացակամ էր բոլորի նկատմամբ և մանկությունից վատություն չէր արել որևէ մեկին։

## 506. Հայոց Խլաթ քաղաքի վիճակի մասին

Հայաստանի այս քաղաքը՝ Խլաթը, թագավորության աթոռանիստն էր։ Շահարմենի մահվանից հետո թագավորեց Բեգթեմուրը[02], որը նրա ծառաներից մեկն էր։ Շահարմենի անժառանգության պատճառով որոշ ժամանակ թագավորելուց և հաջողությունների հասնելուց հետո Բեգթեմուրը մի ուրբաթ օր սպանվեց մզկիթում։ Նա ուներ մի փոքրահասակ որդի[503], որը չէր կարող զորքերի գլուխ կանգնել։ Երկրի իշխանությունն անցավ մի այլ ծառայի ձեռքը, որի անունն էր Հազարդինար[504]։ Տիրելով երկրին՝ նա որոշ ժամանակ մնաց թագավորական գահի վրա ու մեռավ։ Երկիրն ալեկոծվեց, քաղաքի մեծամեծները պառակտվեցին իրարից, որովհետև նրանցից յուրաքանչյուրն ուզում էր թելադրել իր կամքը։ Ոմանք որոշեցին թագավորեցնել Արզրումի տիրոջը, որը Խոսրովշահի եղբայրն էր, ոմանք էլ ուզեցին հրավիրել Մարդինի տիրոջը, ուրիշները խնդրեցին Մելիք ալ-Ադիլ մեծ սուլթանին, որպեսզի գահն զբաղեցնելու համար ուղարկի իր որդիներից մեկին, սակայն մյուսներն էլ նախընտրեցին Փահլևան[505] անունով մի ծառայի, որը զինվորների աջակցությամբ գրավեց երկիրը։

Նփրկերտի տերը, որը Մելիք ալ-Ադիլի որդին էր, պատրաստված մտավ այդ երկիրը, գրավեց սահմանամերձ բերդերն ու ետ դարձավ։ Մարդինի տերը նույնպես, բանակ և աշխարհազոր հավաքելով, մտավ երկրի խորքերը՝ Խլաթին տիրելու նպատակով։ Փահլևանը տեսնելով, որ շատերն աչք ունեն երկրի վրա, մտածեց, որ ավելի լավ կլինի, եթե ինքը գրավի այն, և դրա համար սպանեց Բեգթեմուրի մատաղ որդուն։ Մարդինի տերը, չկարողանալով ձեռք ձգել Խլաթը, ահագին ոսկի ծախսելուց հետո

218 *ձեռնունայն վերադարձավ Մարդին։ Իսկ Արզունի տերը // կեղծ դաշինք կնքեց Փահլևանի հետ և, հարմար առիթ գտնելով, սպանեց նրան։ Նփրկերտի տերը, զորքեր ստանալով իր հորից, զենքի ուժով առաջ շարժվեց և, վերցնելով իր համակիրներին, գրավեց երկիրը։ Խլաթ մտնելուց հետո նա գրավեց բազմաթիվ բերդեր, որոնց թվում՝ Մանազկերտի անառիկ բերդը, և մի շարք այլ վայրեր։ Արզունի տերը զղջաց, որ սպանել է Փահլևանին։*

### 507. Մելիք ալ-Ադիլի որդի Մելիք ալ-Աուհադի փախուստը Խլաթից[506]

*Արզունի տերը զորահավաք կատարեց և եկավ պաշարելու Խլաթը։ Երբ Խլաթի տեր Մելիք ալ-Աուհադը տեսավ, որ հակառակորդներն իրենից ուժեղ են, հեռացավ Խլաթից և ապաստանեց Մանազկերտի բերդում։ Արզունցիները եկան և պաշարեցին այդ բերդը։ Եվ մինչ նրանք մարտնչում էին իրար հետ, մեկ ամիս անց Մելիք ալ-Աուհադին բազում զորքերով օգնության հասավ նրա եղբայր Մելիք ալ-Աշրաֆը, որն Ուռհայի տերն էր։ Քաղաքը պաշարելուց ու նվաճելուց հետո նրանք գրոհով գրավեցին նաև միջնաբերդը։ Նրանք կոտորեցին բազմաթիվ մեծամեծների ու երևելիների, ինչպես նաև Արզունի տիրոջ հետ համագործակցած մարդկանց։ Մելիք ալ-Աուհադը լիակատար իշխանություն ստացավ Խլաթում։*

### 508. Իբերների, այսինքն՝ գյուրջիների արշավանքը Արզունի տիրոջն օգնելու նպատակով

*Արզունի տերը գնաց օգնություն խնդրեց իբերներից՝ Խլաթը վերագրավելու մտադրությամբ։ Նրան տրված զորքերը պաշարեցին և գրավեցին Մանազկերտը, որից հետո մոտեցան Խլաթին։ Խլաթի տերը ելավ և դիմադրություն ցույց տվեց նրանց։ Վերջիններս պարտվեցին, կոտորվեցին, թուլացան և հրաժարվեցին Խլաթին մոտենալու մտքից։ Մինչև ձմեռ այնտեղ մնալուց հետո, իբերները ձեռնունայն ետ դարձան։*

### 509. Մելիք ալ-Ադիլի արշավանքը դեպի արևելք և զորքերի առաջխաղացումը Սինջարի ուղղությամբ. իբերների, այսինքն՝ գյուրջիների առաջնորդ Զաքարիայի[507] եղբոր՝ Իվանեսի[508] գերումը

219 *Հունաց 1520 (1209) թվականին Մելիք ալ-Ադիլը // զորքերով եկավ և բանակեց Դունայսիրում։ Հավաքելով նաև Ջեզի-*

րեում գտնվող զորքերը և դողացնելով ողջ արևելքը՝ այդ տարվա դեկտեմբեր ամսին նա գնաց պաշարեց Շիգդարը, այսինքն՝ Սինջարը։ Կես տարի նա կատաղի հարձակումներով սաստիկ նեղություն պատճառեց նրան։ Արբելայի և Շահրզորի տեր Մուզաֆֆարեդդինը, ինչպես նաև Մոսուլի տիրակալը պատրաստվեցին օգնության հասնել Սինջարի տիրոջը։ Սակայն մինչ նրանք զբաղված էին դրանով[509], քառասուն օր անընդհատ ձյուն եկավ, և արևելքի քաղաքների տներն ու փողոցները լցվեցին ձյունով ու սառույցով՝ սոսկալի ուժեղ ցրտի պայմաններում։ Ձմռան ցրտից Մելիք ալ-Ադիլի զինվորները թուլացան, և նա հաշտություն կնքեց Սինջարի խնդրում։ Հետո գնաց գրավեց Մծբինն ու Խաբուրի գավառը և թողեց գնաց Խառան։

Մինչ նա գտնվում էր Խառանում, իբերներն սկսեցին ասպատակել Խլաթի երկիրը և դավ նյութել խլաթեցիների հետ՝ քաղաքն իրենց հանձնելու համար։ Նրանք գաղտագողի եկան իրենց առաջնորդ Իվանեսի հետ, որը իբերների գլխավոր հրամանատար Զաքարիայի եղբայրն էր։ Խլաթի տերը, զգալով խլաթեցիների և իբերների դավադրությունը, գիշերային հարձակում ձեռնարկեց։ Իբերների սիրտը կոտրվեց, նրանք նեղ դրության մեջ ընկան, իսկ Իվանես զորագլուխը գերի բռնվեց։ Հետո իբերները հաշտություն կնքեցին և փրկագնեցին իրենց զորագլուխ Իվանեսին ութսուն հազար դինարի և երկու հազար գերիների դիմաց։ Իսկ Իվանեսի դուստրը կնության տվին Խլաթի տեր Մելիք ալ-Ահադին։ Մելիք ալ-Ադիլը՝ ցնծության, իսկ նրա բոլոր հակառակորդները ահուդողի մեջ էին։

## 510. Կիլիկիո երկրի, ինչպես նաև Լևոն իշխանի[510] հնարամտության մասին

Հունաց 1520 (1209) թվականին Խոսրովշահ սուլթանը պատ-
րաստվեց և անհամար զորք հավաքեց՝ Կիլիկիո երկիրն ասպա-
տակելու նպատակով։ Երբ Կիլիկիայի իշխան Լևոնը տեսավ, որ
220 Խոսրովշահը պատրաստվում է մտնել իր երկիրը, // մի խորա-
մանկ դավ սարքեց։ Նրա մեծամեծներից մեկն ուղարկվեց սուլ-
թանի մոտ և ձևացրեց, թե գժտվել է իր տիրոջ՝ Լևոնի հետ։ Խիստ
ամբաստանելով վերջինիս սուլթանի առջև, նա հավաստիացրեց,
որ եթե իրեն զորք տրվի, ապա կմտնի հայոց երկիրը և նշանա-
վոր բերդերը կհանձնի սուլթանի ձեռքը։ Սուլթանը հավատաց ու
նրան տվեց իր բանակի երևելի և ազնվական մարդկանց, ինչպես

նաև ահագին ոսկի։ Երբ նա առաջնորդեց նրանց դեպի դարանակալման վայրը, թուրքերի կողմից չնկատված դարանակալները հարձակվեցին նրանց վրա և կոտորեցին այդ զորաբանակը։ Հրամանատարները գերի ընկան և շղթաների մատնվեցին։ Լսելով այդ, Խոսրովշահը զայրացավ ու զորահավաք կատարեց՝ հայերից վրեժ լուծելու և հաշիվ պահանջելու նպատակով։ Նա կազմ ու պատրաստ մտավ հայոց երկիրը և սկսեց ասպատակել ու ավարի մատնել այն։ Գրավելով Բերդուս[511] կոչվող բերդը, նա ուզեց մտնել երկրի խորքերը, բայց Մելիք ալ-Ադիլի միջնորդությամբ նրանց միջև հաշտություն կայացավ, և սուլթանը վերադարձավ իր երկիրը։

## 511. Սուլթան Խոսրովշահի սպանության մասին

1522 (1211) թվականին Խոսրովշահը պատրաստվեց մտնել դեռևս հույների ձեռքում մնացած երկրները։ Հույներն ունեին մի առաջնորդ, որի անունն էր Լասկարիս[512]։ Երբ սուլթանը զորք հավաքած ներխուժեց հունաց երկրները և սկսեց ավերել ու կոտորել, հույները նրա մոտ դեսպաններ ուղարկեցին՝ նվերներով, հաշտության խնդրանքով և տուրք վճարելու պատրաստակամությամբ։ Սակայն վերջինս չհամաձայնեց, և այդ պատճառով նրանք օգնություն խնդրեցին մայրաքաղաքի ֆրանկներից։ Օգնության փութալով հույներին՝ ֆրանկները հսկողության տակ առան երկրի մուտքը և ամբարտակներ կառուցեցին այդ կողմերով հոսող գետի վրա։ Ջրերը ողողեցին ողջ դաշտը և ցեխ առաջացրին։ Ֆրանկները հարձակվեցին թուրքերի վրա և ջախջախեցին նրանց։
221 Սուլթան Խոսրովշահը սպանվեց կռվում, իսկ // թուրք զինվորները սրի մատնվեցին։ Փախուստի դիմողներն ընկան ցեխի մեջ և թաղվեցին։ Նույնիսկ մեկ հոգի չփրկվեց նրանցից։ Ֆրանկները, անհամար ձիեր, զենք ու ոսկի ձեռք բերելով, ցնծությամբ ետ դարձան։

## 512. Խլաթի տիրակալ Մելիք ալ-Աուհադի մահվան մասին

Հունաց 1523 (1212) թվականին Խլաթ քաղաքում հիվանդացավ Մելիք ալ-Ադիլի որդի Մելիք ալ-Աուհադը։ Երկար ժամանակ հիվանդ մնալով և տեսնելով, որ հիվանդությունը սաստկանում է, նա Ուռհայից կանչել տվեց իր եղբայր Մելիք ալ-Աշրաֆին և նրան հանձնեց թագավորությունը։ Երբ արդեն Մելիք ալ-Աշրաֆը

գտնվում էր Խլաթում, նրա եղբայր Մելիք ալ-Ուհադը մեռավ։ Մելիք ալ-Աշրաֆը տիրեց Խլաթին, ինչպես նաև նրան ենթակա երկրներին ու Նփրկերտին՝ ժառանգելով եղբոր բոլոր գանձերը։

Այդ տարի թուրքմեններր գերեցին ծովափնյա Բիսինուս[513] քաղաքում մնացած հունաց թագավորին և բերին Իկոնիայի սուլթանի մոտ։ Նա ետ գնեց իր անձը երկու հարյուր հազար կարմիր դինարով, քաղաքը հանձնեց սուլթանին և հնազանդություն հայտնեց նրան։

## 513. Մելիք ալ-Ադիլի ժամանումն Ուռհա

1526 (1215) թվականին Մելիք ալ-Ադիլը եկավ Ուռհա իր փոքրահասակ որդու՝ Շիհաբեդդին Ղազի Մելիք ալ-Մուզաֆֆարի[514] հետ, որը տիրեց Ուռհայի և Խառանի գահին։ Այդ ժամանակ Ուռհան շենանում էր, իսկ ուռհայեցիները բարգավաճում էին առևտրով և շինարարական ձեռնարկումներով։ Ուռհայում քիչ տեղեր էին մնացել չվերականգնված։ Շիհաբեդդինը, ավելի քան իր մյուս եղբայրները, հետևում էր մահմեդական օրենքներին։ Միաժամանակ նա խիզախ հեծյալ ու պատերազմող էր։

Այդ ժամանակ մեռավ նրա հորեղբորորդի Մելիք ազ-Զահիրը՝ Հալեպի տերը։ 1526 (1215)* թվականին մեռավ նաև Մելիք
222 ալ-Ադիլը[515]։ ||

Երեք տարի Ուռհայում մնալուց հետո, Շիհաբեդդինը Ուռհան հանձնեց իր Մելիք ալ-Աշրաֆ եղբորը և ստացավ Խլաթն ու Նփրկերտը։ Հազիվ երկու տարի էր անցել Խլաթում Շիհաբեդդինի տիրակալումից հետո, երբ Մելիք ալ-Աշրաֆը որոշեց ետ վերցնել նրանից Խլաթը։ Զգալով այդ, Շիհաբեդդինը չհանդուրժեց և, ապստամբելով Մելիք ալ-Աշրաֆի դեմ, պատրաստվեց պատերազմել նրա հետ։ Մելիք ալ-Աշրաֆը զորք հավաքեց և մեկնեց Խլաթ։ Շիհաբեդդինը փակեց Խլաթ քաղաքի դարպասները և ճակատամարտ տվեց իր եղբայր Մելիք ալ-Աշրաֆին։ Սակայն խլաթեցիները և Շիհաբեդդինի զորքերը ակնհայտորեն ի վիճակի չէին պատերազմելու Մելիք ալ-Աշրաֆի դեմ։ Այդ պատճառով հարձակման անցնելով՝ Մելիք ալ-Աշրաֆի զորքերը ճնշում գործադրեցին նրանց վրա և ներխուժեցին քաղաք։ Շիհաբեդդինին բռնեցին ու նստեցրին Նփրկերտում։ Իշխանության գլուխ անցնելով՝ նա Նփրկերտում վերացրեց բոլոր մաքսային հարկերը և

* Լուսանցագրություն. «Մելիք ալ-Ադիլը մեռավ 1529 (1218) թվականին»։

արգելեց քրիստոնյաներին իրենց տներից դուրս գինի խմել կամ ցերեկը մեռել թաղել։ Երկու տարի հետո նա գնաց Մեքքա՝ աղոթելու։ Վերադառնալով Մեքքայից նա խախտեց իր խոստումը և նորից հաստատեց մաքսային հարկերը։ Սակայն ոչ ոքի նա չզրկեց՝ ո՛չ քրիստոնյաներին, ո՛չ հրեաներին, թեև մահմեդականներից բացի բոլորին ատում էր։

## 514. Երաշտի և նեղ տարիների, ինչպես նաև դժնդակ մորեխի հարձակման մասին, որ խժռեց անխղճաբար

Հունաց 1534 (1223) թվականին հացահատիկի պակասություն և թանկություն սկսվեց Բաբելոնից մինչև Եփրատ գետն ու Հալեպի սահմանները։ Թեև մարդիկ ցանք էին կատարում, բայց անձրև չկար։ Սերմերից շատերը ծլարձակեցին, սակայն քանի որ անձրև չեկավ, չորացան։ Իսկ այն սերմերը, որ ցանվում էին անձրևից հետո, թռչունների բաժին էին դառնում։ Որոշ տեղերում անձրև-
223 ներ եկան և ցանքսերը պտղաբերեցին, // սակայն երբ հասավ հնձի ժամանակը, մորեխները հարձակվեցին և, կարծես եփած-պատրաստ գտնելով, խժռեցին հացահատիկը։ Այդ պատճառով ցորենի մեկ քաշի[516] գինը աստիճանաբար բարձրացավ նախ՝ մինչև 15 արծաթ[517], ապա՝ մինչև 25։ Նույնը նաև գարին, բակլան, ոսպը, սիսեռը և մյուս բաները, որոնք եթե առաջ վաճառվում էին մեկ արծաթով, դարձան չորս արծաթ[518]։ Արևելցիները, առանց հարցնելու թանկն ու էժանը, կրում էին ուղտերով։ Երբ Ուռհայի քրիստոնյաները տեսան, որ ողջ ժողովուրդը դառնացած հուսահատվել է կյանքից, և ոչ ոք օգնության ձեռք չի մեկնում, քանի որ աստված զայրացել է աշխարհի վրա, որոշեցին պաղատել և ողորմություն բաշխել, որպեսզի աստված գթա իր արարածներին և անձրև ուղարկի։

## 515. Ուռհայեցիների պաղատանքը և ողորմությունները

Այդ ժամանակ Ուռհայի լեռան վանականների մեջ հռչակ էր վայելում Օտարների վանքում բնակվող Ռաբբան Բարսուման՝ մի պատվարժան ծերունի և օրինակելի միայնակյաց։ Քահանաները և քաղաքի բնակիչները որոշեցին վեր կենալ և պաղատանք մատուցել աստծուն։ Տղամարդիկ, կանայք և երեխաները շքախմբով դուրս եկան քաղաքից և Բորոտների ջրհորից այն կողմ

սկսեցին պաղատել, աղոթել և երկրպագել։ Բոլոր հակոբիկները, հույները և հայերը միաբերան ծնրադրությամբ երեսները հպում էին հողին և բաց սրտով ու մերկ գլխով դառնաղի արտասուք թափում։ Այսպես վարվեցին չորս օր, բայց անձրև չեկավ։

## 516. Հավատացյալների գանգատը քահանաներից
224 Ռաբբան // Բարսումայի առջև

Երբ ժողովուրդը տեսավ, որ անձրև չի գալիս, հակոբիկների, հույների և հայերի բազմությունը մոտեցավ Ռաբբան Բարսումային, որը փայլում էր այդ օրերին։ Նրանք ասացին. «Մենք արժանի չենք աստծու ողորմածության, որովհետև քահանաները, որոնք լույս և աղ պետք է լինեին, դարձել են խավար և անհամություն։ Նրանք զրկում են միմյանց, իրար վերաբերվում ատելությամբ ու չարամտությամբ։ Նրանք չեն խորշում երաժիշտների ընկերակցությունից և գինի են խմում, նույնիսկ հարբում ու փսխում են։ Ո՛չ աստծուց են ամաչում, ո՛չ մարդկանցից։ Նրանց տեսնելով՝ սովորական հավատացյալները, որոնք տկարամիտ ու անգիտակից են, մի՞թե ավելին չեն անի, քան նրանք։ Ամենավատն այն է, որ նրանք իրար զրպարտում են տիրակալների առջև, և եթե չլիներ վերջիններիս բարությունը, միմյանց կզրկեին ունեցվածքից ու կյանքից»։

Երբ Ռաբբան Բարսումա ճգնավորը հավատացյալներից լսեց այս բաները, կանչեց քահանաներին ու կղերականներին և ասաց նրանց. «Ձեր պատճառով է աստված զայրացել մեզ վրա»։ Նա հանդիմանեց նրանց բաղում կշտամբանքներով և պարտավորեցրեց աստծու խոսքով, որ այլևս գայթակղության պատճառ չդառնան ո՛չ հավատացյալների, ո՛չ էլ իրենց անձանց համար։ Նա ասաց. «Ահա ձեր աչքով իսկ տեսնում եք ձեր և ձեր որդիների կենաց վախճանը։ Ողջ ժողովուրդը համոզվեց, որ մեր չար մեղքերի պատճառով դադարեցին անձրևները»։ Հետո նա հորդորեց նրանց, որ ողորմություն բաշխեն, մոռանան միմյանց նկատմամբ իրենց սրտերում պահած քենը և հետևեն Սուրբ Գրքի պատվիրաններին։

## 516. Ուռհայեցիների բաշխած ողորմությունները, Սուրբ Կիրակիի մեծարումը և վարսերի ու խոպոպների խուզումը[519]

Այնուհետև ուռհայեցիներից յուրաքանչյուրն իր ուժերի ներածի չափով ողորմություն բաժանեց։ Ով պատճառ էր դարձել

որևէ մեկի բանտարկության, հանել տվեց հանցագործին բան-
տից։ Ով՝ քեն ուներ մի ուրիշի նկատմամբ, այդ օրերին մոռացավ
225 քենը։ Նրանք խոստացան // չբացել իրենց խանութները կիրակի
օրը և չծածկել իրենց գլուխները ավետարանի ընթերցման ժա-
մանակ։ Ողջ ժողովուրդը դադարեցրեց առևտուրը, խանութները
փակվեցին, իսկ արհեստավորները ձեռք քաշեցին իրենց արհեստ-
ներից, որովհետև սուգը համընդհանուր էր։ Այսպես յոթ օր նրանք
անցկացրին ծոմով, աղոթքներով, ողորմություններով, աղեր-
սանքներով ու տխրությամբ։ Ինչպիսի՜ ողբալի տեսարան էր, երբ
նրանք աղերսում ու պաղատում էին աստծուն։ Երբ Ռաբբան Բար-
սուման հորդորում էր ժողովրդին, նրան լսում էին ինչպես մի
մարգարեի։ Ավետարաններ և խաչեր բռնած՝ նրանք վանքերից
և քաղաքից բերին ու մեծարեցին սրբերի մասունքները։ Ժողո-
վուրդն այսպես աղաղակ էր բարձրացրել առ աստված, բայց
անձրև չէր գալիս։

Պաղատանքի ութերորդ օրը Ռաբբան Բարսուման տեսավ,
որ ամպերը խտանում են և կարծես անձրև պիտի տեղա, սակայն
թեև երկինքն ամպամած էր, ոչինչ չիջավ մի քանի կաթիլից բա-
ցի։ Այնժամ Ռաբբան Բարսուման սկսեց օրինակներով քաջալե-
րել և մխիթարել ժողովրդին, ասելով. «Երբ որևէ մեկը հիվան-
դանում է, անմիջապես կարիք է զգում բժշկի։ Իսկ բժիշկը ջա-
նում է դեղերով կամաց-կամաց վանել հիվանդի ցավերն ու տա-
ռապանքները։ Նույնպես և աստված, փառք իր անվանը, երկա-
րամտությամբ ուզում է կամաց-կամաց, օրեցօր բուժել նախ և
առաջ մեր հոգու ախտերը։ Եթե նա անձրև ուղարկեր չորրորդ,
հինգերորդ կամ ութերորդ օրը, մեր մեղքերը չէին մաքրվի, և
մեր հոգու հիվանդությունները չէին բուժվի։ Արդ, մեր աչքերի
արտասուքները երկրորդ մկրտություն դարձան մեզ համար։ Ես
ձեզ խնդրում եմ, սիրելիներս, տեսեք և զգուշացեք մեղքի մեջ
ընկնելուց, որպեսզի անցնի այն փորձությունը, որին մենք դա-
տապարտված ենք»։ Ինձ թվում է, թե Ռաբբան Բարսուման այդ
բանն ասաց մարգարեաբար, քանի որ եկան վատ տարիներ,
ուղեկցված երաշտով, մորեխով և տերերի բռնություններով, ո-
226 րոնք գյուղացիների համար // սերմացու ցորեն էին պահանջում։
Հետո նա աղոթեց ժողովրդի վրա, և ամեն մարդ գնաց իր տունն
ու այլևս դուրս չեկավ։

Մյուս օրը, փետրվարի 9-ին, աստված անձրև ուղարկեց և
ցուցաբերեց իր ողորմածությունը։ Ողջ աշխարհը ցնծաց։ Բայց
այդ տարվա բերքը քիչ եղավ։ Հաջորդ տարի երկիրը կարծես հրի

մատնվեց հացահատիկի պակասից ու տերերի բռնություններից։ Նրանք քաղաքբնակ եւնեւլիներից և հացահատիկ ունեցող գյուղացիներից խլում էին ցորենն ու գարին և բաշխում էին աղքատ ու չքավոր մշակներին՝ ցանելու համար։ Ստանալով սերմացուն՝ վերջիններս չնչին մասը ցանում էին, մնացածն ուտում, քանի որ տասնմեկ տարի անընդհատ բերք չեղավ։ Անձրևի պակասի պատճառով ոմանք թեև չնչին բերք էին ստանում, բայց երբ հասնում էր հնձի ժամանակը, այն էլ մորեխն էր խժռում։

Այսպես վատ էին վարվում Ուռհայի, Խառանի, Սրուճի, Ռեշայնայի, ինչպես նաև երկրամասի բոլոր կողմերի տերերը՝ հարստահարելով ու գրկելով շատերին։ Գյուղացիներին սերմացուով օգնելու օրենքը պարտադրեց Մարդինի տերը, սակայն դա անիմաստ կորուստ էր և՛ գյուղացիների, և՛ սերմացուի տերերի համար։ Թեև հինգ տարի շարունակ յուրաքանչյուր տարվա համար ունևորներից սերմացու էին ստանում, բայց այդ հինգ տարում կալերում մեկ տարվա բարիք չկուտակվեց, որովհետև սերմացուն առնում էին ոչ թե բարի կամեցողությամբ, այլ բռնությամբ։ Լեզուն անզոր է պատմել այն տանջանքները, չարչարանքները և հարկադրանքները, որ պատճառում էին վերակացուները։ Բարեհամբույր և ողորմած սուլթան Մելիք ալ-Աշրաֆը, տեղյակ լինելով Ուռհայի, Խառանի, Սրուճի և Ռեշայնայի բնակչության վիճակին, հրամայում էր չափով սերմացու բաժանել գյուղացի-
227 ներին։ ||

## 517. Ֆրանկների և հունգարական թագավորի[520] արշավանքը դեպի Աֆֆա և Կաճիրեի մոտակայքում գտնվող Դամիատ[521] քաղաքի պաշարումը նրանց կողմից

Հունաց 1531 (1220) թվականին* հունգարական թագավորը և Հռոմի պապի[522] կողմից ուղարկված լեգատը[523] անհամար զորքերով և ծովափի ռազմական ուժերի ու Աքքայի թագավորի[524] ուղեկցությամբ արշավանքի ելան։ Նավեր ու մակույկներ նստելով՝ նրանք ուղղություն վերցրին դեպի Եգիպտոսի ծովափին գտնվող Դամիատ քաղաքը և հենց ծովում էլ նավերի վրայից սկսեցին

* Լուսանցագրություն. «Այդ ժամանակ, 1530 (1219) թվականին, դուրս հորդաց հոների ժողովուրդը, որոնք այսօր թաթար են կոչվում։ Նրանք սրի մատնեցին ողջ պարսից տերության սահմանները և քառուքանդ արին պարսիկների բարեշեն քաղաքներն ու դավառները։ Պարսից Ջալալեդդին մեծ սուլթանը փախավ և ապաստան գտավ իբերների երկրի և Խլաթի մոտ գտնվող մի բերդում»։

մարտնչել նրա դեմ։ Կատաղի հարձակումներ գործելով նրա վրա՝ ֆրանկները մի զարմանահրաշ բուրդ շինեցին, որտեղ տեղավորեցին քաջասիրտ մարտիկներ, մանգղիոններ և զանազան պատերազմական մեքենաներ։ Քաղաքն առնելով օղակի մեջ և խափանելով նրա ելումուտը՝ շուրջ երկու տարի նրանք հարձակվում էին և՛ ծովից, և՛ ցամաքից՝ ճնշում գործադրելով դամիատցիների վրա։ Դամիատում այնպիսի սաստիկ սով առաջացավ, որ կերան նույնիսկ սատկած կենդանիներին։ Նրանք թուլացան կռվից ու սովից, իսկ ֆրանկները սրտապնդված՝ սրի ուժով գրավեցին Դամիատն ու կոտորեցին նրա անհամար բնակիչներին։

Գրավումից հետո գժտություն ծագեց հունգարական թագավորի[23] և լեգատի, այսինքն՝ Հռոմի պապի փոխանորդի միջև։ Վերջինս ասաց թագավորին. «Դամիատ քաղաքը քեզ չենք տա, իսկ մահմեդականներից խլված երկրներից էլ քեզ կհատկացնենք միայն մի մասը»։ Եվ ֆրանկների վատ սովորության համաձայն, հունգարական թագավորը խռովեց ու, վերցնելով իր զորքերը,
228 մեկնեց // իր երկիրը։ Ինչ վերաբերում է լեգատին, Աքքայի թագավորին, Ֆրեր եղբայրներին, Հոսպիտալիերներին և ծովափի զինվորներին, ապա նրանք ցրվեցին մահմեդականների երկրներում և սկսեցին ավերածություններ գործել։ Երբ Մելիք ալ-Ադիլի թագավոր որդիները՝ Եգիպտոսի մեծ սուլթան Մելիք ալ-Քամիլը և նրա եղբայր Մելիք ալ-Մուազզամը՝ Դամասկոսի տերը, տեսան, որ ֆրանկներն այդքան ուժեղացել են, մտահոգվեցին իրենց երկրների ճակատագրով։

## 518. Երուսաղեմի ավերումը

Հունաց 1536 (1225) թվականին Երուսաղեմի տեր Մելիք ալ-Մուազզամը հրամայեց քանդել Երուսաղեմի պարիսպն ու տները։ Երբ հրամանն ստացվեց, մահմեդականները քարը քարի վրա չթողին, բացի Հարության մեծ եկեղեցուց և Սողոմոնի տաճարից, որը մահմեդական մզկիթ էին դարձրել։ Քաղաքը վերածվեց ավերակակույտի, որպեսզի ֆրանկները չգան և չպաշարեն այն։ Մելիք ալ-Քամիլն իր եղբորը՝ Դամասկոսի և Երուսաղեմի տիրոջն ուղարկեց իրենց մյուս եղբոր՝ Միջագետքի տիրակալ Մելիք ալ-Աշրաֆի մոտ՝ կորահավաք կատարելու և օգնության հասնելու խնդրով։ Մելիք ալ-Աշրաֆը պատրաստություն տեսավ և, հավաքելով արևելքի զորքերն ու մի մեծ բազմություն արաբներից, ուղղվեց դեպի Եգիպտոս։ Եգիպտոսի և Մելիք ալ-Աշրաֆի զորքերը միացան իրար և ճակատամարտի պատրաստություն տեսան։

Երբ կողմերը դասավորվեցին դեմ-դիմաց, ֆրանկ զինվորներն իրենց վատ սովորության համաձայն, շտապեցին և նետվեցին մահմեդականների վրա։ Մահմեդական զորքերը, նկատելով ֆրանկների անզգույշ վարմունքը, նրանց հնարավորություն տվին, որպեսզի հեռանան Դամիատից։ Երբ ֆրանկները հեռացան, մահմեդական զորքերը փութով գրավեցին նրանց ճամբարը և ճանապարհը, որպեսզի նրանք Դամիատ չմտնեն։ Հետո մահմեդականներն սկսեցին կոտորել ֆրանկներին. սուրը գործեց մինչև ժամը ինը։ Մահմեդականներն ու ֆրանկները հոգնեցին ամբողջ օրվա ճակատամարտից։ Ֆրանկներն իրենց կյանքից ձեռք քաշեցին, որովհետև մահմեդականները գրավել էին Դամիատի ճա-
229 նապարհն ու նրանց ճամբարը։ // Նրանք չգիտեին, թե ինչ անեն։ Հայացք գցելով՝ նրանք մի բարձրադիր վայր նկատեցին և, թիկունք դարձնելով, փախան դեպի այդ բարձունքը։ Մահմեդականները մեծապես ուրախացան և, ողջ գիշեր աշխատելով, ահռելի Նեղոս գետր շրջեցին դեպի այդ վայրն ու շրջապատեցին այնտեղ ապաստանած ֆրանկներին։ Երեք օր նրանք այնտեղ տառապեցին քաղցից՝ իրենց ձիերի հետ միասին։ Մահմեդականները մտադիր էին սրի անցկացնել դրսում գտնվող ֆրանկներին, բայց խորհրդակցելով իրար հետ, հասկացան, որ եթե կոտորեն դրսի ֆրանկներին, կդժվարանա քաղաքի գրավումը ներսում գտնվող ֆրանկների ձեռքից, որովհետև վերջիններս մեծ ուժեր, զինամթերք և պարեն ունեին, որ ստանում էին ծովով։ Այդ պատճառով համաձայնության գալով և դեսպաններ ուղարկելով ֆրանկների մոտ, նրանց հաղորդեցին. «Մենք ձեզ պես չենք վարվի, հանձնեցե՛ք մեզ Դամիատը, և երդվում ենք, որ ձեզ վնաս չենք պատճառի»։ Ֆրանկները գոհ էին դրանից, որովհետև քաղցից մեռնում էին։ Ֆրանկներն իրե՛նց որոշ մարդկանց ուղարկեցին ներսում գտնվողների մոտ, որից հետո և՛ ներսի, և՛ դրսի ֆրանկները երդում տվին մահմեդականներին, վերջիններս էլ իրենց հերթին երդվեցին նրանց, և ֆրանկները Դամիատը տվին նրա տերերին։

Սա երրորդ հաղթանակն էր Մելիք ալ-Աշրաֆի, որն արժանի է բարի հիշատակի՝ իր բարի կամեցողության և բոլորի նկատմամբ ցուցաբերած լավ վերաբերմունքի համար։ Ֆրանկներից ամեն մեկը վերադարձավ իր երկիրը առանց որևէ արդյունքի, մինչ Մելիք ալ-Աշրաֆը, նստած Եգիպտոսում, զվարճանում էր կերուխումով և որսախաղով։ Մելիք ալ-Մուազզամը, որը վերադարձավ Դամասկոս, տեսնելով Մելիք ալ-Քամիլի և Մելիք ալ-

Աշրաֆի միաբանությունն ու փոխադարձ սերը, նախանձեց նրանց ու սկսեց վախենալ իր եղբայրներից։

### 519. Ջալալեդդինի[526] մեծ սուլթանի՝ Պարսից թագավորի արշավանքը դեպի Խլաթ և Հայաստան. Մելիք ալ-Քամիլի և Մելիք ալ-Աշրաֆի եղբայր Մելիք ալ-Մուազզամի՝ Դամասկոսի տիրոջ մահը 1539 (1228) թվականին

230 // Այս Ջալալեդդինը մի արկածախնդիր և կործանարար միտք հղացավ Դամասկոսի տեր Մելիք ալ-Մուազզամի նենգ խորհրդով։ Վերջինս իր եղբայրներից թաքուն դեսպաններ ուղարկեց պարսից թագավորի մոտ՝ դրդելով նրան ասպատակելու Խլաթի երկիրը և առաջարկելով դաշինք կնքել իր հետ ու իրար միջև խնամիական կապեր հաստատել։ Պարսիկներին նա հոյակապ նվերներ ուղարկեց։ Պարսից թագավորն իր հերթին նվերներ ուղարկեց Մուազզամին։ Պարսիկն իրականացրեց այդ չար ծրագիրը և, զորքեր ուղարկելով, ասպատակեց Խլաթի երկիրը։ Այդ ժամանակ Խլաթի տերն էր Մելիք ալ-Աշրաֆի մեծամեծներից մեկը՝ Հաջիբ Ալի անունով։ Սա, որ կառավարում էր Խլաթը, երկու տարի կարողացավ դիմադրել պարսից զորքերին, և աստծու կողմից նրան հաղթանակ բաժին ընկավ։ Նա գնաց գրավեց պարսիկներին պատկանող մի բերդ և նույնիսկ գերեց պարսից թագավորի կնոջը։ Ավարի մատնելով նաև նրա ունեցվածքը՝ նա մեծ ցնծությամբ վերադարձավ Խլաթ։ Մելիք ալ-Աշրաֆը Եգիպտոսում իմացավ Հաջիբ Ալիի սխրագործությունը պարսիկների հանդեպ։ Իսկ Մելիք ալ-Քամիլը սկսեց տխրել Հաջիբ Ալիի հաղթանակի առթիվ, այսինքն՝ սկսեց նախանձել նրան։

Երբ պարսից թագավորը լուր ստացավ, որ իր կինն ու գանձերը ավարի են մատնվել, անհամար զորք հավաքեց՝ Հաջիբ Ալիից վրեժ լուծելու նպատակով։ Նա եկավ պաշարեց Խլաթը և ամբողջ ամառ կատաղի հարձակումներ գործեց նրա վրա։ Բայց նա չկարողացավ գրավել Խլաթը և ողջ շրջակայքն ավերելուց ու բնակիչներին կոտորելուց հետո թողեց գնաց իր երկիրը։ Հաջորդ տարի նա նորից հավաքեց իր զորքերը և եկավ պաշարեց Խլաթը։ Խիզախաբար մարտնչելով՝ պարսից զինվորները գրավեցին քաղաքը և թափանցեցին մինչև նրա կեսը։ Պարսիկներն ու խլաթեցիներն սկսեցին կոտորել իրար։ Այդ տեսնելով՝ թագավորի սիրելի զորավարներից մեկը խորհուրդ տվեց պարսից թագավորին

231 և ասաց. // «Դեռ չհասած քաղաքի կենտրոնին մեր զինվորներն
արդեն սկսել են կոտորվել խլաթեցիների սրից։ Ավելի լավ է վերա-
դառնանք մեր դրսի ճամբարը և՛ սովով նեղելով խլաթեցիներին,
ընկճենք նրանց»։ Նրանք շրջվեցին ու դուրս եկան և շարունակե-
ցին կռիվը։

Երբ վրա հասավ խստաշունչ ձմեռը, կռիվը չդադարեց։ Հաջիբ
Ալին հերոսաբար դիմադրում էր և խելացիորեն կազմակերպում
ու ղեկավարում զորքերը։ Ամեն օր նա սուրհանդակներ էր ուղար-
կում իր տիրոջ՝ Մելիք ալ-Աշրաֆի մոտ, խնդրելով, որ օգնության
հասնի, քանի որ իր զորքերն ի վիճակի չէին վանելու պարսիկնե-
րին։ Իսկ Մելիք ալ-Աշրաֆը ուժեր էր խնդրում իր եղբայր Մելիք
ալ-Քամիլից։ Սակայն Մելիք ալ-Քամիլը սուտ պատճառաբանու-
թյուններ ներկայացրեց իր եղբայր Մելիք ալ-Աշրաֆին, թե իբր
ձմեռ է, և եգիպտական զորքերը չեն կարող հաղթահարել Խլաթի
ձյուները։

Այսպես երկու տարի անցավ, բայց Մելիք ալ-Աշրաֆը Խլաթ
չգնաց։ Խլաթեցիները երկու տարի տառապեցին քաղցից, մարտե-
րից ու շրջափակումից։ Նրանք այդ վիճակի մեջ էին, երբ մեռավ
Դամասկոսի և Երուսաղեմի տեր Մելիք ալ-Մուազզամը՝ Մելիք ալ-
Քամիլի և Մելիք ալ-Աշրաֆի եղբայրը։ Երկու եղբայրները, պատ-
րաստություն տեսնելով, եկան պաշարեցին Դամասկոսը՝ այն գրա-
վելու նպատակով։ Այնտեղից Մելիք ալ-Աշրաֆը պարսիկների դեմ
ուղարկեց իր ծառաներից մեկին՝ փոքրաթիվ ուժերի հետ, միաժա-
մանակ Հաջիբ Ալիին սպանելու կարգադրությամբ։ Այդ բանին Մե-
լիք ալ-Աշրաֆը հարկադրվել էր իր եղբայր Մելիք ալ-Քամիլի
դրդմամբ, որն ասում էր. «Ձեմ թողնի, որ զորքերը գնան Խլաթ,
մինչև քո ուղարկած մարդուն չհրամայես սպանել Հաջիբ Ալիին»։
Մելիք ալ-Քամիլը ոխ ուներ Հաջիբ Ալիի նկատմամբ, որովհետև
վերջինս իր տիրոջը գրել էր, որ հավատ չընծայի իր եղբայր Մե-
լիք ալ-Քամիլին, քանի որ նա նենգ և խորամանկ մարդ է։ Սա-
կայն աստծու կամքով այդ նամակն ընկել էր Մելիք ալ-Քամիլի
232 ձեռքը, // այդ պատճառով էլ նա ստիպեց իր եղբորը սպանել Հա-
ջիբ Ալիին։ Եվ երբ Մելիք ալ-Աշրաֆի ծառան իր զորքերով գնաց
մտավ Խլաթ, հնար գտնելով՝ սպանեց Հաջիբ Ալիին։

Պատմում են, թե Խլաթում այնպիսի սով է եղել, որ Մելիք
ալ-Աշրաֆի եղբայրակիցները կերել են նույնիսկ իրենց ոտնա-
մանների կաշին։ Լեզուն անզոր է վերարտադրել Խլաթի բնակ-
չության կրած դառն չարչարանքներն ու սարսափելի տառապանք-
ները։ Ո՛չ կաշի, ո՛չ էլ պիղծ կենդանիներ էին մնացել ուտելու

համար։ Երբ ժողովրդի մեծ մասը մեռավ սովից, մյուսներն ըստիպված էին հանձնվել և սրի մատնվել, քանի որ պարսից թագավորը երդմամբ վճռել էր՝ խլաթեցիներին շրջափակման մեջ պահելով սպառել սովից, մինչև Մելիք ալ-Աշրաֆը ելներ և դիմակայեր իրեն։ Երբ խլաթեցիներն իմացան, որ Մելիք ալ-Աշրաֆը պաշարել է Դամասկոսը՝ այն նվաճելու մտադրությամբ, դադարեցին դիմադրել պարսիկներին։ Վերջինները, հարձակման անցնելով, մտան Խլաթ և սրի անցկացրին այնտեղ մնացած բոլոր մարդկանց։ Արյունն այնտեղ հոսում էր ջրի նման։ Մելիք ալ-Աշրաֆի եղբայրն ու կինը, որը վերոհիշյալ Իբերացի Իվանեսի դուստրն էր, գերի ընկան։ Այնպես կողոպտեցին ու ավարի մատնեցին Խլաթը, որ մի շուն անգամ չթողին հաչելու համար։

### 520. Դամասկոսի առումը Մելիք ալ-Քամիլի և Մելիք ալ-Աշրաֆի եղբորորդու ձեռքից

*Հունաց 1540 (1229) թվականին Մելիք ալ-Քամիլը և Մելիք ալ-Աշրաֆը Մուաղղամի որդու ձեռքից խլեցին Դամասկոսը, և այն անցավ Մելիք ալ-Աշրաֆին։ Իրենց պատանի եղբորորդուն նրանք աքսորեցին Եգիպտոսի ճանապարհին գտնվող Կրակ և Շուբաք բերդերը։ Մելիք ալ-Աշրաֆը իր եղբայր Մելիք ալ-Քամիլին տվեց Ուռհան, Խառանը, Սրուճը, Ռեշայնան ու Ռակկան և դրանց փոխարեն ստացավ միայն Դամասկոսը։*

233 *Այդ տարին, երբ Խլաթը գրավվեց // Մելիք ալ-Աշրաֆի ձեռքից, իսկ Դամասկոսը՝ Մուաղզամի որդուց, և երբ Դամասկոսն անցավ Մելիք ալ-Աշրաֆին, իսկ Միջագետքը՝ Մելիք ալ-Քամիլին, հունաց 1540 (1229) թվականն էր։*

### 521. Ամփարորի[527], այսինքն՝ ֆրանկ թագավորների նոր արշավանքը և Երուսաղեմի առումը Մելիք ալ-Քամիլից այդ ամփարոր արքայի ձեռքով

*Հունաց 1538 (1227) թվականին ֆրանկների մեծ արքան, որը գժտվել էր Հռոմի պապի հետ, ուժեղ զորաբանակով արշավեց դեպի Աքքա քաղաքը։ Նա գերի վերցրեց Աքքայի թագավորին[528] և ուղարկեց [երկրի] խորքերը։ Ծովափի ֆրանկներն ահուդողի մեջ ընկան։ Իսկ մահմեդականները ծովով լուր ուղարկեցին Եգիպտոսի թագավոր Մելիք ալ-Քամիլին՝ զգուշացնելով նրան մեծ ու հնարագետ ամփարոր արքայից։ Մելիք ալ-Քամիլը, սակայն, սկսեց սիրալիրություն ցուցաբերել ամփարոր թագավորի*

նկատմամբ և նրան թանկարժեք նվերներ ուղարկեց։ Նրանց միջև կայուն բարեկամություն հաստատվեց։ Երուսաղեմը հանձնվեց ֆրանկների ամփարոր արքային, և նրանց միջև որոշ ժամանակ խաղաղություն տիրեց։ Ֆրանկները տեր դարձան Երուսաղեմին, և թագավորը վերադարձավ իր երկիրը։

### 523. Հեթանոս թուրքերի արշավանքը հյուսիսից և պարսից[529] մեծ թագավոր Ջալալեդդինի ջախջախումը թուրքերից, որոնք թուրքերեն լեզվով կոչվում են թաթարներ, իսկ ասորերեն՝ հոներ[530]

Հունաց 1542 (1231) թվականին Ջալալեդդինը, նստած Խլաթում, նեղություն էր պատճառում Նփրկերտի երկրին ու նրա տիրոջը, որը Մելիք ալ-Քամիլի և Մելիք ալ-Աշրաֆի եղբայրն էր։ Այդ պատճառով Նփրկերտի տերը, որի անունն էր Շիհաբեդդին Ղազի, փութով եկավ իր հիշյալ եղբայրների մոտ և, կշտամբելով նրանց, ասաց. «Ո՛վ պատվարժան եղբայրներ, մի՞թե մենք ունեցել ենք ավելի մեծ խայտառակություն, քան սա։ Ահա մեր եղբայրը գերված է թագուհու՝ Մելիք ալ-Աշրաֆի կնոջ հետ միասին։ Ավելին, մեզնից խլել են մեր նշանավոր և մեծ աթոռանիստը՝
234 // Խլաթը։ Դուք արքայավայել ձևով չեք վարվում և չեք մտահոգվում մնացած երկրների ճակատագրով։ Շուտով [Ջալալեդդինը] կտիրի իր ուզած վայրերին և կբռնի ձեր կոկորդից»։

Այնժամ նրանք խիստ գրգռվեցին և հսկայական զորահավաք կատարեցին։ Հետո համաձայնության եկան Իզզեդդին Քեյկոբադ[531] կապադովկացու հետ, իսկ Մելիք ալ-Աշրաֆն իր զորքերով այցելելով Ռումի սուլթանին, պատրաստության մեջ դրեց նաև ռումաց բանակը Երզնկայի գավառում։ Այնուհետև Մելիք ալ-Աշրաֆի զորքերը շարժվեցին Սեբաստիա քաղաքի կողմը, որտեղ բանակել էր պարսից զորքը։ Մարտակարգերը հանդիպեցին իրար և դասավորվեցին դեմ-դիմաց։ Կողմերը նախապատրաստվում էին թեժ և վճռական ճակատամարտի։ Ահռելի բազմությունները զինված կանգնել էին դեմ-դիմաց և ծարավի էին միմյանց արյան։ Պարսիկներն սկսեցին գրոհել ռումաց զորքերի վրա Երզնկայի կողմերում, որտեղ բանակել էին վերջիններս։ Մելիք ալ-Աշրաֆի զորքերը, տեսնելով, որ ռումաց [զորքերը] կոտորվում են, կատաղեցին, գրգռվեցին ու բոցավառվեցին և, ձեռք քաշած իրենց ժամանակավոր կյանքից, հարձակվեցին պարսիկների վրա։ Պարսիկները, նկատելով Մելիք ալ-Աշրաֆի զորաբանակները, ահուդողի մեջ ընկան։ Մահմեդականներն իրենց հերթին սար-

սափեցին պարսիկներից։ Բայց Տերը զայրացավ պարսիկների
վրա և հաղթանակը պարգևեց մահմեդականներին։ Նա մի սաս-
տիկ և անտանելի մրրիկ ուղղեց պարսիկների դեմ, և մահմեդա-
կան զորքերի փոշուց լիակատար խավարում տեղի ունեցավ՝ մութ
ամպի նման նստելով պարսիկների վրա։ Վերջիններս, թիկունք
դարձնելով, փախուստի դիմեցին Մելիք ալ-Աշրաֆի զորքերի առ-
ջևից, թեև մահմեդականների նիզակներն ու նետերը նրանց չէին
հասել, բացի, թերևս, շեփորների ու թմբուկների ձայնից և ձիերի
խրխնջյունից։

Պարսիկները խուճապի մատնվեցին և պարտություն կրեցին
մահմեդականներից։ Օ՜, ինչ սարսափելի տեսարան էր դա. պար-
235 սիկները ճզմում || և կոտորում էին իրար՝ մահմեդականների փո-
շու ամպից պատած խավարի պատճառով։ Նրանց աչքերը լցվել
էին փոշով, իսկ սրտերը՝ ահուդողով։ Պարսիկները, հալածելով
միմյանց, երկրի խորքում դեմ առան մի բարձր լեռան։ Եվ քանի
որ նրանք ոչինչ չէին տեսնում և վազում էին մեծ արագությամբ,
լեռան ստորոտում բախվեցին իրար և սկսեցին ընկնել ինչպես
պարսպից։ Պարսիկներից մոտ երկու հազար հոգի, գուցե և ավելի,
զոհվեց այնտեղ։ Այդ եղերական օրվանից հետո Մելիք ալ-Աշրա-
ֆի մահմեդական զորքերը եկան, հանեցին նրանց շորերը և խլե-
ցին կենդանի մնացած պարսիկների ձիերը։

Ինչ վերաբերում է Ջալալեդդին թագավորին, ապա նա քշերի
հետ ճողոպրեց իր երկրի կողմերը։ Այդ բանն իմացան թաթար
կոչվող թուրքերը, որոնք հակառակության մեջ էին Ջալալեդդինի
հետ, քանի որ նրանց միջև արյան խնդիր գոյություն ուներ։ Պար-
սից թագավորն սպանել էր թուրքերի թագավորի հորը, իսկ թուր-
քերի թագավորը՝ պարսից թագավորի եղբորը, ինչպես հայտնե-
ցինք վերևում։ Եվ թաթարները, որոնք գտնվում էին պարսկա-
կան սահմանների մոտ, փութով առաջ շարժվեցին՝ պարսիկներից
արյան հատուցում պահանջելու նպատակով։ Վերջիններիս նրանք
քշեցին ներքին սահմաններից մինչև Խլաթ քաղաքը, իսկ Խլաթից՝
մինչև Ամիդ։ Ջալալեդդինը դադար առավ Ամիդ քաղաքում՝ մտա-
ծելով, որ թաթարները կվախենան և չեն համարձակվի մտնել
հեռավոր երկրները, որոնք իրենց չեն պատկանում։ Սակայն թա-
թարները համարձակորեն թափանցեցին պարսիկների ետևից և
անխնա կերպով կոտորեցին նրանց։ Երբ պարսից թագավորը
տեսավ, որ թուրքերը հասան իրեն ու ետ չեն դառնում, փախավ
Ամիդ քաղաքից, և այլևս նրա մասին որևէ լուր չլսվեց։ Ոչ որ

չգիտե, թե ինչ պատահեց նրան։ Պատմում են, սակայն, որ նա սպանվել է Նփրկերտի մոտ։ Ոմանք էլ ասում են, որ հասել է
236 Բաբելոն։ // Միայն Տերը գիտե, թե ինչ է պատահել։

Հեթանոս և արյունարբու թաթարները, որոնք կործանեցին պարսից տերությունը, տեսան, որ Խառանի, Սրուճի, Ամիդի, Մարդինի, Մծբինի, Նփրկերտի և Մոսուլի տերերը ի վիճակի չեն դիմադրելու իրենց։ Այդ պատճառով նույն տարին, երբ այդ թուրքերը հալածեցին պարսիկներին, նրանք ճամբար խփեցին Նփրկերտի շուրջը՝ Ամիդի կողմերից եկող ու Տիգրիսին խառնվող մի մեծ գետի վրա, և սկսեցին թափանցել վերոհիշյալ քաղաքների գավառները։ Ինչպիսի՜ ոճիրներ գործեցին այդ չարագործ թուրքերը։ Ողջ աշխարհը անխնա կերպով սրի անցկացնելով և անհռելի ավար ձեռք բերելով՝ նրանք վերադարձան ներքին սահմանները։

## 524. Թաթարների վերադարձն այդ երկրները հունաց 1543 (1232) թվականին

Պարսիկներին հալածելուց մեկ տարի հետո թուրքերը նորից արշավանքի ելան։ Նրանք նույնիսկ աստծու գոյությունը չգիտեին և ո՛չ ծոմ էին պահում, ո՛չ էլ աղոթում։ Նրանք եկան առանց առաջնորդի, թագավորի կամ հրամանատարի։ Դա դառնագույն կատաղությամբ լցված մի բազմություն էր։ Սակայն այդ փորձանքը աստծուց եկավ այդ երկրների վրա, որոնց բնակիչները արժանի էին դրան։ Նրանք ձեռնամուխ եղան կոտորածի և այդ երկրներում քրիստոնյաներից ավելի թուրքեր և հրեաներից ավելի արաբներ ոչնչացրին։ Նրանք ամենևին չէին խնայում որևէ մեկին՝ ո՛չ տղամարդկանց, ո՛չ կանանց, ո՛չ երեխաներին, ո՛չ էլ ծծկերներին։ Բոլոր պատահողներին նրանք ոչնչացնում էին իրենց ձեռքում բռնած բարկության սրով։

Ո՜հ, ինչպիսի կարծր սիրտ ունեին այդ անիծյալները, որոնք մարդկանց թրատում էին հարդի պարկերի նման։ Մտնելով Մարդինից ներքև գտնվող Դունայսիր ամրոցը՝ նրանք կողոպտեցին նրա շուկան և խորտակեցին մահմեդականների մեծ մզկիթի դռները։ Հետո մահմեդականների մեծ կոտորած սարքեցին Մծբինի
237 երկրում։ Գրավելով // Սղերդ[532] քաղաքը՝ նրանք ավերեցին այն և կոտորեցին ողջ բնակչությունը, որից միայն հատուկենտ մարդիկ փրկվեցին։ Այնտեղից նրանք անասելի քանակությամբ ավար տարան։ Հետո սրի մատնեցին նաև հայոց Մծբինը և կողոպտեցին նրա ողջ հարստությունը։ Այսպես նրանք կողոպուտի մատնեցին բոլոր երկրները և անհամար մարդկանց կոտորեցին,

որոնց թվում նաև Տուր-Աբդինի[33] երկրի վանականներին։ Այսպիսով նրանք ասպատակեցին բոլոր երկրները։ Զարմանալի բան էր, թե ինչպես էին խուճապի մատնվել ծովից ծով բնակվող բոլոր ժողովուրդները։ Թագավորներն ընկել էին ահուդողի մեջ, և չկար մեկը, որ դիմադրեր նրանց։ Նրանք այնպիսի ուժ չունեին, որ գերազանցեր իրենց գրաված երկրների տերերին։ Աստված էր, որ նրանց սարսափը տարածեց ողջ աշխարհում։ Այսպես նրանք գերեցին, կողոպտեցին ու ավար ձեռք բերին, որի նմանը վաղընջական դարերից չէր եղել։

## 525. Մելիք ալ-Քամիլի արշավանքը և Ամիդի պաշարումն ու ապշեցուցիչ նվաճումը այդ հնարագետ [թագավորի] կողմից

*Հունաց 1543 (1232) թվականին, երբ Եգիպտոսի թագավոր
Մելիք ալ-Քամիլը լսեց արևելքի երկրներում թուրքերի, այսինքն՝
թաթարների գործած ոճիրները, պատրաստություն տեսավ և
Եգիպտոսից մինչև Նփրկերտի, Սինջարի և տաճկաց Մծբինի բո-
լոր մահմեդականներից զորք հավաքեց։ Անհամար զորքերն ըս-
կըսեցին նախապատրաստվել։ Այնուհետև նա շարժվեց դեպի
Խառան քաղաքը և մեկ ամիս մնաց այնտեղ՝ սպասելով անիծյալ
և բարբարոս թաթար ժողովրդին։ Երբ թաթարներն իմացան, որ
Մելիք ալ-Քամիլը անցել է Եփրատից արևելք և հասել Խառան,
238 թողին փախան։ Նրանք ո՛չ բանակատեղ ունեին, // ո՛չ էլ մի որո-
շակի բնակավայր, այլ գիշերային գայլերի նման հոշոտում, պա-
տառոտում ու ոչնչացնում էին բոլոր պատահած մարդկանց։ Եվ
այսպես, ահռելի ավարով նրանք վերադարձան արևելքի ներքին
սահմանները։*

*Երբ թուրքերը թողին հեռացան, Մելիք ալ-Քամիլն ու Մելիք ալ-Աշրաֆը տեսան, որ իրենք այլևս հակառակորդ չունեն, բացի Ամիդի տիրոջից[34], որը մի թուլամորթ, անառակ և անբարոյական մարդ էր։ Երբ նա լսում էր իր երկրում ապրող որևէ մահմեդականի կամ քրիստոնյայի կնոջ համբավը, ձեռք էր դցում նրան։ Նա պահում էր մի գարշելի պառավի, որը շրջում էր քաղաքների ու գյուղերի բաղնիքներում և, որտեղ մի գեղեցիկ կին էր տեսնում, հայտնում էր այդ թշվառականին։ Այսպես նա տիրում էր երևելի մարդկանց դուստրերին և անառակաբար շնանում նրանց հետ՝ առանց վախենալու աստծուց և առանց ամաչելու իր եղբայրակից թագավորներից։ Երբ հատուցող աստված տեսավ, որ հույս*

չկա, թե նա դարձի կգա, դրդեց Մելիք ալ-Քամիլին վրեժ լուծել Ամիդի տիրոջից։

Եվ Մելիք ալ-Քամիլը[535] Մելիք ալ-Աշրաֆի ու բոլոր ամիրաների ուղեկցությամբ հսկայական զորքով եկավ պաշարեց Ամիդ քաղաքը։ Տասնհինգ օր նա մնաց այնտեղ, բայց գրոհ չձեռնարկեց, հուսալով, որ կարող է այն գրավել համոզելով։ Երբ նրա տերը չհամոզվեց, Մելիք ալ-Քամիլն ու նրա հետ եղած ամիրաները գոտեպնդվեցին, բոլոր գինվորները զենք առան, և նա հարձակում գործեց քաղաքի վրա։ Նրանք միանգամից գրավեցին նըշանավոր և անառիկ Ամիդ քաղաքը, որը շատ թագավորներ էին պաշարել, բայց կարողացել էին գրավել մեծ ջանքերի գնով[536]։ Իսկ Մելիք ալ-Քամիլը Ամիդին տիրեց մեկ ժամ տևած գրոհով,
239 չտալով ոչ մի սպանված։ // Հետո Մելիք ալ-Քամիլը իր ծառաներից մեկին՝ մի ներքինու փոքրաթիվ զորքով ուղարկեց քաղաք։ Սա մի չվան նետեց Ամիդի տիրոջ վիզը և, շան նման քարշ տալով արքունի պալատից, բերեց մինչև Մելիք ալ-Քամիլի վրանը, որը գտնվում էր քաղաքից դուրս, ճամբարի կենտրոնում։ Վերջինս մեծ նեղություններ պատճառեց նրան, մինչև որ ստացավ Ամիդի երկրի անառիկ բերդերն ու մնացած շրջանները։ Ամիդի տիրոջը՝ նրա ընտանեկիցների հետ, Մելիք ալ-Քամիլը աքսորեց Եգիպտոսի հեռավոր գավառները։ Այսպես իսպառ վերացավ Ամիդի տիրոջ թագավորությունը, որն արժանի հատուցում ստացավ աստծուց։

## [526]. Արբելա քաղաքի տիրոջ՝ Մուզաֆֆարեդդինի մահը և արբելացիներին բաժին ընկած դառն չարչարանքները[537]

Հունաց 1545 (1234) թվականին մեռավ Արբելայի և Շահրըզորի տիրակալ Մուզաֆֆարեդդինը, որը մոտավորապես հարյուր տարեկան ծերունի էր։ Քանի որ նա ժառանգներ չուներ, կենդանության օրոք իր երկրները խոստացել էր Մելիք ալ-Ագիլի որդիներին։ Սակայն երբեմն էլ խոսք էր տվել Բաղդադի խալիֆին[538], որովհետև նրանց երկրները մոտ էին իրար, և խալիֆի գահը մեծ համարում ուներ։ Մուզաֆֆարեդդինին այդ պատճառով ծաղրում էին իր կենդանության օրոք։

Երբ Մուզաֆֆարեդդինի վախճանը հասավ, և նա հրաժեշտ տվեց կյանքին, նրա զորահրամանատարների մեջ երկպառակություն ծագեց։ Ոմանք ցանկանում էին Մելիք ալ-Ադիլի որդինե-

րին, ոմանք էլ խալիֆին։ Խալիֆը շտապ ահագին զորքեր ուղարկեց՝
Արբելա քաղաքը գրավելու նպատակով։ Քաղաքի բնակչությունը
թշնամական դիրք բռնեց. ոմանք միաբանեցին այն զորագլուխների
240 հետ, // որոնք ցանկանում էին Մելիք ալ-Աշրաֆին ու Մելիք ալ-
Ադիլի որդիներին։. Նրանք փակեցին քաղաքի դարպասները և,
բարձրանալով պարսպի վրա, սկսեցին կռիվ մղել խալիֆի զոր-
քերի դեմ։ Նրանք գոռում էին. «Մենք ուրիշ թագավոր չունենք
Մելիք ալ-Աշրաֆից բացի»։

*Խալիֆի զորքերը, տեսնելով արբելացիների թշնամական վերաբերմունքը, ուժեղացրին հարձակումը քաղաքի վրա և գրավեցին այն։ Մտնելով քաղաք՝ նրանք սկսեցին սրի անցկացնել քաղաքացիներին և դառն մահով ոչնչացրին բնակչության մեծ մասը։ Հետո նրանք քաղաքը կրակի մատնեցին և արեցին իրենց ուզածը։ Եվ քանի որ Ադիլի որդիները հեռու էին, արբելացիներն օգնություն չստացան, նրանց տները քարուքանդ եղան, իսկ իրենք էլ մեծ մասամբ կոտորվեցին։*

## [527]. Մելիք ալ-Քամիլի արշավանքը դեպի Ասորիք՝ Կապադովկիայի դեմ պատերազմելու նպատակով. զինու նվազումը այդ տարում[539]

*1545 (1234) թվականին Մելիք ալ-Քամիլը մտավ Ասորիք։
Նրա հետ էին Եգիպտոսի, Պաղեստինի ու Դամասկոսի զորքերը,
նրա եղբայր Մելիք ալ-Աշրաֆը և Համայի ու Հոմսի թագավորը՝
իրենց զորքերով։ Ողջ արևելքը՝ Մոսուլը, Սինջարը, Մծբինը,
Մարդինը, Ամիդը և նրա եղբայր Մելիք ալ-Ղազին՝ Նփրկերտի
տերը, հավաքվեցին նրա զենքի տակ, բացի խալիֆից, որը զորք
չուղարկեց։ Նրանք կազմեցին մի հսկայական բազմություն, բաղ-
կացած մոտ հիսուն հազար հոգուց։ [Մելիք ալ-Քամիլը] շատ
հպարտ էր, և նրա հոգին հրճվանքի ու ցնծության մեջ էր։ Նրանք
գնացին և բանակ դրին Հիղտ[540] գետի ափին՝ պատրաստվելով
մտնել Խոսրովշահի որդի [Քեյկոբադի] երկրները, այսինքն՝ Կա-
241 պադովկիա, որն այժմ // կոչվում է Ռումի երկիր։ Երբ ռումաց
զորքերն ու թագավորը լսեցին այդ, վրա հասան և զբաղեցրին
ելումուտի ճանապարհները, որպեսզի Մելիք ալ-Քամիլի բանակ-
ները չկարողանան ներխուժել։ Եվ քանի որ լեռները դժվարան-
ցանելի էին, Մելիք ալ-Քամիլը և նրա հետ եղող ամիրաները չկա-
րողացան ներս թափանցել, բայց և չուզեցին անմիջապես ետ
դառնալ։*

Մոտ մեկ ամիս նրանք մնացին այնտեղ, սակայն չկարողացան ոչինչ անել։ Ավելին, Մելիք ալ-Քամիլի զորքերը խիստ նեղության մեջ ընկան։ Ասում են, որ հալեպյան մեկ քաշ[541] գարին վաճառվել է իննսուն նասիրի[542] արծաթով[543]։ Նրանց ձիերը, ուղտերն ու ջորիները հարդի փոխարեն ծառի տերևներ էին ուտում։ Ասում են նաև, որ երբեմն դամասկյան մեկ լիտր հացը վաճառվել է երեք արծաթով[544]։

Այնուհետև թագավորը փոքրոգություն ցուցաբերեց և ուղարկեց ութ հազար հոգուց բաղկացած մի զորագունդ, որը սոսկալի գերեվարության մատնեց Հիսն-Մանսուրի և նրա գավառի բնակիչներին՝ երեխաներին, կանանց ու տղամարդկանց։ Տները կրակի մատնվեցին և երկու [.....] հինգ՝ ոչ ևս, սպանվեց[545]։ Հետո նա հրաման արձակեց գերի չվերցնել [....][546] բոլորին։ Որոշ ժամանակ անց թագավորը մեկնեց այնտեղից և եկավ Սևերակ ամրոցը, որը գտնվում է [......][547] կոչվող գետի վրա։

Այդ տարի գինու նվազություն եղավ, և այն վաճառվեց [.....][548]։

# ՀԱՎԵԼՎԱԾ Ա.

## [ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ. Chabot-II, էջ 242—350]

258 Այդ ժամանակ Սարգիս հայր և նրա եղբայր Հովհաննեսը ըս-
կըսեցին պառակտում սերմանել[549]. իբրև թե Պետրոսի[550] գրության
մեջ պարսավելի խոսքեր կային, որոնք չէին կարող ընդունվել
ուղղափառների[551] կողմից։ Սակայն նրանք չէին հասկանում բառերի
իմաստը, ոչ էլ նպատակը, որի համար նրանք ասված էին։ Շա-
տերը հետևեցին նրանց, և հայերի մեջ հերձված առաջացավ։
Պետրոսի աշակերտ Հուլիանոսը[552], որը և հաջորդեց նրան գահի
259 վրա, // նրանց պատասխանեց իր ուսուցչի՝ Պետրոսի փոխարեն,
բացատրելով նրանց հուզող խոսքերի իմաստը։ Նրանք դժվարու-
թյամբ հրաժարվեցին իրենց գործունեությունից, բայց մնացին
որպես հերձված։

* * *

261 Սկզբնական դարերից մի կարգ էր հաստատվել, որ փոխանցվում էր եկեղեցում. ստեղծվել էր չորս աթոռ՝ Հռոմինը, Աղեքսանդրիայինը, Եփեսոսինը (որը Եփեսոսի ավերումից հետո կոչվեց Կոստանդնուպոլսի) և Անտիոքինը։ Վերջինիս տարածությունը նույնքան մեծ էր, որքան մյուս երեք աթոռների տարածությունը, քանի որ այն ձգվում էր Ասիայի ծովից ու Հռոդոսից մինչև արևելքի սահմանը, որ աշխարհի ծայրն է։ Ուստի ոչ միայն Անտիոքը, այլ նաև ողջ Պարսկաստանն ու Հայաստանը տնօրինվում էին Անտիոքի պատրիարքի կողմից։

* * *

291 Կոստանդիանոս[553] կայսրը, որը կոչվեց Դուկաս, կարգադրեց վերսկսել հալածանքները ուղղափառների[554] նկատմամբ, ընդ ո-

րում ոչ միայն հակոբիկների, այլ նաև հայերի։ Բռնվեցին բազ-
մաթիվ եպիսկոպոսներ, այդ թվում նաև Աթանասիոս[555] պատրի-
արքը, որը բանտարկվեց Մելիտենեի քաղկեդոնական մետրապո-
լիտի վանքում։

* * *

306 ... Նրա վրա ոսկի ծախսեց[556]։ Նա փախավ եկավ Հռոմկլա։
Իսկ երկրի տիրակալը, որ կոչվում էր Շահարմեն[557], դեսպան-
ներ ուղարկեց կաթողիկոսի մոտ՝ պահանջելով այդ վանականին։
Սակայն կաթողիկոսը չհանձնեց նրան։ Տիրակալը զայրացավ և
հրամայեց իր տերության մեջ չճանաչել ու չընդունել կաթողի-
կոսին։ Սասունի բերդի տերը, որը մի հայ էր՝ կաթողիկոսի ցե-
ղից[558], կաշառեց Շահարմենին և հայտնեց նրան, թե ինքն ունի
մի որդի, որին և օրենքով պատկանում է կաթողիկոսությունը։
Օգնության դիմաց նա շատ ոսկի խոստացավ։ Տիրակալը համա-
նություն տվեց և, հավաքելով մոտ քառասուն եպիսկոպոսի, նր-
րանցից մի ծերունու[559] կաթողիկոս ընտրեց։ Հետո այդ ծերը
307 օծեց // բերդապետի պատանի որդուն։ Պատանին տիրեց Հայոց
երկրներին, եպիսկոպոսներ ձեռնադրեց և մյուռոն օրհնեց։ Երբ
Գրիգորիոսը[560], որն այնժամ կաթողիկոս էր Հռոմկլայում, իմա-
ցավ այդ բանը, մի դեսպան ուղարկեց Բաղդադ և օգնություն
խնդրեց մահմեդականների խալիֆից[561]։ Մեծ ծախսերի գնով նա
մի նամակ ստացավ՝ ուղղված Բեգթեմուրին, որն այդ ժամա-
նակ տիրում էր Հայաստանին ու Խլաթին։ Երբ խալիֆի գրությու-
նը հասավ Բեգթեմուրին, նա ընդունեց այն և հրամայեց պաշ-
տոնազրկել այդ պատանուն ու նրա ձեռնադրած եպիսկոպոսնե-
րին։ Եվ այսպես Գրիգորիոսը նորից ստացավ Հայոց երկիրը։

* * *

## 310 Պատրիարքի[562] ժամանումը Մար-Բարսումա վանքը և հունաց կայսեր կողմից ուղարկված նամակներն ու դեսպանը

311 Որոշ ժամանակ Մարդինում մնալուց հետո // պատրիարքը
նորից վերադարձավ Մար-Բարսումա վանքը։ Այդ ժամանակ՝ հու-
նաց 1484 (1173) թվականին, պատրիարքի և Հայոց կաթողիկո-
սի[563] մոտ մի դեսպան եկավ հունաց կայսր Մանուելի կողմից,
որի մականունն էր Ծիրանածին[564]։ Դեսպանը, որ կոչվում էր
Քրիստափոր[565], բերել էր նամակներ խաղաղության կոչով։ Նա

պահանջեց պատրիարքից միություն հաստատել իրենց հետ։ Քաղկեդոնականների թշնամանքը չափից անցավ։ Սակայն ուղղափառության ճշմարտությունը ցույց տալու համար [պատրիարքը] մի ընդարձակ նամակով շարադրեց մեր՝ ուղղափառներիս դավանանքի ճշմարիտ բովանդակությունը, միաժամանակ դրելով նաև կայսեր նամակների պատասխանը։ Նա ուզեց նաև մեզանից մեկին՝ Թեոդորոս[565] վանականին, որ իր աշակերտն էր, դեսպան ուղարկել մայրաքաղաք, բայց Թեոդորոսի ճամփորդությունն ընդհատվեց Մելիտենե հասնելուց հետո։ Նամակները Քրիստափորի միջոցով տեղ հասան, սակայն որևէ արդյունք չտվին, քանի որ ինչպե՞ս կարող էին քաղկեդոնականներն ընդունել ուղղափառների հավատո հանգանակը։

* * *

326 Հայոց կաթողիկոսի և նրա հաջորդի, ինչպես նաև եկեղեցու խռովարար Բար-Վահրունի մահը

1504 (1193) թվականի հունիս ամսին, Պենտեկոստեի երկուշաբթի օրը, մեռավ Հայոց Գրիգորիոս[567] կաթողիկոսը։ Ենթարկվելով հրեշտակի հարվածին՝ նա հանկարծակի վախճանվեց Կիլիկիո երկրում։ Գահը ժառանգեց նրա պատանի եղբորորդին[568]։ Դահակալումից մեկ տարի անց որոշ քինախնդիր մարդկանց դրդմամբ Կիլիկիայի իշխան Լևոնը ձերբակալել տվեց նրան և բանտարկեց մի անմատչելի բերդում։ Հետո նա զավթեց Հռոմկլան և հափշտակեց նրա բոլոր սպասքներն ու տարիների ընթացքում այնտեղ կուտակված հարստությունը։ Այդ նախանձ մարդիկ, որոնք հեռու էին աստծուց, հնար գտան վերացնելու վերոհիշյալ պատանի[569] կաթողիկոսին։ Համոզելով նրան, թե իբրև ուզում են փախցնել բերդից, գիշերով նրան իջեցրին բերդապարսպից։ Բայց քանի որ նա հաղթանդամ ու մեծամարմին մի երիտասարդ էր, պարանը, որով նրան իջեցնում էին, կտրվեց, գուցե և, ինչպես ասում են, կտրեցին. Տերը գիտե։ Դժբախտն ընկավ այդ հսկայական բարձ-
327 րությունից, // և նրա անդամները ջախջախվեցին։ Այդ փառահեղ պատանին ողբալի վախճան ունեցավ, փշրվեց բազմաթիվ մասերի։ Գահն անցավ նրա ազգականներից մեկին՝ Ապիրատ[570] եպիսկոպոսին։ Նա կաթողիկոս հռչակվեց և նստեց Հռոմկլայում։ Որոշ ժամանակ անց նա նույնպես դուրս եկավ բերդից և կորստյան մատնվեց, ինչպես ցույց կտանք ստորև։

* * *

### 327 Մար-Բարսումա վանքում գումարված ժողովի և Բար-Վահրունի մահվան մասին

*Այդ տարի, Սուրբ [Բարսումայի] տոնի հինգշաբթի օրը, վանքում ժողով գումարվեց, որտեղ երկրորդ անգամ նզովվեց Բար-Վահրունը և դատապարտվեց խիստ ու ծանր բանադրանքի, որովհետև նա գնացել ապաստան էր գտել հայերի վերոհիշյալ կաթողիկոսի[571] մոտ և ստացել նրա օժանդակությունը իր անհնազանդության խնդրում։ Նա խռովել էր Կիլիկիո երկիրը, բռնությամբ իրեն ենթարկել հավատացյալներին, վռնդել այդ թեմի եպիսկոպոսին[572] և ինքն իրեն պատրիարք հայտարարել։ Ինչպես ասացինք, նրա և իրեն օժանդակողների դեմ ուղղված բանադրանքն ընդունվեց սրբի տոնի օրը։ Պենտեկոստեի երկուշաբթի օրը Տիրոջ հարվածից մեռավ կաթողիկոսը, իսկ քառասուն օր անց այդ թըշվառականը նույնպես հրաժեշտ տվեց կյանքին՝ ի զարմանս ողջ աշխարհի։*

* * *

### 330 Հայերի պառակտումը մի այլ կաթողիկոսի խնդրով[573]

*1511 (1200) թվականին Պոնտոսի կողմերում հայտնվեց մի մարդ կաթողիկոսի ազգականներից, ինչպես ասում են, իրենց Գրիգորիոսի[574] ցեղից։ Դա մի եպիսկոպոս էր, որի անունն էր Անանա, այսինքն՝ Անանիա[575]։ Շատ եպիսկոպոսներ անցան նրա կողմը և նրան կաթողիկոս հռչակեցին։ Այդ հյուսիսային երկրները նա անջատեց Հռոմկլայում նստող Ապիրատից։ Ասում են, որ նա արժանի էր գահին և հարուստ գիտելիքներ ու լեզու ուներ։*

* * *

### 341 Հայոց կաթողիկոսի մասին

*Այդ տարի՝ 1514 (1203) թվականին Կիլիկիո երկրում մեռավ Հայոց կաթողիկոսը, որի անունն էր Ապիրատ և որին հիշատակեցինք վերևում։ Նրանից հետո գահին տիրեց Հովհաննես[576] անունով մեկը, որը ոչ թե նրանց, այլ Կիլիկիայի իշխանների ցեղից էր, որոնք այժմ էլ կանգնած են իշխանության գլուխ։ Նա ստացավ Հռոմկլան և ամրապնդեց իր աթոռը։ Որոշ ժամանակ*

անց Հովհաննես կաթողիկոսի խնդրանքով Ռումի երկրի սուլթանը պաշտոնազրկեց Անանիային։ Եվ այդ երկրները կցվեցին նրան։

* * *

345 Հայոց կաթողիկոսի մասին

1516 (1205) թվականին Կիլիկիայի իշխան Լևոն հայը դիմեց խոսրովշահին, որը տիրում էր Կապադովկիայի երկրում, և պահանջեց Անանիային[577]։ Սա, ինչպես վերը նշեցինք, կաթողիկոս էր դարձել այն կողմերում և անջատվել այս կողմերի կաթողիկոսից՝ նզովելով վերջինիս և չեղյալ հայտարարելով նրա կաթողիկոսությունը։

# ՀԱՎԵԼՎԱԾ Բ

## [ՔԱՂԱՔԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅԱՆ ՍԿԶԲԻ ՄԱՍԵՐԻՑ]*

I.44 *Աշխարհում գիր ու գրականություն ունեցող տասնհինգ լե-*
*զու կա. Սեմից [ծագում են] հինգը՝ եբրայեցիները, ասորիները,*
*բաբելացիները, պարսիկները, էլամացիները*[578]*, Հաբեթից վեցը՝*
*հույները, իբերները, ֆրանկները, հայերը, մարերը, ալանները,*
*իսկ Քամից չորսը՝ եգիպտացիները, քուշերը, փյունիկեցիները*
*և հնդիկները*[579]*։*

* * *

I.109 *[Ռոմուլոսի]*[580] *ժամանակ Հռոմն ընգգրկում էր*[581] *արևել-*
*քում՝ ողջ Թրակիան, Ասիան, Ասորիքը, Լիբիան, ամբողջ Եգիպ-*
*տոսը, Փյունիկիան, Պաղեստինը, Միջագետքը՝ մինչև Ասորես-*
*տանի կենտրոն Նինվեն, հյուսիսում՝ ողջ Հայաստանը, Ալանքը,*
*Ռուսաստանը, Խազարաստանը, Գաղատիան, ամբողջ Հունաս-*
*տանն ու կղզիները, արևմուտքում՝ մի շարք այլալեզու երկրներ*
I.110 *// այս ծովից մինչև մեծ օվկիանոս*[582]*։*

* * *

### I.119 Ուռհայի թագավոր Աբգարի մասին[583]

*Այդ ժամանակ ընդհատվեց Ուռհայի թագավորների սերուն-*
*դը։ Նրանք ծագում էին Սելևկիոսից, որը, ինչպես վերը նշեցինք,*
I.120 *Նեմրովթից*[584] *հետո վերակառուցել էր Ուռհան։ // Զգտնվեց որևէ*
*հույն, որ անցներ իշխանության գլուխ։ Եվ քանի որ Ուռհայում*

---

* *Լուսանցքում հռոմեական I նշանով սկսվող թվերը ցույց են տալիս «Ժամա-նակագրության» առաջին հատորի էջերը (*Chabot—*I), իսկ II նշանով սկսվողները՝ երկրորդ հատորի (*Chabot—*II)։*

բնակություն հաստատած և հզորացած հայերը հավատարիմ էին մնացել հունաց թագավորությանը, նրանց ազգից մեկին, որի անունն էր Աբգար, թագավոր հռչակեցին։ Սա և իր սերունդները երեք հարյուր ութսուն տարի տիրեցին Ուռհային ու Միջագետքին։ Նրանցից շատերը կոչվեցին Աբգար[585], առաջին թագավորի անունով։ Մեր Տիրոջ տնօրինության այդ ժամանակներում եկավ և աշխարհում հայտնվեց Քրիստոսը, երբ Հռոմում տիրում էր Օգոստոս[586] կայսրը։ Իսկ Ուռհայում թագավորում էր այս Աբգարը՝ Մանուի[587] որդին, որն իր գույնի թխության պատճառով կոչվում էր Ուքամա[588]։

* * *

I.187 Կավատ արքան[589], բազմաքանակ զորք հավաքած, շարժվեց դեպի Հայոց երկիրը և, Թշրին[590] ամսին հասնելով Ամիդ քաղաք, պաշարեց այն։

[Լուսանցքում ավելացված է. «Հայաստանն այժմ կոչվում է Խլաթ»]։

* * *

I.190 Նրա (Անաստաս[591] կայսեր— Լ. Տ.-Պ.) թագավորության քսաներեքերորդ տարում ապստամբեց հայ ժողովուրդը։ Զորք ուղարկելով՝ նա ընկճեց նրանց, և վերջիններս հնազանդվեցին հռոմեացիներին։

* * *

I.199 861 (550) թվականին խցանվեց Եփրատ գետը Կղոդիայից վեր, Կապադովկիայի դիմաց, Պրոսիդին[592] կոչվող գյուղի մոտ։ ...Եվ գետը ետ շրջվեց դեպի Հայաստան։

* * *

I.201 Հուստինիանոսի[593] թագավորության չորրորդ տարում հայերն ապստամբեցին Խոսրովի[594] դեմ և օգնություն խնդրեցին հռոմներից։ Վերջիններս օգնեցին նրանց, և պարսիկները պարտություն կրեցին։ Հայերին իր կողմը դարձնելու և գրավված երկրները ետ ստանալու նպատակով Խոսրովը Հուստինիանոսին գրեց հետևյալը. «Քեզ վայել չէ օգնության ձեռք մեկնել մի ժողովրդի, որն ապստամբել է իր թագավորի դեմ»։ Խոսրովը ևս մի անգամ դիմեց Հուստինիանոսին, բայց վերջինս տեղի չտվեց։ Սակայն
I.202 երբ երրորդ անգամ մի դեսպան ուղարկվեց, // Հուստինիանոսը

զայրացած պատասխանեց. «Ոչ միայն քեզ չեմ տա քո պահանջած ժողովուրդն ու երկրները, այլ կվերցնեմ նաև Մծբինը, որը պատկանում է հոռոմներին...»։

* * *

I.216 [Մավրիկիոսը[595] Խոսրովին[596] օգնության] ուղարկեց Թրակիայի զորահրամանատար Հովհաննեսին[597] քսանհազարանոց բանակով, և Անաստասիոս զորավարին, որին ուղեկցում էին քսան հազար հոգի՝ արմենիակներից և բուկելլարներից[598]։

* * *

I.233 Ռուզբեհանը դիմեց դեպի Ասորեստան՝ Հերակլիոսին[599] ճակատամարտ տալու նպատակով։ Հերակլիոսին Հայաստանից ուղեկցում էին բազմաթիվ հայ զինվորներ, ինչպես նաև պարսիկներ ու խաքանի կողմից ուղարկված խազարներ[600]։

* * *

I.234 Խոսրովին պարտության մատնելուց և նրա թագավորությունը կողոպտելուց հետո Հերակլիոս կայսրը եկավ ձմեռելու Ասորեստանի և Հայաստանի սահմանում։

* * *

I.249 Արաբների դեմ Անտիոքից Հերակլիոսի ուղարկած զորքերի մասին, որոնք ջախջախվեցին Յարմուկ[601] գետի ափին

Հերակլիոս կայսրը, ստանալով այդ լուրերը, Հայաստանից, Ասորիքից ու Միջագետքից ավելի քան երեքհարյուրհազարանոց բանակ հավաքեց, դրանք դնելով երեք զորահրամանատարների՝ Գրիգոր հայի, Կնտրիսի և Արդիգոնի[602] տրամադրության տակ[603]։

* * *

I.251 [Յարմուկի ճակատամարտից հետո Հերակլիոսը] գրություններ ուղարկեց Միջագետք, Հայաստան, Եգիպտոս և հոռոմների տիրապետության տակ մնացած մյուս երկրները, որպեսզի չպատերազմեն արաբների դեմ և չգիմադրեն Տիրոջ հրամանին, այլ պահպանեն իրենց քաղաքներն ու երկրները, մինչև որ փորձանքն անցնի։

* * *

I.252 Երբ Կյուրոսը լսեց Օմար իբն-Ասիի գալուստը, ելավ գնաց նրա մոտ և համաձայնեց նրան վճարել տարեկան երկու հարյուր հազար դինար, այն պայմանով, որ արաբները Եգիպտոս չմտնեն։ Սակայն ոմանք, գնալով Հերակլիոս կայսեր մոտ, ամբաստանեցին Կյուրոսին, թե իբր Եգիպտոսի ոսկին վերցնում տալիս է արաբներին։ Նա Կյուրոսին գրեց, որ հրաժարվի իր պաշտոնից, և Եգիպտոս ուղարկեց Մանուել[604] անունով մի զորահրամանատարի, որն ազգությամբ հայ էր։ Տարին լրանալուց հետո արաբ դեսպանները եկան Եգիպտոս՝ ստանալու սովորական հարկը։ Մանուելին նրանք գտան Բաբելոնում, որն այժմ կոչվում է Ֆուստատ[605]։ Մտնելով նրա մոտ՝ դեսպանները պահանջեցին ոսկին։ Սակայն նա պատասխանեց. «Ես Կյուրոսը չեմ, որը ձեզ ոսկի էր տալիս, քանի որ նա ոչ թե զենք, այլ բրդյա բաճկոն էր կրում։ Իսկ ես, ինչպես տեսնում եք, զենք եմ կրում։ Արդ, ելեք հեռացե՛ք և այլևս չհամարձակվե՛ք գալ այստեղ»։

* * *

I.257

## 122. Դավիթ[606] հայի և նրա կողմնակիցների արշավանքը դեպի Միջագետք[607]

*Այդ ժամանակ հոռոմոց զորավար Դավիթ հայը արշավանքի ելավ իր երկրից, իսկ Վալենտին անունով մեկն էլ՝ արևմուտքից։ Նրանք իրար սուրհանդակներ ուղարկեցին, որպեսզի մեկը շարժվի արևելքից, մյուսն՝ արևմուտքից, և այսպիսով ռազմի դաշտում ջախջախեն Ասորիքում հաստատված բոլոր արաբներին։ Իմանալով այդ՝ արաբները նախապատրաստվեցին և, դուրս գալով Վալենտինի դեմ, ճակատամարտ տվին նրան։ Նա պարտություն կրեց, իսկ նրա զորքն ամբողջությամբ սրի մատնվեց։ Ինչ վերաբերում է Դավթին, ապա նա, հասնելով Միջագետք, իմացավ, որ երկրում արաբներ չկան, քանի որ նրանք գնացել էին դիմակայելու Վալենտինի գլխավորած հոռոմներին։ Դավիթ հայը եկավ և ճամբար խփեց Բեթ-Մաադա[608] կոչվող գյուղում։*

*Ի լրումն բազում չարագործությունների՝ Դավթի զինվորներն սկսեցին ելնել ու կողոպտել ժողովրդին։ Նրանք ոչինչ չէին թողնում և դաժան տանջանքների էին ենթարկում ինչպես տղամարդկանց, այնպես էլ կանանց՝ ստիպելով դուրս բերել հողում թաղված [գանձերը]։ Բոլորը ողբում, հառաչում, արտասվում ու կոծում էին, հատկապես իշխանազուն կանայք ու օրիորդները, ո-*

րոնց հետ նրանք զվարճանում էին անառակությամբ ու շնությամբ։ Եվ դա կատարվում էր բացահայտորեն ու անամոթաբար՝ նրանց ամուսինների ու բոլոր մարդկանց աչքի առջև։

Զինվորների մեջ կար Տիտոս անունով մեկը՝ ազգությամբ ասորի, որը, որպես մի քաղաքի զորագլուխ, եկել էր նրանց հետ։ Տեսնելով Դավիթ Հայի ընկերակիցների չարագոր-
I.258 ծությունները, նա մոտեցավ նրան ու ասաց. // «Քեզ, որպես քրիստոնյայի ու քրիստոնյա կայսեր զորականի, վայել չէ սուր բարձրացնել քրիստոնյաների վրա և թույլ տալ զինվորներին, որ կոտորեն նրանց, ովքեր մեզ չեն գործել Հռոմեական պետության դեմ։ Կայսրն էլ քեզ չի խրախուսի, եթե լսի այդ բաները»։ Այնժամ Դավիթ Հայը հրամայեց չվնասել երկրի բնակիչներին։

* * *

I.258 **123. Արաբների հարձակման և Դավիթ Հայի պարտության ու ջախջախման մասին**

Երբ Իյադը լսեց Դավիթ Հայի ու նրա զորքերի արշավանքի մասին, մեկնեց Դամասկոսի գավառից։ Ինչպես պատմում են ականջալուր մարդիկ, նրանց զորքերի գրաստները դադար չառան մինչև Ուռհա հասնելը։ Տեսնելով արաբների առաջխաղացումը, թշվառ հայերը ահուդողի մեջ ընկան։ Նույն գիշեր, երբ նրանք ստացան այդ լուրը, թողին Միջագետքից ձեռք բերված ավարը, կողոպուտն ու ունեցվածքը և փախուստի դիմեցին։ Հասնելով ու հայտնաբերելով հայերի ճամբարը, արաբներն սկսեցին կողոպուտով զբաղվել։ Բայց ամիրան գոռաց նրանց վրա և ասաց. «Ալլահը ձեր վրա նզովք կթափի, եթե հապաղեք կողոպուտի պատճառով։ Արդ, հետապնդենք թշնամիներին և, երբ Տերը մեր ձեռքը մատնի նրանց, մենք կտիրենք և՛ նրանց ոսկուն, և՛ արծաթին, և՛ թանկագին զգեստներին, և՛ ձիերին ու գրաստներին, հետո արդեն շուռ կգանք սրանց վրա»։ Այնժամ նրանք արագորեն հետապնդեցին նրանց և, վրա հասնելով, ոչխարների նման ցիրուցան արեցին հիսունական ու հարյուրական խմբերով, ապա անխնայորեն նրանց խոցոտեցին սրերով ու նիզակներով։ Տիտոսը, անջատելով իր հետ եղած ողջ Ասորիքի զորքը, քաշվել էր մի կողմ։ Արաբներն ուզեցին ձեռք գցել նրան, բայց տեսնելով նրա խիզախ զորքերը, թողին նրան և հարձակվեցին Դավթի վրա։ Դավիթն ըն-
I.259 կրճված գոչեց // Տիտոսին ու ասաց. «Ահա ժամանակն է, որ փառավորվես կռվում և ցույց տաս քո սերը Հռոմեական պետու-

թյան նկատմամբ»։ Իսկ Տիտոսը պատասխանեց նրան. «Եթե քեզ օգնեմ, աստված ինձ չի օգնի»։ Եվ Տիտոսը լքեց Դավթին ու փրկվեց։ Իսկ Դավիթն իր ողջ զորքի հետ սրի մատնվեց, այնպես որ նրանցից ոչ ոք չմնաց։

* * *

I.267 [Կոստանդ[609] կայսրը Մաքսիմոս[610] հերետիկոսին] աքսորեց Հայոց Կովկաս։

* * *

## I.287 139. Կոստանդ կայսեր մահվան և Մժեժ[611] հայի ձեռական գահակալման մասին[612]

Հունաց 980 (669) թվականին, որը Կոստանդի քսանյոթերորդ, իսկ Մուավիայի[613] իններորդ տարին էր, Սիցիլիայի Սիրակուզա քաղաքում, որ մայրաքաղաք էր դարձել, սպանվեց Կոստանդ կայսրը[614]։ Անդրեաս անունով մեկը՝ Տրալոսի որդին[615], կայսեր հետ բաղնիք մտնելով, սկսեց լողացնել նրան ու նրա գլուխը ծածկել օճառի փրփուրով, այնպես որ վերջինս ի վիճակի չէր բացելու աչքերը։ Անդրեասը վերցրեց կայսեր առջև դրված արծաթյա դույլը և, իջեցնելով նրա գլխին, ջնջխեց այն։ Հետո փութով դուրս եկավ բաղնիքից, և ոչ ոք նրան չբռնեց։ Կայսրին վերցրին բերին արքունական պալատ, բայց երկու օրից նա հրաժեշտ տվեց կյանքին։ Հռոմեացիները իրենց կայսր հռչակեցին Մժեժ անունով մի հայ պատրիկի։ Սակայն, երբ Կոստանդինը[616] լսեց իր հոր մահը, բազում զորքով շարժվեց դեպի Սիցիլիա, բռնեց ու սպանեց Մժեժին և հոր սպանության բոլոր մեղսակիցներին, ապա վերադարձավ Կոստանդնուպոլիս։

* * *

I.293 Երբ Աբդլմելիքը[617] տեսավ, որ իբն-Զուբայրը հզորացել է արևելքում, առաջ քաշեց երկու զորահրամանատարների՝ իր եղբայր Մուհամմեդին[618] և Հաջաջ իբն-Յուսուֆին, որոնք քաջասիրտ, արյունարբու և անգութ մարդիկ էին։ Եղբորը՝ Մուհամմեդին նա կարգեց Միջագետքի, Մոսուլի ու ողջ Արմինիայի[619] վրա, իսկ Հաջաջին՝ հումայն պարսից երկրի։

* * *

I.294 [Մուհամմեդ իբն-Մրվանը] Հայոց իշխաններին հավաքեց մի եկեղեցում և, հրի մատնելով, այրեց նրանց[620]։

* * *

1.296 Այդ ժամանակ[621] Հայոց պատրիկներից մեկը, որի անունն էր Սմբատ[622], Հայաստանը հանձնեց Մուհամմեդ իբն-Մրվանի ձեռքը[623]։

[Լուսանցքում ավելացված է. «Այստեղ Հայաստան են կոչված Խլաթի երկիրն ու Նփրկերտը, Սասունի լեռն ու Արզնը, ինչպես նաև այդ կողմերի բոլոր քաղաքները»]։

* * *

1.297 [Հուստինիանոսին[624] տապալելուց հետո հռոմ իշխանները] հունաց 1007 (696) թվականին և Աբդլմելիքի տասներկուերորդ տարում իրենց կայսր հռչակեցին Լեոնտիոս[625] պատրիկին, որը գտնվում էր Հայաստանում և ծերացած ու պետական գործում ծույլ մարդ էր։

* * *

1.297 . Հաջորդ տարի[626], հայոց իշխանները ապստամբեցին արաբների դեմ։ Մուհամմեդ իբն-Մրվանը նորից ոտքի ելավ, ջախջախեց Հայաստան եկած հռոմներին ու կոտորեց բազմաթիվ հայերի։ Եվ Հայաստանը նորից անցավ արաբներին[627]։

* * *

1.299 [Փիլիպպիկոս[628] կայսրը] հրամայեց վտարել իր տիրապետության տակ գտնվող բոլոր հայերին։ Վերջիններս ելան և ապաստան գտան արաբների մոտ, որոնք նրանց բնակեցրին Մելիտենեում ու նրա շրջակայքում[629]։

* * *

1.309 Հաջորդ տարի[630], խազարների թագավոր Խաքանի որդին[631]
1.310 եկավ մտավ // Ատրպատականի ու Առանի երկիրը։ Բազմաքանակ արաբական զորքերով նրան դիմակայեց ու կատաղի ճակատամարտ տվեց Արմինիա երկրի Ջարրահ[632] ամիրան։ Բայց Ջարրահն սպանվեց, խազարները ավարի մատնեցին նրա ճամբարը և հաղթանակով ետ դարձան[633]։

* * *

1.316 Ասում են, որ Մրվան իբն-Մուհամմեդը՝ Միջագետքի ամիրան[634], որն այդ ժամանակ Արմինիայի կուսակալ էր դարձել, նույնպես մասնակից էր Վալիդի[635] սպանությանը, քանի որ սպանության օրը նրա որդի Աբդլմելիքը մտել էր Խառան։

* * *

I.316 *Պարսից երկրում տիրում էր Վասիտը՝ Օմար[636] թագավորի որդի Աբդուլլահը, Հայաստանում՝ Մրվան իբն-Մուհամմեդը, Խորասանում՝ իբն-Սարգին...*

* * *

I.317 *[Վալիդի սպանությունից հետո] վերոհիշյալ Մրվանը մեկնեց Հայաստանից և ձևացնելով, թե շահագրգռված է թագավորությունը Վալիդի որդիներին վերադարձնելու խնդրում, Եկավ հասավ Խառան քաղաք։*

* * *

I.337 *[752 թվականին Կոստանդին[637] կայսրը] ասպատակեց Կղոդիայի երկիրն ու Հայաստանը։ Կղոդիան նա հրի մատնեց։ Սակայն մինչ հոռոմները գտնվում էին Հայաստանում, արաբական զորքերով վրա հասավ Ուռհայի կառավարիչ Խալիդ իբն-Ախին։ Նրանք ճակատամարտ տվին, և արաբները պարտություն կրեցին։ Խալիդը փախավ, իսկ նրա զորքերի մեծ մասը կոտորվեց։ Հոռոմներն այրեցին Հայաստանը և նրա բնակիչներին քշեցին հոռոմոց երկիրը։ Աբու-Ջաֆարն[638] այդ ժամանակ գտնվում էր Արմինիայում՝ Թուրքական սահմանի դիմաց։*

* * *

I.338 *1065 (754) թվականին Աբդալլահ Աբուլաբասը[639] Խառանից բերել տվեց պետական գանձարանում եղած ամեն ինչ, որոնք Մրվանի[640] ժամանակից պահվում էին բազմաթիվ պահեստներում, և դրանք դրեց իր շինած քաղաքում։ Հետո նա Սալահ իբն-Ալիին կառավարիչ նշանակեց Եգիպտոսի ու Լիբիայի վրա, Սալահի եղբորը՝ Աբդուլլահ իբն-Ալիին՝ Ասորիքի, Դամասկոսի, Պաղեստինի ու Փյունիկիայի վրա, իսկ Աբու-Ջաֆարին՝ Միջագետքի ու Արմինիայի վրա։*

* * *

II.25 **214. Մաճդիի մասին, որը դարձավ Քրդերի առաջնորդը[641]**

*Այդ ժամանակ կային մարդիկ, որոնք կրոնով հեթանոս էին և պատկանում էին այսօրվա քրդերի[642] ցեղին։ Սկզբնապես նրանք տիրում էին որոշ բերդերի և, ինչպես գրված է այստեղ[643], իրենց առաջնորդի մահվանից հետո մահմեդական դավանանք էին ըն-*

դունել։ Կազմված լինելով հեթանոս պարսիկներից ու հայերից՝ նրանք մի առանձնահատուկ ժողովուրդ էին հանդիսանում։ Մինչև օրս էլ նրանք կոչվում են իրենց գրաված բերդերի անունով։ Նրանց մոտ պապենական ավանդությամբ հիշողություն էր պահպանվում մի գուշակության մասին, թե իբր իրենց միջից հայտրնվելու էր Մահդի անունով մի թագավոր, որը, իր անվան իսկ վկայությամբ[644], ժողովրդին պիտի առաջնորդեր դեպի իր հավատը, աստված պիտի համարվեր, ապա թագավորությունը կտակեր մի ուրիշի և այլն, և այլն։

Այդ ժամանակ, արդ, հայտնվեց մի առաջնորդ, որը կոչվում էր Մահդի՝ ներկայանալով որպես այն անձը, որին նրանք սպասում էին։ Նա թույլ չէր տալիս դիպչել իրեն և դեմքին էլ քող էր կրում։ Նա իրեն հայտարարել էր աստծու մարգարե, և օրեցօր նրա կողմնակիցներն ու հարստությունը շատանում էին։ Կողոպուտի ու ավարի նպատակով բոլոր ժողովուրդներից՝ պարսիկներից, արաբներից ու հեթանոսներից նրա շուրջը հավաքվեցին բազմաքանակ զորքեր։ Նա բնակություն հաստատեց Կորդվաց[645]
II.26 անմատչելի լեռներում, // և նրա սարսափը տիրեց Ջեզիրեում ու Հայաստանում։ Նա ավերեց Բեթ-Ջաբդեն[646] և Տուր-Աբդինը։ Նրանց սրերը արյուն էին խմում, իսկ իրենք չէին խնայում ոչ ոքի՝ հավասարապես կոտորելով բոլոր ժողովուրդներին։ Դավանանքով լինելով մոգեր՝ նրանք օտար էին համարում բոլոր նրանց, ովքեր չէին ընդունում, որ Մահդին աստծու մարգարեն է։ Նույնիսկ Մամուն[647] թագավորը դողում էր նրանից։ Սակայն, երբ նրանք մտան Տուր-Աբդին՝ կողոպտելու Կարտամինի[648] վանքը և շրջակա գյուղերը, նրանց դեմ համարձակվեց ելնել այդ երկրի կառավարիչ Հասանը, մանավանդ այն պատճառով, որ տեսավ վանականների կրած տանջանքները, քանի որ նա լավ էր տրամադրված քրիստոնյաների նկատմամբ։ Նա հանկարծակիորեն հարձակվեց նրանց վրա։ Եվ երբ կողմերը բախվեցին իրար, աստծու ներգործությամբ քուրդանիները թիկունք դարձրին։ Այսպիսով, Մահդին, որն աստվածացվել էր նրանց կողմից, հարկադրված դեն նետեց իր դեմքի քողը և փախուստի դիմեց Հասանի առջևից։

Քչերի հետ նա փրկություն գտավ Աշոտի[649] որդի Իսահակի[650] երկրում և այցելեց նրան մի ամրոցում։ Քուրդանիները հավաքվեցին ամրոցի շուրջը։ Սակայն Իսահակը բռնեց Մահգիին և անմիջապես գլխատեց նրան։ Գիշերը, վերցնելով գլուխը և ինչ որ հնարավոր էր տանել իր ունեցվածքից ու ընտանեկիցներից, նա փախավ և ապաստանեց իր բերդում։ Երեխաներին թողնելով այդ

բերդում՝ նա գնաց Ջեզիրեի կուսակալի մոտ։ Լուսաբացին քուրդանիները մտան ամրոցը, բայց Մահդիի դիակից բացի ուրիշ ոչինչ չգտան։ Նրանք հրի մատնեցին Իսահակի տները և, մեկնելով այնտեղից, եկան դարանակալեցին այն բերդի մոտ, որտեղ գտնվում էին Իսահակի երեխաներն ու կինը։ Մի հեթանոս կին, տեսնելով այդ, ահազանգեց գյուղում, և նրա բնակիչները մտան

II.27 բերդ։ Իսահակի կինը, որը // քրիստոնյա էր, ուներ մի վանական եղբայր, որը նույնպես բերդ մտավ։ Քուրդանիները վրա հասնելով կոտորեցին նրանց, ովքեր դուրս էին մնացել բերդից։ Հետո հարձակվեցին բերդի վրա և սկսեցին քարկոծել այն՝ ավերելով նույնիսկ ներսի շինությունները։ Եվ երբ արդեն պատրաստվում էին հանձնվել քուրդանիների ձեռքը, քանի որ բերդի դարպասը կրակի էր մատնվել, վերոհիշյալ վանականը ձեռքը գցեց նիզակին ու ցատկեց պարսպից։ Հասնելով քուրդանիների զորքին և ուղղվելով դեպի նրանց առաջնորդը, որ հաջորդել էր Մահդիին, նա նիզակահարեց ու սպանեց նրան։ Եվ քանի որ արդեն երեկոյանում էր, վանականը կարողացավ փրկվել։ Աստծու կամքով զորքերի հետ տեղ հասավ Իսահակը։ Նա անակնկալ կերպով հարձակվեց քուրդանիների վրա և կոտորեց նրանցից շատերին։ Մյուսները փախան ու ցրվեցին։ Այս եղավ Մահդիի տխրահռչակ վախճանը։ Հետո նրանք իրենց առաջնորդ կարգեցին ոմն Հարունի, որին հաջորդեց Բաբեկը[651] և այսպես մինչև մեր օրերը։ Նրանք տարածվել ու անառիկ բերդեր են զբաղեցրել պարսից երկրներում։

* * *

II.42 Ռոմանոս[652] կայսրից հետո թագավորեցին նրա որդիներ Վասիլը[653] ու Կոստանդինը[654]։ Վասիլը հռչակվեց պատերազմներում և տարավ ապշեցուցիչ հաղթանակներ։ Նա հնազանդեցրեց հայերին ու բուլղարներին։

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Ծանոթագրությունները կազմել ենք հիմնականում հանրահայտ տեղեկատու գրականության հիման վրա։*

*Մահմեդական տիրակալների ժամանակագրությանը վերաբերող տվյալները քաղել ենք հետևյալ գրքերից.*

*E. de Zambaur*, Manuel de généalogie et de chronologie pour l'histoire de l'Islam, Hannover, 1927.

*Стэнли Лэн-Пуль*, Мусульманские династии. Хронологические и генеалогические таблицы с историческими введениями, перевел с английского с примечаниями и дополнениями В. Бартольд, СПб., 1899.

*К. Э. Босворт*, Мусульманские династии. Справочник по хронологии и генеалогии, перевод с английского и примечания П. А. Грязневнча, М., 1971.

*А. Н. Тер-Гевондян*, Армения и Арабский халифат, Ереван, 1977.

*Խաչակրաց պատմական անձնավորություններին վերաբերող ծանոթագրությունները կազմելու համար օգտագործել ենք Ռ. Գրուսեի ստվարածավալ հետազոտությունը.*

*R. Grousset*, Histoire des Croisades et du royaume franc de Jérusalem, t. I—III, Paris, 1934—1936.

*Տեղանունները ծանոթագրված են մեծ մասամբ հետևյալ աշխատության տվյալներով.*

*K. M. Setton* (general editor), A history of the Crusades, v. I—II, Madison—Milwaukee—London, 1969.

*Բյուզանդական կայսրերի և Անտիոքի պատրիարքների գահակալման տարիները նշել ենք ըստ Վ. Գրումելի գրքի.*

*V. Grumel*, Traité d'Études Byzantines, I, La chronologie, Paris, 1958.

*Տարբեր առիթներով հաճախակի դիմել ենք նաև ներքոհիշյալ աղբյուրներին ու հետազոտություններին.*

Մատթէոս Ուռհայեցի, *Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898 (Այսուհետև* Մտթ. Ուռհ.)։

Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք, աշխատասիրությամբ Ս. Ագըլյանի, Վենետիկ, 1956։*

*Chronique de Michel le Syrien*, patriarche jacobite d'Antioche (1166—1199), éd. et trad. franç. par *J.—B. Chabot*, Paris, t. I, 1899. II, 1901. III, 1905. IV, 1910 (texte). Introduction, 1924 (reimp. 1963).

Ս. Տ. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Երևան, 1963։*

*E. Honigmann*, Le couvent de Barṣaumā et le Patriarcat Jacobite d'Antioche et de Syrie, „Corpus Scriptorum Christianorum Orientalium", 146, Subs. 7, Louvain, 1954.

*P. Kawerau*, Die Jakobitische Kirche im Zeitalter der syrischen Renaissance, Berlin, 1960.

*A. Lüders*, Die Kreuzzüge im Urteil syrischer und armenischer Quellen, Berlin, 1964.

*Ծանոթագրություններում. «Հայկական միջնադարյան աղբյուրներ» ասելով նկատի ունենք Մատթեոս Ուռհայեցու և Սմբատ Սպարապետի ժամանակագրությունները։*

* * *

*1. Համտ.* Մար. Ուռհ., *էջ 128—129։ Մելիտենեի առումն Ուռհայեցին թվագրել է հայոց ՇԵ (1056) թվականով։*

*2. Դատելով պատմական դեպքերի շարադրանքից՝ ժամանակագիրը* Սուլեյման *անվան տակ նույնացրել է երկու անձնավորություն՝ սելջուկյան սուլթաններ* Տուղրիլ-բեգին *(Ռուքնեդդին Աբուտալիբ Մուհամմեդ Տուղրիլ-բեգ իբն Միքայել՝ 1038—1063 թթ). և* Ալփարսլանին *(Ադուդադդաուլա Աբուշուջա Մուհամմեդ Ալփարսլան իբն Դաուդ՝ 1063—1072 թթ.)։ Շփոթության տեղիք է տվել, ըստ երևույթին, Տուղրիլ-բեգի եղբոր և Ալփարսլանի հոր՝ Ջաղրի-բեգ Դաուդի, Աբու-Սուլեյման մականունը։*

*3.* Սելջուկ իբն Դուկակ իբն Ջաղրի-բեգը *ոչ թե հայրը, այլ պապն է սելջուկյան առաջին սուլթան Տուղրիլ-բեգի, որը սույն ժամանակագրության մեջ կոչված է Սուլեյման (տե՛ս նախորդ ծանոթագրությունը)։ Ընդհանրապես այս ժամանակագրության տվյալները սելջուկյան առաջին սուլթանների և ամիրաների ծագումնաբանության վերաբերյալ բավականին խառնաշփոթ են։*

*4. Ասորական միջնադարյան աղբյուրներում արաբները հայտնի են* Tayyāye *(Տաճիկ) անունով։ Նույն անունը հետագայում ընդգրկում է նաև ընդհանրապես* մահմեդական *հասկացությունը։ Այդ պատճառով հաճախ դժվարություններ են առաջանում դրանք իրարից տարբերակելու գործում։ Առաջնորդվելով բնագրի որոշակի դրվագների բովանդակությամբ՝ սույն աշխատության մեջ* Tayyāye *բառը մենք թարգմանել ենք մերթ* արաբ, *մերթ* մահմեդական:

*5.* Հիսն-Մանսուր— *Քաղաք պատմական Կոմագենեում, Սամոսատից հյուսիսարևմուտք։ Միջնադարյան հայկական աղբյուրներում հայտնի է* Հարսնմաուր *անունով։*

*6.* Քեսուն— *Բերդաքաղաք պատմական Կոմագենեում, Մարաշի և Սամոսատի միջև։*

*7.* Ուռհա— *Քաղաք Հյուսիսային Միջագետքում։ Հելլենիստական շրջանում եղել է Օսրոյենեի ասորական թագավորության, իսկ խաչակիրների օրոք՝ Եդեսիայի կոմսության մայրաքաղաքը։ Հայտնի է նաև* Եդեսիա *անունով, որը սակայն ասորական աղբյուրներում չի գործածվում։*

*8. Ասորերեն* mārā *(տեր) բառը որպես պատվանուն սովորաբար միշտ կցվում է հոգևոր կոչում ունեցող անձնավորությունների կամ սրբերի անվանը։ Նայած բնագրի որոշակի դրվագների բովանդակությանը, այսուհետև այդ բառը վերարտադրել ենք մերթ* մար, *մերթ* սուրբ *ձևով։*

9. Բարսումա Սամոսատցի (Մելիտինեցի)*—Ասորի միայնակյաց (մահ. 458 թ.), որը կարևոր դեր է խաղացել անապատական շարժման մեջ. տե՛ս Հ.* Անասյան, *Հայկական մատենագիտություն, հ. 2, Երևան, 1976, էջ 1437—1441։ Ինչ վերաբերում է*

Բարսումայի վանքին, ապա այն Հակոբիկյան եկեղեցու առաջնորդի՝ Անտիոքի պատրիարքի նստավայրերից մեկն էր և գտնվում էր Մելիտենեի գավառում, Կարկառից մի փոքր հյուսիս-արևմուտք։
10. Ռոմանոս IV Դիոգենես— Բյուզանդական կայսր (1068—1071 թթ.)։ Հայկական աղբյուրներում հայտնի է Տիօժէն անունով։
11. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 201—202։
12. Նկատի ունի այն փաստը, որ 1055 թ. Տուղրիլ-բեգը գալով Բաղդադ խալիֆի կողմից պաշտոնապես հռչակվեց սուլթան։
13. Խոսքը վերաբերում է հայոց Մանազկերտ քաղաքի մոտ 1071 թվականին տեղի ունեցած ճակատամարտին, որտեղ բյուզանդացիները ջախջախիչ պարտություն կրեցին սելջուկներից։
14. Միքայել VII Դուկաս— Բյուզանդական կայսր (1071—1078 թթ)։ Հայկական աղբյուրներում հայտնի է Միխայլ որդի Տուկծի անունով։
15. Կոստանդին Դուկաս— Բյուզանդական կայսր (1059—1067 թթ.)։
16. Հովհաննես պատրիկ— Ըստ այլ աղբյուրների՝ կեսար. բյուզանդական կայսր Միքայել VII Դուկասի (1071—1078 թթ.) խորհրդականներից մեկը և պետության փաստական կառավարիչը. տե՛ս *L. Bréhier*, Vie et mort de Byzance, Paris, 1947, p. 282.
17. Ջալալադդաուլա Աբուլֆաթաճ Մելիքշահ I իբն Ալփարսլան— Սելջուկյան սուլթան (1072—1092 թթ.)։ Հայկական աղբյուրներում հայտնի է Մելիքշահ անունով։
18. Սուլեյման իբն Կութուլմիշ— Ռումի սելջուկյան սուլթանության հիմնադիրը (1077—1086)։ Սուլեյմանը ոչ թե Աբուլֆաթահ Մելիքշահի որդին էր, ինչպես նշված է ժամանակագրության մեջ, այլ նրա հեռավոր ազգականներից մեկը։ Հայկական աղբյուրներում հայտնի է Դըլմուշ/Դղլմուշ անունով։
19. Տյուրոս— Քաղաք Միջերկրական ծովի արևելյան ափին, Բեյրութից բավական հարավ։ Միջնադարում և այժմ հայտնի է Սուր անունով, որը գործածված ենք գտնում նաև հայկական աղբյուրներում։
20. Սիդոն— Քաղաք Միջերկրական ծովի արևելյան ափին, Բեյրութի և Տյուրոսի միջև։ Միջնադարում և այժմ հայտնի է Սայդա անունով, որին համապատասխանում է Սմբատ Սպարապետի օգտագործած Սայիտա ձևը։
21. Սելևկիա— Նավահանգիստ Կիլիկիայում, Կոռիկոսից հարավ-արևմուտք։
22. Փիլարտոս (հունարեն՝ Φιλάρετος =առաքինասեր) Վարաժնունի— Հայ քաղկեդոնական իշխան, բյուզանդական զորավար։ 1068 թ. Ռոմանոս Դիոգենես կայսեր կողմից նշանակվել է Եփրատի առափնյա շրջանների սահմանապահ զորքերի հրամանատար։ Ռոմանոսի գահընկեցությունից հետո (1071 թ.) չի ենթարկվել կենտրոնական իշխանությանը և աստիճանաբար տիրելով Հարավային Կապադովկիայի և Հյուսիսային Ասորիքի նշանավոր քաղաքներին՝ Անտիոք, Մելիտենե, Սամոսատ, Եդեսիա և այլն, փաստորեն հիմնել է մի անկախ պետություն, հաջողությամբ լեզու գտնելով սելջուկ ամիրաների հետ։ 1086 թ., սակայն, Փիլարտոսի իշխանությունը նվաճվում է Մելիքշահ I սուլթանի կողմից։ Փիլարտոսի մասին մանրամասն տե՛ս *J. Laurent*, Etudes d'histoire Armenienne, Louvain, 1971, p. 148—159; *C. J. Yarnley*, Philaretos armenian bandit or byzantine general?, „Revue des Etudes Armeniennes", nouv. ser., XI, Paris. 1972, p. 331—353.
23. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 235—236։
24. Բուզան— Եդեսիայի ամիրա (1087—1094 թթ.), նշանակված Մելիքշահ I սուլթանի կողմից. տե՛ս *Grousset*, Histoire..., I, p. XLIV; *J. B. Segal*, Edessa, the blessed city, Oxford, 1970, p. 223.

25. **Թեոդորոս (Թորոս)**—*Հայ քաղկեդոնական իշխան, բյուզանդական պաշտոնյա։ Փիլարտոսի կողմից հավանաբար 1170-ական թթ. նշանակվել է Եդեսիայի կառավարիչ, մի պաշտոն, որ նա կարողացել է պահպանել նաև սելջուկյան տիրապետության շրջանում՝ Բուզան ամիրայի (1087—1094 թթ.) կողքին։ Վերջինիս սպանությունից հետո Թորոսը քաղաքը վերցրել է իր ձեռքը և մոտ չորս տարի (1094—1098 թթ.) փաստորեն լիակատար անկախություն վայելել։ 1098 թ. օգնության է կանչել ֆրանկներին՝ Բաղդուինի, գլխավորությամբ, և քիչ ժամանակ անց զոհ գնացել վերջինիս դավադրությանը։ Թորոսի մասին մանրամասն տե՛ս J. Laurent*, Études d'histoire Arménienne, Louvain, 1971, p. 61—128; *J. B. Segal*, Edessa, the blessed city, Oxford, 1970, p. 223—227.

26. **Օմար իբն ալ-Խատտաբ**—*Արաբական խալիֆ (634—644 թթ.)։*

27. *Ասորի հեղինակը պարզապես թարգմանել է արաբերէն* masgid-(un) = *«երկրպագելու տեղ» բառը։*

28. **Յաղի Սիան**—*Անտիոքի ամիրա (1087—1098 թթ.), նշանակված Մելիքշահ 1 սուլթանի կողմից. տե՛ս* Grousset, Histoire..., *I*, p. *71, 96։ Ասորական բնագրում այս անունն աղավաղված է. 238-րդ և 239-րդ գլուխներում գրված է* ʿksyn *(Աքսյին) ձևը, 247-րդում՝* ʾysgyn *(Իսգին)։ Համեմատաբար ճիշտ է 303-րդ գլխում հանդիպող* ygsyʾn *(Յագսիան) ձևը։ Հայկական աղբյուրներում հայտնի է* Աղսիան / Ակսիան *անունով։*

29. **Արտուք իբն Էքսեբ**— *Օղուզյան դյոգեր ցեղի առաջնորդը, Մելիքշահ I սուլթանի զորահրամանատարներից մեկը, որը նշանակվեց Պաղեստինի կառավարիչ։ Նրա սերունդները հաստատվեցին հարավարևմտյան Հայաստանում ու Հյուսիսային Միջագետքում, հիմնելով երկու ամիրայություն, մի ճյուղը՝ Հիսն-Քեֆայում և Ամիդում, մյուսը՝ Մարդինում և Նփրկերտում։ Արտուքը ո՛չ Սելջուկի, ո՛չ էլ Արուլֆաթահ Մելիքշահի եղբայրն էր, ինչպես նշված է մի քանի տող ներքև։ Հայկական աղբյուրներում հայտնի է* Արդուխ *անունով։*

30. *Հմմտ.* Մտթ. Ուռհ., *էջ 233—234։*

31. **Գաբրիել**— *Հունադավան հայ իշխան, Եդեսիայի կառավարիչ Թորոսի աները։ 1080-ական թթ. կեսերից մինչև 1103 թ. Գաբրիելը կարողացավ իր ձեռքում պահել Մելիտենե քաղաքի իշխանությունը, հաջողությամբ վանելով թուրքերի հարձակումները։ Անկախությունը պահպանելու նպատակով նա դիմեց ֆրանկների օգնությանը և իր դուստր Մորֆային ամուսնացրեց Եդեսիայի կոմս (1100—1118 թթ.), հետագայում Երուսաղեմի թագավոր (1118—1131 թթ.) Բաղդուին II-ի հետ։ Սակայն 1103 թ. Մելիտենեն գրավվեց թուրքերի կողմից, և Գաբրիելն սպանվեց։ Մատթեոս Ուռհայեցու բնագրում Գաբրիել անունը գրված է* Խորիլ / Խոռիլ, *իսկ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում»* Ղավոիլ / Ղավրիլ *ձևով, որը Գաբրիել անվան հունարեն արտասանության վերարտադրությունն է։*

32. **Ալփիրակ**— *Թուրք ամիրա, 1087 թ. Մելիքշահ I սուլթանի կողմից նշանակվել է Մելիտենեի կառավարիչ, ընդ որում իր իշխանությունը պահպանել է նաև քաղաքի հայ կառավարիչ Գաբրիելը։ 1094 թ. Եդեսիայի հայ կառավարիչ Թորոսը դիմում է Ալփիրակի օգնությանը, բայց նկատելով վերջինիս նվաճողական ձգտումները, թունավորում է նրան։* Ալփիրակ *անվանաձևը վկայված է Մատթեոս Ուռհայեցու կողմից։ Ասորական բնագրում գրված է* ʾAlpirag *ձևը, որը ֆրանսերեն թարգմանության հեղինակը վերարտադրել է* Al-Firg *ձևով։* Ալփիրակ *անվան ստուգաբանության մի փորձ տե՛ս J. Laurent*, Études d'histoire Arménienne, Louvain, 1971, p. 95: *Սեգալի գրքում հանդիպում է* Alp-Yaruq *ձևը. տե՛ս J. B. Segal*, Edessa, the blessed city, Oxford, 1970, p. 223.

33. **Սինջարշահ**— Նասրեդդին (Մուիզզեդդին) Աբուլխարիջ Ահմեդ Սինջար իբն Մելիքշահ սելջուկյան սուլթանն է (1118—1157 թթ.)։

34. **Մելիքշահ**— Ջալալադդաուլա Մուիզզեդդին Մելիքշահ II իբն Բարկիարուք սելջուկյան սուլթանն է (1105 թ.), որը սակայն ոչ թե Աբուլֆաթահի որդին, այլ նրա թոռն էր։

35. Հավանաբար նկատի ունի Գիյասեդդին Մասուդին՝ Իրաքի սելջուկյան սուլթանին (1134—1154 թ.), որն իսկապես Աբուլֆաթահ Մելիքշահ 1-ի թոռն էր։

36. Խոսքը վերաբերում է սուլթանի հռչակման հանդիսությանը, որը տեղի էր ունենում մի ամբողջ շարք արարողությունների ձևով։ Դրանց մեջ մտնում էր սուլթանի հնազանդության երդումը, խալիֆի կողմից իշխանական խորհրդանիշերի բաշխումը և այլն։ Այս ամենից հետո սուլթանի անունը մտցվում էր ուրբաթօրյա քարոզի (խութբա) մեջ, հիշատակվելով խալիֆի անունից հետո։ Սուլթանը մարմնավորում էր մահմեդական երկրների քաղաքական իշխանությունը, իսկ խալիֆը՝ հոգևոր. տե՛ս Р. А. *Гусейнов*, Султан и халиф, «Палестинский сборник», № 19(82), Л., 1969. стр. 127—138.

37. **Ղազիարսլան**— Նաջմեդդին Իլ-Ղազի I իբն Արտուք՝ Մարդինի և Նփրկերտի Արտուքյանների հարստության հիմնադիրը (1104—1122 թթ.)։ Հայկական աղբյուրներում հայտնի է **Ղազի** անունով։

38. Ասորական բնագրում գրչական սխալի հետևանքով ստացվել է «Աբուլֆաթահի թոռը»՝ d-'Abūlpatah, որը նույնությամբ փոխադրվել է ֆրանսերեն թարգմանության մեջ՝ «le petit fils d'Abu 'l-Fatah»։ Ասորերենի պատկանելություն ցույց տվող d նախդիրն այստեղ ավելորդ է։

39. **Նփրկերտ**— Քաղաք Մեծ Հայքի Աղձնյաց նահանգում, Սասնո լեռներից հարավ։ Պատմական Տիգրանակերտն է, միջնադարում հայտնի է ասորերեն Mayparqat և արաբերեն Mayyāfāriqin ձևով։ Հայկական միջնադարյան աղբյուրներում գործածվում են **Մուփարղին** և **Մուփարկին** ձևերը։

40. Հմմտ. ծանոթագրություն 36։

41. **Մուինեդդին Սուքման I իբն Արտուք**— Հիսն-Քեֆայի և Ամիդի Արտուքյան հարստության հիմնադիրը (1098—1105 թթ.)։ Այստեղ սխալմամբ նշված է, որ Սուքմանը Արտուքի թոռն է, սակայն 258-րդ գլխում սխալն ուղղված է՝ «Սուքմանը՝ Արտուքի որդին...»։

42. **Աղ-Սնղուր**— Թուրք ղուլամ (տե՛ս ծանոթագրություն 44), Աբուլֆաթահ Մելիքշահ 1 սուլթանի զորագլուխներից մեկը, 1086—1094 թթ. եղել է Հալեպի կառավարիչը։ Հայրն է Իմադեդդին Զանգիի։ Հայկական աղբյուրներում հայտնի է **Աղսնգոր/ Ախսնգոր** անունով։

43. **Թաջուդդաուլա Աբուսայիդ Տուտուշ իբն Ալփարսլան**— Սելջուկյան Ասորիքի տիրակալ (1078—1095 թթ.), եղբայրը Աբուլֆաթահ Մելիքշահ I սուլթանի։ Այստեղ սխալմամբ նշված է, որ Տուտուշը եղել է Մելիքշահի ստրուկը (ղուլամը)։ Ժամանակագրության 303-րդ գլխում Տուտուշը հիշատակված է **Թաջուլմուլուք** մականունով։ Հայկական աղբյուրներում հայտնի է **Դդուշ** անունով։

44. **Ստրուկները** (արաբերեն gulām) կազմում էին մահմեդական հասարակության նշանակալից սոցիալական խավերից մեկը։ Դրանք խոշոր տիրակալների հավատարիմ ծառաներն էին, հատկապես թիկնապահները, որոնք հաճախ, մանավանդ սելջուկների օրոք, հասնում էին բարձր դիրքի. հմմտ. Encyclopédie de l'Islam, t. II. Leyden—Paris, 1965. p. 1104—1117։

45. Հմմտ. **Մտթ. Ուռհ.**, էջ 248—252։

46. **Շամսեդդին Ելդեգիզ**— Ադրբեջանի աթաբեկ (1137—1176 թթ.), Ելդեգիզյան

հարստության հիմնադիրը։ Հարստությունը կոչվել է նաև Փահլևանյան՝ Եղեգիզի որդու՝ Փահլևանի անունով, որն այստեղ սխալմամբ վերադրված է հորը։

47. Կիրա— Հունարեն Κυρια (տիրուհի, տիկին) բառի ասորական տառադարձությունն է։

48. Հմմտ. Մտր. Ուռհ., էջ 253—255։

49. Արաբների, այսինքն՝ Հիջրայի 472 թվականը համապատասխանում է մ.թ. 1079/80 թ.։ Ինչպես տեսնում ենք, համաժամանակյա թվագրման երեք բաղադրիչներն էլ իրար չեն համընկնում։ Համեմատաբար ճիշտ է փրկչական թվականը։

50. Ալեքսիոս I— Բյուզանդական կայսր (1081—1118 թթ.)։

51. Աֆդալ (Աբուլկասիմ Շահանշահ ալ-Աֆդալ իբն Բադր ալ-Ջամալի Ամիր ալ-Ջույուշ)— Եգիպտոսի վեզիր (1095—1121 թթ.,), որը 1098 թ., օգտվելով այն հանգամանքից, որ թուրքերն զբաղված էին ֆրանկների դեմ մղվող պատերազմով, Արտուքյաններից խլեց Երուսաղեմը։ Աֆդալի հայրը՝ Եգիպտոսի նախորդ վեզիր Աբուննաջմ Բադր ալ-Ջամալի Ամիր ալ-Ջույուշը (1073—1094 թթ.), ազգությամբ հայ էր. տե՛ս Grousset, Histoire, I, p. 145, 529:

52. Բոհեմունդ Տարենտացի (Bohemond de Tarente)— Առաջին խաչակրաց արշավանքի առաջնորդներից մեկը, որը հիմնադրեց Անտիոքի խաչակրաց իշխանությունը՝ Բոհեմունդ I (1098—1104 թթ.)։ Հայկական աղբյուրներում հայտնի է Պեմունդ անունով։

53. Գոդեֆրուա Բույոնացի (Godefroi de Bouillon)— Ստորին Լոթարինգիայի դուքսը, առաջին խաչակրաց արշավանքի առաջնորդներից մեկը, Երուսաղեմի խաչակրաց պետության առաջին թագավորը (1099—1100)։ Հայկական աղբյուրներում հայտնի է Կոնդոփրէ/Գունթրուֆրէ անունով։

54. Ռայմոնդ Սենժիլցի (Raymond de Saint-Gilles)— Թուլուզի կոմսը, առաջին խաչակրաց արշավանքի առաջնորդներից մեկը, որը հիմնադրեց Տրիպոլիի խաչակրաց կոմսությունը, հանդիսանալով նրա առաջին կոմսը (1102—1105 թթ.)։ Հայկական աղբյուրներում հայտնի է Ջնճիլ կամ Գունդսանջիլ անունով։

55. Տանկրեդ (Tancrede)— Առաջին խաչակրաց արշավանքի առաջնորդներից մեկը, Բոհեմունդի քրոջ որդին, իշխան (պրինց) Անտիոքի (1104—1112 թթ.)։ Հայկական աղբյուրներում հայտնի է Տանկրի / Տանգրի անունով։

56. Այստեղ մեկ-երկու բառ ջնջված է։ Հավանաբար պետք է նշված լիներ Նիկիա քաղաքի անունը։

57. Խոսքը վերաբերում է Պետրոս Անապատականի գլխավորած գյուղացիական խաչակրությանը, որը ջախջախվեց Փոքր Ասիայում 1096 թ. հոկտեմբերին։

58. Հմմտ. Մտր. Ուռհ., էջ 255—258։

59. Հմմտ. Մտր. Ուռհ., էջ 260։

60. Բաղդուին Բուլոնիացի (Baudouin de Boulogne)— Եդեսիայի խաչակրաց կոմսության հիմնադիրը (1098—1100 թթ.), հետագայում Երուսաղեմի թագավոր Բաղդուին I (1100—1118 թթ.)։ Հայկական աղբյուրներում հայտնի է Պալտին անունով։

61. Հմմտ. Մտր. Ուռհ., էջ 261—262։

62. Ըստ ժամանակագրության հրատարակիչ Ժ.—Բ. Շաբոյի՝ ձեռագրի այս մասից պակասում է երկու թերթ։

63. Հմմտ. Մտր. Ուռհ., էջ 263—264։

64. Ասորական բնագրի հրատարակիչ Ժ.—Բ. Շաբոն այստեղ բազմակետեր է դրել, սակայն առանց որևէ բացատրության։

65. Կիրբուղա— Մոսուլի ամիրա (1096—1102 թթ.)։ Հայտնի է 1098 թ. ֆրանկ-

ների դեմ ձեռնարկած արշավանքով։ Կիրբուղան, որ ճգնաժամային դրություն էր ըս-տեղծել Անտիոքում պատսպարված ֆրանկների համար, ի վերջո ջախջախիչ պարտու-թյուն կրեց և հազիվ փրկություն գտավ իր երկրում. տե՛ս Grousset, Histoire..., I, p, L, 97, 395։ Մատթեոս Ուռհայեցու մոտ հիշատակված է աղավաղված Կուրա-պաղատ և Կիւրապաղա ձևերով։

66. Հմմտ. Մաթ. Ուռհ., էջ 263—266։

67. Տիբերիա— Քաղաք Հյուսիսային Պաղեստինում, համանուն լճի արևմտյան ափին։ Միջնադարում հայտնի է արաբական Տաբարիա անունով, որին համապատաս-խանում է հայկական աղբյուրների Տապար ձևը։

68. Սռուճ—Բերդաքաղաք Հյուսիսային Միջագետքում, Եդեսիայից հարավ-արև-մուտք։ Պատմական Բատնա քաղաքն է, որը միջնադարում հայտնի է Sarūg, Sarūj անունով։

69. Ջնգմա— Քաղաք Հյուսիսային Ասորիքում, Եփրատի աջ ափին, Պիր (Պիրե-ճիկ) քաղաքից արևմուտք։

70. Ըստ երևույթին, նկատի ունի Վասակ Պահլավունի հայ իշխանին՝ Գրիգոր Մագիստրոսի որդուն, որը Անտիոքի դուքսն էր 1071—1078 թթ. և որի որդիներից մեկը՝ Ապլղարիպը, տիրում էր Պիր բերդաքաղաքին, իսկ մյուսը՝ Լիկոսը, Պիրի և Այնթապի միջև գտնվող Նզեպ ամրոցին։ Վերջինիս տեղադրության մասին մանրամասն տե՛ս Լ. Տեր-Պետրոսյան, Հայերը միջնադարյան Մծբինում և Մեծ Հայքի հարավային նահանգներում, «Պատմա-բանասիրական հանդես», 1979, № 3, էջ 84—86։

71. Ռապան— Բերդաքաղաք Հյուսիսային Ասորիքում, Քեսունից հարավ, Հռոմ-կլայից հյուսիս-արևմուտք։

72. Գող Վասիլ— Հայ իշխան, Կամսարական տոհմից, տեր Քեսունի (1082—1112 թթ.)։ Գող Վասիլը ստեղծել էր ժամանակի ամենաընդարձակ և հզոր հայկական իշխանությունը, որը, սակայն, նվաճվեց խաչակիրների կողմից 1115 թ.։

73. Ղազի Բալդուկյան— Բալդուկը Սամոսատի ամիրան էր XI դ. վերջում, որը 1098 թ. չդիմանալով հայերի և ֆրանկների ճնշմանը, Սամոսատը վաճառեց Եդեսիայի Բաղդուին I կոմսին։ Ինչ վերաբերում է Ղազի անվանը, ապա մեր ժամանակագրու-թյան հեղինակը, ըստ երևույթին, թյուրիմացության մեջ է, քանի որ Ղազին իրականում ոչ թե Բալդուկի սերունդներից մեկն էր, այլ նրա հայրը՝ հավանաբար Սեբաստիայի Դանիշմենդյան ամիրա Ղազի Գյումուշտեգինը (1084—1134 թթ.), հմմտ. Grousset Histoire..., I, p. 61, II, p. 870։ Մատթեոս Ուռհայեցին Սամոսատի ամիրային անվանում է «Պոլտուխն որդի Ամիրխաղէ (Ամիր Ղազի)» ձևով։

74. Ռուբեն I— Կիլիկիայի իշխան (1080—1095 թթ.), Ռուբինյան հարստության հիմնադիրը։

75. Հմմտ. Մաթ. Ուռհ., էջ 267։

76. Յաֆա— Նավահանգիստ Միջերկրական ծովի պաղեստինյան ափին։

77. Տրիպոլի— Նավահանգստային քաղաք Հյուսիսային Լիբանանում։ Միջնադարյան հայկական աղբյուրներում հայտնի է Տրապոլիս / Տռապոլիս անունով։

78. Հմմտ. Մաթ. Ուռհ., էջ 283։

79. Խոսքը վերաբերում է Ռայմոնդ Սենժիլցու կառուցած Mont-Pèlerin (Mons Peregrinus) կամ Qal'at Sanjil բերդին. տե՛ս Grousset, Histoire..., I. p. 342.

80. Ասկալոն— Նավահանգիստ Միջերկրական ծովի պաղեստինյան ափի հարա-վում։ Աշկալոն անունը նույն բառի եբրայական-ասորական ձևն է։

81. Հոմս— Ասորիքի նշանավոր քաղաքներից մեկը (պատմական Եմեսան), Որոն-տես գետի աջ ափին, Դամասկոսի և Համայի միջև։ Միջնադարյան հայկական աղբյուր-ներում հայտնի է Հեմս / Հէմս անունով։

82. **Թադմոր**— *Քաղաք անապատային Ասորիքում, պատմական Պալմիրայի տեղում։*

83. **Բոսրա**— *Քաղաք Հարավային Ասորիքում, Դամասկոսից հարավ-արևելք։*

84. **Բաալբեկ**— *Քաղաք լեռնային Լիբանանում։ Միջնադարյան հայկական աղբյուրներում հայտնի է* **Պալպաք** *անունով։*

85. **Համա**— *Ասորիքի նշանավոր քաղաքներից մեկը (պատմական Եպիփանիան), Որոնտես գետի ափին, Հոմսից բավականին հյուսիս։*

86. **Քիլիս**— *Բնակավայր Հյուսիսային Ասորիքում, Այնթապից հարավ-արևմուտք, Հալեպից հյուսիս։ Ասորական բնագրում գրված է* Kls *ձևը, որը Ա. Աբունան իր ֆրանսերեն թարգմանության մեջ տառադարձել է* Chalcis, *իսկ 297-րդ գլխի* Klz *բառը, որը, հավանաբար նույն անվան տարընթերցվածն է, տառադարձել է* Killiz։

87. **Մաբբուգ**— *Քաղաք Հյուսիսային Ասորիքում, Հալեպից հյուսիս-արևելք, Եփրատի աջ ափից ոչ շատ հեռու։ Պատմական Հիերապոլիսն է, որը հայկական հնագույն աղբյուրներում հայտնի է* **Նաբուկ**, *իսկ միջնադարյան աղբյուրներում՝* **Մնպէճ** *(արաբերեն* Manbij *) անունով։*

88. **Խառան**— *Հնագույն քաղաք Հյուսիսային Միջագետքում, Եդեսիայից հարավ-արևելք. Բալիկ գետի ափին։*

89. **Կալլինիկոս**— *Քաղաք Հյուսիսային Միջագետքում, Եփրատի ձախ ափին, Բալիկ գետի միախառնման տեղից մի քիչ վեր։ Միջնադարում հայտնի է* **Ռակկա** *անունով, որը հանդիպում է նաև հայկական աղբյուրներում։*

90. **Մելիք Դանիշմենդ Ահմեդ Ղազի Շամսեդդին**— *Սեբաստիայի Դանիշմենդյան հարստության հիմնադիրը (1071—1084 թթ.)։ Սակայն ինչպես այստեղ, այնպես նաև 255-րդ գլխում խոսքը վերաբերում է Դանիշմենդի որդուն՝* **Ամիր (Ամիր) Ղազի Գյումուշտեգինին** *(1084—1134 թթ.)։ Դանիշմենդ անունը հայկական աղբյուրներում հանդիպում է* **Դանիշման/Դանուշման** *ձևով։*

91. *Հմմտ.* **Մտք. Ուռհ.**, *էջ 272—273։*

92. *Հմմտ. Ժամանակագրություն 47։*

93. **Մորֆիա**— *Մելիտենեի հայ իշխան Գաբրիելի դուստրը, Եդեսիայի կոմս (1100—1118 թթ.) Բաղդուին II-ի կինը։*

94. *Ըստ Մատթեոս Ուռհայեցու՝ Բոհեմունդին հարյուր հազար դահեկանով փրկագնել է հայ իշխան Գող Վասիլը. տե՛ս* **Մտք. Ուռհ.**, *էջ 293—294։*

95. **Պուատվին** *(Գիյոմ Պուատիեցի—* Guillaume de Poitiers*)— Ակվիտանիայի դուքս, առաջնորդը առաջին խաչակրաց արշավանքի երկրորդ ալիքի (1100—1101 թ.), որը ջախջախվեց Փոքր Ասիայում 1101 թ. սեպտեմբերին։ Հայկական և ասորական աղբյուրներում կոչվում է* **Պետեւին** =Pilābin.

96. *Հմմտ.* **Մտք. Ուռհ.**, *էջ 283—284։*

97. *Հմմտ.* **Մտք. Ուռհ.**, *էջ 271—272, 274։*

98. **Բաղդուին II** (Baudouin *II* du Bourg)*— Բաղդուին I-ի ազգականը, Եդեսիայի կոմս (1100—1118 թթ.), հետագայում՝ Երուսաղեմի թագավոր (1118—1131 թթ.)։ Հայկական աղբյուրներում հայտնի է* **Պաղտին** *կամ* **Պաղտին Տրպօրգ** *անունով։*

99. **Թլպաշար**— *Բերդաքաղաք Հյուսիսային Ասորիքում, Այնթապից հարավ։* **Ավելայց բլուրը** *այդ սեմական տեղանվան ստուգաբանությունն է։*

100. **Ժոսլին Կուրտենեցի** (Jocelin de Courtenay)*— Բաղդուին* ***II*** *թագավորի ազգականը, Եդեսիայի կոմս՝* **Ժոսլին I** *(1118—1131 թթ.)։ Հայկական աղբյուրներում հայտնի է* **Ճօսլին** *անունով։*

101. *Հմմտ. Ժամանակագրություն 47։*

102. **Հովհաննես** *(Սայիդ բար-Սաբունի)— Հակոբիկյան եկեղեցու Մելիտենեի*

թեմի մետրապոլիտը, որը 1103 թ. սպանվեց քաղաքի հայազգի կառավարիչ Գաբրիելի ձեռքով։ Սայիդ բար-Սաբունին հայտնի է նաև որպես բանաստեղծ։

103. 256-րդ գլխահամարը թյուրիմացաբար բաց է թողնված։

104. Բալակ— Արտուքի թոռներից մեկը, տիրել է Սրուճին (1095—1101 թթ.), Հալեպին ու Խառանին (1123—1124 թթ.)։ Հայկական աղբյուրներում հայտնի է Պալակ անունով։

105. Ֆուշեր (Ֆուլք) Շարտրացի (Foucher/Foulque de Chartres) —Սրուճ քաղաքի ֆրանկ կայազորի հրամանատար (1099 թ.), նշանակված Եդեսիայի կոմս Բաղդուին I-ի կողմից. տե՛ս Grousset, Histoire..., I, p. 62—66։ Հայկական աղբյուրներում հայտնի է Փուշեր/Փուշեր անունով։

106. Համտ. Մտք. Ուռհ., էջ 274—275։

107. Պափիոս բառը ընդհանրապես կաթոլիկ հոգևորականների տարածված անվանումն է արևելքում։ Ինչ վերաբերում է Ուռհայի ֆրանկների եպիսկոպոսական աթոռին, ապա նշված իրադարձությունների ժամանակ այն զբաղեցնում էր Բենեդիկտոսը, որը 1104 թ. գերի ընկավ թուրքերի ձեռքը. տե՛ս J. B. Segal, Edessa, the blessed city, Oxford, 1970, p. 237.

108. Ջկրմիշ— Մոսուլի ամիրա (1102—1107 թթ.). տե՛ս Grousset, Histoire..., I, p. 395, 431։ Հայկական աղբյուրներում հայտնի է Ճկրմիշ անունով։

109. Համտ. Մտք. Ուռհ., էջ 301—302։

110. «Փակեցին քաղաքի դարպասները» բառերը ֆրանսերեն թարգմանության մեջ բաց են թողնված։

111. Կարկառ— Բերդաքաղաք պատմական Կապադովկիայում, Եփրատի աջ ափին, Սամոսատից հյուսիս-արևելք։ Հայկական միջնադարյան աղբյուրներում հիշատակվում է Կառկառ ձևով։

112. Սանբիլ— Հավանաբար հայերեն Սամուել անվան աղավաղված ձևն է։ Ասորերենում հայերեն վ-ի դիմաց սովորաբար դրվում է բ. այնպես որ թեև ասորական. բնագրում գրված է Sanbıl, բայց պետք է կարդալ Sa nvıl:

113. Կոստանդին— Հայ իշխան, տեր Կարկառի (մոտ. 1090-ական թթ.—1117 թ.)։ Կոստանդինը դաշնակցեց ֆրանկների հետ, մասնակցեց Եդեսիայի հայ կառավարիչ Թորոսի դեմ նյութված դավադրությանը, այնուամենայնիվ ինքը նույնպես զոհ գնաց խաչակիրների դավերին։ 1117 թ. Եդեսիայի կոմս Բաղդուին II-ը (1100—1118 թթ.) ձերբակալեց նրան և բանտ նետեց, որտեղ էլ նա կնքեց իր մահկանացուն. տե՛ս Grousset, Histoire..., I, p. 55—59, 493.

114. Դավրոն— Հայ իշխան, Կարկառի տեր Կոստանդինի (մոտ. 1090-ական թթ.—1117 թ.) եղբայրը։

115. Քրիստափոր— Հայ իշխան, Կարկառի տեր Կոստանդինի (մոտ. 1090-ական թթ.—1117 թ.) եղբայրը։

116. Մելիտենեի և Սամոսատի գավառում գտնվող հակոբիկյան այս վանքերի մասին մանրամասն տեղեկություններ կարելի է գտնել է. Հոնիգմանի գրքում. տե՛ս E. Holngmann, Le couvent..., p. 57—61, 72, 80—82, 88, 171, 178—180։ Հետագա ուսումնասիրությունները հեշտացնելու նպատակով նշում ենք այդ վանքերի ասորական անվանումները. 1. Mar 'Abhai' կամ Seblata, 2. Šamıtaye d-Pesqın, 3. Mar Giwargts, 4. Šıra d-Sabtai 5. Malkos.

117. Հակոբիկ ասորիները ուղղափառ ասելով հասկանում էին միաբնակներին,

այսինքն՝ իրենց, հայերին, ղպտիներին և եթովպացիներին։ Այս հատվածում հեղինակը նկատի ունի, ըստ երևույթին, հայերին և հակոբիկ ասորիներին։

118. Ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը բնագրի Tūrkāyē wa—Ṭayyāyē (թուրքեր և արաբներ) բառերը կարդացել է առանց wa շաղկապի և թարգմանել է musulmans turcs (մահմեդական թուրքեր)։

119. Խոսքը վերաբերում է Աբրահամ նահապետին, որը, ինչպես հայտնի է, Հարավային Միջագետքից դեպի Միջերկրական ծովափ գաղթելիս անցել է Խառանով. տե՛ս Ծննդոց, ԺԱ, 31։

120. Բալիկ գետ— Եփրատի ձախակողմյան վտակներից մեկը Հյուսիսային Միջագետքում, Եփրատին միախառնվում է Ռակկա (Կալլինիկոս) քաղաքի մոտ։

121. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 295—296։

122. Ասորական բնագրի msawhrayit (դանդաղ. հապաղելով) բառը ֆրանսերեն թարգմանության հեղինակը՝ Ա. Աբունան, կարդացել է msawhdayit (առանձին) և համապատասխանաբար թարգմանել isolement.

123. Բնագիրն, ըստ երևույթին, պետք է հասկանալ հետևյալ կերպ. խաչակրաց առաջնորդներն ուզում էին որպես նվաճողներ մտնել Մոսուլ, բայց մտան որպես գերիներ։

124. Ռիչարդ Սալեռնացի (Richard de Salerne)— Անտիոքի տիրոջ՝ Տանկրեդի (1104—1112 թթ.) ազգականը, որը 1105—1108 թթ. կառավարում էր Եդեսիան, մինչ վերջինիս կոմս Բաղդուին II-ը գտնվում էր գերության մեջ։ Հայկական աղբյուրներում հիշատակվում է Ռիչարդ/Ռաչարդ անունով։

125. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 301, 309։

126. Կալա-Ջաբար— Բերդ Հյուսիսային Միջագետքում, Եփրատի ձախ ափին, Հալեպ և Ռակկա (Կալլինիկոս) քաղաքների միջև։ Միջնադարյան հայկական աղբյուրներում հայտնի է Խյաբ-Ճապար անունով։

127. Ըստ ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության խմբագիր Ժ.—Մ. Ֆիեի՝ «Միքիլատեն» անծանոթ բառ է. տե՛ս Abouna-Fiey, p. 52.

128. Ա. Աբունան՝ ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը, թյուրիմացաբար գրել է տասնհինգ։

129. Ջաուալի Սակավա— Մոսուլի ամիրա (1107—1109 թթ.). տե՛ս Grousset, Histoire..., I, p. 431—433։ Հայկական աղբյուրներում այս անունը հիշատակված է Ջօլի / Ջովլի ձևով։

130. Տե՛ս ծանոթագրություն 128։

131. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 307—308։

132. Ասորական բնագրում տեղանունը նշված է Gubāyē ձևով։ Մեր ժամանակագրությունը այս վայրը տեղադրում է Հյուսիսային Ասորիքում՝ Կուրուսի և Տլուքի միջև։

133. Կուրուս— Քաղաք Հյուսիսային Ասորիքում, Հալեպից բավականին հյուսիս-արևմուտք։ Միջնադարյան հայկական աղբյուրներում հայտնի է Կուրիս անունով

134. Տլուք— Քաղաք Հյուսիսային Ասորիքում, Այնթապից հյուսիս-արևմուտք։

135. Շարաֆուդդաուլա Մաուդուդ իբն Ալթունշահ— Մոսուլի ամիրա (1109—1113 թթ.). տե՛ս Grousset, Histoire..., I, p. 449, 485։ Հայկական աղբյուրներում հայտնի է Մամտուտ անունով։

136. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 312—313։

137. Իրականում այդ դեպքը տեղի է ունեցել 1110 թ., տե՛ս Grousset, Histoire..., I, p. 449.

138. Մանգղիոն կամ մանգղոն— Պատերազմական մեքենա, ասորական բնագրում գրված է manganīqā ձևով։

139. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 313—314։

140. Ջուլաբ (արաբերեն Čullāb)—Այժմյան Colap Dere անունը կրող գետը, որը հոսում է Եդեսիայից մի փոքր արևելք. տե՛ս E. Honigmann, Le couvent..., p. 87։ Գետի ակունքի մոտ Ս. Երեմյանի կազմած քարտեզում նշված է Ջալաբ անունով մի բնակավայր. տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հ. III, Երևան, 1976 թ.։

141. Խոսքը վերաբերում է Ռայմոնդ Սենժիլցու որդի Բերտրանին (Bertrand), որը 1109—1112/3 թթ. Տրիպոլիի կոմսն էր։ Հայկական աղբյուրներում այս անունը վկայված է Բերդան/Բերդրան ձևով։

142. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 314—315։

143. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 321—322։

144. Ինչպես նշվեց սույն գրքի ներածության մեջ, Մատթեոս Ուռհայեցին լռությամբ է մատնում դավաճանների ազգության հարցը։

145. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 328—329, 325։

146. Իսմայելիտական աղանդը մահմեդական շիա ճյուղի աղանդներից մեկն է, որը մեծ տարածում է գտել հատկապես սկսած XI դ. երկրորդ կեսից Պարսկաստանում և Ասորիքում։ Պարսից իսմայելիտների կենտրոնն էր Ղազվինից հյուսիս-արևմուտք գտնվող Ալամուտ ամրոցը, որը հռչակվեց իսմայելիտների նշանավոր առաջնորդ Հասան իբն Սաբբահի օրոք (1090—1124 թթ.)։ Իսմայելիտների գործունեության հիմնական եղանակներից մեկը անհատական տեռորն էր, որն իրականացնում էին համայնքի հասարակ անդամները՝ ֆիդայիները (անձնազոհները)։ Բազմաթիվ մահմեդական սուլթաններ, ամիրաներ, ինչպես նաև մի քանի ֆրանկ առաջնորդներ զոհ են գնացել իսմայելիտների դավերին։ Իսմայելիտները Եվրոպայում հայտնի են assassins (մարդասպան) անունով, որը ծագում է արաբերեն hašīšīyun (հաշիշամոլ) բառից։ Իսմայելիտների աղանդի մասին մանրամասն տե՛ս Encyclopédie de l'Islam, t. I, Paris, 1913, p. 498—500, t. II, Paris, 1927, p. 585—588. *К. Босворт*, Мусульманские династии, стр. 175—177.

147. Ռոջեր Սալերնացի (Roger de Salerne)— Իշխան (պրինց) Անտիոքի (1112—1119 թթ.)։ Հայկական աղբյուրներում այս անունը վկայված է Ռոճէր / Ռոճէլ ձևով։

148. Ազազ— Քաղաք Հյուսիսային Ասորիքում, Հալեպից հյուսիս-արևմուտք։

149. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 342—343։

150. Ժոսլին II (Jocelin)— Եդեսիայի կոմս (1131—1146 թթ.), 1146—1150՝ անվանապես։ 1150 թ. գերվել է Հալեպի ամիրա Նուրեդդինի կողմից և մահացել Հալեպում 1159 թ.։ Հայկական աղբյուրներում հայտնի է Ճօսլին անունով։

151. Ռիդվան իբն Տուտուշ— Ասորիքի սելջուկների հալեպյան ճյուղի սուլթան (1095—1113 թթ.)։ Հայկական աղբյուրներում այս անունը վկայված է Ռատուան/Ռասուան ձևով։

152. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 330։

153. Բուրսուխ (ասորական բնագրում՝ Bursuqī) անունով զորահրամանատարին Անանուն Եդեսացին հիշատակում է նաև 295, 296, 297 և 303-րդ գլուխներում, սակայն նա ակնհայտորեն շփոթել է հետևյալ երկու անձնավորություններին. 1. Բուրսուխ որդի Բուրսուխի, Համադանի կառավարիչ, 1111 և 1115 թթ. հակաֆրանկական արշավանքների հրամանատարը, մահացել է 1116 թ., 2. Աղ-Սնդուր ալ-Բուրսուխի, Մոսուլի ամիրա (1113—1115, 1121—1126 թթ.)։ 1126 թ. նոյեմբերի 26-ին սպանվել է Մոսուլում իսմայելիտների ձեռքով։

154. Պիր— Քաղաք Հյուսիսային Միջագետքում, Եփրատի ձախ ափին, Եդեսիայից հարավ-արևմուտք։ Այժմ հայտնի է Պիրեճիկ (Birejik) անունով։

155. *Հմմտ.* Մտր. Ուռհ., *էջ 337—338։*

156. Ապլղարիպ Պահլավունի— *Հայ իշխան, տեր Պիր բերդաքաղաքի, որը ժամանակակից Պիրեճիկն է (մոտ. 1087—1117 թթ.)։ Ապլղարիպը Գրիգոր Մագիստրոսի թոռն էր, Անտիոքի դուքս Վասակ Պահլավունու (1071—1078 թթ.) որդին։ Ապլղարիպի իշխանությունը բռնի ուժով նվաճեցին խաչակիրները։*

157. Գալերան *(*Galeran du Puiset*)— Եդեսիայի կոմսեր Բաղդուին II-ի և Ժոսլին I-ի ազգականը, որը 1117 թ. նշանակվեց հայ իշխան Ապլղարիպից խլված Պիր (Պիրեճիկ) բերդաքաղաքի տեր։ Հայկական աղբյուրներում հիշատակված է* Վալարան *անունով։*

158. *Հմմտ.* Մտր. Ուռհ., *էջ 239—240։*

159. Ֆարմի— *Քաղաք հյուսիսարևելյան Եգիպտոսում, Միջերկրական ծովի ափին. արաբական անվանումը՝* ալ-Ֆարամա, *պատմականը՝* Պելուզիում:

160. *Հմմտ.* Մտր. Ուռհ., *էջ 346։*

161. Միքայել— *Հայ իշխան, տեր Կարկառի (1117—1123 թթ.)։ 1123 թ. սեղմելով թուրքերից, Միքայելը Կարկառը հանձնեց Երուսաղեմի Բաղդուին II թագավորին (1118—1131 թթ.)։ Միքայելը Կարկառի նախորդ իշխան Կոստանդինի որդին էր*

162. Անձիտ— *Ծոփաց աշխարհի՝ Չորրորդ Հայքի 6-րդ գավառը, որը գրավում է Խարբերդի (Հիսն-Զիադի) դաշտի հիմնական մասը. տե՛ս* Ս. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 36։ Միջնադարյան հայկական աղբյուրներում հայտնի է* Յանձիթ/Հանձիթ *անունով։*

163. Հիսն-Զիադ— *Բերդաքաղաք Մեծ Հայքի Ծոփաց նահանգում, Արածանիի ձախ ափին, Մելիտենեից հյուսիս-արևելք։ Հիսն-Զիադը հայկական աղբյուրներից քաջ հայտնի* Խարբերդ *քաղաքն է։*

164. *Ամսանունն ասորական բնագրում գրված է անորոշ* Kanun *ձևով, որը կարելի է հասկանալ նաև հունվար, քանի որ ասորերենում դեկտեմբեր ամիսը կոչվում է առաջին Քանուն, իսկ հունվարը՝ երկրորդ։*

165. Հեսմի— *Լեռ Եդեսիայից հարավ-արևելք, Խառան քաղաքի մոտակայքում. Հմմտ.* Michel le Syrien, Introduction, p. 34*.

166. *Հմմտ.* Մտր. Ուռհ., *էջ 343—344։*

167. *Հմմտ.* Մտր. Ուռհ., *էջ 344։*

168. *Հմմտ.* Մտր. Ուռհ., *էջ 345։*

169. *Հմմտ.* Մտր. Ուռհ., *էջ 346—347։*

170. *Հմմտ.* Մտր. Ուռհ., *էջ 348—350։ Ուռհայեցու պատումն այս դրվագում բավականին տարբերվում է Անանուն Եդեսացու ժամանակագրությունից։*

171. Ռուքնադդաուլա Դաուդ իբն Սուքման— *Հիսն-Քեֆայի և Ամիդի ճյուղի Արտուքյան ամիրա (1109—1144 թթ.)։ Մատթեոս Ուռհայեցու մոտ հիշատակված է* Դաուդ որդի Սուգմանայ *անունով։*

172. *Ասորական բնագրում* վրացիներ *բառի փոխարեն գրված է հայերենից ծագող* Vraçaye (Brastaye*) ձևը. այդ մասին մանրամասն տե՛ս սույն աշխատության ներածությունը։*

173. Դավիթ IV Շինարար— *Վրաց թագավոր (1089—1125 թթ.)։*

174. Դարա— *Քաղաք Հյուսիսային Միջագետքում, Մծբինից հյուսիս-արևմուտք։*

175. Խուսամեդդին Տիմուրտաշ իբն Իլ-Ղազի— *Մարդինի և Նփրկերտի ճյուղի Արտուքյան ամիրա (1112—1152 թթ.)։ Հայկական աղբյուրներում այս անունը վկայված է* Տումրտաշ *ձևով։*

176. *Հմմտ.* Մտր. Ուռհ., *էջ 352։*

177. Հովհաննես II— *Բյուզանդական կայսր (1118—1143 թթ.)։*

178. Ժամանակագրության ասորական բնօրինակության մեջ սխալմամբ կրկնված է 283-րդ գլխահամարը։

179. Նկատի ունի, ըստ երևույթին, Սուլեյման իբն Կութուլմիշին՝ Ռումի սուլթանության հիմնադրին. տե՛ս ծանոթագրություն 18։

180. **Ռուքնեդդին Մասուդ I իբն Քիլիջ-Արսլան**— Սելջուկյան Ռումի սուլթան (1116—1156 թթ.)։ Հայկական աղբյուրներում այս անունը վկայված է **Մասուտ** ձևով։

181. **Նեոկեսարիա**— Քաղաք Պոնտոսում, Սեբաստիայից հյուսիս։

182. **Մելիք (Ամիր) Ղազի Գյումուշտեգին իբն Դանիշմենդ**— Սեբաստիայի ճյուղի Դանիշմենդյան ամիրա (1084—1134 թթ.)։ Հայկական աղբյուրներում հիշատակված է **Խազի որդի Դանիշմանի** ձևով։ Հմմտ. ծանոթագրություն 90։

183. **Ալեքսիոս**— Բյուզանդական կայսր Հովհաննես II-ի (1118—1143 թթ.) որդին։

184. Հմմտ. **Մտթ. Ուռհ.**, էջ 351—352։

185. **Սերիքա** անունով մի բնակավայր հիշվում է նաև Միքայել Ասորու «Ժամանակագրության» մեջ։ Ժ.—Բ. Շաբոն այն տեղադրում է Հյուսիսային Միջագետքի Ռեշ-Այնա քաղաքի շրջակայքում. տե՛ս Michel le Syrien. Introduction, p. 50*. Հմմտ. նաև՝ E. Honigmann, Le couvent..., p. 144.

186. **Ումկայի** տեղադրությունը հայտնի չէ, հավանաբար գտնվել է Պիրի և Ուռհայի միջև ընկած տարածքում։

187. Ասորական բնագրում այս աղբյուրի անունը գրված է hayg ձևով, որը ամենայն հավանականությամբ արաբերեն havyij (բուռն) բառի տառադարձությունն է։ Աղբյուրի տեղադրության մասին տե՛ս E. Honigmann, Le couvent..., p. 144

188. **Ռեշ-Քեֆա**— Հակոբիկյան եկեղեցու եպիսկոպոսանիստ կենտրոններից մեկը Հյուսիսային Միջագետքում, հավանաբար Ուռհայից արևելք. հմմտ. E. Honigmann Le couvent..., p. 143—144.

189. **Ժոֆրուա Վանական** (Geoffroy le Moine)— Մարաշի կոմս (մահ. 1124 թ.)։ Ասորական բնագրում **Վանական** մականվան փոխարեն գրված է ʿalmoin, որ ֆրանսերեն le moine (վանական) բառի տառադարձությունն է։ Հայկական աղբյուրներում **Ժոֆրուա** անունը վկայված է **Ճօփրի / Ճօֆրի** ձևով։

190. Հմմտ. **Մտթ. Ուռհ.**, էջ 352—353։

191. **Քյահթա**— Բերդ պատմական Կապադովկիայում, Մելիտենեից հարավ-արևելք, Կարկառից հյուսիս-արևմուտք։

192. **Սինճա**— Եփրատի աջակողմյան վտակներից մեկը, որը միախառնվում է մայր գետին Քեսունի և Սամոսատի միջև։ Մատթեոս Ուռհայեցին այս անունը հիշատակում է **Շնջէ** ձևով, իսկ Սմբատ Սպարապետը՝ **Սնճէ**։

193. **Սինճայի կամուրջը** Մատթեոս Ուռհայեցին կոչում է «Շնջէոյ կանդարա». տե՛ս **Մտթ. Ուռհ.**, էջ 353։

194. **Կլատիա** (ասորերեն Klātlā)— Ֆրանսերեն թարգմանության մեջ այս տեղանունը տառադարձված է le pays d'Aḫlaṭ (Խլաթի երկիր), որ ճիշտ չէ, քանի որ նախ՝ մեր ժամանակագրության մեջ **Խլաթ** քաղաքի անունը միշտ գրվում է Klat ձևով, և երկրորդ՝ դատելով նշված դրվագի բովանդակությունից **Կլատիա** բնակավայրը պետք է գտնված լինի Մելիտենեի գավառում։

195. Հմմտ. **Մտթ. Ուռհ.**, էջ 353—355։

196. Մատթեոս Ուռհայեցին որևէ տեղեկություն չի հաղորդում այդ զինվորների ազգային պատկանելության մասին. հմմտ. սույն աշխատության ներածությունը։

197. **Պեհեսնի**— Բերդ պատմական Կոմագենեում, Քեսուն քաղաքից մի փոքր հյուսիս։

198. Ըստ խաչակրաց պատմության արևմտյան աղբյուրների՝ Ժոսլինը Հիսն-Զիադից ճողոպրել է երեք հայի ուղեկցությամբ. տե՛ս Grousset, Histoire..., I, p. 591.,

199. Գոյան (ասորերեն Gosan ) անունը կարելի է կարդալ նաև Ջոշան: Ժամանակագրության տվյալներով այս լեռը գտնվել է Հալեպից արևմուտք: Հավանաբար դա ներկայիս Ջեբել-Սաման անունը կրող լեռն է. տե՛ս V. Cuinet, La Turquie d'Asie t. II, Paris, 1892, p. 109.

200. Աբուլճասան իբն Խաշշաբ— Հալեպի արաբ բնակչության առաջնորդը, սպանվել է 1125 թ., տե՛ս Setton, A history..., I, p. 115, 685.

201. Ողղափառ ասելով հեղինակն այստեղ նկատի ունի հակոբիկ ասորիներին. տե՛ս ծանոթագրություն 117։

202. Աթանասիոս VII (Աբուլֆարաջ բար-Խամորո)— Հակոբիկ ասորիների առաջնորդ, Անտիոքի պատրիարք (1090—1129 թթ.)։

203. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 357—358։

204. Մատթեոս Ուռհայեցին Մահիին կոչում է «կոմսն Տլքոյ, Անթապայ և Ռապանայ». տե՛ս Մտթ. Ուռհ., էջ 357։

205. Հմմտ. Մաթ. Ուռհ., էջ 359—360։

206. Դոչ Դոմենիկո Միչիելի (Domenico Michieli)— Վենետիկի դոջ, 1122—1124 թթ. վենետիկյան ծովային խաչակրության առաջնորդը։

207. Հմմտ. Մաթ. Ուռհ., էջ 360։

208. Ա. Աբուեան՝ ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը, գրել է «le 24 juillet» (հուլիսի 24-ին)։ Սակայն ասորական բնագրում ամսաթիվը նշված չէ։ Թարգմանիչը թյուրիմացաբար հաջորդ նախադասության առաջին՝ kad (մինչև, դեռևս) բառը համարել է թիվ և kd տառերի թվային արժեքով ստացել 24։

209. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 358—359։ Թեև Անանուն եդեսացու ժամանակագրության սույն գլուխը վերնագրված է «Բաղդուինի ազատագրման և Գալերանի սպանության մասին», սակայն դրա վերաբերյալ բնագրում որևէ խոսք չկա։

210. Բուրսուկի և ընդհանրապես սույն գլխում նկարագրվող դրվագի մասին մանրամասն տե՛ս ծանոթագրություն 153։

211. Հմմտ. Մաթ. Ուռհ., էջ 360—361։

212. Դուբայս իբն Սադակա— Հիլլայի արաբական իշխանության ամիրա (1107—1134 թթ.), որը 1123 թ. պարտվելով Բաղդադի խալիֆից, ապաստան գտավ Կալա-Ջաբարում, իսկ 1124 թ. փորձեց ֆրանկների օգնությամբ Ասորիքում ստեղծել մի արաբական պետություն՝ Հալեպ կենտրոնով. տե՛ս Grousset, Histoire..., I, p. LIV, 524—528, 623—630։ Մատթեոս Ուռհայեցու մոտ հիշատակված է Տուպայիս անունով։

213. Հիլլա— Քաղաք Միջագետքում, Բաղդադից բավականին հարավ, Եփրատից մի փոքր արևելք։

214. Աթարիբ— Բերդաքաղաք Հյուսիսային Ասորիքում, Հալեպից արևմուտք։ Հայկական միջնադարյան աղբյուրներում հայտնի է Թերեպ անունով։

215. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 361—364։

216. Ռախիբա— Քաղաք Ասորիքում, Եփրատի աջ ափին, Խաբուր գետի միախառնման տեղի մոտ։

217. Բոհեմունդ II (Bohemond II)— Իշխան (պրինց) Անտիոքի (1126—1130 թթ.)։ Մատթեոս Ուռհայեցու մոտ հիշատակված է Պեմունդ որդի Պեմնդի անունով։

218. Ռաֆանիա— Քաղաք Հարավային Ասորիքում, Դամասկոսից հարավ-արևմուտք։

219. Հմմտ. Մտթ. Ուռհ., էջ 365—366։

220. Ֆուլք V (Foulque V)— Անժուի կոմս, հետագայում Երուսաղեմի թագավոր (1131—1144 թթ.)։

221. Տուղտեգին (Աբուսայիդ Սեյֆուլիսլամ Զահիրեդդին Տուղտեգին)— Ասորիքի դամասկոսյան ճյուղի սելջուկ ամիրա Դուկակ իբն Տուտուշի (1095—1104 թթ.) աթաբեկը։ Տուղտեգինը 1104—1128 թթ. տիրեց Դամասկոսին՝ հիմնադրելով մի նոր հարստություն, որը իր որդու՝ Թաջուլմուլուք Բուրիի անունով կոչվում է Բուրիդյան։ Հայկական աղբյուրներում Տուղտեգին անունը վկայված է Տուղտիկին ձևով։

222. Բահրան (=Բահրամ)— Ասորիքի իսմայելիտների առաջնորդներից մեկը՝ ծագումով պարսկաստանցի, 1126—1128 թթ. տիրել է Բանիաս քաղաքին. Հմմտ. Setton, A history, I, p. 116—117, 672.

223. Հմմտ. Մտր. Ուռհ., էջ 367։

224. 1131 թ. մահացել է սելջուկյան Իրաքի և Արևմտյան Իրանի Մուգիսեդդին Աբուլկասիմ Մահմուդ իբն Մուհամմեդ սուլթանը (1118—1131 թթ.)։ Լուսանցքում Մասուդ սուլթանը (1134—1152 թթ.) նշված է սխալմամբ։

225. Թելարան (ասոր. Tall 'Aran) բերդը գտնվում է Հալեպից 18 կմ հեռավորության վրա, հարավարևելյան ուղղությամբ։

226. Սիր— Ֆրանսերեն sire (տեր) բառն է, որն օգտագործվում է որպես պատվանուն։

227. Ռայմոնդ Պուատիեցի (Raymond de Poitiers)— Անտիոքի պրինց (1136—1149 թթ.)։ Գրիգոր Երեցը նրան հիշատակում է «որդի Պետևինի» ձևով. տե՛ս Մտր. Ուռհ., էջ 372։

228. Իմադեդդին Զանգի իբն Աղ-Սնղուր— Մոսուլի կառավարիչ և աթաբեկ (1127—1146 թթ.), հիմնադիր Ասորիքի և Հյուսիսային Միջագետքի տիրակալների մի հարստության, որը պատմագիտության մեջ հայտնի է Զանգիդյան անունով։

229. Տուտուշ կամ Թաջուլմուլուք— Տե՛ս ծանոթագրություն 43։

230. Գիյասեդդին Մասուդ իբն Մուհամմեդ— Սելջուկյան Իրաքի և Արևմտյան Իրանի սուլթան (1134—1152 թթ.)։ Մեր ժամանակագիրն այս հատվածում հաղորդում է հակասական տեղեկություններ։ Զանգին Մոսուլի կառավարիչ և աթաբեկ է նշանակվել ոչ թե 1132, այլ 1127 թ. և ոչ թե Մասուդ, այլ Մուգիսեդդին Մահմուդ II սուլթանի (1118—1131 թթ.) կողմից։

231. Սինջար— Քաղաք Հյուսիսային Միջագետքում, Մծբինից հարավ-արևելք։ Ասորերենում այս տեղանունն ունի Շիգգար ձևը, որին համապատասխանում է «Աշխարհացույցի» հիշատակած Շնգար անունը։

232. Աթաբեկ— Սելջուկյան հասարակության սոցիալական կատեգորիաներից մեկը։ Նախապես նշանակել է դայակ, դաստիարակ, հետագայում այդ տիտղոսը շնորհվել է սելջուկյան ամիրայությունների կառավարիչներին ու զորահրամանատարներին. Մանրամասն տե՛ս Р. А. Гусейнов, Институт атабеков, „Палестинский сборник" вып. 15(78), Л., 1966, стр. 181—196.

233. Սալահեդդին— Մոսուլի ամիրա Իմադեդդին Զանգիի (1127—1146 թթ.) զորագլուխներից մեկը։

234. Նասրեդդին Ջաղր— Մոսուլի ամիրա Իմադեդդին Զանգիի (1127—1146 թթ.) զորագլուխներից մեկը, որը Եդեսիայի նվաճման ժամանակ Զանգիի կողմից նշանակվել էր Մոսուլի կառավարիչ։

235. Զեյնեդդին Ալի-Քուչուկ իբն Բեգտեգին իբն Մուհամմեդ— Շահրզորի և Արբելայի ամիրա (1144—1168 թթ.), Զանգիի կողմից նշանակվել է նաև Մոսուլի կառավարիչ։

236. Գիյասեդդին Սուլեյմանշահ իբն Մուհամմեդ— Սելջուկյան Իրաքի և Արևմտյան Իրանի սուլթան (1160—1161 թթ.), որը, սակայն, սուլթան Մասուդի հաջորդը չէ.

նրանց միջև գահակալել են ևս երկու սուլթաններ՝ Մուհինեդդին Մելիքշահ III-ը և Ռուքնեդդին Մուհամմեդ II-ը։

237. Շենավ բերդի տեղադրությունը ճշտված չէ. Մատթեոս Ուռհայեցին նույնպես նշում է, որ այն գտնվել է Ուռհայի շրջակայքում. տե՛ս Մտր. Ուռհ., էջ 314, 317։

238. Հմմտ. Մտր. Ուռհ., էջ 366—367։

239. **Թաջուլմուլուք Բուրի իբն Տուղտեգին**— Դամասկոսի աթաբեկ (1128—1132 թթ.), որի անունից է ծագում Բուրիդյան հարստության անվանումը. Հմմտ. ծանոթագրություն 221։

240. **Մուհինեդդին Ունար**— Դամասկոսի ամիրա Թաջուլմուլուք Բուրիի (1128—1132 թթ.) որդիների դաստիարակը՝ աթաբեկը, որը 1132—1149 թթ. փաստորեն տիրում էր Դամասկոսին։

241. **Հիսն ալ-Աքրադ**— Բերդ Ասորիքում, Հոմս քաղաքից արևմուտք։ Խաչակրաց պատմության արևմտյան աղբյուրներում հայտնի է Krak des Chevaliers անունով։

242. **Հադդանա** (*ասորերեն՝* Haddana) անունը կրող բերդը, որը պետք է գտնված լինի Հալեպից ոչ շատ հեռու, մեր օգտագործած մյուս աղբյուրներում չի հիշատակվում։

243. **Մահմուդ** (*Աբուլմուզաֆֆար Մուհամմեդ Նասիրեդդին իբն Գյումուշտեգին*)— Սեբաստիայի Դանիշմենդյան ամիրա (1134—1142 թթ.), Դանիշմենդի թոռը և Իլ-Ղազիի որդին։

244. **Դաուլա**— Հավանաբար խոսքը վերաբերում է Մելիտենեի Դանիշմենդյան ամիրա Այնեդդին իբն Գյումուշտեգինին (1142—1152 թթ.), որը Դանիշմենդի թոռը և Իլ-Ղազիի որդին էր։

245. **Յաղուբ** (*Յագի-բասան Նիզամեդդին իբն Գյումուշտեգին*)— Սեբաստիայի Դանիշմենդյան ամիրա (1142—1164 թթ.), Դանիշմենդի թոռը, Իլ-Ղազիի որդին։ Հայկական աղբյուրներում այս անձնավորության անունը վկայված է **Աղուպ-Ասլան** ձևով։

246. Ասորական բնագրում այս բառը գրված է ʻAmamnāyā ձևով, որը ժամանակագրության հրատարակիչ Ժ.—Բ. Շաբոն հարցականորեն ուղղել է ʼAlamnāyē (=ալամաններ), այսինքն՝ գերմանացիներ։

247. **Լևոն I որդի Կոստանդինի**— Կիլիկիայի իշխան (1123—1138 թթ.)։

248. **Տագրա**— Արաբական աղբյուրներում Tagr (հոգնակի Tugūr) անունով կոչվում է խալիֆաթի և Բյուզանդական կայսրության սահմանային շրջանը։ Հարավարևելյան Կիլիկիան նույնպես մտնում էր այդ շրջանի մեջ. հմմտ. *А. Н. Тер-Гевондян*, Первый этап образования Арабской пограничной области (Ас-Сугур), «Кавказ и Византия, вып. 2», Ереван, 1980, стр. 21—27. **Ա. Տեր-Ղևոնդյան,** *Արաբական սահմանային ամրությունների գոտին (Սուղուր), «Պատմա-բանասիրական հանդես», 1981, № 2, էջ 134—149։*

249. **Կեսար, սեբաստոս և պատրիկ՝** բյուզանդական պատվաստիճաններ են. դրանց մասին մանրամասն տե՛ս **Կոստանդին Ծիրանածին,** Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հ. 6, Բյուզանդական աղբյուրներ, Բ. Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1970, էջ 212, 256, 300։

250. Հետագա գրիչը, որը ժամանակագրության ասորական ձեռագրում ավելացրել է գլխահամարները, թյուրիմացաբար 309-րդ գլխից թռել է 400-րդը։

251. **Տափիլ** (*ասորերեն* Dapʿil)— Ըստ Անանունի տվյալների՝ այս բնակավայրը գտնվել է Սամոսատի և Ուռհայի միջև։ Մեզ հայտնի մյուս աղբյուրները հնարավորություն չեն տալիս ճշտել նրա տեղադրությունը։ Մատթեոս Ուռհայեցին այն տեղադրում է Ուռհայի դավառում. «ի գաւառն Ուռհայոյ՝ ի գեղն, որ կոչի Տափթիլ», տե՛ս Մտր. Ուռհ., էջ 351—352։

252. «Գնաց Մարաշ» բառերը Ա. Արունան՝ ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը, բաց է թողել։

253. Այնթապ— Քաղաք Հյուսիսային Ասորիքում, Թլպաշարի և Տլուքի միջև։ Միջնադարյան հայկական աղբյուրներում հայտնի է Անթափ անվանաձևով։

254. Բուզաա— Բերդաքաղաք Հյուսիսային Ասորիքում, Հալեպի և Մաբբուգի միջև։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հիշատակված է Պզահ ձևով։

255. Շիզար (Շայզար)— Նշանավոր բերդաքաղաք Ասորիքում, Որոնտես գետի ձախ ափին, Համա քաղաքից հյուսիս-արևելք։

256. Մունկիդի որդիներ— Արաբերեն Banu-Munqid բառերի թարգմանությունն է։ Այդպես էին կոչվում Շիզար բերդին տիրող արաբները՝ Մունկիդի շառավիղները։

257. Հմմտ. Գրիգոր Երեց՝ «Մաթ. Ուռհ.», էջ 371։

258. Մանուել I— Բյուզանդական կայսր (1143—1180 թթ.)։

259. Բաղդուին III (Baudouin III)— Երուսաղեմի թագավոր (1144—1162 թթ.)։ Հայկական աղբյուրներում հիշատակված է Պաղտին անունով։

260. Ասորական բնագրում այս բառը գրված է 'Alanāye ձևով՝ 'Alamnāye-ի փոխարեն։

261. Խոսքը վերաբերում է գերմանական կայսր Կոնրադ III-ին՝ երկրորդ խաչակրաց արշավանքի (1147—1149 թթ.) առաջնորդներից մեկին։

262. 407—408-րդ գլուխները, որոնք վերաբերում են երկրորդ խաչակրաց արշավանքին (1147—1149 թթ.), համարյա նույնությամբ կրկնված են 433—434-րդ գլուխներում։ Օգտվելով տարբեր աղբյուրներից, որոնցում այդ արշավանքը հավանաբար թվագրված է եղել տարբեր կերպ, հեղինակը չի նկատել, որ ընկել է կրկնության մեջ։

263. Խաչակրաց երկրորդ արշավանքը, որին վերաբերում է սույն գլուխը, իրականում սկսվել է 1147 թվականին՝ Եդեսիայի վերջնական անկումից հետո։

264. Խոսքը վերաբերում է Ֆրանսիայի թագավոր Լուի VII-ին, որը երկրորդ խաչակրաց արշավանքի (1147—1149 թթ.) առաջնորդներից մեկն էր։

265. Ալֆոնս Ժուրդեն (Alphons Jourdin)— Թուլուզի կոմս, Ռայմոնդ Սենժիլցու որդին, երկրորդ խաչակրաց արշավանքի (1147—1149 թթ.) առաջնորդներից մեկը, որը զոհ գնաց Տրիպոլիի կոմս Ռայմոնդ II-ի կազմակերպած դավին (հմմտ. նաև գլուխ 433)։ Ասորական բնագրում Ալֆոնս անունը գրված է Npuš/'Anpuš ձևով, որն առաջացել է 'Alpuš տառադարձությունից՝ n և l տառերի շփոթության հետևանքով։

266. Աքքա— Նավահանգստային քաղաք Միջերկրական ծովի փյունիկյան ափին, Տյուրոսից բավականին հարավ, Հայֆայից մի փոքր հյուսիս։ Խաչակրաց պատմության արևմտյան աղբյուրներում հայտնի է Աքրա (Acre) անունով։

267. Ամորի I (Amaury I)— Բաղդուին III Երուսաղեմի թագավորի եղբայրը, հետագայում՝ Երուսաղեմի թագավոր (1162—1173 թթ.)։

268. Թլմոզ— Բերդ Հյուսիսային Միջագետքում, Մարդինից 85 կմ հարավ-արևմուտք, ներկայիս Վիրանշեհիրը։ Ասորական աղբյուրներում հայտնի է Tella d-Mawzalat, իսկ խաչակրաց պատմության արևմտյան աղբյուրներում՝ Tell Mawzen/Tell Muzen ձևով. տե՛ս Grousset, Histoire..., I, p. 394, III, p. 852.

269. Շաբախտան— Գավառ Հյուսիսային Միջագետքում, Եդեսիայից հարավ-արևելք։

270. Արկնին բնակավայրը Ժ.—Բ. Շաբոն ենթադրաբար տեղագրում է Հյուսիսային Միջագետքի Մարդին քաղաքի մոտակայքում. տե՛ս J.—B. Chabot, Un épi-

sode de l'histoire des Croisades, „Melanges offerts a M. Gustave Schlumberger", vol. I, Paris, 1924, p. 173.

271. **Ջամալին, Խանին և Խամիմյա** *բնակավայրերը ամենայն հավանականությամբ գտնվել են Հյուսիսային Միջագետքում, Մարդին քաղաքի մոտակայքում, սակայն մեզ հայտնի աղբյուրները հնարավորություն չեն տալիս պարզել նրանց ճշգրիտ տեղադրությունը։*

272. **Պեպու—** *Բերդ պատմական Կապադովկիայի հարավ-արևելքում, Եփրատի աջ ափին, Մելիտենեից հարավ-արևելք։ Արաբական աղբյուրներում հայտնի է* Bābalū *ձևով։*

273. **Բալիս—** *Քաղաք Հյուսիսային Ասորիքում, Եփրատի աջ ափին, Հալեպից հարավ-արևելք։*

274. *Տե՛ս ծանոթագրություն 89։*

275. *«Կորովին ու զորությանը» բառերին ասորական բնագրում համապատասխանում է* Ibibūta wa-haylawata *արտահայտությունը, որը ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը վերարտադրել է նկարագրական եղանակով.* «un moral eleve et suffisamment des soldats»։ *Մեր կարծիքով, ասորական ձեռագրում գրչական սխալ կա.* haylawata *(զորքեր) բառի հոգնակիի ցուցիչը՝ երկկետ նշանը, ավելորդ է։ Հետևաբար այդ բառը պետք է կարդալ* haylūta *(զորություն)։*

276. *Ասորական բնագրի* yaum tlāta *(երեքշաբթի) բառը ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության մեջ թարգմանված է* mercredi *(չորեքշաբթի)։*

277. *Ա. Աբունան՝ ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը, ասորական բնագրի* yaum hamsa *(հինգշաբթի) բառը թարգմանել է* du jour suivent *(հաջորդ օրը)։*

278. **Խոստովանողներ** *անվանման տակ պետք է հասկանալ ասորի վկաներ Գորիային և Շմոնային, որոնք նահատակվեցին Եդեսիայում IV դ. սկզբին, Դիոկղետիանոս կայսեր օրոք։ Վկայաբանության հայերեն թարգմանությունը տե՛ս Գ.* Տեր-Մկրտչյան, *Հայագիտական ուսումնասիրություններ, գիրք Ա, Երևան, 1979, էջ 298—339։*

279. **Ջամալեդդին—** *Մոսուլի վեզիր, նշանակված Իմադեդդին Զանգիի կողմից. պաշտոնավարել է մինչև 1163 թ., հմմտ.* Setton, A history..., I, p. 462, 524, 687.

280. **Եփրեմ Ասորի—** *IV դարի ասորի մատենագիր (մահ. 373 թ.), ասորական գրականության մեծագույն ներկայացուցիչը, որի երկերի մեծ մասը դեռևս V դարում թարգմանվել է հայերեն։*

281. **Արբելա—** *Քաղաք Հյուսիսային Իրաքում, Մոսուլից արևելք։ Միջնադարում և ներկայումս հայտնի է* Իրբիլ *անունով։*

282. **Շահրզոր—** *Գավառ Հյուսիսային Իրաքում, Տիգրիսի ձախ ափին, Արբելա քաղաքից հարավ։*

283. **Քասաս—** *Ժամանակագրության 422-րդ գլխում հիշատակված է Քասաս անունով մի բերդ, Գալաբ գետի մոտերքում, Խառանից ոչ շատ հեռու։ Ժամանակակից Թուրքիայի քարտեզի վրա, Ուռհայից հյուսիս-արևմուտք նշված է* Kesislik *անունով մի բնակավայր, որը, սակայն, աշխարհագրական նկատառումներով չի կարելի նույնացնել Քասասի հետ։ Վերջինս հավանաբար արդի* Aksas *բնակավայրն է, որ գտնվում է Ուռհայից հարավ։*

284. **Ջաֆարան—** *Բնակավայր Հյուսիսային Միջագետքում, Մարդինից հարավ-արևելք։ Այստեղ էր գտնվում հակոբիկյան նշանավոր վանքերից մեկը, որը կոչվում էր Անանիայի կամ պարզապես Ջաֆարանի վանք։*

285. Պողոսակի սերունդները (ասորերեն Bene Bogosag), որոնք տիրում էին Սևերակի շրջակայքին, ըստ Ժ.—Բ. Շաբոյի՝ սերում էին Պողոսակ անունով մի իսլամացած հայից. տե՛ս *J.—B. Chabot*, Un episode de l'histoire des Croisades „Melanges offerts a Gustave Schlumberger", vol. I, Paris, 1924. p. 173. Պողոսակի և նրա սերունդների մասին մանրամասն տեղեկություններ է հաղորդում Միքայել Ասորին. տե՛ս *Michel le Syrien*, III, p. 247, IV, p. 620.

286. Սևերակ— Քաղաք Հյուսիսային Միջագետքում, Սամոսատից հյուսիս-արևելք, Ամիդից արևմուտք։ Հայկական աղբյուրներում հայտնի է նաև Սև ավերակ անունով։

287. Հասան—Այս անձնավորությունը աղբյուրներում հիշվում է որպես Մարբուղի ամիրա 1124 և 1151 թվականներին. հմմտ. *Setton*, A history..., I, p. 422, 517, 684.

288. Եդեսիայի վերջին ֆրանկ եպիսկոպոսն էր Հյուգ II-ը (1122—1144 թթ.), տե՛ս *J: B. Segal*, Edessa, the blessed city, Oxford, 1970, p. 237; *Grousset*, Histoire..., II, p. 179—181.

289. Բարսեղ բար-Շումմանա— XII դ. ասորի մատենագիր, 1140-ական թթ. սկզբից մինչև իր մահը՝ 1169 թ., եղել է Եդեսիա քաղաքի մետրապոլիտը, գրել է արձակ և չափածո մի շարք գործեր։ Ցավալի է նրա «Եդեսիայի պատմության» կորուստը, որից օգտվել են Միքայել Ասորին և, ինչպես նշվեց սույն աշխատության առաջաբանում, նաև՝ Անանուն Եդեսացին։

290. Հմմտ. Ելից Թ, 12։

291. Հմմտ. Գրիգոր Երեց՝ «Մտր. Ուռհ.», էջ 371—372։

292. Ասորական բնագրում գրված է Kenula (ստուգություն, արդարություն) բառը, որը, ինչպես հայտնի է, աստծու քրիստոնեական խորհրդանիշերից մեկն է։

293. Հմմտ. Գրիգոր Երեց՝ «Մտր. Ուռհ.», էջ 372։

294. Հմմտ. Գրիգոր Երեց՝ «Մար. Ուռհ.», էջ 373։

295. Իրականում այդ դեպքը տեղի է ունեցել 1145 թվականին. հմմտ. *Abouna-Fiey*, էջ 95։

296. Խոսքը վերաբերում է Տրիպոլիի կոմս Ռայմոնդ II-ին (1137—1152 թթ.)։

297. Ասորական բնագրում այս Ռոբերտը հիշատակված է Smayana (երկնային) մականվամբ, որը ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը վերարտադրել է Gros (Մեծ) բառով։

298. Նկատի ունի Եդեսիայի մետրապոլիտ Բարսեղ բար-Շումմանայի (մահ. 1169 թ.) «Եդեսիայի պատմությունը», որը, ինչպես նշվեց սույն աշխատության ներածության մեջ, Անանուն ժամանակագրության հիմնական աղբյուրներից մեկն է։ Հմմտ. նաև ծանոթագրություն 289։

299. Ա. Աբունան՝ ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը, բաց է թողել «և հաջորդ տարվա հնձի ժամանակ եկավ Ուռհա» բառերը։

300. Հովհաննես Մկրտչի տաճարը Եդեսիայի լատինական համայնքի կաթողիկե եկեղեցին էր. տե՛ս *J. B. Segal*, Edessa, the blessed city, Oxford ,1970, p. 237.

301. Ասորական ավանդությամբ՝ Եդեսիայի Աբգար Ուքամա թագավորը (տե՛ս ծանոթագրություն 588) ցանկանալով տեսնել Քրիստոսի դեմքը՝ պատգամավորներ է ուղարկում Երուսաղեմ նրա պատկերը դրոշմելու համար։ Զգալով պատգամավորների մտադրությունը՝ Քրիստոսը լվանում է իր դեմքը և այն սրբում դաստառակով, որի վրա դրոշմվում է նրա անձեռակերտ պատկերը։ Այս դրվագը մանրամասնորեն նկարագրված է Անանուն Եդեսացու ժամանակագրության առաջին հատորում. տե՛ս *Chabot*—I, p. 121—122; *Chabot*—III, p. 96.

302. Կոզմա և Դամիանոս— *III դ. երկու եղբայր նահատակներ, մասնագիտությամբ բժիշկ: Ապրել են Հռոմի շրջակայքում և քարկոծվել ու նահատակվել 284 թ.: Կոզմայի և Դամիանոսի վկայաբանության հայերեն թարգմանությունը տե՛ս* Մ. Ավգերյան, *Լիակատար վարք և վկայաբանութիւն սրբոց, հ. 10, Վենետիկ, 1814, էջ 222—239:*

303. *Ըստ ասորական ավանդության՝ Եդեսիայի Աբգար **Ուքամա** թագավորը ոտքերի հոդացավ ուներ և իր ախտից կարողացավ ազատվել Քրիստոսի շնորհիվ:*

304. *Հմմտ. Գրիգոր Երեց՝ «Մաթ. Ուռհ.», էջ 374.*

305. Սեյֆեդդին Ղազի I իբն Զանգի— *Մոսուլի աթաբեկ (1146—1149 թթ.), Իմադեդդին Զանգիի որդին:*

306. Մելիք-ուլ-Ադիլ Նուրեդդին Աբուլկասիմ Մահմուդ իբն Զանգի— *Ասորիքի աթաբեկ (1146—1174 թթ.), Իմադեդդին Զանգիի որդին: Հայկական աղբյուրներում հիշատակված է* Նորատին *կամ* Նուրատին *ձևով:*

307. Կութբեդդին Մաուդուդ իբն Զանգի ալ-Արաջ— *Մոսուլի աթաբեկ (1149—1169 թթ.), Իմադեդդին Զանգիի որդին:*

308. Ամիր-Ամիրան— *Մոսուլի աթաբեկ Իմադեդդին Զանգիի (1127—1146 թթ.) որդին:*

309. *Հմմտ. Գրիգոր Երեց՝ «Մաթ. Ուռհ.», էջ 374 (չափազանց համառոտ):*

310. Բաղդուին (Baudouin de Mares) — *Մարաշի կոմս (մահ. 1146 թ.): Մարաշի խաչակրաց իշխանությունը ստեղծվել էր 1104 թ. և ենթարկվում էր Եդեսիայի կոմսությանը. տե՛ս Grousset*, Histoire..., I, p. *400. Բաղդուինը հայ իրականության մեջ հռչակվել է իր խոստովանահոր՝ Բարսեղ վարդապետի գրած բարձրարվեստ ողբով. տե՛ս* Մաթ. Ուռհ., *էջ 375—395:*

311. Արծվի բլուրը *ժամանակագրության ասորական բնագրում հիշատակված է* Tella d-nesiā *ձևով: Հավանաբար գտնվել է Ուռհայից հյուսիս, Սամոսատի ուղղությամբ:*

312. Սելևկիոս I Նիկատոր— *Սելևկյան հարստության հիմնադիրը (մ.թ.ա. 311—281 թթ.):*

313. Հովհաննես Մարդինցի— *XII դ. ասորի մատենագիր (մահ. 1165 թ.), 1124—1165 թթ. եղել է հակոբիկյան եկեղեցու Մարդինի թեմի եպիսկոպոսը: 1140-ական թթ. Հանդես է եկել մի համարձակ ուսմունքով, ըստ որի՝ երկրային պատուհասները, մասնավորապես թուրքերի գործած ոճիրները, Եդեսիա քաղաքի գրավումն ու ավերումը և այլն, տեղի են ունենում անկախ նախախնամության միջամտությունից: Այդ մասին մանրամասն տե՛ս* Լ. Տեր-Պետրոսյան, *Ներսես Շնորհալու «Ողբ Եդեսիոյ»-ն և ժամանակի ասորական գրականությունը, «Ներսես Շնորհալի» (հոդվածների ժողովածու), Երևան, 1977, էջ 201—211:*

314. *Ինչպես նշվեց 262-րդ ծանոթագրության մեջ 433—434-րդ գլուխները իրենցից ներկայացնում են 407—409-րդ գլուխների կրկնությունը, սակայն ճիշտ թվագրությամբ:*

315. Զուբար (*ասորերեն* Zōbar/Bēt Zōbar *կամ* Bēt Qenāyā)— *Լեռնային շրջան Մելիտենեի գավառում, Կարկառից մի փոքր հյուսիս-արևմուտք, Քյահթա գետի ակունքների մոտ. հմմտ. E. Honigmann*, Le convent..., p. 79.

316. *Ասորական բնագրում* Տագնքար, Շամանոգ և Շիբքար *վանքերը նշված են* Tāgnkār, Šamānōg *և* Šıbkār *ձևով: Առաջինը, ամենայն հավանականությամբ, գտնվել է Մելիտենեի գավառի ներկայիս* Tiginkar *կոչվող բնակավայրում: Մյուս երկու վանքերի տեղագրությունն անհայտ է.՝ պարզ է միայն մի բան, որ դրանք*

պետք է գտնված լինեն Մելիտենեի մոտերքում, Զուբար անունը կրող լեռնային շրջանում. հմմտ. *E. Honigmann*, Le couvent..., p. 79—80, 89.

**317. Թել-Էդնա** *կամ* **Ագնագթալ** *(ասորերեն՝* Tella d-'Ednā *կամ* 'Agnagtal) *անունով բերդ մեզ ծանոթ մյուս աղբյուրներում վկայված չէ։*

*318.* **Շիրզագ** *(ասորերեն՝* Širzag *)— Մեր օգտագործած աղբյուրները հնարավորություն չեն տալիս ճշտել Թլպաշարի երկրում գտնվող այս բերդի տեղագրությունը։*

**319. Թել-Արսան** (Tella d-'Arsanias)—*Հակոբիկյան եկեղեցու եպիսկոպոսանիստ քաղաքներից մեկը Արածանի (ասորերեն* 'Arsinūs*) գետի ափին, Խարբերդ և Աշմուշատ քաղաքների միջև, Բերդակից մի փոքր արևելք։ Այս բնակավայրի տեղագրության մասին մանրամասն տե՛ս* *E. Honigmann*, Le couvent..., p. 151—152

*320.* **Արածանի** *գետի անունը ժամանակագրության ասորական բնագրում ունի* 'Arsinūs *ձևը։*

*321. Ըստ Միքայել Ասորու՝ Սուրբ Բարսումա վանքի կողոպուտին եռանդուն մասնակցություն են հանդես բերել հայերը. հմմտ.* *Michel le Syrien*, III, p. 283—288, IV, p. 642—644.

*322.* **Կղոգիա**— *Հակոբիկյան եկեղեցու եպիսկոպոսանիստ քաղաքներից մեկը Եփրատի աջ ափին, Մելիտենեից հարավ-արևելք։ Նույնն է հավանաբար Կղաւգիաս բնակավայրը. տե՛ս* Ս. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 59։*

*323.* **Սպիտակ լեռը** *(ասորերեն* Ṭūra Ḥewārā) *գտնվում է Մելիտենեից հարավ, այժմ կոչվում է* Ak-Dag. *տե՛ս* *E. Honigmann*, Le couvent..., p. 89.

**324. Դիզա գետ**—*Է. Հոնիգմանի կարծիքով՝ Դիզան ներկայիս* Keferdiz (Širo) *անունը կրող գետակն է, Եփրատի աջակողմյան վտակներից մեկը Մելիտենեի հարավ-արևելքում. տե՛ս* *E. Honigmann*, Le couvent..., p. 87.

*325. Խոսքը վերաբերում է Սուրբ Բարսումա միայնակյացի նշխարներին. տե՛ս ծանոթագրություն 9։*

*326.* **Հովհաննես Քեսունցի**— *Հակոբիկյան եկեղեցու Քեսունի թեմի մետրապոլիտը (1142—1171 թթ.), մկրտության անունով կոչվել է Եղիա։ Մասնակցել է բյուզանդական եկեղեցու և հայ ու հակոբիկ եկեղեցիների միավորման նպատակով 1169—1170 թթ. Հոռոմկլայում կայացած բանակցություններին։ Հայտնի է նաև որպես հեղինակ մի քանի գրական երկերի։*

*327. Քանի որ չի ճշգրտված, թե որ Քանունին է վերաբերում խոսքը՝ առաջի՞ն, թե՞ երկրորդ, ուստի դեպքը կարելի է թվագրել կ՛ 1149 թ. դեկտեմբերով, կ՛ 1150 թ. հունվարով. հմմտ. ծանոթագրություն 164։*

*323.* **Յազրա**— *Բնակավայր Հյուսիսային Ասորիքում, Անտիոքից բավականին հյուսիս։*

*329.* **Գաբալա**— *Նավահանգստային քաղաք Միջերկրական ծովի ասորական ափին, Լաթաքիայից հարավ։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հանդիպում է Ճեպել անունը, որը համապատասխանում է նույն տեղանվան արաբական* Jabalah *ձևին։*

*330. Հմմտ. Գրիգոր Երեց՝ «Մտր. Ուռհ.», էջ 397։*

*331.* **Ինաբ**— *Բնակավայր Հյուսիսային Ասորիքում, Անտիոքից բավականին հարավ, Որոնտես գետից արևելք։*

*332.* **Թելլան** *հավանաբար գտնվել է Որոնտես գետի աջակողմյան հովտում, Ինաբի մոտ։*

*333.* **Ժոֆրուա** *անունն այստեղ դրված է սխալմամբ։ Իրականում այդ ժամանակ Մարաշի տերն էր Ռենալդը, նախորդ տիրոջ՝ Բաղդուինի (մահ. 1146 թ.) եղբայրը,*

որն իսկապես սպանվեց այս ճակատամարտում՝ Անտիոքի իշխան Ռայմոնդ Պուատիեցու հետ միասին. տե՛ս Grousset, Histoire..., II, p. 278.

334. Ալի իբն Վաֆա— Ասորիքի իսմայելիտների առաջնորդներից մեկը, ծագումով քուրդ, Անտիոքի պրինց Ռայմոնդ Պուատիեցու դաշնակիցը, որը նրա հետ զոհվեց 1149 թ. Նուրեդդինի դեմ մղված Ինարի ճակատամարտում. հմմտ. Setton, A history..., I, p. 120, 515, 669.

335. Խոսքը վերաբերում է Անտիոքի իշխան Ռայմոնդ Պուատիեցուն (1136—1149 թթ.)՝ Ակվիտանիայի դուքս Գիյոմ Պուատիեցու որդուն։

336. Խարիմ— Քաղաք Հյուսիսային Ասորիքում, Անտիոքից արևելք, Որոնտես գետի աջ ափից ոչ շատ հեռու։ Միջնադարյան հայկական աղբյուրներում հայտնի է Հերմ ձևով։

337. Իմմ— Քաղաք Հյուսիսային Ասորիքում, Անտիոքից արևելք, Խարիմից հյուսիս։

338. Արտախ— Քաղաք Հյուսիսային Ասորիքում, Անտիոքից արևելք, Խարիմից հյուսիս։

339. Տե՛ս ծանոթագրություն 335։

340. Շիխ— Ասոր. Šīh. բնակավայր հյուսիսարևմտյան Ասորիքում, Անտիոքի և Կուրիսի միջև։ Այժմ կոչվում է Շիխ ալ-Հագիդ։

340a. Շիխ Ադդեյր—Ասոր. Šīh 'Ad-Deir. գյուղ հյուսիսարևմտյան Ասորիքում, Ազազի և Կալա-Սամանի միջև։

341. Ռայմոնդ անունն այստեղ գրված է սխալմամբ՝ շփոթելով Անտիոքի նախորդ տիրոջ՝ Ռայմոնդ Պուատիեցու (1136—1149 թթ.) անվան հետ։ Ինչպես այս դրվագում, այնպես նաև 441-րդ գլխում խոսքը վերաբերում է Ռենալդ Շատիյոնցուն (Renaud de Chatillon), որն ամուսնանալով Անտիոքի այրի իշխանուհու հետ, դարձավ Անտիոքի պրինց (1153—1160 թթ.)։ Տասնհինգամյա գերությունից հետո նա տիրեց Կրակ դը Մոնրեալ բերդին և Անդրհորդանանին (1177—1187 թթ.)։ 472-րդ և 483-րդ գլուխներում նրա անունն արդեն ճիշտ է գործածված՝ Ռենալդ (ասորերենում՝ 'Arnagd)։

342. Սալամիա— Քաղաք Ասորիքում, Համայից հարավ-արևելք։

343. Արիդ (ասորերեն 'Arīd) բնակավայրը, որը հավանաբար գտնվել է Պեհեսնիի մոտակայքում, մեր օգտագործած մյուս աղբյուրներում չի հիշատակվում։

344. Կոնդֆլանդ I (Compte de Flandre)— Խոսքը վերաբերում է Թիերի Էլզասցուն՝ Ֆլանդրիայի կոմսին (1128—1158 թթ.), որը 1157 թ. ձեռնարկեց իր երրորդ ուխտագնացությունը դեպի Երուսաղեմ։

345. Թորոս II որդի Լևոնի— Կիլիկիայի իշխան (1144—1168 թթ.)։ Ֆրանսերեն բնագրի թարգմանիչը ասորերենի ուղիղ խնդրի l ցուցիչը միացրել է Թորոս անվանը և սխալմամբ կարդացել Latrus.

346. Աֆրին— Գետ Հյուսիսային Ասորիքում, թափվում է Անտիոքի հյուսիսում գտնվող Ամուկ լիճը։

347. Խոսքը վերաբերում է Թուլուզի կոմս Բերտրանին՝ Ալֆոնս Ժուրդենի որդուն։ Ալֆոնս Ժուրդենի մասին տե՛ս ծանոթագրություն 265։

348. Ժոսլին III— Եդեսիայի կոմս (անվանապես), որը իր հոր՝ Ժոսլին II-ի գերեվարումից հետո (1150 թ.) տիրում էր կոմսության մնացուկներին։

349. Սև գետ (Nahr 'al-'Aswad)— Գետ Հյուսիսային Ասորիքում, թափվում է Անտիոքի հյուսիսում գտնվող Ամուկ լիճը։

350. Խոսքը վերաբերում է Բոհեմունդ III Թոթովախոսին (Bohemond III le Begue), որը Անտիոքի պրինցն էր 1163—1201 թթ.

351. *Հավանաբար խոսքը վերաբերում է Ասորիքի Լաոդիկե (Լաթաքիա) նավահանգստային քաղաքին, որը գտնվում էր Անտիոքի կոմսության սահմաններում։*

352. *Ժամանակագրության ասորական ձեռագրում այս բառը բաց է թողնված. վերականգնում ենք ենթադրաբար։ Ժ.—Բ. Շաբոն՝ բնագրի հրատարակիչը, առաջարկում է վերականգնել «Կապադովկիայի» բառը՝ «Սեբաստիայի» փոխարեն։*

353. Կամախ— *Քաղաք Հայաստանի Բարձր Հայք նահանգի Դարանաղյաց գավառում, Եփրատ գետի ձախ ափին. տե՛ս.* Ս. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 35, 49, 57։*

354. *Կարկառի երկրի* Ալիոս *գյուղը, որի ճշգրիտ տեղագրությունը պարզ չէ, ժամանակագրության ասորական բնագրում հիշատակված է* 'Alios *ձևով։*

355. Հիսն-Քեֆա— *Քաղաք Հյուսիսային Միջագետքում, Արևմտյան Տիգրիսի աջ ափին, Ամիդից արևելք։ Միջնադարում եղել է Արտուքյան ամիրաների նստավայրերից մեկը։ Հայկական աղբյուրներում հայտնի է* Հասնֆև/Հասնֆէֆ *անունով։*

356. Ֆախրեդդին Աբուլխարիշ Կարա-Արսլան իբն Դաուդ— *Հիսն-Քեֆայի և Ամիդի ճյուղի Արտուքյան ամիրա (1144—1167 թթ.)։*

357. Խուսամեդդին Տիմուրտաշ իբն Իլ-Ղազի— *Մարդինի և Նփրկերտի ճյուղի Արտուքյան ամիրա (1122—1152 թթ.)։ Սակայն ժամանակագրության նկարագրած դեպքի ժամանակ՝ 1164 թ. Մարդինի և Նփրկերտի ամիրան էր Խուսամեդդինի որդին՝ Նաջմեդդին Ալփի իբն Տիմուրտաշը (1152—1176 թթ.)։*

358. Ռենալդ Սենվալերցի (Renaud de Sainte-Valery)— *Թիերի Էլզասցու (տե՛ս ծանոթագրություն 344) ասպետներից մեկը, որը մասնակցեց 1164 թ. Խարիմի ճակատամարտին. տե՛ս* St. Runciman. A history of the Crusades, v. II, Cambridge, 1952, p. 349, 369. *Ասորական բնագրում այս անունը հիշատակված է Արնագդ* ('Arnagd) *ձևով։*

359. *Այդ ժամանակ, այսինքն՝ 1160-ական թթ., Տրիպոլիի կոմսն էր Ռայմոնդ III-ը (1152—1187 թթ.)։*

360. *«... ու շուրջ վեց հազարանոց հետևակ և, դուրս գալով Անտիոքից...» բառերը ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության մեջ բաց են թողնված։*

361. *Իրականում Տրիպոլիի կոմսը նույնպես գերի էր ընկել. տե՛ս* Grousset, Histoire..., II, p. 464.

362. *Խոսքը վերաբերում է Դաշտային Կիլիկիայի բյուզանդական կուսակալ՝ դուկ Կոստանդին Կոլոմանոսին, որը մասնակցեց 1164 թ. Խարիմի ճակատամարտին և գերի ընկավ թուրքերի ձեռքը. տե՛ս* Grousset, Histoire..., II, p. 461—464.

363. Սիման վանքը *(ասորերենում* Dayra d-Sim'ān*) կրտսեր Սիմեոն Սյունակյացի վանքն է, որը գտնվում է Միջերկրական ծովի ափին, Որոնտեսի գետաբերանի մոտ։*

364. Ասադեդդին Շիրկուհ— *Ասորիքի աթաբեկ Նուրեդդին իբն Զանգիի (1146—1174 թթ.) զորավարներից մեկը, որը 1169 թ. տիրելով Եգիպտոսին, դարձավ նրա վեզիրը, բայց շուտով մեռավ, իշխանությունը թողնելով իր եղբորորդուն՝ Սալահեդդինին։*

365. Ալի իբն Աբուտալիբ— *Արաբական խալիֆ (656—661 թթ.), որին իրենց նախահայրն էին համարում Եգիպտոսի Ֆաթիմյան խալիֆները (909—1171 թթ.)։*

366. Աբաս— *Մուհամմեդ մարգարեի քեռին, որին իրենց նախահայրն էին համարում Բաղդադում նստող Աբասյան խալիֆները (749—1258 թթ.)։*

367. *Նկատի ունի այն հանգամանքը, որ մինչդեռ Բաղդադի խալիֆը ներկայացնում էր ուղղափառ՝ սուննի մահմեդականությունը, Եգիպտոսի Ֆաթիմյանները որդեգրել էին մահմեդական շիա աղանդը։*

368. Ալ-Ադիդ Աբու-Մուհամմեդ Աբդալլահ— *Եգիպտոսի Ֆաթիմյան հարստության վերջին խալիֆը (1160—1171 թթ.), որից հետո իշխանությունն անցավ Այուբյան սուլթաններին։*

369. Ալ-Մելիք աս-Սալիհ Թալաի Աբուլղարաթ իբն Ռուզայկ— *Եգիպտոսի վեզիր (1154—1161 թթ.)։*

370. Քուշ— *Երկրամաս հյուսիսարևելյան Աֆրիկայում, որն ընդգրկում էր Եգիպտոսի հարավային և Սուդանի հյուսիսային շրջանները, Կարմիր ծովից մինչև Լիբիական անապատը։*

371. Աբուշուջա Շավիր իբն Մուջիր— *Եգիպտոսի վեզիր (1163, 1165—1168 թթ.)։*

372. Աբուշուջա ալ-Ադիլ Մուխիեդդին Ռուզայկ իբն Թալաի— *Եգիպտոսի վեզիր (1161—1163 թթ.)։*

373. Աբուլաշբալ Դիրգամ իբն Ամիր իբն Շավվար ալ-Լախմի— *Եգիպտոսի վեզիր (1163—1165 թթ.)։*

374. *Խոսքը վերաբերում է Հարավային Պաղեստինում գտնվող* Կրակ (Krak des Moabites) *և* Շուբակ (aš—Šaubak *կամ* Krak de Montreal) *ամրոցներին։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հանդիպում է* Կրակ *անվան* Քարաք *ձևը։*

375. Ֆիլիպ դը Միլլի (Philippe de Milly)—*Նախապես Նաբլուսի, հետագայում Կրակ դը Մոնրեալի (Շուբակ բերդաքաղաքի) տերը (1161—1167թթ.)։* Դիդյ *մականունը ծագում է նրա հոր՝ Գի դը Միլլի* (Guy de Milly) *անունից։*

376. Բիլբայս— *Քաղաք Հյուսիսային Եգիպտոսում, Կահիրեից հյուսիս։*

377. Ալ-Մելիք ան-Նասիր Սալահեդդին Աբուլմուզաֆֆար Յուսուֆ— *Եգիպտոսի սուլթան (1169—1193 թթ.), Այուբյան հարստության հիմնադիրը։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հիշատակված է* Յուսէփ Սալահատին *անունով։*

378. *Թեև բնագրում* կապել *բառի փոխարեն դրված է* չկապել, *սակայն «Ժամանակագրության» հրատարակիչը՝ Ժ.—Բ. Շաբոն, իրավացիորեն դա թյուրիմացություն է համարում, քանի որ խոսքը վերաբերում է մահմեդական այն հայտնի օրենքին, որով քրիստոնյաներին պարտադրվում էր տարբերակիչ գոտի կապել։ «Ժամանակագրության» 449-րդ գլխում նույն միտքը ճիշտ է արտահայտված։*

379. *Ասորական բնագրում եկեղեցու անունը բաց է թողնված։*

380. Սեյֆեդդին Ղազի II իբն Մաուդուդ— *Մոսուլի աթաբեկ (1169—1176 թթ.)։*

381. Ֆախրեդդին Աբդլմասիհ— *Իմադեդդին Զանգիի մամլյուքներից մեկը, որը 1168 թ. դարձավ Մոսուլի կառավարիչ. հմմտ.* Setton, A history..., I, p. 525, 667.

382. *Տե՛ս ծանոթագրություն 378։*

383. Սուրբ Մաաբայի *(Մաթևոսի) վանքը գտնվում է Տիգրիս և Մեծ Զաբ գետերի միջև, Նինվեից հյուսիս-արևելք։*

384. Ալփափ—*Լեռ Տիգրիս և Մեծ Զաբ գետերի միջև, Նինվեից հյուսիս։ Լեռան ասորական անվանումն է* 'Alpap *կամ* 'Elpep, *արաբականը՝* Ǧebel el-Maqlūb. *տե՛ս E. Honigmann,* Le couvent..., p. 97—98.

385. Ծարավ լեռ *(ասորերեն* Ṭūrā d-Sahvā)—*Գտնվում է Հյուսիսային Միջագետքում, Տիգրիսի աջ ափին, Բալադ (Հին Մոսուլ) քաղաքի մոտ։ Այս վայրը հռչակ է վայելել Ս. Սարգսի վանքի շնորհիվ, որը հայտնի է նաև* Dayrā d-Mu'allaq *(Կախված վանք) անունով. տե՛ս E. Honigmann,* Le couvent..., p. 117.

386. Մովսես բար-Քեֆա— *IX դ. ասորի մատենագիր, մահացել է 903 թ. 90 տարեկան հասակում, գրել է մեկնություններ, իմաստասիրական և աստվածաբանական աշխատություններ և այլն։*

387. *Իրականում Նուրեդդինը մահացել է 1174 թ. մայիսի 15-ին. տե՛ս* Abouna-Fiey, *էջ 127։*

388. Ասորական բնագրում Ktābā (գիրք) բառը դրված է եզակի թվով, որը ֆրանսերեն թարգմանության հեղինակը թյուրիմացաբար վերարտադրել է հոգնակիով. խոսքն ամենայն հավանականությամբ վերաբերում է մահմեդականների սուրբ գրքին՝ Ղուրանին։

389. Ալ-Մելիք աս-Սալիհ Նուրեդդին Իսմայիլ իբն Մահմուդ— Ասորիքի աթաբեկ (1174—1181 թթ.), որի նստավայրը Հալեպ քաղաքն էր։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հիշատակված է Մելէք Սալեհ անունով։

390. Շամսուլիսլամ անվան տակ հավանաբար պետք է ենթադրել Սալահեդդինի ալ-Մելիք ալ-Մուազզամ Շամսեդդին Թուրանշահ I իբն Այուբ անունով եղբորը, որը 1173—1181 թթ. տիրում էր Եմենում. Ֆրանսերեն թարգմանության հեղինակը բնագրի Šamsulislām բառը կարդացել է Šemeh as-Salām և թարգմանել nommé al-Salam (կոչված ալ-Սալամ)։

391. Յատրիբ— Արաբիայի Մեդինա քաղաքի նախաիսլամական անվանումը։

392. Նուբիա— Երկրամաս Հյուսիսային Աֆրիկայում, Կարմիր ծովի և Նեղոսի միջև, ժամանակակից Սուդանի տարածքում։

393. Ասորական բնագրում դրված է. «Նա ուներ նաև վեց ուրիշ եղբայրներ»։ Սակայն քանի որ հետագա թվարկման մեջ Շամսուլիսլամը կրկնված է, մենք թարգմանել ենք այլ կերպ։

394. Ալ-Մելիք ալ-Ադիլ I Սեյֆեդդին Աբուբաքր Ահմեդ— Սալահեդդինի եղբայրը, տիրել է Հալեպին (1183—1186 թթ.), Ամիդին (1195—1200 թթ.), Դամասկոսին (1196—1218 թթ.) և Եգիպտոսին (1200—1218 թթ.)։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հիշատակված է Յէտլ/Յետլ անունով։

395. Ալ-Մելիք ալ-Ազիզ Սեյֆուլիսլամ Զահիրեդդին Աբուլֆավարիս Տուղտեգին իբն Այուբ— Եմենի ամիրա (1181—1196 թթ.), Սալահեդդինի եղբայրը։

396. Շահանշահ I Նուրեդդին— Սալահեդդինի եղբայրը, մահացել է 1148 թվականին։

397. Ֆարուխշահը ոչ թե Սալահեդդինի եղբայրն էր, այլ նրա եղբորորդին։

398. Թաջուլմուլուք— Սալահեդդինի եղբայրը։

399. Նկատի ունի Հիջրայի, այսինքն՝ մահմեդական թվականության սկիզբը։ Ինչպես հայտնի է, մահմեդական թվականությունը հաշվվում է 622 թվականից, երբ Մուհամմեդը հարկադրվեց Մեքքայից գաղթել Մեդինա քաղաքը։

400. Հերակլիոս— Բյուզանդական կայսր (610—641 թթ.)։

401. Խոսրով II Ապրվեզ— Սասանյան շահ (590—628 թթ.)։

402. Տե՛ս ծանոթագրություն 367։

403. Սույն գլխում նկարագրված դեպքը ամենայն հավանականությամբ տեղի է ունեցել 1174 թ., տե՛ս Ն. Ակինյան, Թոռնիկեանց ճիւղագրութիւնը, «Մատենագրական հետազօտութիւններ», հ. Դ, Վիեննա, 1938, էջ 84։ Ըստ որում մեր ժամանակագրությունը հաղորդում է որոշ մանրամասնություններ, որոնք հայտնի չեն այլ աղբյուրներից։

404. Սենեքերիմ (Սինախերիբ)— Ասորեստանի թագավոր (մ.թ.ա. 704—681 թթ.). տե՛ս Э. Бикерман, Хронология древнего мира, М., 1975, стр. 188.

405. Ասարհադոն— Ասորեստանի թագավոր (մ.թ.ա. 680—669 թթ.). տե՛ս Э. Бикерман, Хронология древнего мира, М., 1975, стр. 188.

406. Ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը թարգմանել է «le pays des Kurdes» (քրդերի երկիր), որ սխալ է, քանի որ Անանուն Եդեսացին քուրդ բառը միշտ գրում է Kurdaye ձևով (տե՛ս Chabot—III, p. 46, 120, 160, 68, 1~, 196), իսկ այստեղ ունենք Qardūyē անունը։

407. Շահարմեն— *խլաթի ամիրաների գահանունը։ Նշված իրադարձությունների ժամանակ խլաթի տերը, այսինքն՝ շահարմենն էր Նասրեդդին Սուքման II իբն Իբրահիմը (1128—1183 թթ.)։*

408. Վիգեն— *Սասունի իշխան XII դ. 60—70-ական թվականներին. տե՛ս* Ն. Ակինյան, *Թոնիկեանց ճիւղագրութիւնը, «Մատենագրական հետազօտութիւններ», հ. Դ, Վիեննա, 1938, էջ 84—85։ Ասորական բնագրում այս անունը գրված է* Bakhin *ձևով, որը ֆրանսերեն թարգմանության հեղինակը տառադարձել է* Bahlan

409. *Խոսքը վերաբերում է վրաց Գեորգի Գ թագավորին (1156—1184 թթ.), որը 1174 թ. գրավեց Անի քաղաքը։*

410. Նասրեդդին Ալփը իբն Տիմուրտաշ— *Մարդինի ճյուղի Արտուքյան ամիրա (1152—1176 թթ.)։*

411. Կուտբեդդին Իլ-Ղազի II իբն Ալփը— *Մարդինի ճյուղի Արտուքյան ամիրա (1176—1184 թթ.)։*

412. *Խոսքը վերաբերում է Մելիտենեի ճյուղի Դանիշմենդյան ամիրա Նասրեդդին Մուհամմեդ իբն Զու-լ-Կարնայնին (1162—1170, 1175—1178 թթ.)։*

413. *Նկատի ունի Մելիտենեի ճյուղի Դանիշմենդյան ամիրա Ֆախրեդդին ալ-Կասիմ իբն Զու-լ-Կարնայնին (1170—1172 թթ.)։ Ասորական բնագրի* 'aha *(եղբայր) բառը ֆրանսերեն թարգմանության հեղինակը կարդացել է* 'aba *(հայր) և թարգմանել* pere.

414. *Խոսքը վերաբերում է Մելիտենեի ճյուղի Դանիշմենդյան ամիրա Աֆրիդուն իբն Զու-լ-Կարնայնին (1172—1175 թթ.)։*

415. *Հեղինակը նկատի ունի այն փաստը, որ Մուհամմեդը (տե՛ս ծանոթագրություն 412) իր եղբայրների մեջ առաջինն էր, որ տիրել էր Մելիտենեին (1162—1170 թթ.)։*

416. Մլեհ որդի Լևոնի— *Կիլիկիայի իշխան (1169—1175 թթ.)։*

417. *Ասորական բնագրում բերդի անունը բաց է թողնված։ Ըստ Սմբատ Սպարապետի՝ Մլեհն սպանվել է Ասում. տե՛ս* Սմբատ Սպարապետ, *Տարեգիրք, էջ 192։*

418. Ռուբեն II որդի Ստեփանի— *Կիլիկիայի իշխան (1175—1185 թթ.)։*

419. Գրիգոր Դ (Տղա)— *Կաթողիկոս Հայոց (1173—1193 թթ.)։*

420. *Կիլիկիայի տեղագրության հետազոտող Մ. Ճևահիրճյանի բանավոր կարծիքով* Քեփա դ-Սարնուդ (Kēpa d-Sarnūd), Սիման (Sim'ān) *և* Բանբին (Bānbin < Bānbir?) *անունների տակ թաքնված են կիլիկյան Հայաստանի* Սարվանդիքար *(ասորերեն* Kēpa *բառը նշանակում է քար),* Սիմանակլա *և* Վանաիեր *բերդերը։*

421. *Նշված իրադարձությունների ժամանակ Բաղդադի խալիֆն էր Աբու-Մուհամմեդ ալ-Հասան ալ-Մուստադի բի-Ամրիլլահ իբն ալ-Մուսթանջիդը (1170—1180 թթ.)։*

422. *Խոսքը վերաբերում է Ասորիքի և Եգիպտոսի Այյուբյան տիրակալ Մելիք ալ-Ադիլին. տե՛ս ծանոթագրություն 394։*

422a. *Իրականում արևի այդ խավարումը տեղի է ունեցել 1176 թ.։*

423. *Ասորական բնագրի* 'ahā *(եղբայր) բառը ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը կարդացել է* 'abā *(հայր) և համապատասխանաբար թարգմանել* le pere. *Համեմատ. ծանոթագրություն 413։*

424. Գյումուշտեգին— *Ասորիքի (Հալեպ կենտրոնով) ամիրա Նուրեդդինի (1146—1174 թթ.) ներքինին և նրա որդու՝ Մելիք աս-Սալիհի (1174—1181 թթ.) դայակն ու խնամակալը։ Գյումուշտեգինը, որը ազգությամբ ֆրանկ կամ հայ էր, Նուրեդդինի մահվանից հետո փաստորեն տիրում էր ողջ Ասորիքին, բայց երբ նրա ազդեցությունը վտանգավոր չափերի հասավ, նա սպանվեց իր սանի կողմից 1177 թվականին. Համեմատ.* *Grousset.* Histoire..., *II*, p. *647*.

425. Բարին— Բերդ Ասորիքում, Համա քաղաքից հարավ-արևմուտք։ Խաչակրաց պատմության արևմտյան աղբյուրներում հայտնի է Montferrand անունով։

426. Իզզեդդին Քիլիջ-Արսլան II իբն Մասուդ— Ռումի սուլթան (1156—1192 թթ.)։ Հայկական միջնադարյան աղբյուրներում հայտնի է Խլին Ասլան անունով։

427. Հունարեն՝ Κύριε ελέησον (Տէր ողորմեա)։

428. Հաուրան— Գավառ Հարավային Ասորիքում, Դամասկոսից բավականին հարավ։

429. 1177 թ. հունիսի 19-ից մինչև 1178 թ. հոկտեմբերի 25-ը կազմում է ոչ թե «չորս ամիս և հինգ օր», այլ «մեկ տարի, չորս ամիս և հինգ օր»։ Դա նշանակում է, որ ասորական բնագրում կա՛մ «մեկ տարի» բառը բաց է թողնված, կա՛մ էլ նշված թվերից մեկը սխալ է։

430. Միքայել Մեծ— XII դ. ասորի մատենագիր (1126—1199 թթ.), գրել է թղթեր, կանոններ, պատմական երկեր։ Հռչակվել է հատկապես իր «Ժամանակագրությամբ», որը XIII դ. կեսերին թարգմանվել է հայերեն։ 1166—1199 թթ. եղել է հակոբիկյան եկեղեցու առաջնորդը՝ Անտիոքի պատրիարքը։

431. Միքայել Ասորին պատմում է, որ, ընդհակառակն, Քիլիջ Արսլանը ծանր հարկ է պարտադրել Մար-Բարսումայի վանքին. տե՛ս Michel le Syrien, III, p. 376, IV, p. 718.

432. Ռուքնեդդին (Իզզեդդին) Մասուդ I իբն Քիլիջ Արսլան— Ռումի սուլթան (1116—1156 թթ.)։

433. Խոսքը վերաբերում է Անտիոքի պրինց Բոհեմունդ III Թոթովախոսին. տե՛ս ծանոթագրություն 350։

434. Ռամլա— Քաղաք Պաղեստինում, Յաֆա նավահանգստից հարավ-արևելք։ Հայկական միջնադարյան աղբյուրներում հիշատակված է Ռամլէ անունով։

435. Ասորական բնագրի Լգ (33) թիվը ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը սխալմամբ կարդացել է 32։

436. Բաղդուին IV Բորոտ (Baudouin IV le Roi Lépreux)— Երուսաղեմի թագավոր (1173—1185 թթ.)։

437. Ֆրեր— Ֆրանսերեն frere (եղբայր) բառն է. այդպես էին կոչվում խաչակիրների կողմից 1118 թ. հիմնադրված Տաճարական (Templier) ռազմակրոնական միաբանության անդամները։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» նրանք հիշատակված են «տունն ֆրերացն մայստրերովն դամփլն (=Temple)», կամ պարզապես ֆրէրք ձևով։

438. Տե՛ս ծանոթագրություն 341։

439. Կոնդֆլանդ II (Compte de Flandre)— Խոսքը վերաբերում է Ֆիլիպ Էլզասցուն (Philippe d' Alsace)՝ Ֆլանդրիայի կոմսին, որն իր հոր՝ Թիերի Էլզասցու՝ Կոնդֆլանդ I-ի (տե՛ս ծանոթագրություն 344) օրինակով 1177 թ. զինված ուխտագնացություն ձեռնարկեց դեպի Երուսաղեմ։

440. Իզզեդդին Մասուդ I իբն Մաուդուդ— Մոսուլի աթաբեկ (1176—1193 թթ.), Իմադեդդին Զանգիի թոռը։

441. Մուջահիդեդդին Կայմազ— Մոսուլի կառավարիչ Զեյնեդդին Ալի Քուչուկի որդու խնամակալը 1168 թվականից, հետագայում՝ Արբելայի աթաբեկ և Մոսուլի կառավարիչ. հմմտ. Setton, A history.... I, p. 525. 697.

442. Իմադեդդին Աբուլֆաթհ Զանգի II իբն Մաուդուդ— Սինջարի ամիրա (1170—1197 թթ.), Հալեպի տիրակալ (1182—1183 թթ.)։

443. Մուիզզեդդին Սինջարշահ իբն Ղազի II— Ջեզիրեի՝ հյուսիսարևելյան Միջագետքի ամիրա (1180—1208 թթ.)։

444. Ասորական բնագրի «վերևում հիշված Զեյնեդդին Ալի Քուչուկի որդին» բառերը Ա. Աբունան՝ ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը,

*սխալմամբ թարգմանել է* „'Ali Kücük, deja mentionne, fils de Zayn al-Dni" *(վերևում հիշված Ալի Քուչուկը՝ Զեյնեդդինի որդին)։*

*445. Խոսքը վերաբերում է Եդեսիայի հայազգի իշխան Թեոդորոս (Թորոս) Կյուրապաղատին՝ Հեթումի որդուն. տե՛ս ծանոթագրություն 25։*

*446.* **Մուզաֆֆարեդդին Աբուսայիդ Կուկբուրի իբն Ալի—** *Խառանի (1168—1190 թթ.) և Արբելայի (1190—1233 թթ.) ամիրա։*

*447.* **Խաբուր—** *Գետ Հյուսիսային Միջագետքում, Եփրատի ձախակողմյան վտակներից մեկը։*

*448.* **Ալ-Մելիք ալ-Կահիր Նասրեդդին Մուհամմեդ իբն Շիրկուհ—** *Հոմսի Այուբյան ամիրա (1178—1185 թթ.), Սալահեդդինի հորեղբորորդին։*

*449. Ինչպես նշում է ժամանակագրության հրատարակիչ Ժ.—Բ. Շաբոն, ասորական բնագրի այս նախադասությունից ինչ-ինչ բառեր են պակասում։*

*450.* **Ալ-Մելիք ազ-Զահիր Գիյասեդդին Աբուլֆաթհ Ղազի I—** *Հալեպի Այուբյան ամիրա (1186—1216 թթ.), Սալահեդդինի որդին։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հիշատակված է* **Մելիք Տահր** *անունով։*

*451.* **Ալ-Մելիք ալ-Ազիզ I Իմադեդդին Աբուլֆաթհ Օսման—** *Եգիպտոսի Այուբյան սուլթան (1193—1198 թթ.), Սալահեդդինի որդին։*

*452.* **Ալ-Մելիք ալ-Աֆդալ Նուրեդդին Աբուլհասան Ալի—** *Դամասկոսի Այուբյան ամիրա (1186—1196 թթ.), Սալահեդդինի որդին։*

*453.* **Ալ-Մելիք ալ-Մուզաֆֆար I Տաքիեդդին Աբուսայիդ Օմար—** *Համայի Այուբյան ամիրա (1178—1191 թթ.), Սալահեդդինի եղբորորդին։*

*454. Ասորական բնագրի* Tayyāye *(Տաճիկ) անունը, որը ինչպես նշվեց սույն աշխատության 4-րդ ծանոթագրության մեջ, կարող է հասկացվել և՛ արաբ, և՛ մահմեդական, Ա. Աբունան՝ ֆրանսերեն թարգմանության հեղինակը, թարգմանել է* musulmans։ *Սակայն, ըստ երևույթին, ավելի ճիշտ է մեր ընտրությունը, քանի որ հակառակ դեպքում այդ բառը չի հակադրվում հաջորդ նախադասության մահմեդական բառին։*

*455. Հավանաբար հեղինակը նկատի ունի Ամիդի ճյուղի Արտուքյան ամիրա Նուրեդդին Մուհամմեդ իբն Կարաարսլան իբն Դաուդին (1167—1185 թթ.), սակայն նա այս անձնավորության տիտղոսում շփոթել է նրա հոր և պապի հաջորդականությունը։ Հեղինակն, ըստ երևույթին, սխալվում է նաև Նուրեդդինին Տիմուրտաշի սերունդներից համարելու խնդրում։ Իրականում Նուրեդդինը և Տիմուրտաշը սերում էին Արտուքի երկու որդիներից։*

*456. Ժամանակագրության ասորական ձեռագրում այս դաշտի անունը բաց է թողնված։ Ճակատամարտը տեղի է ունեցել Հյուսիսային Պաղեստինի Հաթթին գյուղի մոտ, Տիբերիա լճից արևմուտք։*

*457. Տե՛ս ծանոթագրություն 341 և 438։*

*458. Ասորական բնագրում նշված բերդի անունը գրված է* Shārk *ձևով. տե՛ս ծանոթագրություն 374։*

*459.* **Հոսպիտալիեր—** *Ֆրանսերեն* hospitalier *(հյուրընկալ) բառն է. այդպես էին կոչվում խաչակրաց շրջանում ծագում առած ռազմակրոնական մի միաբանության անդամները։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» նրանք հիշատակված են* **ոսպիթալ** *ձևով։*

*460.* **Նազարեթ—** *Քաղաք Հյուսիսային Պաղեստինի Գալիլեա գավառում։*

*461.* **Բեհաեդդին Կարակուշ—** *Աքքայի կառավարիչ, նշանակված Սալահեդդինի կողմից 1188 թ., տե՛ս* Setton, A history..., I, p. 586, 688.

*462.* **Աթանասիոս եպիսկոպոս—** *Միքայել Ասորու (տե՛ս ծանոթագրություն 430)*

*եղբայրը։ 1185 թ. նշանակվել է Հակորիկյան եկեղեցու Երուսաղեմի թեմի մետրապոլիտ, մահացել է 1193 թ., տե՛ս* E. *Honigmann*, Le couvent..., p. 111; *Michel le Syrien*, III, p. 394, 412.

*463.* Սահդա կամ Իզնատիոս— *1193 թ. Միքայել Ասորու (տե՛ս ծանոթագրություն 430) կողմից նշանակվել է Հակորիկյան եկեղեցու Երուսաղեմի թեմի եպիսկոպոս. տե՛ս* E. *Honigmann*, Le couvent..., p. 111; *Michel le Syrien*, III, p. 412.

*464.* Թեոդորոս բար-Վահբուն— *XII գ. հակորիկ եկեղեցական գործիչ (մահ. 1193 թ.), երկար տարիներ խռովել է Հակորիկյան եկեղեցու ներքին կյանքը, ընդվզել Միքայել Ասորի պատրիարքի (տե՛ս ծանոթագրություն 430) դեմ, 11 տարի համարվել հակաթոռ պատրիարք, Կիլիկիայի թագավոր Լեոն II-ի կողմից նշանակվել առաջնորդ երկրի բոլոր հակորիկ ասորիների վրա և այլն։ Թեոդորոս բար-Վահբունի մասին մանրամասն տե՛ս* Ն. Տեր-Մինասյան, *Հայոց եկեղեցու յարաբերութիւնները ասորւոց եկեղեցիների հետ, Էջմիածին, 1908, էջ 275—282։*

*465. Ասորական բնագրի* hrēnay sarbtā *(այլազգի) բառը ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը թարգմանել է «*des gens de differents races*» (տարբեր ցեղերի մարդիկ), որ ճիշտ չէ։* Այլազգի *անելով ինչպես հայ, այնպես նաև ասորական մատենագրության մեջ հասկանում էին այլահավատներին, ավելի ճիշտ՝ մահմեդականներին։*

*466.* Մարքիզ Կոնրադ Մոնֆերրատցի *(*marquis Conrad de Montferrat*)— Օգնության փութալով խաչակիրներին՝ Կոնրադը 1187 թ. հուլիսի 14-ին հասավ Տյուրոս, պաշտպանեց այն Սալահեդդինի հարձակումներից և դրանով մեծ դեր խաղաց Աքքայի խաչակրաց թագավորության ստեղծման գործում։*

*467. Խոսքը վերաբերում է գերմանական կայսր Ֆրիդրիխ Շիկամորուսին՝ երրորդ խաչակրաց արշավանքի (1189—1192 թթ.) առաջնորդին, որը պատահարար խեղդվեց Կիլիկիայի Սելեֆ գետում 1190 թ. հունիսի 10-ին։*

*468.* Արզուն (Արզն)— *Քաղաք Մեծ Հայքի Աղձնյաց նահանգում, Նփրկերտից բավականին արևելք։*

*469.* Ալ-Մելիք ալ-Մանսուր I Նասիրեդդին Աբուլմաալի Մուհամմեդ— *Ասորիքի Համա քաղաքի Այուբյան ամիրա (1191—1220 թթ.)։*

*470.* Ռեշայնա— *Քաղաք Հյուսիսային Միջագետքում, Խառանից արևելք։ «Աշխարհացոյց»-ում հիշատակված է Ռաշաինա ձևով։*

*471.* Նուրեդդին Արսլանշահ I իբն Մասուդ, Աբուլխարիջ ալ-Ադիլ— *Մոսուլի աթաբեկ (1193—1211 թթ.), Իմադեդդին Զանգիի թոռը։*

*472. Ա. Աբունան՝ ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը, ասորական բնագրի* Մելիք ալ-Ադիլ *անունը սխալմամբ կարդացել է* Malik al-Afdal.

*473.* Սալխաթ— *Բնակավայր Հարավային Ասորիքի Հաուրան գավառում, Բոսրա քաղաքից արևելք։*

*474.* Թեբնին— *Բնակավայր Հարավային Լիբանանում, Տյուրոսից մոտ 25 կմ հարավ-արևելք։*

*475.* Ալ-Մելիք ալ-Մուազզամ Շարաֆեդդին Իսա— *Դամասկոսի Այուբյան ամիրա (1218—1227 թթ.), Սալահեդդինի եղբոր՝ Մելիք ալ-Ադիլի որդին։*

*476.* Ալ-Մելիք ալ-Քամիլ Նասիրեդդին Աբուլմաալի Մուհամմեդ— *Եգիպտոսի Այուբյան սուլթան (1218—1238 թթ.), Սալահեդդինի եղբոր՝ Մելիք ալ-Ադիլի որդին։*

*477.* Ալ-Մելիք ալ-Աուհադ Նաջմեդդին Այուբ— *Նփրկերտի Այուբյան ամիրա (1218—1227 թթ.), Սալահեդդինի եղբոր՝ Մելիք ալ-Ադիլի որդին։*

*478.* Կուտբեդդին Սուլեյման II իբն Մուհամմեդ, ալ-Մելիք ալ-Մասուդ—*Ամիդի ճյուղի Արտուքյան ամիրա (1185—1201 թթ.)։*

479. Նշված թիվն, ըստ երևույթին, սխալ է, քանի որ նույն տարով է թվագրված եգիպտոսի սուլթան Մելիք ալ-Ազիզի մահը, որն, ինչպես հայտնի է, տեղի է ունեցել 1198 թ. նոյեմբերին։

480. Այգ դեպքն ամենայն հավանականությամբ տեղի է ունեցել 1199 թ. մայիսին, որովհետև նախորդ դրվագը թվագրված է եգիպտոսի սուլթան Մելիք ալ-Ազիզի մահով, որը տեղի է ունեցել 1198 թ. նոյեմբերին։

481. Թունայսիր— *Բնակավայր Հյուսիսային Միջագետքում, Մարդինից հյուսիսարևմուտք։ «Հայ ժողովրդի պատմության» III հատորի (Երևան, 1976) քարտեզում, որը կազմել է Ս. Երեմյանը, այս բնակավայրը նշված է* Դունիսար *անունով։*

482. Մելիք ալ-Ֆաիզ Իբրահիմ— *Այյուբյան ամիրա Մելիք ալ-Ադիլի՝ Սալահեդդինի եղբոր որդին։*

483. Կալա-Նաջմ— *Բերդ Հյուսիսային Ասորիքում, Եփրատի աջ ափին, Մաբբուգից արևելք։*

484. Ռուքնեդդին Սուլեյմանշահ II իբն Քիլիջ-Արսլան— *Ռումի սուլթան (1196—1204 թթ.)։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հիշատակված է* Ըռունգնատին *անունով։*

485. Մուիզզեդդին Կայսարշահ— *Մելիտենեի ամիրա (1192 թվականից), Ռումի սուլթան Քիլիջ-Արսլան II-ի (1156—1192 թթ.) որդին։*

486. Նասիրեդդին Մահմուդ իբն Մուհամմեդ, ալ-Մելիք աս-Սալիհ— *Ամիդի ճյուղի Արտուքյան ամիրա (1201—1222 թթ.)։*

487. Բարտելա— *Հակոբիկյան եկեղեցու եպիսկոպոսանիստ կենտրոններից մեկը Հյուսիսային Միջագետքում, Մոսուլից ոչ շատ հեռու. տե՛ս P. Kawerau,* Die Jakobitische Kirche..., S. 34, 54, 59, 115, 120.

488. Թագրիտ *քաղաքը, որը գտնվում է Տիգրիսի աջ ափին, Մոսուլից բավականին հարավ, հակոբիկյան եկեղեցու արևելյան թեմերի կենտրոնն էր, մաֆրիանի (տե՛ս ծանոթագրություն 489) նստավայրը։ 1155 թվականից այգ թեմը միացել էր Մոսուլի թեմին, իսկ մաֆրիանը դեռևս 1089 թվականից նստում էր արդեն այս վերջին քաղաքում։ Այդ պատճառով է, հավանաբար, որ նրա նոր նստավայրը կոչվում է Թագրիտցիների եկեղեցի. հմմտ. E. Honigmann,* Le couvent..., p. 149—151; *P. Kawerau* Die Jakobitische Kirche..., S. 23, 114.

489. Մաֆրիան— *Հակոբիկյան եկեղեցու արևելյան թեմերի առաջնորդի տիտղոսը։ Այդ պաշտոնն ստեղծվել էր դեռևս 630-ական թթ.։ XII—XIII դարերում մաֆրիանի իրավասության տակ էին գտնվում 18 եպիսկոպոսական թեմեր։ Անանուն ժամանակագրության տվյալ դրվագում նկարագրված իրադարձությունների ժամանակ մաֆրիանն էր Գրիգոր I-ը (1189—1214 թթ.). տե՛ս P. Kawerau,* Die Jakobitische Kirche..., S. 23—34, 124.

490. Ալ-Մելիք ալ-Աշրաֆ I Մուզաֆֆարեդդին Աբուլֆաթհ Մուսա— *Նփրկերտի (1210—1220 թթ.) և Դամասկոսի (1229—1237 թթ.) Այյուբյան ամիրա, Սալահեդդինի եղբոր՝ Մելիք ալ-Ադիլի որդին։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հիշատակվում է* Աշրաֆ *անունով։*

491. *Ասորերեն* makkuka *բառը, որ թարգմանել ենք* խաչ, *կշռի միավոր է, որը հավասար է մոտավորապես 5 կգ։*

492. *Ասորերեն* zuza *բառը, որ թարգմանել ենք* արծաթ, *դրամի միավոր է՝ հավասար հունական դրախմային և արաբական դիրհեմին։*

493. *Խոսքը վերաբերում է Կիլիկիայի թագավոր Լևոն II-ին (1185—1219 թթ.)։*

494. Կատտինա *(ասորերեն* Qattina *) բերդը, որը ժամանակագրության տվյալներով գտնվել է Եփրատի ափին, մեզ հայտնի մյուս աղբյուրներում հիշատակված չէ։*

495. *Այս գլուխը նվիրված է խաչակրաց չորրորդ արշավանքին, որը տեղի ունեցավ 1202—1204 թթ. և ավարտվեց Բյուզանդական կայսրության կործանմամբ։*

496. *Ասորական բնագրի «նրանից հետո հույներն այլևս երբեք թագավոր չունեցան» նախադասությունը Ա. Աբունան՝ ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը, բաց է թողել։ Խոսքը վերաբերում է այն փաստին, որ 1204 թ. ֆրանկները, գրավելով Կոստանդնուպոլիսը, ստեղծեցին այսպես կոչված Լատինական կայսրությունը, և այդպիսով փաստորեն վերջ դրին հույների տիրապետությանը։ Լատինական կայսրությունը գոյատևեց մինչև 1261 թ.։*

497. Թելլ-Աֆար— *Գյուղ Հյուսիսային Միջագետքում, Մոսուլից արևմուտք, հակոբիկյան եկեղեցու եպիսկոպոսանիստ կենտրոններից մեկը։*

498. Բեթ-Շազե *(ասորերեն՝* Bēt Sayzē *) գյուղը հավանաբար գտնվել է Ուռհայից արևելք։*

499. Իզզեդդին Քիլիջ-Արսլան III իբն Սուլեյմանշահ— *Ռումի սուլթան (1204 թ.)։*

500. Գիյասեդդին Քեյ-Խոսրով I— *Ռումի սուլթան (1192—1196, 1204—1210 թթ.)։*

501. *Խոսքը վերաբերում է Իկոնիայի սելջուկյան պետությանը, որը հայտնի է Ռումի սուլթանություն անունով։* Ռումը *հույների* հռոմ *անվան թուրքացված տարբերակն է։ Ասորական աղբյուրները, մասնավորապես մեր ժամանակագրությունը, և՛ հույներին, և՛ Իկոնիայի սելջուկներին կոչում են միևնույն* romayē *անունով։ Թյուրիմացություններից խուսափելու նպատակով սույն թարգմանության մեջ հույների համար գործածել ենք* հռոմ *անվանումը, իսկ Իկոնիայի սելջուկների համար՝* Ռում, ռումաց։

502. Սեյֆեդդին Բեգթեմուր— *Խլաթի ամիրա (1183—1193 թթ.)։*

503. *Խոսքը վերաբերում է Խլաթի ամիրա ալ-Մելիք ալ-Մանսուր Մուհամմեդ իբն Բեգթեմուրին (1198—1206 թթ.)։*

504. Հազարդինարի— *Խլաթի ամիրա (1193 թ.)։*

505. Իզզեդդին Բալբան— *Խլաթի ամիրա (1206—1207 թթ.)։*

506. *Ասորական բնագրի* men Khlaṭ *(Խլաթից) բառը ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակ Ա. Աբունան թյուրիմացաբար թարգմանել է* d'Egypte *(Եգիպտոսից)։*

507. Զաքարե Բ Մեծ— *Հայ իշխան, վրաց-հայկական զորքերի գերագույն հրամանատար՝ ամիրսպասալար (1191—1212 թթ.). տե՛ս* Ս. Երեմյան, *Զաքարե Բ Մեծ, «Հայկական Սովետական Հանրագիտարան», հ. III։*

508. Իվանե Ա Զաքարյան— *Հայ իշխան, վրաց պետության արքունի մեծ վեզիր (1191—1212 թթ.), վրաց-հայկական զորքերի գերագույն հրամանատար՝ ամիրսպասալար (1212—1227 թթ.) և աթաբեկ (1213—1227 թթ.). տե՛ս* Ս. Երեմյան, *Իվանե Ա, «Հայկական Սովետական Հանրագիտարան», հ. IV։ Ասորական բնագրում այս անունը գրված է* ʾbn's *ձևով, որը ֆրանսերեն թարգմանության հեղինակը տառադարձել է* Abanas.

509. *Ասորական բնագրի «մինչ նրանք զբաղված էին դրանով» բառերը ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության մեջ բաց են թողնված։*

510. *Տե՛ս ծանոթագրություն 493։*

511. Բերդուս— *Իշխանանիստ բերդ Լեռնային Կիլիկիայում, Մարաշից հյուսիս. տե՛ս Հ.* Տեր-Ղազարյան, *Հայկական Կիլիկիա, տեղագրություն, Անթիլիաս, 1966, էջ 114—118։*

512. Թեոդորոս I Լասկարիս— *Կայսր Նիկիայի հունական պետության (1208—1222 թթ.), որը հիմնադրվեց այն բանից հետո, երբ ֆրանկները գրավեցին Կոստանդնուպոլիսը և ստեղծեցին այսպես կոչված Լատինական կայսրությունը (1204—1261 թթ.,*

հմմտ. ծանոթագրություն 496)։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» Լասկարիսը կոչված է Լասքարի։

513. Բիսինուս (ասորերեն՝ Bisinūs) անունը ժամանակագրության հրատարակիչ Ժ.—Բ. Շաբոյի կարծիքով աղավաղված հունարեն բառ է (տե՛ս Chabot—II, p. 221)։ B սկզբնատառը, հավանաբար, ոչ թե տեղանվան բաղադրամասն է, այլ տեղի կցական նախդիր։

514. Ալ-Մելիք ալ-Մուզաֆֆար Շիհաբեդդին Ղազի— Այուբյան ամիրա, որը տիրակալել է Ուռհայում, Խառանում, Խլաթում, իսկ վերջում՝ Նիֆրկերտում (1220—1245 թթ.)։

515. Ճիշտ է ոչ թե բնագրի, այլ լուսանցագրության տվյալը. Մելիք ալ-Ադիլը մահացել է 1218 թ., տե՛ս ծանոթագրություն 394։

516. Տե՛ս ծանոթագրություն 491։

517. Տե՛ս ծանոթագրություն 492։

518. «Դարձան չորս արծաթ» բառերը գրված են ժամանակագրության ձեռագրի լուսանցքում։

519. Անուշադրությամբ կրկնված է 516-րդ գլխահամարը։

520. Խոսքը վերաբերում է հունգարական թագավոր Անդրաշ II-ին, որը 1217—1218 թթ. արշավանք ձեռնարկեց դեպի Պաղեստինի խորքերը, բայց ձեռնունայն ետ դարձավ։ Մեր աղբյուրը թյուրիմացաբար նրան մասնակից է դարձնում նաև եգիպտական արշավանքին և Դամիատ քաղաքի գրավմանը, որ տեղի ունեցավ 1219 թ. նոյեմբերին։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» նա հիշատակված է «Թագաւորն Ունգռաց Անգրէ» ձևով։

521. Դամիատ— Նավահանգստային քաղաք Հյուսիսային Եգիպտոսում, Միջերկրական ծովի ափին։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հիշատակված է Տէմիաթ ձևով։

522. Նշված իրադարձությունների ժամանակ Հռոմի պապն էր Հոնորիոս III-ը (1216—1227 թթ.)։

523. Լեգատ— խոսքը վերաբերում է Հռոմի պապի ներկայացուցիչ Պելագիոս կարդինալին՝ Ալբանոյի եպիսկոպոսին, որը 1218 թ. սեպտեմբերին միացավ Եգիպտոս արշաված խաչակիրներին և եռանդուն գործունեություն ծավալեց Դամիատի պաշարման ու գրավման խնդրում։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հիշատակված է «լիկաթն ի Հռոմայ» ձևով։

524. Խոսքը վերաբերում է Երուսաղեմի թագավոր Հովհաննես Բրիենացուն (Jean de Brienne. 1210—1225 թթ.), որը նստում էր Աքքայում։

525. Իրականում այդ գժտությունը ծագել էր Երուսաղեմի թագավոր Հովհաննես Բրիենացու (տե՛ս ծանոթագրություն 524) և Հռոմի պապի լեգատի (տե՛ս ծանոթագրություն 523) միջև. տե՛ս Grousset, Histoire..., III, p. 271.

526. Ջալալեդդին Մանգբարբի իբն Մուհամմեդ— Խորեզմշահ, այսինքն՝ Խորեզմի տիրակալ (1220—1231 թթ.)։

527. Խոսքը վերաբերում է գերմանական կայսր Ֆրիդրիխ II-ին, որը 1125 թ. ամուսնանալով Երուսաղեմի արքայադստեր հետ, տիրեց Երուսաղեմի (Աքքայի) գահին։ 1229 թ. փետրվարին նրա և Մելիք ալ-Քամիլի (տե՛ս ծանոթագրություն 476) միջև կնքված պայմանագրով Երուսաղեմը, Բեթղեհեմը և Նազարեթը նորից մտան Ասորիքի խաչակրաց պետության կազմի մեջ։ Ամփարոր անունը ֆրանսերեն Empereur (կայսր) բառի տառադարձությունն է։ Սմբատ Սպարապետի «Տարեգրքում» հիշատակված է «րմբրրուրն Ալամանաց» ձևով։

528. Նկատի ունի Երուսաղեմի (Աքքայի) թագավոր Հովհաննես Բրիենացուն (տե՛ս

*ժանոթագրություն 524), որին նրա փեսան՝ գերմանական կայսր Ֆրիդրիխ II-ը (տե՛ս ժանոթագրություն 527) 1125 թ. գրկեց գահից։*

*529. Ասորական բնագրի* Parsāye *(Պարսից) բառը ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը թյուրիմացաբար թարգմանել է* des Turcs *(Թուրքաց)։*

*530. Գրիչը սխալմամբ 521-րդ գլխահամարից թռել է 523-րդ։*

*531.* Ալաեդդին Քեյ-Կոբադ I իբն Քեյ-Խոսրով I— *Ռումի սուլթան (1219—1237 թթ.)։*

*532.* Սղերդ— *Միջնադարյան քաղաք Մեծ Հայքի Աղձնյաց նահանգում, Բաղեշից հարավ։ Սղերդի մասին մանրամասն տե՛ս* Լ. Հ. Տեր-Պետրոսյան, *Հայերը միջնադարյան Մծբինում և Մեծ Հայքի հարավային նահանգներում։ «Պատմա-բանասիրական հանդես», 1979 թ., № 3, էջ 90—92։*

*533.* Տուր-Աբդին *(ասորերեն՝ «[Աստծու] ծառաների լեռ»)— Գավառ Հյուսիսային Միջագետքում։ Մինչև մ.թ. 37 թ. գտնվում էր Մեծ Հայքի կազմում՝ Ծավդեից գավառ անունով. տե՛ս* Ս. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 86։*

*534. Ամիդի Արտուքյան վերջին ամիրան էր ալ-Մելիք ալ-Մասուդը (1232 թ.), որին այդ նույն թվականին գահընկեց արին Մելիք ալ-Ադիլ Այուբյան սուլթանի (տե՛ս ժանոթագրություն 394) որդիները։*

*535. «Վրեժ լուծել Ամիդի տիրոջից։ Եվ Մելիք ալ-Քամիլը» բառերը գրված են ժամանակագրության ձեռագրի լուսանցքում։*

*536. «Մեծ ջանքերի գնով» բառերը գրված են ժամանակագրության ձեռագրի լուսանցքում։*

*537. Սույն գլխի համարն ավելացրել է ժամանակագրության ասորական բնագրի հրատարակիչ Ժ.—Բ. Շաբոն։*

*538. Նշված դեպքերի ժամանակ Բաղդադի խալիֆն էր ալ-Մուսթանսիրը (1226—1242 թթ.)։*

*539. Սույն գլխի համարն ավելացրել է ժամանակագրության ասորական բնագրի հրատարակիչ Ժ.—Բ. Շաբոն։*

*540.* Հիզա *(ասորերեն* Hizt*) գետի անունը հավանաբար աղավաղված է. ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության մեջ այն տառադարձված է* Hizdi *ձևով։*

*541. Տե՛ս ժանոթագրություն 491։*

*542. Ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության խմբագիր Ժ.—Մ. Ֆիեի կարծիքով՝ հիշատակված դրամի անունը կարող է ծագած լինել ան-Նասիր խալիֆի (1180—1225 թթ.) անունից. տե՛ս* Abouna-Fiey, p. *180.*

*543. Տե՛ս ժանոթագրություն 492։*

*544. Տե՛ս ժանոթագրություն 492։*

*545. Որոշ բառերի ջնջվածության պատճառով նախադասության միտքը բոլորովին աղավաղվել է։*

*546. Որոշ բառեր բաց են թողնված։*

*547. Որոշ բառեր բաց են թողնված։*

*548. Այստեղ ընդհատվում է Անանուն Եդեսացու քաղաքական ժամանակագրությունը։*

*549. Խոսքը վերաբերում է Հովհան Մայրագոմեցու և նրա աշակերտ Սարգսի գործունեությանը։ Ոչ միայն սույն ժամանակագրության մեջ, այլ նաև ուրիշ ասորական աղբյուրներում նրանք եղբայրներ են համարվում։ Այդ մասին մանրամասն տե՛ս* Բ. Սարգիսյան, *Մանիքէա-Պաւղիկեան Թոնդրակեցւոց աղանդն և Գր. Նարեկացւոյ թուղթը, «Բազմավէպ», 1892, էջ 461—464։*

550. Պետրոս Կալլինիկացի— *Հակոբիկյան եկեղեցու առաջնորդ՝ Անտիոքի պատրիարք (581—591 թթ.)։*

551. *Նկատի ունի միաբնակներին. տե՛ս ժամանակագրություն 117։*

552. Հուլիանոս I— *Հակոբիկյան եկեղեցու առաջնորդ՝ Անտիոքի պատրիարք (591—594 թթ.)։*

553. Կոստանդին Դուկաս— *տե՛ս ժամանակագրություն 15։*

554. *Տե՛ս ժամանակագրություն 117։*

555. Աթանասիոս VI— *Հակոբիկյան եկեղեցու առաջնորդ՝ Անտիոքի պատրիարք (1058—1063 թթ.)։*

556. *Ժամանակագրության ձեռագրում այս հատվածին նախորդող բազմաթիվ թերթեր պակասում են։*

557. *Խոսքը, ամենայն հավանականությամբ, վերաբերում է Խլաթի տիրակալ Նասրեդդին Սուքման II-ին. տե՛ս ժամանակագրություն 407։*

558. *Նկատի ունի, ըստ երևույթին, այն հանգամանքը, որ Սասունի վերջին իշխանազուններ Վասիլի, Շահնշահի և Թոռնիկի մայրը՝ Վանինեն, Հայոց Գրիգոր Գ կաթողիկոսի (1113—1166 թթ.) եղբոր դուստրն ու Գրիգոր Դ Տղա կաթողիկոսի (1173—1193 թթ.) քույրն էր. տե՛ս* Ն. Ակինյան, *Թոռնիկեանց ճիւղագրութիւնը, «Մատենագրական հետազօտութիւններ», հ. Դ, Վիեննա, 1938, էջ 85—88։*

559. *Ասորական բնագրի* sābā *(ծեր) բառը համարելով հատուկ անուն, Ա. Աբունան ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության մեջ այն վերարտադրել է* Saba *ձևով։*

560. *Խոսքը վերաբերում է Գրիգոր Դ Տղա կաթողիկոսին. տե՛ս ժամանակագրություն 419։*

561. *Նշված իրադարձությունների ժամանակ Բաղդադի խալիֆն էր* ան-Նասիրը *(1180—1225 թթ.)։*

562. *Խոսքը վերաբերում է հակոբիկյան եկեղեցու առաջնորդ՝ Անտիոքի պատրիարք Միքայել Ասորուն (1166—1199 թթ.). տե՛ս ժամանակագրություն 430։*

563. *Նկատի ունի հայոց կաթողիկոս Ներսես Դ Շնորհալուն (1166—1173 թթ.)։*

564. Մանուել Միրանածինի *մասին տե՛ս ժամանակագրություն 258։*

565. *Քրիստափորի դեսպանագնացության հանգամանքների մասին մանրամասն տե՛ս* Ղ. Ալիշան, *Շնորհալի և պարագայ իւր, Վենետիկ, 1873, էջ 416—418։*

566. *Նկատի ունի Թեոդորոս բար-Վահրունին. տե՛ս ժամանակագրություն 464։*

567. *Խոսքը հայոց կաթողիկոս Գրիգոր Դ Տղայի մասին է. տե՛ս ժամանակագրություն 419։*

568. *Գրիգոր Դ Տղա կաթողիկոսից հետո հայոց կաթողիկոսական գահը ժառանգեց* Գրիգոր Ե Քարավեժը *(1193—1194 թթ.)։*

569. *Ա. Աբունան՝ ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը, ասորական բնագրի* ṭalyā *(տղա, երեխա) բառը համարել է Գրիգոր Ե կաթողիկոսի* Կանուկ *մականվան ասորական վերարտադրությունը և այդ պատճառով թարգմանել է* Jeune *ձևով։*

570. Գրիգոր Զ Ապիրատ— *Հայոց կաթողիկոս (1194—1203 թթ.)։*

571. *Խոսքը վերաբերում է Գրիգոր Դ Տղա կաթողիկոսին. տե՛ս ժամանակագրություն 419։*

572. *Ասորական բնագրում* եպիսկոպոս *բառը գրված է եզակի թվով, սակայն ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության հեղինակը՝ Ա. Աբունան, այն վերարտադրել է հոգնակիով (*les eveques*)։ Մեզ թվում է, սակայն, որ հարկ չկա փոխել բնագրի ընթերցվածը, քանի որ XII դարի երկրորդ կեսին Կիլիկիայում եղել է հակո-*

րիկյան եկեղեցու միայն մեկ թեմ՝ Անարզաբա կենտրոնով. տե՛ս P. Kawerau, Die Jakobitische Kirche..., S. 109.

573. Սույն դրվագում նկարագրված դեպքերի մասին մանրամասն տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, էջ 1562—1564։

574. Խոսքը, ամենայն հավանականությամբ, վերաբերում է Գրիգոր Լուսավորչին։

575. Անանիա— Սեբաստիայի արքեպիսկոպոս (մահ. 1227 թ.), որը Ռումի Ռուքնեդդին Սուլեյմանշահ II (որդի Քիլիչ-Արսլան սուլթանի (տե՛ս ծանոթ. 484) օգնությամբ 1203 թ. ընտրվեց Սեբաստիայի և Կեսարիայի հայության կաթողիկոս, որպես հակաթոռ Ամենայն Հայոց կաթողիկոս Հովհաննես Զ Սսեցու (տե՛ս ծանոթ. 576)։ Անանիայի մասին մանրամասն տե՛ս H. Berbérian, Le patriarcat armenien du Sultanat de Roum. L'anti-catholicos Anania, „Revue des Etudes Armeniennes", N. S., t. III, 1966, p. 233—241.

576. Հովհաննես Զ Սսեցի— Հայոց կաթողիկոս (1203—1221 թթ.)։

577. Ա. Աբունան ժամանակագրության ֆրանսերեն թարգմանության մեջ «և պահանջեց Անանիային» նախադասությանն անհարկի կերպով ավելացրել է «որպես կաթողիկոս» բառերը։

578. Ժամանակագրության ասորական բնագրի հրատարակիչ Ժ.—Բ. Շաբոն այստեղ ավելացրել է նաև՝ «արաբները»։

579. Հմմտ. Անանիա Շիրակացու մատենագրությունը, աշխատասիրությամբ Ա. Աբրահամյանի, Երևան, 1944, էջ 360։

580. Ռոմուլոս— Հռոմի առասպելական հիմնադիրը և առաջին թագավորը. տե՛ս И. Х. Дворецкий, Латинско-русский словарь, М., 1976, стр. 885.

581. Իրականում Հռոմն այդպիսի ընդարձակ տարածություններ էր ընդգրկում ոչ թե Ռոմուլոսի ժամանակ, այլ իր հզորության շրջանում՝ մ.թ. I—IV դդ.։

582. Նկատի ունի, ըստ երևույթին, Միջերկրական ծովի արևելյան ափերից մինչև Ատլանտյան օվկիանոսը։

583. Այս գլխի մասին մանրամասն տե՛ս սույն աշխատության ներածությունը։

584. Նեմրովթ— Աստվածաշնչական նախահայրերից մեկը՝ Քամի թոռը, Քուշի որդին (Ա Մնաց., Ա, 10)։ Ըստ ասորական ավանդության, որը տեղ է գտել նաև Անանուն Եդեսացու ժամանակագրության մեջ (տե՛ս Chabot—I, p. 48), Ուռհա քաղաքը կառուցվել է Նեմրովթի կողմից։

585. Եդեսիայի թագավորների շարքում հաշվվում է Աբգար անունով տասն անձնավորություն. տե՛ս J. B. Segal, Edessa, the blessed city, Oxford, 1970, p. 15.

586. Օգոստոս Օկտավիանոս— Հռոմեական կայսր (մ.թ.ա. 27— մ.թ. 14 թթ.)։

587. Մանու III— Օսրոյենեի (Եդեսիայի) թագավոր (մ.թ.ա. 23—4 թթ.)։

588. Աբգար V Ուքամա (Սև) որդի Մանուի— Օսրոյենեի (Եդեսիայի) թագավոր (մ.թ.ա. 4— մ.թ. 7 թթ., մ.թ. 13—50 թթ.), որի անվան հետ ըստ ավանդության կապվում է քրիստոնեության հաղթանակը Եդեսիայում, թեև իրականում դա տեղի է ունեցել Եդեսիայի Աբգար VIII Մեծ թագավորի օրոք (177—212 թթ.)։

589. Կավատ I— Սասանյան արքա (488—497, 499—531 թթ.)։

590. Թշրին ( Tešrin ) անունով կոչվում են ասորական տարվա առաջին և երկրորդ ամիսները՝ հոկտեմբերը և նոյեմբերը։ Սակայն մեր աղբյուրը չի տարբերակել, թե որոշակիորեն դրանցից որը նկատի ունի։ Սովորաբար հոկտեմբեր ամիսը կոչվում է Թշրին առաջին, իսկ նոյեմբերը՝ երկրորդ։

591. Անաստասիոս I— Բյուզանդական կայսր (491—518 թթ.)։

592. Պրոսիդին գյուղը պետք է եղած լինի Մելիտենեի մոտակայքում։ Է. Հոնիգ-

մանը Prosidin անունը հարցականորեն վերականգնում է Praesidium. տե՛ս *E. Honigmann*, Le couvent..., p. 125.

593. **Հուստինիանոս I**— Բյուզանդական կայսր (527—565 թ.)։

594. **Խոսրով I Անուշիրվան**— Սասանյան արքա (531—579 թթ.)։

595. **Մավրիկիոս**— Բյուզանդական կայսր (582—602 թթ.)։

596. Խոսքը վերաբերում է պարսից Խոսրով II Ապրվեզ արքային. տե՛ս ծանոթագրություն 401։

597. Նկատի ունի, ըստ երևույթին, բյուզանդական զորավար Հովհաննես Միստակոնին. հմմտ. *Н. В. Пигулевская*, Византия и Иран на рубеже VI и VII веков М.—Л., 1946, стр. 94—108.

598. Խոսքը վերաբերում է Արմենիակների և Բուկելլարների բյուզանդական բանակաթեմերին, որոնց մասին մանրամասն տե՛ս **Կոստանդին Ծիրանածին**, «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հ. 6, Բյուզանդական աղբյուրներ Բ», թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հ. Բարթիկյանի, Երևան, 1970, էջ 318—319։

599. **Հերակլիոս**— Բյուզանդական կայսր. տե՛ս ծանոթագրություն 400։

600. Հերակլիոս կայսեր և Մերձկասպյան թուրքական խաքանության միջև 626 թ. կնքված դաշինքի պայմաններով թուրք-խազարական զորքերը մասնակցեցին պարսիկների դեմ մղվող պատերազմին։ Այդ մասին մանրամասն տե՛ս *С. А. Плетнева*, Хазары, М., 1976, стр. 20—21.

601. **Յարմուկ**— Գետ Անդրհորդանանում, Հորդանան գետի ձախակողմյան վտակներից մեկը, որը միախառնվում է մայր գետին Տիբերական լճից հարավ։ 636 թ. Յարմուկի ճակատամարտում արաբները ջախջախեցին բյուզանդացիներին։

602. **Կնտրիս** և **Արդիգոն** անունները, որոնք ամենայն հավանականությամբ հունական ծագում ունեն, ասորական բնագրում այնպես են ձևափոխվել, որ աղավաղված բառերի տպավորություն են թողնում։ Ն. Պիգուլևսկայան այդ անունները տառադարձել է Кентарис և Ардиган ձևով. տե՛ս. *Н. В. Пигулевская*, Византия и Иран на рубеже VI и VII веков, М.—Л., 1946, стр. 281.

603. Սույն դրվագի մասին մանրամասն տե՛ս *А. Тер-Гевондян*, Армения..., стр. 24

604. **Մանուել**— Հայազգի այս զորավարի մասին հայկական աղբյուրները լռում են. հմմտ. Հ. **Աճառյան**, Հայոց անձնանունների բառարան, հ. 3, Երևան, 1946, էջ 206։ Օտար աղբյուրներից նրան հիշատակում են նաև Միքայել Ասորին և Թեոփանեսը։

605. **Ֆուստատ**— Քաղաք Եգիպտոսում, Նեղոսի ձախ ափին, Կահիրեից հարավ։ Միջնադարում կոչվել է նաև Բաբելոն։

606. Ռ. Հուսեյնովը այս անձնավորությանը նույնացնում է Դավիթ Կյուրապաղատի (X դ.) հետ, բոլորովին չնկատելով ժամանակների հսկայական անհամապատասխանությունը. տե՛ս *Р. Гусейнов*, Сирийские источники по истории Закавказья X—XIV веков, «Պատմա-բանասիրական հանդես», 1974, № 2, էջ 51։ Ա. Տեր-Ղևոնդյանը հիմնավորված չի համարում նաև նրա նույնացումը Դավիթ Սահառունու հետ. *А. Тер-Гевондян*, Армения..., стр. 23.

607. Այս և հաջորդ գլխի բովանդակության մասին տե՛ս *А. Тер-Гевондян*, Армения..., стр. 22—23.

608. **Բեթ-Մաադա** գյուղի անունը հավանաբար կապ ունի «Աշխարհացոյց»-ի հիշատակած **Բեմադա** (Իզլա) լեռան հետ, որը գտնվում է Հյուսիսային Միջագետքում, Մարդինից հյուսիս-արևմուտք։

609. **Կոստանդ II**— Բյուզանդական կայսր (641—668 թթ.)։

610. **Մաքսիմոս Խոստովանող**— Հույն աստվածաբան (582—662 թթ.), որը պայ-

ջարել է Հերակլիոս կայսեր որդեգրած մոնոթելիստական (միակամային) դավանանքի դեմ, Պետական դավաճանության մեղադրանքով աքսորվել է Լազիստան և այնտեղ էլ կնքել իր մահկանացուն։

611. **Մժեժ**— Բյուզանդական Կոստանդ Բ կայսեր (642—668 թթ.) հայազգի զորավարներից մեկը. մանրամասն տե՛ս Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հ. 3, Երևան, 1946, էջ 330։ Ժամանակագրության ասորական բնագրում Մժեժ անունը գրված է Mzyzy, իսկ բյուզանդական պատմիչ Թեոփանեսի մոտ՝ Μιζίζιος ձևով,

612. Սույն դրվագը հայտնի է նաև բյուզանդական պատմագրությունից. համարյա նույնությամբ այն գտնում ենք, օրինակ, Թեոփանեսի «Ժամանակագրության» մեջ. տե՛ս Theophanis Chronographia, recensvit Carolus de Boor, volumen I, textum graeum continens, Hildesheim, 1963. p. 351—352.

613. **Մուավիա I իբն Աբուսուֆիան**— Արաբական խալիֆ (661—680 թթ.) Օմայան հարստությունից։

614. Իրականում Կոստանդ կայսրը սպանվել է 668 թ., տե՛ս ծանոթագրություն 609։

615. Թեոփանեսի «Ժամանակագրության» մեջ այս անձնավորությունը կոչված է 'Ανδρέας υἱός Τρωίλου, տե՛ս Theophanis Chronographia (հմմտ. ծանոթագրություն 612), էջ 351։

616. **Կոստանդին IV**— Բյուզանդական կայսր (668—685 թթ.)։

617. **Աբդլմելիք իբն Մրվան**— Արաբական խալիֆ (685—705 թթ.), Օմայան հարստությունից։

618. **Մուհամմեդ իբն Մրվան**— Արաբական խալիֆայության Արմինիա երկրի կուսակալ (692/3—709/10 թթ.). տե՛ս *А. Тер-Гевондян*, Армения..., стр. 271.

619. Արաբական խալիֆայության 'Arminiya (Հայաստան) նահանգը Դվին կենտրոնով, ընդգրկում էր ոչ միայն բուն Հայքը, այլ նաև Քարթլին ու Աղվանքը. տե՛ս *А. Тер-Гевондян*, Армения..., стр. 74.

620. Այս դեպքի մասին, որ լայն արձագանք է գտել ինչպես հայ, այնպես նաև օտար աղբյուրներում, մանրամասն տե՛ս *А. Тер-Гевондян*, Армения..., стр. 77—78. Ըստ Ա. Տեր-Ղևոնդյանի՝ այդ հաշվեհարդարը հայ նախարարների նկատմամբ տեղի է ունեցել 705 թ.։

621. Նախորդ դեպքը թվագրված է Սելևկյան 1002 (691) թվականով, ուրեմն խոսքը վերաբերում է VII դ. 90-ական թթ.։

622. **Սմբատ պատրիկ**— Հայոց իշխան (693—726 թթ.)։

623. Ըստ Ա. Տեր-Ղևոնդյանի՝ Հայոց իշխան Սմբատ Բագրատունին արաբներին հնազանդություն է հայտնել 693 թ., տե՛ս *А. Тер-Гевондян*, Армения..., стр. 72.

624. **Հուստինիանոս II**— Բյուզանդական կայսր (685—695, 705—711 թթ.)։

625. **Լեոնտիոս**— Բյուզանդական կայսր (695—698 թթ.)։

626. Նախորդ դեպքը թվագրված է Սելևկյան 1013 (702) թվականով, ուրեմն խոսքը վերաբերում է 703 թ.։

627. Այս հատվածում համառոտ կերպով ակնարկված է 703 թ. հայկական նշանավոր ապստամբությունը արաբների դեմ, որի մասին մանրամասն տե՛ս *А. Тер-Гевондян*, Армения..., стр. 75—78.

628. **Փիլիպպիկոս-Վարդան**— Բյուզանդական կայսր (711—713 թթ.)։

629. Սույն դեպքի մասին մանրամասն տե՛ս *А. Тер-Гевондян*, Армения..., стр. 82.

630. Երկու տարի առաջվա դեպքերը թվագրված են Սելևկյան 1037 (726) թվականով, ուստի խոսքը վերաբերում է 728 թվականին։

631. Նկատի ունի խազարական խաքանի Բարջիլ անունով որդուն. տե՛ս С. А. *Плетнева*, Хазары, М., 1976, стр. 39.

632. Ջարրահ իբն Աբդալլահ ալ-Հաքամի— Արաբական խալիֆայության Արմինիա երկրի կուսակալ (722—725, 729—730 թթ.). տե՛ս А. *Тер-Гевондян*, Армения..., стр. 272.

633. Սույն դրվագում նկարագրված դեպքերի մասին մանրամասն տե՛ս С. А. *Плетнева*, Хазары, М., 1976, стр. 39; А. *Тер-Гевондян*, Армения..., стр. 87—88.

634. Մրվան իբն Մուհամմեդ— Արաբական խալիֆայության Արմինիա երկրի կուսակալ (732—744 թթ.). տե՛ս А. *Тер-Гевондян*, Армения..., стр. 273.

635. Վալիդ II— Արաբական խալիֆ (743—744 թթ.) Օմայան հարստությունից։

636. Ումար իբն Աբդլազիզ— Արաբական խալիֆ (717—720 թթ.), Օմայան հարստությունից։

637. Կոստանդին V— Բյուզանդական կայսր (740—775 թթ.)։

638. Աբու-Ջաֆար— Արաբական խալիֆայության Արմինիա երկրի կուսակալ (750—754 թթ.). տե՛ս А. *Тер-Гевондян*, Армения..., стр. 274.

639. Աբուլաբաս Աբդալլահ աս-Սաֆֆահ իբն Մուհամմեդ— Արաբական խալիֆ (749—754 թթ.), Աբասյան հարստության հիմնադիրը։

640. Մրվան II իբն Մուհամմեդ— Արաբական խալիֆ (744—750 թթ.), Օմայան հարստության վերջին ներկայացուցիչը։ Հմմտ. ծանոթագրություն 634։

641. 214-րդ գլուխը համարյա բառացիորեն առկա է նաև Միքայել Ասորու «Ժամանակագրության» մեջ (տե՛ս *Michel le Syrien*, t. III, p. 50—52, IV, p. 508—509). Սույն հատվածը երկու հեղինակներն էլ իրարից անկախ քաղել են Դիոնիսիոս Թել-Մահրացու «Ժամանակագրությունից»։

642. Թեև ասորական բնագրի այս տեղում դրված է kūrdāye (քրդերի) բառաձևը, սակայն նույն գլխի մյուս յոթ դեպքերում ունենք kūrdanaye, որը, ամենայն հավանականությամբ, մահմեդական խուրրամիտյան ( hurramiyā, hurramdiniya) աղանդի աղավաղված անվանումն է։ Դրա ապացույցն է այն, որ Անանուն Եդեսացին Մահդիի հետևորդն է համարում Բաբեկին, որը, ինչպես հայտնի է, խուրրամիտյան շարժման ամենանշանավոր առաջնորդն էր։ Խուրրամիտյան աղանդի մասին մանրամասն տե՛ս Encyclopedie de l'Islam, t. II, Paris, 1927, p. 1031—1032.

643. Խոսքը վերաբերում է Դիոնիսիոս Թել-Մահրացու «Ժամանակագրությանը», որտեղից Անանուն Եդեսացին քաղում է այս հատվածը։ Ինչպես նշվեց սույն աշխատության ներածության մեջ, Դիոնիսիոս Թել-Մահրացու երկը հանդիսանում է Անանունի հիմնական աղբյուրներից մեկը։

644. Մահդի անունը ծագում է արաբերեն hady (առաջնորդել) արմատից և բառացի նշանակում է «առաջնորդված»։ Մահդիի՝ սպասվող իմամի՝ փրկչի պաշտամունքը տարածված էր շիա մահմեդականության մեջ և հաճախ դրսևորվում էր բացահայտ պայքարի ծայրահեղ արտահայտություններով։ Պետք եղած պահին հայտնվում էր ոմն ինքնակոչ Մահդի և գլխավորում աղանդավորական շարժումը։ Մահդիի մասին մանրամասն տե՛ս Encyclopedie de l'Islam, t. III, Paris, 1936, p. 116—120.

645. Տե՛ս ծանոթագրություն 406։

646. Բեթ-Զաբդե— Քաղաք Մեծ Հայքի Ծավդեք գավառում, Տիգրիսի աջ ափին։ «Աշխարհացոյց»-ում հիշատակված է Բզաբդէ ձևով։

647. Աբուջաֆար Աբդալլահ ալ-Մամուն իբն առ-Ռաշիդ— Արաբական խալիֆ (813—817 թթ.), Աբասյան հարստությունից։

648. Կարթամին— Նշանավոր ասորական վանք Հյուսիսային Միջագետքի Տուր-Աբդին գավառում, Մծբինից հյուսիս։

649. **Աշոտ Մսակեր Բագրատունի**— *Հայոց իշխան (790—826 թթ.). տե՛ս А. Тер-Гевондян,* Армения..., стр. 270.

650. **Իսահակ**— *Հայոց իշխան Աշոտ Մսակերի (790—826 թթ.) որդին, որն իշխում էր Տարոնում. տե՛ս А. Тер-Гевондян,* Армения..., стр. 133.

651. **Բաբեկ**— *Աբասյան խալիֆայության դեմ բռնկված խուրրամիտյան շարժման առաջնորդը։ 816—837 թթ. նա գլխավորեց Ատրպատականի ժողովուրդների ապստամբությունը, սակայն վերջիվերջո ձերբակալվեց Սահլ իբն Սմբատ հայազգի իշխանի կողմից և մահապատժի ենթարկվեց։ Հմմտ. А. Тер-Гевондян,* Армения..., стр. 129—137.

652. **Ռոմանոս II**— *Բյուզանդական կայսր (959—963 թթ.)։*

653. **Վասիլ II Բուլղարասպան**— *Բյուզանդական կայսր (976—1025 թթ.)։*

654. **Կոստանդին VIII**— *Բյուզանդական կայսր (1025—1028 թթ.)։*

# ՑԱՆԿԵՐ*

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ**


Աբաս (366), 124
Աբգար Ուքամա 100—102, 195, 196
Աբդալլահ Աբուլաբաս (639), 202
Աբդլմելիք (617). 200, 201
Աբդուլլահ իբն Ալի 202
Աբդուն Արբելացի 98, 111
Աբդուն սարկավագ 128
Աբրահամ երեց 148
Աբրահամ նախահայր 47
Աբուալի 89
Աբուլհասան իբն խաշշաբ (200), 67
Աբուլֆաթահ. տե՛ս նաև Մելիքշահ 1. (17), 31—33, 36, 76, 168
Աբու-Ջաֆար (638), 202
Ադիլ (ալ-Մելիք ալ-Ադիլ՝ 394), 131, 152, 156—165, 169—173, 178, 187, 188
Ադուդեդդին Ալլահ (368), 124, 132
Ազիզ (ալ-Մելիք ալ-Ազիզ՝ 451), 152, 157—159
Աթանասիոս բար-խամորո (202), 67
Աթանասիոս եպիսկոպոս (462), 154
Աթանասիոս պատրիարք (555), 191
Ալեքս արքայորդի (183), 62, 85
Ալեքս կայսր (50), 36, 37, 42, 60
Ալեքսանդր Մակեդոնացի 69, 70
Ալի իբն Աբուտալիբ (365), 123
Ալի իբն Վաֆա (334), 116, 117
Ալլահ 199
Ալփիրակ (32), 32—35
Ալֆոնս (265), 86, 112, 120
Աղ-Սնդուր (42), 33, 76, 77, 99
Աղուր Արսլան (տե՛ս նաև Յաղուբ) 121
Ամինեդդին Ներբինի 133, 134
Ամիր-Ամիրան (308), 103, 119
Ամորի I (267), 86, 125, 126, 145
Այնուդդաուլա 89, 97
Անանիա (Անանա) կաթողիկոս (575), 193, 194
Անաստաս կայսր (591), 196
Անաստասիոս զորավար 197
Անդրեաս որդի Տրալոսի (615). 200
Անդրոնիկոս 120
Աշոտ իշխան (649), 203
Աշրաֆ (ալ-Մելիք ալ-Աշրաֆ՝ 490), 165, 167—170, 172, 173, 177—184, 186—188
Ապիրատ (570), 192, 193
Ապլղարիպ (156), 56
Ասադեդդին Շիրկուհ (364), 123, 125—127
Ասարհադոն (405), 132
Արդիզոն (602), 197
Արտուք (29), 32, 33, 36, 43, 44, 57, 58, 87
Աուհադ (ալ-Մելիք ալ-Աուհադ՝ 477), 159, 167, 170—173
Աֆդալ (ալ-Մելիք ալ-Աֆդալ՝ 452), 152, 157—159, 161, 165, 166
Աֆդալ եգիպտացի (51), 36

Բարեկ (651), 204
Բալակ (104), 43, 44, 57, 60, 62—64, 66—68, 74


* Փակագծերում նշված են համապատասխան ծանոթագրությունների համարները։
** Այբբենական դասակարգման մեջ արաբերենի ալ որոշիչ հոդը հաշվի չի առնված։

Բահրամ (222), 74
Բաղդուին I (60), 37, 38, 42, 51, 55, 56
Բաղդուին II (98), 42—44, 47—50, 54—59, 63, 64, 66, 68, 70, 71, 73, 74, 76, 84
Բաղդուին III (259), 85—87, 112, 118
Բաղդուին IV (436), 145
Բաղդուին կոմս (310), 104, 108—110, 113
Բարսեղ բար-Շումմանա (289), 90, 93, 98
Բարսեղ սևերակցի 148
Բարսումա Իսմայելի 92, 98
Բարսումա քահանա 148
Բէդթեմուր (502), 169, 191
Բիրզան 153, 154
Բոհեմունդ I (52), 36, 38, 40—43, 73, 75, 76
Բոհեմունդ II (217), 73—76, 79
Բուզան (24), 31, 33, 34, 41, 76
Բուրսուխ (153). 55, 56, 70, 71, 73, 76

Գաբրիել իշխան (31), 32, 41—43
Գալերան (157), 56—59, 62—64, 66, 70
Գալի 34
Գյումուշտեգին ներքինի (424), 138, 145, 147
Գոդեֆրուա (53), 36, 37, 40, 42, 56
Գող Վասիլ (72), 40
Գրիգոր հայ 197
Գրիգոր Տղա (419), 135, 191, 192
Գրիգորիոս (Լուսավորի՞չ). (574), 193
Գրիգորիոս Սամսոն 67
Գևորգ զորավար 108

Դամիանոս (302), 101
Դանիշմենդ (90). 41, 43, 61, 73—75, 79, 113, 140, 143
Դանուն 140, 141
Դավթուկ (114), 46
Դավիթ հայ (606), 198—200
Դավիթ Շինարար (173), 60
Դաուդ (171), 59, 67, 87, 114
Դաուլա (244), 79, 113
Դիրգամ (373). 124, 125
Դուբայս (212), 71, 89

Ելդեգիզ (46), 33
Եղիա 111
Եփրեմ Ասորի (280), 89

Զահիր (ալ-Մելիք ազ-Զահիր՝ 450), 152, 159, 162, 168, 173
Զանգի Իմադեդդին իբն Աղ-Սնղուր (228), 76—79, 84, 87—94, 96, 97, 99, 100, 102—104, 110, 116
Զանգի Իմադեդդին II (442), 147, 149, 152, 157
Զաքարիա (507), 170, 171
Զհյնեդդին Ալի Քուչուկ (235), 76, 89, 94, 96, 97, 104, 122, 147, 149

Թադեոս առաքյալ 100
Թաջուլմուլուք. տե՛ս նաև Տուտուշ. (229), 76
Թաջուլմուլուք Բուրի (239), 77
Թաջուլմուլուք եղբայր Սալահեդդինի (398), 131
Թեոդորոս բար-Վահրուն (464), 155, 192, 193
Թեոդորոս որդի Հեթումի (25), 31, 34—38
Թորոս հայ (345), 120, 122, 123

Ժոսլին I (100), 42, 47—50, 53—57, 59, 62—68, 70—72, 75
Ժոսլին II (150), 55, 75, 76, 78—80, 83, 87, 88, 104, 106, 108—110, 113—117, 120
Ժոսլին III (348), 120
Ժոֆրուա 68, 117
Ժոֆրուա Վանական (189), 63, 65, 68

Իսն Զուրայր 200
Իբն Սարդի 202
Իգնատիոս, Սահդա ուռհայեցի (463), 155
Իզզեդդին Մասուդ (440), 147—150, 157
Իզզեդդին Քեյկոբադ (531), 183, 188
Իյադ 199
Իսահակ որդի Աշոտի (650), 203, 204

